# ԳԻՐՔ

# ՎԱՍՏԱԿՈՑ

## ΓΕΩΠΟΝΙΚΑ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՆԱԽՆԵԱՑ

ՅԱՐԱԲԱՑԻ ԼԵԶՈՒԷ



ՎԱՆՔ ՄԽԻԹԱՐԱՑ Ի Ս. ՂԱԶԱՐ
ՎԵՆԵՏԻԿ
1877

# ԳԻՐՔ

# ՎԱՍՏԱԿՈՑ

## ΓΕΩΠΟΝΙΚΑ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՆԱԽՆԵԱՑ

ՅԱՐԱԲԱՑԻ ԼԵԶՈՒԷ



ՎԱՆՔ ՄԽԻԹԱՐԱՅ Ի Ս. ՂԱԶԱՐ
ՎԵՆԵՏԻԿ
1877

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Տրտունջ է բանասիրաց մերոց զնախնեացն, զի թէպէտ և կարի փութաջանք գտան 'ի թարգմանել և յօրինել գիրս կրօնականս, չափաւորապէս և պատմականս, մանաւանդ որ զսեփական ազգիս մերոյ իրաց, այլ զաշխարհօրէն գիտութեանց և զարուեստից ճառել, կամ զճառեալսն յեղուլ 'ի բնիկ բարբառ իրեանց՝ կամ ոչ կալան պէտ անձին, կամ թէ հազիւ ճաշակս ինչ ընծայեցին։ Թերևս քան զտրտունջ մեղադրանացն՝ արդարացի է տենչ մերոցս ուսումնասիրաց. որոց առաջի՝ արդ լեզուագիտութիւն բանայ զամենայն դրունս մատենադարանաց, վարժարանաց և համալսարանաց՝ օտար քաղաքաց և ազգաց, առատապէս մատակարարելով զվայելս մտաւորական պարենից, զորոց փշրանս իսկ, եթէ արժան իցէ ասել, ոչ գտանեն 'ի հայրենեացն շտեմարանս։ Բայց մեք, թէպէտ և ոչ կամիմք իսպառ՝ ըստ սրտացաւութեան բազմահմուտ Խորենացւոյն մերոյ, անբասիր առնել զանիմաստասէր բարս առաջնոցն մերոց, (որ և ինքնին

'ի ներքս մատուցանէ և զչքմեղսն ինչ, զպատերազ-
մաց կուռ զմիմեանց զկնի 'ի վերայ գալ յաշխարհիս
մերում,) այլ յուշ ևս առնեմք, զի առաւելագոյն ևս
վտանգք յետ ժամանակաց Քերդողահօրս՝ 'ի վերայ
եկին Հայաստանեայցս. ոչ լոկ պատերազմունք առ-
ժամայք, այլ և համաշխարհական յեղափոխութիւնք
պետութեանց և ինքնակալութեանց, և դժնդակա-
գոյն խազմք մազդեզանց կրօնից, և որ զհետ նորին
յԱրաբիոյ անապատէն վերերևելոյ, որ կալաւն զմեծ
մասն Ասիոյ, և բովանդակ դարս սրով և հրով դատէր
քան գրով և օրինօք. և թէ և յետոյ ուրեմն ամո-
քեալ և 'ի նախանձ մտեալ Յունականացն՝ յետ նուա-
ճելոյ զնահանգս աշխարհաց նոցին, փարէր և զգի-
տութեամբք, — որով և մերայոցս իսկ յարդարէր ճա-
նապարհ նոր, զխաղտալուր՝ այլ զճոխահարուստ լե-
զու իւր՝ իբրև կամուրջ կարծրակուռ միաւորիչ ար-
կեալ հելլենի և հայ դպրութեանց, — այլ հակառակու-
թիւն հաւատոցն ոչ թուլանայր, և ամբոխք և յարուց-
մունք բռնաւոր իշխողաց, և նորոց ազգաց կամ տոհ-
մից աքսելեաց զիմեցմունք յարևմուտս կոյս, ոտնակոխ
առնելով գրեթէ համապազ զՀայաստանս աշխարհ,
զամենայն վտարելով և նեղելով, և եկամտիցն անդանօր
հաստատելով տուն և արմատ, և այս գրեթէ մօտ մին-
չև 'ի մերս դար, գոգջիր և յաւուրս մեր յայտոսիկ.
յայտ է թէ այս ամենայն ոչ ներէին ժողովրդեան
երկրին տատանելոյ ընդ սպառազէն ոտիւք՝ պարապել
յանդորրաւէր հնարս և հմայս գիւտից և գիտու-
թեանց. այլ որչափ ինչ յօրըստօրեայ պարէն կենաց
կարևորն էր, և որ 'ի յաւիտենականն, այն էն կրօնք.
և զա՝ զի պատուականագոյն է յատափ իբրև առաջին
փրկանակ՝ պինդ և անլթօզլի կալաւ ազգս մեր, թե-
րևս առաւել քան զայլս նմանիս.

Բայց զի պատճէիկ ամենեցուն են ծանօթք և բա-
զում անգամ յոչ կամս իսկ յեղեղեալք, — որպէս և

յայժմուս առ 'ի մէնջ, — յիշեսցուք դարձեալ ընդ Խորենացւոյ, զի « գտանին և միջոցք լեալ պատերազմացն » յաշխարհիս և յազգիս Հայոց, այսինքն ժամանակք ինչ խաղաղականք, յորս 'ի դէպ էր պարապել ուսմանց և բարգաւաճել: Եւ զի օգտեցան և մերքս այսպիսեօք անդորրական միջոցօք, ինքնին նախ վկայէ նոյն մեր պատմագիր, զոր առ Արտաշիսիւ Բիւ զպէսպէս արուեստից և գիտութեանց երևումն և տածումն 'ի Հայս, և զոր առ իւրեն իսկ՝ 'ի սպառուած Արշակունեաց հարստութեան, յայն ինչ գիւտի հայերէն տառից. 'ի ժամանակի յորում և ինքնին պարագլուխ եկաց հայերէն դպրութեանց, իբրև թարգման, քերդող, վիպասան, իմաստասէր, աստուածաբան, քերական, և աշխարհագիր և երգահան: Թէպէտ և նուազունք՝ այլ եղեն և առ ժամանակօք անիշխանութեանն և յետագայ հարստութեանց՝ Բագրատունեացն ասեմ և Ռուբինեանց, միջոցքն երջանիկք, դրախտքն ժամանակեայք յանապատի բռնահոսան հոլովման քաղաքական վրդովմանց. և հայախօս միտք բանախոյզք՝ վառեցան 'ի խնդիր իմաստից 'ի բնիկ և յօտար աշխարհս, զոր և գրով աւանդեցին. Թէպէտ և ըստ վերոյ գրեալ պատճառաց՝ սակաւք յայնպիսեաց երկասիրութեանց քան թէ յոլովք՝ ժամանեցին առ մեզ, կամ ծանօթացան: Բազում ինչ արդարև արկածք և դիպուածք, և նախանձ և մոլութիւն՝ զինու և հրով և ջրով ծախեցին 'ի հայերէն գրենոյ. յորոց՝ սրբազան մատեանք՝ զի բազմաթիւ յոյժ էին, առաւելագոյն և ճողոպրեցան. սակայն և սոցին իսկ յետնոցս բռնի սպառումն՝ տայ գուշակել զջնջումն սակաւագիւտիցն ուսումնական մատենից: Այլ տակաւին մնացորդքն ինչ մնացորդաց, և լոկ իսկ անուանք՝ յայտ առնեն, զի չէին կոյր հայկական ախորժակք առ բանասիրականս և ուսումնականս. և անուանքն և մնացուածք երկասիրութեանց Դաւթեանց, Շիրա-

կայնոց (Անանիայ), Յակոբայ բժշկապետի 'ի Ե, Է և յ'Թ դարս, և յ'ԺԲ^ին Սարկաւագայ և Երից Մխիթարեանց, Անեցւոյն, Հերացւոյն և Գոշի, և 'ի յաջորդին՝ առ Ռուբինեամբք՝ Վարդանայ և Սմբատայ, և նմանեացն, ոչ միայն յաստցելոցս հաստատութիւն կըրթին, այլ և ընծայեն յոյս յայտնութեան դեռ անծանօթ և անակնկալ գրուածոց գիտնականաց, 'ի ծագաց և 'ի ծակուց ուստեք համապաղահին և մշտաբողբոջ աշխարհիս Հայոց։

Մի յայսպիսեաց աստի ցանկալի երկասիրութեանց համարեցի աներկբայապէս՝ ընծայեալս 'ի լոյս ԳԻՐՔ ՎԱՍՏԱԿՈՑ, ոչ դեռ այժմ ինչ՝ այլ 'ի դարէ հետէ ծանուցեալ մեզ[1]. որ զի և Թարգմանութիւն է (այլ նորութեամբ և Ճոխութեամբ բառից լեզուին ընդ ազգային մատենագրութիւնս իսկ դասելի,) արժան համարիմք յառաջ քան զԹարգմանութենէն՝ սուղ ինչ ծանօթս տալ զբուն հեղինակէն կամ հեղինակաց։ Քանզի հաւաքածոյ խմբագիր է մատեանս 'ի յոլովից գիտնոց բանից որք զերկրագործութենէ կամ զմշակութենէ գրեցին, է որ յառաջ իսկ քան զգալուստ Փրկչին մերոյ, (որպէս անուանեալն Զրադաշտ, և մեծ գիտնականն Վարրոն)[2], և է որ սուղ յետոյ, յառաջին չորեսին դարս նորին Թուականի։ Ի համառօտ նախադրութեան հայերէն Թարգմանութեանս (որ յօրինակին կարգեալ էր յաւարտ գրոցն), բացայայտ ծանուցանի ն և յորոց զգիրսն համառօտեաց, « Փօնիոս Անատոլիոս, որ 'ի քաղաքէն Պէրութայ ».

1 Բազում ամօք յառաջ 'ի Բազմավէպ օրագրի հրատարակեցան գլուխք ինչ 'ի գրոց աստի, ընդ որս և 'ի մօտոյ յամի 1874 տեղեկութիւնք, յորոց է ինչ զի երկրորդեմք և աստանօր։

2 Են որք ոչ զլատինն, այլ զյոյն ոմն Տիւրանիոս Վարրոն համարին զյիշեալն 'ի գիրս յայս, որոյ գրեալ էր զպարմանոյ գրաստուց, բայց գիտունք՝ զՄարկոս Տերենտիոս Վարրոն։

զոր սակաւ ինչ այլայլութեամբ վաղ ուրեմն յ՚Թ· դա-
րու՝ բազմահմուտն Փոտ նշանակէր յիւրումն Բիւրա-
մատենի, ընթերցեալ զՎինդանիոսի Անատոլեայ Պե-
րիթացւոյ Մշակական Խրատս, համդերձ երիւք կամ
չորիւք յիշեցելովքն ՚ի հայումն, յայլոց ևս վեցից հե-
ղինակաց, որոց ոմանց յիշէին անուանք և ՚ի կարգի
գրոց հայ թարգմանութեանս. իսկ ՚ի յոյն բնագրին
որ այժմ գտանի՝ ՚ի յառաջաբանին և ՚ի խորագրի
գլխոցն կամ դրանց՝ յիշին այլ ևս հեղինակք, ընդ
բնաւ իբրև քսան. բայց անուն հաւաքողին ոչ նշանա-
կի։ Վասն այսորիկ հմուտք Եւրոպէացիք որք զկիսով
ԺԶ դարու նախ հրատարակեցին զգիրսն, և որք զհետ
նոցին ճառեցին զայնմանէ, և որ հուսկ և ընտրելագոյն
բնաւից տպագրեաց համդերձ լատին թարգմանու-
թեամբ՝ Նիկոլաս Նիկլաս (՚ի Լիբսիա, յամի 1781),
յայլ և յայլ կարծիս եղեն. ոմանք՝ Կոստանդեայ կայ-
սեր վերագրեցին երկասիրութիւն, այնու՝ զի շողոմ-
արար հաւաքող գրոցս ՚ի շնորհուկս կայսեր՝ ասէ,
՚ի վերայ բազմապատիկ մեծագործութեանց և յաղ-
թութեանցն յաւելեալ և զհաւաքումն մատենիս.
այլ արդ ոչ ոք ՚ի քաջախոհից այսմ հաւանի. իսկ
կայսրն Կոստանդին՝ զոր և ոմանք հնագոյն ոմն կարծե-
ցին, աներկբայ ստուգի Ծիրանածինն գոլ, ըստ յու-
նականին Պերփիւռուժէն ՚ի մերս, ՚ի Ժ դարու կացեալ.
որ արդարև ուսումնասէր յոյժ գոլով՝ է ինչ զի ինքնին
գրեաց և է ինչ բազում զոր այլոց ետ գրել. ընդ որս
դասի և այս մատեան. ապա և հաւաքողն էր ոմն նմին
ժամանակակից, զոր Նիկլաս հրատարակողն ծանօթ-
արար և յոլովագոյնք ՚ի գիտնոց՝ Ճանաչեն Կաս-
սիանոս Բասսոս Մեկնաբան (Սքոլաստիկոս) մակա-
ձայնեալ։ Բայց այլոց ևս ոմանց, ընդ որս և մեզ, ոչ
թուի և այս. քանզի, ոչ միայն կանխաւ այլում ըն-
ծայեալ է գործն՝ յականէ յանուանէ, զոյգ հայումն՝
՚ի Փոտայ, այլ զի ընթերցասէրս այս խորագէտ՝ դաբու

միով երիցագոյն էր քան զՄիրանածինն Կոստանդին, ապա և գիրքն Հաւաքածոյ երիցագոյն էր քան զկայսրն և զընծայող Աքոլաստիկոսն, կամ ո ոք և իցէ յետին յերիւրող և ժողովող գործոյն. և զի սորա ոչ մեծ ինչ փոփոխութիւն արարեալ է քան զոր Փոտն ընթեռնոյր՝ յայտ անտի է, զի գրեաթէ համաձայն բան առ բան ըստ իւրումն գրեցելոյ և տպագրելոյն գտանին յիշատակք և հատուածք գրոցն առ Պալլադիոսի լատին հեղինակի՝ անդստին 'ի Ե դարէ։ Հարկ ուրեմն է և գրոցս հաւաքման լինել յառաջ քան զայս թուական, այսինքն քան զ'Ե դար. նա զի և Կասսիանոս անուն բժիշկք և բուսաբանք յիշատակին յառաջին անդ դարս քան զհինգերորդն. այլ և 'ի սմին իսկ մատենի ('ի Ե գիրս, 'ի Զ գլ.) յիշատակի Կասսիանոս, որ ասէ զինքն լինել 'ի Մարատոնիմա գեղջէ (Բիւթանիոյ)[1]. ապա ոչ է նա ժողովող գրոցս՝ այլ այլ ոք, որ գուցէ զնախնւոյ ժողովողին տրոհեալն յ'ԺԲ հատորս, որպէս Փոտ ասէ, և ԺԴ ըստ մերոյս, 'ի քսան գիրս բաժանեաց, յաւելլով ինչ ինչ և յարմարելով կլիմայի կայսերանիստ քաղաքին և նորին սահմանաց։

Ստոյգ ուրեմն և առաջին հաւաքող Գրոցս Վաստակոց է Անատոլն Պերիթացի, յորոյ անուն և հայրենեաց միաբանին Փոտ և Հայ Թարգմանս, իսկ յաւելի անունն՝ ոչ. և ոչ գիտեմ ո՞ ստոյգ կամ մերձ 'ի ստուգութիւն. զի Պօնիոս կոչումն Հայոյն՝ ոչ ուրեք լուի. իսկ Վինդանիոս՝ կից Անատոլ անուան ըստ Փոտայ՝ ոչ կարի հաւանական. նախ զի Անատոլ անուն յաճախ առ Բիւզանդացի Յոյնս լուի, իսկ Վինտանիոս լատինական է քան յունական. և երկրորդ զի 'ի յառաջաբանի անդ այժմեան բնագրին՝ որոշի Վինտանիոս յԱնա-

[1] Զնոյն տեղի հայրենիս իւր կոչէ և Ֆլորենտինոս, վասն այնորիկ և ոմանք նոյն մի այր համարին զսա և զԿասսիանոս։

տօլեայ, ընդ մէջ անկանելով անուան Տարենտինոսի. և զի դարձեալ առ հինսն ծանօթապէս յիշատակի Անատոլն Պերիթացի, այլ ոչ այլով ինչ յորջորջմամբ: Իսկ ուստի՞ արդեօք սպրդեաց Պօնիուսդ անուն ’ի հայումն՝ ոչ ունիմ ասել, բայց միայն զի յաղաւաղութենէ իմեքէ յոյն բնագրին յեղլոյ յարաբացի լեզու, յորմէ մերն փոխաբերեալ է: Իսկ ինքդ Անատօլ որ ’ի Պերիթեայ քաղաքէ Փիւնիկկիոյ, (որով և Ասորի ըստ ծագման,) հռչակի զկիսով Դ դարու, իբրև հմուտ իրաւագէտ, քաղաքագէտ և բանասէր. որ և մեծարեալ ’ի կայսերաց ’ի Հռովմ և Նախարար Լիւրիկկիոյ կարգեալ, առաքեցաւ երբեմն յԱթէնս՝ (իբր յամի 345) պատուաւորել ’ի կայսերական գահուց զգերահռչակն ’ի սոփեստէսս ժամանակին և պարագլուխ Ճարտարասանից, զմերս Հայկազն Պրոյերէս, զօրապետութեան պատուով: Արդ այսմ Անատոլի՝ եթէ ինքնին իցէ հաւաքող և գրող և եթէ այլոյ ձեռամբ, իրաւունք են ընծայել զհեղինակութիւն մատենիս՝ քան այլում ումեք: Բայց բուն բանիցն և խրատուց հեղինակք՝ օտարք են և բազումք, ուպէս վերագոյնդ ազդեցաք, ոչ միայն Յոյնք և Լատինք, այլ՝ եթէ արժան իցէ հաւատալ ամենայն գրելոցն, և Բակտրիացի կամ Պարսիկ ոք Զրադաշտ, և Յուբաս Նումիդացւոց արքայ յԱփրիկոյ. զորս զանց առնեմք մեք թուել աստանօր. քանզի սակաւք ’ի բազմացն յիշին ’ի մերում թարգմանութեանս, և ուր յիշին՝ անդ ’ի ստորև դրանցն կամ գլխոց տուեալ է մեր համառօտ ծանօթս, և զամենեցուն միանգամայն անուանս դասեալ յետ ցանկի գրոցս՝ ընդ սակաւուց ոմանց աշխարհագրական անուանց: Ի բնագրին՝ ընդ իւրաքանչիւր խորագրաւ գլխոց նշանակեալ են անուանք հեղինակացն. զոր մարթ էր և մեզ յաւելուլ ’ի զբօսանս և ’ի հմտութիւն մերայոցս, եթէ հաւասար զուգընթաց թարգմանութիւն էր յունին: Արժան է յիշեցուցանել միայն

ատ 'ի կարգի անուանցդ՝ զյիշատակեալն 'ի մերոյս 'ի վերջոյ ամենեցուն՝ զ'Ընտրեալն Նիկողոս, որ ոչ բը-նաւ յիշի 'ի բնագրին, և ոչ այլ անուն նմին նմանա-ձայն. հմտագունից այսմ գիտութեան և գրագրու-թեան՝ թողումք հաւաստել զայս. իսկ մեք փաստ մի և ատի առնումք զսկզբնագիր օրինակ մերոյս թարգ-մանութեան՝ որիչ և երիցագոյն համարել քան զըն-ծայեալն յարդեաց՝ Կասսիանոսի Բասսոսի և զհրա-տարակեալ 'ի Նիկլասայ, թէպէտ և զսոցայս կոչի-ցեմք մեք քնագիր՝ ատ և 'ի ծանօթութիւնս։

Եւ սա արդ, որպէս և վերագոյն ասացաք, 'ի քսան գիրս բաժանեալ է, և իւրաքանչիւր գիրք 'ի գլուխս աւելի կամ պակաս թուով. որք ոճով իմն ճառեն և կարգաւ մի ըստ միոջէ զվասաակոց երկրի և զմշակե-լեացն այգեաց և տնկոց, և զանասնոց. իսկ մերս՝ թէ-պէտ և գրեաթէ զնոյն կարգ ունի, բայց ոչ է տրո-հեալ 'ի Գիրս, ուստի մարթ էր որոշակի ընտրել և նիւ-թոց ճառելեացն, այլ 'ի գլուխս աւելի քան զ'300, կամ 'ի դրուագս՝ որպէս գրեալ էր յընտրելագոյն օրի-նակին՝ որում հետևեցաք։ Պակասեն 'ի մերումս եր-կուց վերջին գրոց բնագրին խրատք՝ որ զերէոց, և զձկանց և զեռնոց, որպէս և զհաւուց՝ որ 'ի ԺԴ գիրս բնագրին, այլ և զծաղկանց և զպարտիզի ծառոց՝ որ 'ի ԺԱ գիրս, զորոց ըղձալի էր մեզ ունել թարգմա-նութիւն, ոչ այնքան վասն բանիցն ճառելեաց, որքան վասն բառից և լեզուին։ Զանց արարեալ է մերս և գրեաթէ զողջոյն Ա գրովք, որ զօդոց ճառէ և զօդ-երևութից, և զլուսաւորաց և զյեղանակաց տարւոյ. որք արդարև չեն այնքան կարևորք և ոչ ամենայն կլի-մայից պատշաճք. և զայս յայտ առնէ մերս 'ի սկզբան բանիցն. « Աստանօր արժան համարեցաք զառաջա-« կայիցն զերկարաբանութեանցն զանց առնել ». բայց և այսպիսի անյարիր սկիզբն բանից՝ Աստանօր, կար-ծիս տայ՝ կամ նախ այլոյ յառաջաբանի լինել 'ի հին

օրինակս Թարգմանութեան-մերոյ, կամ ողջոյն իսկ գրոցն Թարգմանութեան, զորովք յետին ընդօրինակօղք զանց արարեալ են։ Այլ և 'ի բանս կամ 'ի խրատս գլխոցն՝ դուն ուրեք համակարգ և բառական է Թարգմանութիւնն, այլ յաճախ յետ և յառաջ, աւելի կամ պակաս. և որպէս զբազում իւիք զանց արարեալ է, ունել ունի հայերէնն և առաւելութիւնս որ ոչ գտանին 'ի յոյն բնագրին. որ և 'ի միում նուագի 'ի ՄԽԹ գլ. ան՝ ասէ գրեալ և այլուր զփայտ կտրելոյ յ'Գ. Գլուխն. 'ի բնագրին ոչ գտանեմք առանձինն գրեալ զայսմանէ, այլ ըստ իւրաքանչիւր ամսոց ինչ ինչ հակիրճ յ'Գ. Գիրս։ Բովանդակ մատեան հայ Թարգմանութեանս՝ իբրև չորիր լոկով մասամբ չափ նուազ է քան զյունականն. թերևս ոչ շատ ինչ աւելի ունէր և օրինակն՝ յորմէ փոխեցաւն ի մեր լեզուս։

Օրինակն այն՝ առանց երկբայութեան էր արաբերէն Թարգմանութիւն յունականին, որպէս քաջայայտ երևի յարաբիկ անուանց համաստեղութեանց, զոր մերթ Թարգմանելով և մերթ ոչ՝ կրկնէ մերս, և 'ի բուսոց և կենդանեաց ոմանց՝ զորոց չէ գտեալ բընիկ հայեցի կոչմունս. ընդ որոց հարկ էր նմա զյունականսն կարգել անուանս՝ եթէ 'ի յունէ անտի Թարգմանէր. իսկ եթէ յիշէ ուրեք այսպէս կամ այնպէս կոչիլ յունարէն՝ անդ Արաբացի Թարգմանին է բանն զոր կրկնէ Հայն։ Ոչ է մեզ ծանօթ փափագելին այն արաբացի Թարգմանութիւն, յորմէ մարթ էր անկասկած ստուգել զամենայն բառս հայկականիս. այլ զի գիտեմք զառաջին եռանդն ուսմանց և մակացութեանց նուաղել յԱրաբացիս յաւուրս Կոստանդնի, 'ի դէպ թուի յառաջ քան զնորա ժամանակս (քան զկէս Ժ դարու) համարել զնոցայն Թարգմանութիւն. որում երաշխաւոր համարիմ և զասորի հին Թարգմանութիւն գրոցս, որոյ գտաւ օրինակ գրեալ

յ՚Թ դարու[1]. և այս ևս յաւելու փաստս զբնագիր գրոցս յառաջեցուցանել քան զայժմու յոյն բնագիրն, և հաստատել հարազատագոյն գործ Անատոլեայ[2]։ Ի թարգմանել Հայոյն առընթերակայ թուի և Արաբացի լեզուագէտ, կամ երկոցուն միաբան թարգմանեալ. քանզի ասէ ուրեմն (ՄԿԴ) վասն խոտոյ իրիք, «Արապկերէն ասեն Պատրուճ, և մեք չկարացաք ճշմարտել 'ի թարգմանէն. և որք ճշմարտենն՝ թող գրեն»։ Այսպէս և այլ սակաւ ուրեք ոչ կարելով ճշմարտել՝ գրէ զարաբացի անունն և դատարկ թողու 'ի տողին վասն գրելոյ զհայն 'ի ստուգելն։

Առաւել ևս ըղձալի էր մեզ գիտել զստոյգ տեղի և ժամանակ և զանձն հայերէն թարգմանչին, զոր զլանան մեզ երեքին ևս օրինակք գործոյս՝ որք 'ի ձեռին մերում, նորագիրք և անյիշատակք։ Համարիմք յաւուրս տիրապետութեան Ռուբինեանց երկասիրեալ, և 'ի Կիլիկիա. քանզի թէպէտ և ուրեք ուրեք յառաջին հեղինակէ գրոցն յիշեալ լինի աշխարհն Կիլիկեցւոց (որպէս 'ի ՄՀԳ. ՄՀԴ. ՄՀԵ դրուածս, ուր հեղինակ բանին է Ֆլորենտիոս) այլ յիշի 'ի մերում թարգմանութեան և ուր չիք 'ի յոյն բնագրի, և ոչ իսկ թուի պատշաճել. զոր օրինակ 'ի դրուածն ՁԶ, հեղինակն որ է ինքն Անատոլ՝ յիշէ զԱրևելեայս և զԼիբէացիս. մերս (զյետինդ 'ի Նինուէացիս փոխեալ) յաւելու, «Նոյնպէս և Կիւլիկեցիքն առնեն». և 'ի

1 Զոր և հրատարակեաց Պօղ Լակարտ (Boetticher) 'ի Լիբսիա, յամի 1855. այլ մեր չէ տեսեալ զայն։

2 Միւլլէ (Clément Mullet) որ յամս 1864–7 հրատարակեաց զգիրս երկրագործութեան Իպն-ալ-Ավամ Արաբացւոյ, յիշէ և զայլ արաբացի ձեռագիր իբրև բուն համառօտութիւն յունական Վաստակոց Գրոց, և Դիմոկրիտեայ ընծայեալ. և զի 'ի մերում թարգմանութեանս իսկ յայտնիկ Դիմոկրիտէս յաճախագոյն քան զայլ հեղինակս յիշի՝ կարծեմ թէ հայերէնս այս թարգմանութիւն է այնր արաբացի մատենի, զոր ոչ ժամանեցաք ստուգել։

դուռն ԴՋ, 'ի ձառեն զխանգարելոյ այգեաց և ան-
դոց յօդոց փխասուէ, ուր և ոչ մի այլ աշխարհ կամ
քաղաք յիշի, մուծանէ մերս, « Ես առաւել 'ի Կիւ-
լիկիոյ գաւառս »: Իսկ ժամանակ Թարգմանութեան
կարծեմ զԺԳ. դար, վաղագոյն քան թէ անագան[1].
զի ոչ միայն ամբոխք յետին դարու իշխանութեան
Կիւլիկեցւոց մերոց՝ ոչ յուսացուցանեն այսպիսի մտա-
դիւր պարապմունս գիտնականս, այլ և ոչ այսքան
յստակութիւն և գիտութիւն լեզուի ակն ունելի է
'ի ժամանակաց՝ յորս գրեաթէ լռէ և դադարէ իսկա-
բանութիւն հայերէն խօսից և դպրութեանց: Քանզի
թէպէտ և յաշխարհիկ բարբառ և յոճ յեղեալ են
գիրքս այս, այլ չեն ինչ նուազեալ 'ի շնորհաց յստա-
կութեան և սեփականութեան հայրենի լեզուի, հան-
դերձ գիտով և գիտութեամբ արուեստական կամ
բնախօսական բառից, որով դուն ուրեք կարօտի օտա-
րաձայն եկամուտ անուանց. և այս ոչ միայն զԹարգ-
մանչիս մերոյ հմտութիւն և զհետաքննութիւն ցու-
ցանէ, այլ և զճոխութիւն և զընդարձակութիւն լե-
զուիս և զկանուխ ծանօթութիւն բնական և արուես-
տական գիտելեաց 'ի Հայս. ընդ որ արժան իսկ է մեզ
խնդալ և պարծել. և եթէ ճանաչէաք զԹարգմա-
նիչն՝ բազում երախտեաց դրուատիս և նմա մատուցա-
նել: Ընթերցող բանասէր և բնասէր ինքնին վկայես-
ցէ այսմ՝ հանդիպելով 'ի սմա հարիւրաւորաց պիտա-
նի և ընտիր ընտիր բառից՝ որոց մեծ մասն մի չև ևս
է մտեալ յէջս տպագիր բառարանաց մերոց. և սակս
այսորիկ իսկ հարկ էր յոլովից յայտնեցանէ անհասկանա-

1 Ցայլ ինչ արուեստական գիրս՝ յիշատակի Հեթմոյ Ա.'ի սկզբան
թագաւորութեանն երթալ և պատուիլ 'ի Դրան Ամիրապետին,
և անդ 'ի խնդրոյ բանասիրի ուրումն տալ թարգմանել երիս գիրս,
զ'Պայթարման ձիոյ, Թուր չինելոյ, և զԱրեգական և Լուսնի օրի-
նաց: Զիցէ արդեօք և այս Գիրք Վաստակոց 'ի ձահ նոցին, և ե-
ւանդուն թագաւորին հաճութեան:

լիս կամ երկբայելիս մնալ։ Այսմ պէտ արարեալ դիւրութեան՝ յանցելում դարու՝ ծանօթ բանասէրն և հմուտ հայերէն և տաճիկ լեզուաց (թուրք, պարսիկ և արաբացի), Գէորգ Պալատացի, արարեալ էր ըստ իւրում կարի՝ քաղուած և մեկնութիւն բառիցն, նշանակելով և զթուրք և ուրեք զարաբացի կամ զպարսիկ յորջորջմունս նոցին. և զոմանս ոչ կարացեալ ստուգել՝ թողեալ էր դատարկ զկարգն, և յոմանս՝ վրիպեալ և այլ ազգ մեկնեալ։ Զոր և մեր ըստ մերում կարի ջանացեալ՝ աճեցուցաք, ուղղութեամբք և յաւելուածովք. և ուրեք՝ ոչ ունելով այլուստ երաշխաւորութիւն՝ 'ի նա ինքն ապաստան թողաք զմեկնութիւնն, նշանակելով անդ զանուն նորին. և յերկբայս՝ զերկբայութիւն մեր յայտ արարաք թուեօք և կարծեօք. որպէս և զայնս սակաւս՝ զոր գլխովին ոչ կարացաք ստուգել, ոչ 'ի բնագրէն գըտեալ օճան և ոչ յայլ գրոց՝ թողաք 'ի բաց։ Աղաչէ ընթերցօղն ներողաբար երկայնամտութեամբ հայել 'ի ծանօթութիւնս որ 'ի ստորև իմիցն, և 'ի Բառս՝ որ զկնի գրոցս կարգեալ կան. և որ ստուգագոյնս գտցէ և մեզ ծանուսցէ, ընդունիմք շնորհակալու մտօք։

Սուղ ինչ և զօրինակաց գրոցս ծանուցանել 'ի դէպ համարիմք. որպէս վերագոյնդ նշանակեցաք՝ երիս և եթ ունիմք՝ Նորագիրս և Նօտրագիրս, յետ կիսոյ անցելոյ դարուն գրեալս, և երեքին ևս թուի թէ 'ի Կոստանդինուպօլիս. ուր յուսալի էր տակաւին գտանել զսկզբնագիր գաղափարն՝ եթէ հրդեհաց ճարակմունք չանկանէին 'ի միտս. այլ տակաւին խրախուսեմք հրաւէր կարդալ 'ի լոյզ և 'ի խնդիր. և թէ ոչ անդ 'ի մեծի քաղաքին՝ 'ի բնիկ աշխարհի մերում. գուցէ ընտրելագոյն և լրագոյն ևս գտցին օրինակք. քանզի 'ի մերսս դոն ուրեք ուրեք պակասորդք, որպէս և տպագիրս ցուցցէ։ Երկուք յօրինակաց մերոց յոյժ նմանաբանք են և 'ի միոյ աղբերէ յառաջագայեալ.

իսկ երրորդն՝ որում հետեւեցաք՝ ոչ սակաւ զանազանի 'ի նոցունց, և վերագոյն է լեզուաւ և ստոյգ գրչութեամբ. յայտ է թէ գաղափարող միւսոցն առաւել ևս պարզել կամելով զերբեմն ժամանակի աշխարհաբառն՝ ռամկացուցեալ ևս է ըստ ոճոյ կամ հասկացման իւրոյ ժամանակին. յորմէ մարթ է կարծել, թէ գուցէ բուն առաջին թարգմանութիւնն առաւել ևս քան զհրատարակեալս այս՝ հայախօս կամ գրաբառ էր, ըստ որում է սկզբնաւորութիւն գրոցս: Ոչ միայն զլեզուն պարզաբանել նկրտեալ է յերկոսին յայն օրինակս, այլ և ուր պակասորդ ինչ տեսեալ է յառաջնագիր օրինակի իւրեանց՝ 'ի բաց թողեալ է զբառս ինչ, և կարկատեալ զիմաստն, հետախաղաղ առնելով զպարապն և զխրթին ինչ ասացուածս: Այն Օրինակք յ'333 գլուխս կարգեալ ունին զբանս գրոցս, իսկ միւս այս ընտրեալս՝ յ'298. բայց զի ուրեք մոռացեալ էր զգլխահամարսն, և ուրեք ընդ միով համարով արկեալ էր զբազում զանազանեալսն, և կամ առանց համարոյ՝ զխորագիրս գլխոցն կարգեալ, մեք զատուցեալ զայնոսիկ, որպէս արժանն պահանջէր, նշանակեցաք 332 Գլուխս. զի այսպէս վերակոչէ սա զհատածսն՝ և ոչ Գլուխս:

Ակն մի հարևանցի արկեալ և 'ի բուն և յիսկն գրոցս, և նախ յանունն, գտանեմք թէ ոչ համաձայն՝ այլ համամիտ բնագրին՝ ըստ ոճոյ և զօրութեան աշխարհօրէն լեզուիս՝ ՎԱՍՏԱԿՈՑ ԳԻՐՔ կոչիլ. զի այսպէս լսի և ասի առ ռամիկս՝ որ Մշակական կամ Երկրագործականն կոչի ըստ գրաւոր լեզուիս 'ի նախնեաց. և նոյն է յունական անուն ΓΕΩΠΟΝΙΚΑ, զոր և Լատինաց առեալ է 'ի կիր, Geoponicon, և Փռանկաց՝ որք վաղ ուրեմն կանխեցին յեղուլ զայն յիւրեանց խօսս և տպագրել անդստին յամէ իբր 1547, կոչելով Géoponiques. Բայց մի յՕրինակաց մերոց՝ որ ընդօրինակեալ է յանուանեալն Միջագիւղ Կ.Պօլսի,

*

Ազդ առնէ և Փոտ թէ գտանէին և յօրինակին զոր ինքն ընթեռնոյր՝ անհաւատալիք և սուտ սքանչելիք, յորոց զգուշանալ թելադրէ, և յերկբայականսն՝ հետևել Լևոնի կամ Լէոնդինոս, որ թուի կոչեցեալն Լաղնդիոս 'ի մերոյս (եթէ չիցէ սա Վարրոն), արաբացի նշաւաղանօք անուանն. և ոչ է յայտ ժ և յորում կացեալ դարու, թէպէտ և ոմանց թուեցաւ առ Յուստինիանոսիւ կայսերաւ 'ի Զ դարու:

Իսկ մեք զկարօտ լրման մատենիս և զյայտնութեան թարգմանչին, համարեցաք լաւ այժմիկ՝ ոչ փոքր մասամբ, եթէ ընդունելութեամբ և իւրք իւրք կիրառութեամբ մերազնէից՝ պատուեցին այս Գիրք Վաստակոց, հանդերձ և հրատարակողացն գոյզն ինչ վաստակօք:

# ԳԻՐՔ ՎԱՍՏԱԿՈՑ

Այս Գիրք Պօնիոս Անադալիոսի՝ որ 'ի քաղաքէն Պէրու-Թայ. զոր շինեաց յաղագս Տնկոց և Վաստակոց մարգկան, և անուանեաց զսա Վաստակոց Գիրք։ Եւ համառօտեաց 'ի Փլօրնդինոսէ, և 'ի Լաղնդիոսէ, և 'ի Դարընդիոսէ, և յայլոց բազմաց, յոյժ պիտանի, և 'ի յընտրելոյն Նիկոլիոսէ։ Եւ բաժանեաց զսա 'ի չորեքտասան գլուխս։

## ԴՈՒՌՆ Ա.

*Յաղագս գեղջից և տերանց իւրեանց խրատ։*

Աստանօր արժան համարեցաք զառաւօջակայից զերկարաբանութեանցն զանց առնել[1], և համառօտաբար զպիտանացուն ժողովել աստ, և յիշումն առնել զկնի շարագրելի աստիճանացն՝ որք 'ի յառաջիկայ դրունսն շարակարգեսցին. եւ առաւել զայնմանէ որ պիտացու է գեղջկին, որ իւր տէրն ստէպ[2] հայի 'ի յինքն, և կառկուռ երթայ տեսանէ և պէտ առնէ. և այնու կարէ իմանալ զգանգատն և զցաւն տեղւոյն[3], և փութով բժշկէ և արիացընէ զնոսա յաղագս շինութեան, և քաջալերէ զնոսա յամենայն պէտս շինմանցն։ Եւ եթէ ուրուք պատճառանօք վերջացեալք գտանին 'ի գործս վաստակոց իւրեանց՝ նա յիշելումն

1 Քանզի 'ի բաց թողու զողջոյն զԱ. Գիրս, որ ճառէ զմասանց տարւոյ, զեղանակաց, զօդոց և զօդերևութից։
2 Միւս ՕՕ. ձէձն։
3 Իմա, զպէտս և զպակասութիւն գեղջն կամ ագարակին և զմշակացն։

առնէ[1], և քաջալերէ զնոսա իշխանական հրամանաւն 'ի գործն. վասն զի յորժամ զգովելին գովէ և զպարսաւելին պարսաւէ՝ նա միամտանան 'ի բանն, ըստ իւրաքանչիւր կերպի, և յորդորին ցանկութեամբն 'ի գործն վաստակոց։

## ԴՈՒՌՆ Բ.

### Յաղագս երկրագործութեան գործոց։

Յիւրաքանչիւր ժամանակ և 'ի մարդկային հասակն՝ ունեմք որ հետևին երկրագործութեան, ամենայնիւ առաւելութեամբ ազնիւ է տղայական և մանկութեան հասակն։ Եւ պարտ է նոցա ծառայապէս կալ այնոցիկ՝ որք հմտացեալք լինին գործոյն և հասեալ 'ի ժամանակս ծերութեան. վասն զի անյոյլաբար խլեն 'ի գետնոյն զամենայն փշաբեր և զանտառախիտ բանջարսն և զծառսն, և սրբիչք են ճանապարհաց անդեացն[2] և վաստակոցն, և անխոնջ փորեն, պեղեն, քաղհանեն, ստածեն, նաև ժողովեն, խրտեցնեն զվնասակար ճագսն[3], և վարեն զանասունս յանդեացն։ Եւ յայս ամենայն վերոյգրեալ գործս՝ տղայքն առաւելագոյնք են քան զմիջահասակ մանկտիսն. վասն զի անյոյլաբար ցածանան և վերանան, և հեշտագոյն է նոցա քան մեծամեծացն. և որպէս 'ի խաղ ընթանան 'ի գործն անխոնջ։ Եւ այսու ամենայնիւ ուսանին զգործն և զբնութիւն գետնին և զհաւայն[4] ժամանակացն և զեղանակ տարւոյն։ Եւ զայս ամենայն տեսութեամբ և փորձիւք պարտ է ուսանիլ։

## ԴՈՒՌՆ Գ.

### Յաղագս թէ ո՞ր տեղւոյ օդն առողջ և բարի է։

Այսուհետև պարտ է գիտել և ընդրողութիւն առնել, եթէ ո՞ր տեղւոյ օդն առողջ և բարեյարմար

1 Յիշեցուցանէ։
2 Մի Օ. արդեանց։
3 Իմա՝ զթռչունս։
4 Զփոփոխութիւնս օդոյ։

է, և անդ առնել զշինութիւն: Եւ պարտ է գիտել, զի այն տեղն որ մօտ է 'ի ծովն՝ առողջային է. նոյնպէս և լերինք որք մերձակայք են ծովուն՝ առողջ են: Եւ ուր հիւսիսային հողմն առաւել դիպի քան զայլ հողմունս՝ նա առողջային է: Եւ այն տեղին որ աւելի ջրընկեց լինի և չսևանայ 'ի նմա շաղախն՝ 'ի ցածութեան և 'ի հարաւային կողման են, կամ յարևելեան[1]. և 'ի նոցունց հողմոյն սնեալն՝ առաւել վատառողջ է և պիղծ: Վասն զի ծնանին 'ի նմանէ ազգի ազգի ցաւք, թշուառութիւնք և մահք. և վասն այնորիկ պարտի 'ի բարձրաւանդակ տեղիսն առնել զշինութիւնսն՝ որ առողջային լինի. և 'ի բարձրն՝ լաւ պարզի օդն: Եւ պարտ է զտներն 'ի հիւսիսային և յարևելեան կողմն շինել, և զդրունսն ընդդէմ արևելից բանալ: Վասն զի ջերմութիւն արեգականն ցամաքեցուցանէ զհաստ գիձութիւնքն[2]: Նոյնպէս և զպատուհանսն[3] ընդդէմ հիւսիսային դեհին՝ զի մըտեալ պարխրային օդն՝ ցամաքեցուսցէ զտունն 'ի մահաբեր բորբոսահոտութենէն. և առաւել բարուոք է եթէ զապարանսն 'ի վերայ լերանց շինէ ոք, զի մերձակայ է արեգական, և ջերմութիւնքն լաւ հասանին 'ի մերձակայսն քան 'ի հեռաւորսն, և սրբեալ մաքրեն և նուազեցուցանեն զսառնային գիձութիւնսն: Նոյն ինքն և զապարանսն ցած և նեղ ոչ է պարտ առնել, այլ բարձրառաստաղ և բարձրակ: Եւ բազումք ոմանք ոչ հաւանին յարևելեան կողմն առնել զապարանսն միայն, այլ և 'ի հարաւային. և զայն առողջ համարին մարդկութեանս, զի տաք և չորային է, և առաւելութիւն ունի անդ ջերմութիւնն արեգական: Բայց ես ասեմ, թէ յայնպիսւոյն երկնչել պարտ է. զի հարաւային օդն գիձային է և փոփոխական բնութիւն, բազում ցաւք և հեծութիւնք ընծայէ յանձին: Զտան տեղն փորձեա. յերեկոյին փարչ մի ջուր դիր, յառաւօտուն տես. թէ փարչն թերի է՝ մի շիներ, թէ լի է՝ լաւ է, շինեա[4]:

1 Պիտի արեւմտեան ըստ յունին:
2 Թանձրութիւն, մռայլութիւն օդոյ, ըստ յունին:
3 Յոյնն ղեաղանիան:
4 Այս փորձ չիք 'ի բնագրին:

## ԴՈՒՌՆ Դ·

*Յաղագս ագարակաց լինելոյ 'ի լերինս, և տնկելոյ 'ի նոսա բազում ծառս:*

Պարտ է լինել ագարակացն 'ի լերինս, և տնկել 'ի նոսա բազում ծառս[1]. և թէ որպէս տնկեն 'ի նոսա զծառսն գեղեցկատեսիլ և վայելուչ. և այնպիսի ազգի ազգի ծառովք պաճուճեալ ագարակքն, որ յինքենէ իսկ բուսեալք լինին ծառքն. ապա թէ ոչ՝ դժուարաւ բնակեցուցանէ, այսինքն արմատացուցանէ[2] ոք 'ի տնկոց անդ. վասն զի ծառք վայրենիք 'ի սերմանց իւրեանց որք անկանին յերկիր՝ բուսանին. և են 'ի նոցունց ոմանք՝ որք զգիճային վայրսն խնդրեն. և ձիթենին և փիճին և տօսախն և այնպիսիքն՝ զչորայինն, և կաղնին և կաստանային՝ զանձրևային:

## ԴՈՒՌՆ Ե·

*Յաղագս Ջրոց, թէ որպէս պարտ է ժողովել զանձրևաջուրս:*

Վասն ջրոյ թէ որպէս պարտ է ժողովել զանձրևաջուրն: Արժան է յառաջ քան զամենայն ինչ զջրոց խոկալ, ոչ եթէ վասն ըմպելոյ միայն, այլ և վասն վաստակոց և բուսոց երկրի, և վասն օդոցն խառնաւացուցանելոյ. վասն զի յամարայնոջն՝ դալարացուցիչ է մարմնոցն և անցուցիչ չորութեանցն, և կատարեալ հակառակ է ամառնային այրեցմանցն: Եւ եթէ ումեք ուրդի 'ի գեղակն աղբիւր քաղցրահամ՝ արժան է այնու բաւականանալ. և թէ ոչ՝ նա անձրևին ջրին պարտ է ճար առնել. ոչ 'ի վերայ այնպիսւոյն զոր սովորեցան ոմանք ժողովել, և ոչ որ աղբահոտեալ և աղտեղացեալ է յաղբէ անասնոցն. այլ արժան է այսպիսի արուեստիւ ժողովել, որ լինի 'ի տներաց

1 Յոյնն՝ զագարակսն ասէ յանտառախիտ լերինս, կամ անտառախիտ լերանց 'ի ճահ գոլ մեծամեծ ագարակաց:

2 Յոյնն զհակառակն ասէ, չէ դժուարին արմատացուցանել անդ ծառս:

կամ 'ի կռածնաց[1], որ արհասպէս փութան յաւելլէն և 'ի սրբելն, և իւիք կանայքօք ուղղեն զջուրն 'ի յամանն ուրուք[2], իբր 'ի պղքէ. և անդ յիստակի 'ի պղտորութենէն և ապա մտանէ 'ի ջրատունն. և այս այսպէս լինի։

Ցայլուստ. զքամիչակն կշռեա, թաց 'ի ջուրն, հան յարեգակն, չորացո և կշռեա. թէ ծանր է՝ ցած է, թէ թեթև է՝ լաւ է։ Մարայ Նիլին ջուրն պղտոր է, առեալ ընուն 'ի կարասն, զլեղի նուշն ծեծեն 'ի մէջն արկանեն, շուտ յիստակի։

## ԴՈՒՌՆ Զ.

*Ցաղագս չփոխելոյ զբնակիչս և զտունկս լաւագոյն շինուածոցն 'ի վատթարագոյն վայրս։*

Պարտ և արժան է չփոփոխել զբնակիչս և զտունկս լաւագոյն շինուածոցն՝ 'ի վատթարագոյն վայրս. զի պատահին ոմանք 'ի գիտնականաց, թէ չէ պարտ զբարուոք տեղեացն սովորեալ մարմինքն՝ տանել 'ի վատթարն, ապա թէ ոչ՝ վնաս մահու լինի նոցա, այլ արժան է պարոնին հայրաբար խնամել զժողովուրդն, և 'ի լաւագոյն տեղիս բնակեցուցանել. և եթէ չիցէ հնար՝ 'ի միջասահման տեղին։ Զի առաջին բժշկապետքն տեղեկացեալ են և գրեալ ճշգրտիւ, որ պարտ է մարդկային ազգիս պատրաստ լինել 'ի փոփոխել երկրին և օդոյն[3]. և ոչ եթէ մարդկութեան միայն, այլ և տնկոցն և անասուն կենդանեացն։

## ԴՈՒՌՆ Է.

*Ցաղագս հոգացողաց գաւառաց խրատ։*

Արժան է հոգացողացն գաւառաց այսպիսի օրինակաւ և սահմանաւ վարել։ Պարտ է հոգացողին զգա-

1 Այլ Օր. կռատնաց. լաւ ևս կռաւնք կամ կռծնք. յոյնն միով բառիւ ասէ 'ի տանեաց։
2 Ուրեք։
3 Այսինքն զգուշանալ 'ի փոփոխելոյս զօդ յօտար երկրի։

ւառ՝ սահմանաւ տանել[1], և չընտելանալ ընդ բնակիչս տեղւոյն. վասն զի ամենայն ընտելութիւն՝ պակասութիւն բերէ հարկեացն. Եւ առաւել 'ի գինարբուութեանցն լրբութենէն լինի. և յայսմանէ ընծային բազմադիմի սխալմունք. զորս յերկար համարեցաք զամենայն ընդ գրով արկանել: Այլ պատեհ է նմա բարուք ճանապարհաւ ընթանալ, և բարեբարոյ և քաղցրախօս ընդ ժողովուրդն լինել. և անմոռանալի պահել 'ի մտին զիր ինչ, և զաղալանացն տուգանս՝ ըստ իւրաքանչիւր յանցանացն չափով դնել. որ ոչ վասն ատելութեան պակասեցուսցէ և ոչ խարբութեան աղագաւ առաւելուցու 'ի տուգանաց յափրշտակութիւն. այլ քաղցրութեամբ և խնամօք առնու զոր ինչ առնու. և արիութեամբ ինու զանկութիւն և զկարիք մնկողացն. և յառաւօտուն կանուխ 'ի քնոյն ելանէ յառաջ քան զընակիչսն:

Եւ պարտ է նմա պատրաստ կալ 'ի ստախօսութենէ, և հաւատարիմ լինել 'ի սահմանս օրինաց, և յամենայնի անխոնջ և անյոյլ լինել 'ի սահմանին ընթեռնուլն, և անյոյլաբար կատարել զաստուածային կողմանսն և զմարդկայինսն. և ինքն իսկ հոգացողն պարտ է որ պատճառ և առիթ լինի այլ ժողովրդեանն՝ 'ի գործս բարութեան. վասն զի 'ի նմանէ երկնչին առաւել քան յայլոց: Եւ 'ի ժամ վաստակելոյն վաստակել տայ, և 'ի հանգչելոյն՝ հանգչել. և հանապազ զպատեհութենէ բարւոք գնացիցն առնէ նոցա յիշումն: Եւ յօր կիրակէիցն և մեծամեծ տօնիցն հանդուցանէ զնոսա և չբեռնաւորէ աւելի բանիւք և անսահման վաստակօք, այլ հանգստեամբ և քաղցրութեամբ տայ առնել զոր կարէ առնել: Եւ պարտ է նմա զգուշանալ 'ի վերայ բարեկամաց և եկամուտ ոմանց, որ մուտ և ել առնեն 'ի շինուածսն. Եւ առաւել 'ի վերայ արուեստաւորացն՝ որք 'ի գնալն գողութեամբ և զրկանօք չվնասեն զընակիչսն: Նոյնպէս և 'ի բաժանումն հողերոյն և 'ի փոփոխումն վաստակոցն առ միմեանս. որ ոչ տայ նոցա զպարտնութիւն[2], և ոչ

1 Օրինօք վարել:
2 Տէրութիւն կամ տիրանալ:

զնոցայն 'ի ձեռն կաշառաց առնու, այլ ճշմարտութեամբ տանի. և զմեծամեծ դատաստանսն և զքննութիւնսն և զնորընծայ համբաւանսն՝[1] ընդ Պարոնն ասէ, որ նա գիտենայ և նովաւ կատարի. և պարոնին հնազանդ և հրամանակատար լինի յամենայնի. և եթէ ուրուք բարուք խոկումն անկանի՝ որ գիտենայ թէ օգտութիւն գոյ 'ի նմա, ծանուցանէ առժամայն պարոնին: Եւ չէ պարտ նմա փութալ 'ի գործն առանց հարցման, և ոչ յապաղումն առնել՝ առանց պարոնին հրամանի:

## ԴՈՒՌՆ Ը.

*Յառաջ քան զամենայն ինչ պարտ է 'ի շինուածսն տնկել զբժշկականսն[2]:*

Եւ թէ չուրդի կատարեալ բժիշկ, նա յայլ ցածագունից 'ի գիտնականացն՝ որ նախակրթեալ են 'ի ստածումն այլ հիւանդացն. վասն զի այնոքիկ որք 'ի մի վայրի բնակեալ են՝ անկար են դարմանիլ միապէս դարմանով, և առողջութիւն միապէս լինել. զի նմանք լինին միմեանց դեղն և աղպէտն: Եւ պարտին դարմանօղք լինել վաստակաւորաց և յառաջ քան զհիւանդանալն, զի 'ի տապոյ արեգական և 'ի սաստկութենէ ձմեռնային օդոյն վաստակաւորքն ուժգին տագնապեալ գտանին քան զայլպիսի մարդիկ: Եւ այսր աղագաւ հրամայէ որ այնպիսեացն ուտելն սակաւ լինի[3]. և այս է նոցա լաւ: Եւ են ոմանք 'ի մարդկանէ որք առնուն գինի և զխոտն որ անուանի խուպայզ[4], եռացուցանեն զիւրեանս ընդ իրեար, և ապա յիստակեն զգինին, և զայն ջրախառնեն և խմեն վաստակաւորքն հետ աղպէտին: Նաև այլ ոմանք խառնըրդեն զմածունն և զջուրն և զգինին, և տան ըմպել յանօթեաց. և այս 'ի դարնանային ժամանակէն մինչև

1 Նոր դիպուած:
2 Հաստատել կամ կարգել բժիշկ մի:
3 Բնագիրն յաւելու՝ և յաճախ. այսինքն, բազում անգամ ուտել, այլ սակաւ չափով:
4 Ցոյնն յաւելու և զֆէգէնայ:

յաշունն բարւոք է։ Եւ ոմանք տան նոցա ըմպել օշնդրի գինի յառաջ քան զկերակուրն, և 'ի մէջն և յետ կերակրոցն. և թէ չուրդի օշնդրի գինի, առ զօշինդրն և եփէ ջրով, և այն ջրովն զխուրեանք արդեօ. զայս այսքան պարտ է 'ի գործ ածել։

Եւ այլ[1]. արկ զմկնաստոն 'ի քացախն և թող ժամանակ ինչ, և զայն քացախն տուր նոցա ուտել 'ի յանօթից և յետ կերակրին։ Գինձային գինին եւ հաստն լաւ է նոցա որ 'ի գինձային այգւոյն[2] լինի քան զշորային գինին և սուրն. և այսու ամենայնիւ փրկին մարմինք այնպիսեաց 'ի վշտաց և 'ի բազում ախտից. և գարեկորկոտն[3] լաւ է նոցա։ Եւ թէ չուրդի 'ի գեղն քաղցրահամ և բարւոք ջուր, նա բազում ախտից և ցաւոց առաջք է վատթար ջուրն։ Պարտ է զայնպիսի ջուրն եփել, որ պակասի 'ի տասն բաժնէն մէկն, և ապա պաղեցընել և ըմպել։ Նոյնպէս թէ զծովու ջուրն որ այսպէս առնէ՝ լաւանայ եւ քաղցրանայ։ Եւ թէ հատանի 'ի վաստակաւորն ցաւ ինչ 'ի թիւնաւորէ 'ի կորէ, եթէ տանու կոր լինի և եթէ վայրի՝ նա թուրխանի հին գինին օգտէ. և այս ազգ այգի զոր թրակեսի[4] այգի կոչեն, նաև այնորիկ խաղողն և չամիչն գինին և քացախն՝ բնութեամբ օգտէ։ Եւ թէ այրեա զհօտն և զայրուքն 'ի վերայ խայթածին դնես՝ օգտէ. նոյնպէս և ամենայն հօտի մոխիր օգտէ։ Այլ և կատաղի շան խածածի օգտէ։ Եւ թէ որպէս լինի թրակեսի այգւոյն կամ օշնդրի շերապն կամ մկնաստոխին, յառաջ երթեալ 'ի յետադայ դրունսն ունիք ուսանել 'ի դրոցս՝ կատարելապէս։

1 Այլ խրատ։
2 Այսինքն յայգեաց գինձային տեղեաց։
3 Ըմպելի 'ի գարւոյ, ըստ յունին, πτισάνη.
4 Թիւրեակի ըստ յունին, որ և Թասոսեան գինի, դեղթափ համարեալ առ հինս։

## ԴՈՒՌՆ Թ.

*Ցաղագս ունելոյ 'ի շինուածսն զկարեցուոր և զպարտուոր արուեստաւորսն։*

Այսուհետեւ պարտ է ունել 'ի շինուածսն զկարե-ցուոր և զպարտուոր արուեստաւորսն, լուծ և ոչ փարթ. զի երբ փարթ լինի՝ 'ի վերայ միոյն հակառակութիւն լինի, բայց եթէ լուծ լինին՝ յորդորին եւս առաւել 'ի գործն, և չաղալին 'ի մնկեցողսն [1]։

## ԴՈՒՌՆ Ժ.

*Ցաղագս Չափոց երկրի։*

Ցաղագս չափոց երկրի, ասացին ոմանք, թէ գետին որ յինքեան ունեն տունկք այսինքն ծառք, այգիք և վարդենիք, կամ այլ ինչ՝ որոց տնկելն փոս առնելով լինի, արժան է որ փոսոյն խորութիւն երեք ոտն լինի։ Եւ ոմանք ասացեալ են, թէ լծվար գետինն վաթսուն և վեց կանգուն և երկու թուղթ [2] է. և յամէն լծվար փորէ փոս՝ եօթն մշակ. բայց թէ գետինն պինտ լինի՝ նա պիտի որ յամէն թալթալ որ է լծվար մի՝ փորեն ութ մշակ. բայց թէ այգին՝ կամենաս՝ լինի սարկիկ [3] գետին ու կակուղ՝ նա 'ի պակասն երեք մշակ պիտի որ փորէ. բայց այգի որ հին տնկած լինի 'ի պինտ և 'ի խոտուտ գետին՝ նա հինգ մշակ պիտին. և մատղաշ այգեացն երեք մշակն հերիք է, մինչև այգին հինգ տարուոյ լինի։ Բայց Ամթինիոս [4] այգին որ հեշտ է քան զայլ այգիքն. բայց այգին որ ասի սօրիգոս [5]

1 Այսինքն, ոչ սխալեն հետևելով վատաց և ծուլից։
2 Այլ Օր. Բնղ։ Լծվարն կամ Թալթալ յոյն բնագրին է πλέ'δρος, որ էր ըստ նախնեաց 90 մեգր քառակուսի։ — Թիւխն՝ չափ Պարսից 'ի կշիռս է 400 կամ 600 տրամ։
3 Դիւրագործելի՝ ըստ յունին։
4 Ամինիոս. Αμίνιος է, ազգ. որթոյ, զոր և Վիրգիլիոս (Մշակ. Բ. 97) կոչէ Որթ ամինեցի։
5 Սիրենդինոս Συρεντῖνος, յանուն Սուրրենտոն քաղաքի Նէա-պոլեայ։

հակառակ է, վասն զի շատ վաստակ պիտի նմա։ Եւ ասացեալ են փորձականքն՝ թէ 'ի պատին խենտէկն[1] փորեն չորս մարդ, և լինի խենդէկին լայնութիւնն երկու ոտն ու կէս, և խորութիւնն ոտն մէկ. և այս է ճշմարիտ չափն և սահմանն որ կայ։ Եւ ասացեալ են, թէ 'ի հօտելն չորս մարդ պիտի, և 'ի քաղելն զխոտ՝[2] մէկ մի, այս ընդ առաջքն պիտին։ Բայց յառաջ՝ պակասեցընելն պարտ է. եթէ հասուկ մարդ լինի այգւոյ տէրն՝ չէ պարտ որ աւելի հօտէ, քան ութ պարան[3] այգի. և հինգքն ամենեքին այսմ հաւանեցան, այլ ոչ աւելի և ոչ նուազ։

## ԴՈՒՌՆ ԺԱ.

*Ցաղագս բաժանման եղանակաց տարւոյն։*

Պարտ է բանհոգաց երկրին և գաւառացն իմանալ և ճանաչել, եթէ ո՞րպէս է եղանակն յամառան և յաշնան, 'ի ձմռան և 'ի գարնան. և ըստ եղանակացն սահմանել զընակիչսն և զվաստակս նոցա և օգտեցուցանել։ Եւ ոմանք յառաջնոցն ասացին, ևս առաւել Պորմնիոս հռոմն,[4] թէ 'ի գարնան յառաջքն հարաւային հողմն առաւել շնչէ. և սկիզբն հողմոյս է 'ի փետրվար ամսոյ եօթն աւուրն 'ի վեր. և լինի արեգակն դեռ 'ի Ջրհոսն. և վերջքն գարնան է 'ի մայիս ամսոյ եօթն աւուրն, և սկսանի ամառն. և յայս ամսոյս ութ օրն լինի արեգակն 'ի Ցուլն։ Եւ լինի վերջք ամռանն 'ի սեպտեմբեր ամսոյ տասն օրն. և 'ի մետասան աւուրն սկսանի աշունն, և արեգակն 'ի Կշիռն։ Եւ հատումն աշնան 'ի դեկտեմբերի տասն օրն. և լինի արեգակն յԱյծեղջիւրն. և վերջք ձմռանն 'ի մարտի ամսոյ ինն[5]։ Եւ հաւասարութիւն գիշերոյն

1 Խրամ կամ փոս շուրջ զայգեաւ և զորթովք։

2 Իմա՛ զտերեւս որթոցն, որպէս ասէ Ցոյնն. և յառաջնումն նուագի քաղելն բաւական է մի մարդ, յետոյ նուազ ևս։

3 Թուի ութ կարգ, թէպէտ յոյնն ասէ ութ լծվար։

4 Պորմինոս ըստ այլ Օր. իսկ ըստ բնագրին՝ Վարրոն Հռովմայեցի։

5 Միւս Օ. կարգէ զսկիզբն գարնան յ'եօթն փետրուարի, զամառան յ'եօթն մայիսի, զաշնան 'ի տասն օգոստոսի, զձմերան 'ի մե-

և ցերեկին լինի երկու անգամ'ի տարւոջն, մին գարնանային 'ի մարտի տասն, և միւսն աշնանային 'ի սեպտեմբերի մետասան[1]: Եւ երեւի աստղն որ կոչի արապերէն Թուրայա'[2] 'ի յունիսի տասն օրն, և սկսանի անհետ լինել 'ի նոյեմբերի երեք օրն. և տօն որ յեբրայեցի բարբառն փուրիմ անուանի' լինի 'ի քսան և մի փետրվարի[3]:

## ԴՈՒՌՆ ԺԲ.

*Նախագիտութիւն վասն օդոյն, որ պարզ լինի:*

Պարտ է զնա ճանաչել 'ի ձեռն լուսնին այսպէս. Երբ լուսինն լինի երեք աւուր, և տեսանես զնա նօսրագոյն և յստակ, գիտացիր որ բարւոյ նշան է. նոյնպէս և թէ 'ի չորս օրն երեւի. և մինչ լնանի լուսինն' և զինքն նոյնպէս յստակ տեսանես' նոյն պարզոյ նշան է: Եւ երբ լուսինն յստակ և պայծառ լինի, նոյնպէս և 'ի մտանել արեգականն եթէ արեւն պարզ և յստակ լինի' միւս օրն պարզ գայ: Եւ տես, թէ 'ի ցայթելն[4] լուսինն բակ ունենայ' նա պարզոյ նշան է: Նոյնպէս թէ 'ի յարեգակն զայս տեսանես' նոյն նշան է. 'ի ցայթելն արեւուն եթէ սակաւ ինչ ամպ երեւի' ոչ լինի վասն սակաւուն անձրև: Եւ թէ 'ի ցայթել արեւուն և 'ի

տասան նոյեմբերի. « և վերջք ձմեռանն, ասէ, լինի 'ի փետրվար ամսոյ' ուստի սկսաւ' յեօթն օրն »: Այլ ապա յաւելու. « Եւ լինի փոփոխումն ամսոց ձմեռանն 'ի դեկտ. ԺԵ օրն. և հաւասարութիւն գիշերին և ցերեկին լինի 'ի մարտի ԺԵ օրն. և աշնան հաւասարութիւն լինի 'ի սեպտեմ. ԺԵ օրն »: — Ի բնագրին, որպէս և կարգն պահանջէր վերջ ամարայնոյ դնի յ'եօթն օգոստոսի, յորում և սկիզբն աշնայնոյն, իսկ վերջ սորին յ'ինն նոյեմբ. սկիզբն ձմեռան 'ի 10 նոյեմբ, աւարտ 'ի վեց փետրուարի:

1 Ըստ բնագրին գարնային գիշերահաւասարն յ'8 կաղանդաց ապրիլի, որ է 25 մարտի, որպէս և աշնայնոյն 'ի 25 սեպտեմբ:

2 Միւս Օր. ուղղագոյն ևս Սիւրէյէա, որ է Բազմաստեղքն:

3 Ոչ եբրայական փուրիմ տօնն քաւութեան, այլ Brumalia սպանդարամետական տօն Հռովմայեցւոց, առ որս Brumus ևս կոչէր Բակքոս. զոր և յոյնն գրէ Βρούμων Ὑορτή. Տես և 'ի Դուռն ԻԸ, ուր Պրամի գրէ:

4 Ծագել:

մուտն երեւի սպիտակ՝ և շուրջանակի ամպ չէ՝ անձրեւոյ նշան է. և թէ լինի նոսր և պարզագոյն ամպ 'ի վերայ լերին և ծայրքն պայծառ՝ պարզոյ նշան է։ Նոյնպէս թէ 'ի վերայ ծովուն ամպ տեսանես նօսրագոյն՝ պարզոյ նշան է։ Եւ երբ բուեռն[1] գիշերի ձայն ածեն, և ագռաւքն ճչելով ուրախանան՝ պարզոյ նշան է։

## ԴՈՒՌՆ ԺԳ․

*Նախագիտութիւն յաղագս նշանաց օդոյ՝ որ անձրեւ բերէ։*

Տես երբ լինի լուսինն երեք աւուր և 'ի ծայրին վերայ զերթ մլար լինի՝ անձրեւոյ նշան է, նոյնպէս թէ 'ի չորս օրն լինի՝ նոյն ամպոյ նշան է։ Եւ երբ տեսանես շուրջանակի լուսնին բակ կարմրագոյն և զերթ ջրախառն աղտոտ՝ շատ անձրեւոյ նշան է։ Եւ երբ բոլորի լուսինն և տեսանես շուրջանակի թխագոյն ինչ՝ անձրեւոյ նշան է։ Եւ թէ տեսանես 'ի շուրջն լուսնի զերթ կալ փողեր՝[2] բազում անձրեւաց նշան է։ Նոյնպէս երբ զլուսնին գոյնն թուխերանգ տեսանես՝ անձրեւ է։ Եւ տես, երբ ցայթէ արեգակն և լինի կարմրագոյն և յետոյ թխագոյն՝ անձրեւոյ նշան է։ Եւ տես 'ի մտանել արեգականն, եթէ կենայ 'ի ձախ դեհի վերայ ամպ մթնագոյն՝ նշան է անձրեւի։ Եւ եթէ 'ի ցայթել արեգական տեսանես շուրջ զճառաւղքն մթնագոյն ամպ՝ անձրեւոյ նշան է։ Եւ կայծակունքն և որոտմունքն յոր դիհէ լինին, գիտելի ամենեցուն որ գուշակումն է անձրեւին՝ յոր դիհէ և լինի. բայց աւելորդաբար գրեցաք։ Եւ երբ զկայծակմունքն այսինքն է զփայլատակունքն 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ դիհէն տեսանես, նշան է որ 'ի հարաւոյ անձրեւ գայ, և 'ի հիւսիսոյ հողմն։ Եւ երբ տեսանես զջրային հաւս, որ առաւել ընթանան և լողանան 'ի ջուրն՝ անձրեւոյ նշան է։ Եւ մեծագոյն տիրական գօտին այսինքն աղեղն՝ նշան է անձրեւի։ Եւ յորժամ տեսանես զագռաւսն որ լողանան 'ի ջուրն՝ անձրեւոյ նշան է։ Եւ

1 Գիշերահաւքն որ Բու կոչեն։
2 Ցոյնն ասէ երկուս կամ երիս կալս, այսինքն բակս։

յորժամ զպախրէքն՝ որ 'ի հարաւոյ կողմն յերկար հային, անձրեւոյ նշան է։ Եւ յորժամ տեսանես զմրրջիւնքն որ զձուն իւրեանց 'ի մէկ ծակէն 'ի մէկ այլն կրեն՝ նշան է անձրեւի։ Եւ յորժամ տեսանես զընտանի հաւն աւելի վազել և ճիշտել 'ի տեղաց 'ի տեղ՝ նշան է անձրեւի։ Նւ յորժամ տեսանես զծիծառն աւելի խաղալ 'ի վերայ ջրոյն, նոյն անձրեւի նշան է։ Եւ երբ պուտուկ կամ պղնձի որ 'ի վերայ կրակի լինի՝ տեսանես զկրակն իբրեւ զխանձառ մարգարտապէս հեղուլ, նշան է անձրեւի։ Եւ յորժամ զլոյս ճրագին մթնագոյն տեսանես, անձրեւի նշան է։ Նոյնպէս և պախրէքն յորժամ տեսանես որ զիւրեանց զոտս լիզեն, և զիւրեանց թրիքն հոտոտան, նշան է անձրեւի։ Եւ յորժամ մկունքն ճիշտեն աւելի՝ նշան է անձրեւի։ Եւ յորժամ շունն փորէ զգետինն աւելի և իւր թեւելոյ տեղ զուգէ՝ [1] նշան է անձրեւոյ։

## ԴՈՒՌՆ ԺԴ.

*Նախագիտութիւն յաղագս հողմոյ որ յերկարացընէ զանձրեւն։*

Յորժամ տեսանես զկաղնիքն և զանձիանի ծառն որ շատ պտուղ առնեն՝ անձրեւի նշան է։ Եւ յորժամ տեսանես զանասունսն որ փորեն զգետինն և 'ի հիւսիսոյ կողմն առաւել ընթանան՝ նշան է անձրեւի։

## ԴՈՒՌՆ ԺԵ.

*Նախագիտութիւն յաղագս անձրեւային օդոցն։*

Պարտ է 'ի կռնկացն իմանալ, երբ տեսանես որ կանուխ գան յաշնան և շատ, գիտացիր որ ձմեռն և անձրեւքն և ձիւնն կանուխ գայ։ Նոյնպէս և ընդդէմն, զի մինչ յամենան 'ի գալն՝ գիտացիր որ ձմեռն անագան է։

1. Միւս Օ. Բնէրոյ: Վասն պատրաստելոյ շան տեղի պառկելոյ՝ փորելով, ասէ զայս. այլ յոյնն ասէ կաղկանձել շան ընդ առաւօտն կոյս։

## ԴՈՒՌՆ ԺԶ·

### Յաղագս Կշռոց և Չափուց։

Պարտ է գիտել և 'ի հաշիւ ունենալ զչափն և զսահմանն կշռոցն և չափոց. ևս առաւել յաղագս բժշկական արհեստիցն, որ վասն մարդկան առողջութեան է, և ապա յաղագս աշխարհավաճառութեան պիտոյից[1]։ Մէնն որ ասեն՝ ժզ նուկի է. և լիտրն ժբ նուկի է. և նուկին՝ ութ տրխանայ, որ է քանևհինգ տրամ[2]։

1. Իմա զառհասարակ առևտուրս։

2. Թէպէտև անուանց չափուցդ նոյն մնալով քանակքն զանազանեալ են ըստ ազգաց և ժամանակաց, այլ որ ինչ Գիրքս այս ցուցանէ՝ այս է. Մէնն է մնաս Յունաց, որ բաժանէր 'ի 100 դրաքմէ, այլ առտիկեանն, որ ըստ այժմու նոր կշռոց է 435 կրամ. որում հաւասար է և 16 նուկին, որ է ունկի (uncia) հռոմէական, և է ըստ նորոյս իբր 27 1/3 կրամ։ Լիտրն՝ ըստ Լատինաց As կամ Pondus, ունելով 12 ունկի՝ կշռէր 326 1/3 կրամ։ — Տրխանայն է դրաքմի առտիկեան, որ կշռէ կրամս 4,351։ — Տրամ՝ ընդ դրաքմէի երևի նուազ քան զերրորդ մասն նորին. բայց արաբական հասարակ տրամն կշռէր կրամ 3,056։ —

Յայս վայր է կշռաբանութիւնդ 'ի մերում յայսմ օրինակի. այլ միւսն յաւելու աղաւաղ գրութեամբ զմանր ևս բաժինս, այսպէս. «Եւ « է տրխանայն՝ երեք ղրամայ. և ղրամայն է Բ տպօլոս։ Լանփօրօզն՝ ԽԲ « Խօլթօլի. և Մադրիդասն՝ զերթ որ սահմանեալ են Շամբեցիքն՝ է Ճ « Խաստ. Հաւան որ է Բ խաստ. և խօլթօլին է Դ խաստ. և Դարրուս- « լիոնն Դ խօլթօլի է. և Հանփօսն Բ խաստ. և Մուսաթուսն վեց բաժ- « նոյն մէկն է խօլթօլոյն։ Եւ զայսոր մեկնութիւնն այլ այլուստեք « ուսանիմք»։

Ծանօթք 'ի կշռոցս են Ղրամայն. Աղօլօս է Ոզօլոս՝ կէս ղրամայի, կրամ 0,725։ — Յետ այսորիկ Թուի պակաս յօրինակին, որ անցանէ 'ի չափս ընդունականութեան. և է անշուշտ Լանփօրօզն Amphoreus Յունաց և Լատինաց, հեղուկաչափ, որ տանէր կոտիլս 72, և ըստ այժմեան կշռոց՝ լտերս (լիդր) 19,440. զոր մերս երկիր մասամբ նուազ ասէ, 48 խօլթօլի, որ է կոտիլն կամ կոտիւղ, Cotyle, լիտր 0,270։ — Մադրիդասն է Մետրիտէսն Metretes, մեծ հեղուկաչափ, որ տանէր 100 կոտիլ, լտերս 27. զոր մերս՝ ըստ սահմանելոյ Շամբեցոց, որ են Դամասկացիք, կրկնապատկէ, ասելով Ճ խաստ. քանզի Խաստն որ է Քսեստ, Xestes ըստ Յունաց, տանէր կրկին կոտիլս, և էր լիտր 0,540։ — Հաւան՝ է Խուս, Chous, որ ըստ Յունաց տանէր քսեստս 6 կամ կոտիլս 12, որ են լտերք 3,240։ — Դարրուլիոն է Τρύβλιον Յունաց, (սկուտեղ) չափ անստոյր. այլ եթէ արդարև էր չորս խօլթօլի՝ նոյն է ընդ Խենիքս, Chenix, որ տանէր կոտիլս չորս, լիտր

## ԴՈՒՌՆ ԺԷ·

*Յաղագս համտեսելոյ և ճանաչելոյ զգետինն։*

Տե՛ս զգետինն՝ որ յամառան չորութենէն չառնէ խիստ մզռա. և որ պատառի՝ մանր լինի իւր պատառուածքն, և չլինի մեծ և խորու, և անձրևն չառնէ մեծ շաղախ, այլ չափաւոր խմէ զջուրն. և 'ի պարզկային աւուրս չըչորանայ աւելի երեւան քան զիւր հիւթն՝ աղէկ պահէ. այս է բարուոք և լաւ գետինն։ Եւ առաջինքն նշան մի ևս գտան, որ է այս. թէ երբ գետինն զիւր բոյսն անտած և վայրի ըստ ինքեան բուսուցեալ է, թէ ծառ թէ թուփ և թէ խոտ, եթէ արքենի լինի և թորթոշ, լաւ է գետինն։ Եւ եթէ մանր և քարց լինի, պիղծ է գետինն՝ ըստ չափոյ մանրութեան բուսոցն։

Բայց են ոմանք որք համտեսելով առնեն զփորձն՝ այսպէս։ Փորեն խորու, և առնուն 'ի ներքս 'ի հողոյն և հոտոտան և հոտով ճանաչեն զլաւն, և արկանեն յաման և ջուր լնուն 'ի վերայ և հարուն, և թողուն որ յիստակի ջուրն. և համովն ճանաչեն զլաւն և զվատթարն գետնին, զանուշն և զդառնահամն։ Եւ պարտ է հաւանել այսմ փորձոյ, և այսու զպատշաճաւորն սերմանել։

Եւ թէ կամիս ստոյգ իմանալ զհամն գետնին, դու 'ի սերմանելն՝ զգետինն մի ոտնաչափ փորեա, և 'ի տնկելն չորս ոտնաչափ, և առ զհամտեսելոյ հողն, և արա որպէս գրեալ է 'ի վերոյ։ Բայց գովեցին ոմանք զայն գետինն, որ յինքն եղեգն բուսանի, և մորենիք և մատուտակ և ջրասէր բոյսք. բայց քան զամէնն համտեսելն լաւ է։ Եւ զաղտաղտուկ գետինն պարտ

1,080։ Նոյն սա թուի և Հանգօուն, զի ասէ Ք խաստ. և տեառք զՔսեստն լինել երկու կոտիլ։ — Մառոնոան վրիպակաւ թուի գրեալ փոխանակ Կիւաթոսի, Cyathus, որ էր արդարև 1/6 բաժին կոտիլի։

Անուանքս չափուցդ չկան 'ի յոյն բնագրին, վասն այնորիկ յաւելլու թարգմանիչ մեր, թէ «զայսոր մեկնութիւնն այլ այլուստեք ուսանիմք»։

է յամենայնի թողուլ, զի պիղծ է։ Նոյնպէս և զաղե-համ աղբն մի արկանել 'ի գետինն, զի չէ բարւոք. և ասացեալ են փորձականքն, թէ ատ զհոտոմ ձիթին տուրտին, որ աղած չլինի։ Եւ ասացեալ են թէ ա-նուշ ջրով գիձացընեն զաղբն, և ապա 'ի բան տանին. և այսու պարտ է իմանալ զաղի գետնոյն վատութիւնն և զանասակարութիւնն ամենայն բուսոց։ Բայց միայն աղի հողն զարմաւենի ծառսն արգասաւորէ 'ի տերևս և 'ի պտուղս։ Բայց թէ անձարակի ոք յաղի հողոյն[1], նա՝ որպէս 'ի վերն գրեալ եմք՝ այնպէս պարտ է ա-նուշացնել զաղբն, և ապա աղբել։ Եւ 'ի վատահոտ գետնոյն յամենայնի արժան է փախչել, վասն զի բնաւ չկայ օգտութիւն քան վգեն։

## ԴՈՒՌՆ ԺԲ·

*Ցաղագս իմանալոյ զգետնաց ազգն։*

Ցամենայնի պարտ է իմանալ զգետնաց ազգն, և ճանաչել ըստ չորից եղանակաց տարւոյն, զիւրաքան-չիւր գետին յիւր ժամուն դարմանել այսպէս։ Այն որ լերդ գետին լինի՝ երբ փորես նա յուշ ելանէ 'ի տրամ. զայնպիսի գետինն յամառն պարտ է տածել, զի արեգական ջերմութիւնն ընդ վաստակոյն 'ի ներքս մտանէ, և այրէ զտակուիչս անտառացն որք 'ի տակ հա-նելոյն մնացեալք են։ Նոյնպէս զծանր զպինտ և զպա-րարտ գետինն այսպէս պարտ է առնել։ Եւ երբ այսպէս առնէ ոք՝ բազում արդիւնս առնու 'ի վաստակոցն. և զնօսր գետինն շրջել պիտի բազում անգամ և արեալ-րեաց առնել, և ապա աղբել և ցանել. և յոյժ օգտին 'ի նմանէ։ Եւ յԱրաբացւոց աշխարհն՝ շատ վաստա-կեըն վատուժացնէ զգետինն և պակասեցուցանէ զիւր գիջութիւնն. և վասն այնորիկ Արաբացիք զգա-րին յերես ցանեն. ևս առաւել յերկիրն որ կոչի Ղօ-տայ[2], զի քիչ վաստակովք գիրանայ նոցա գետինն,

1. Այսինքն, եթէ ոք ոչ գտցէ հող աղի։
2. Միւս ՕՕ. ղըրփայ. իսկ յոյն բնագիրն Ղորփատ. ըստ գիտնոց լեզուին՝ ոչ է յատուկ անուն, այլ արաբացի բառ ղորփա, որ նշա-նակէ զերկիր կամ զանգ հարթ հաւասար և ջրով զառուցեալ։

Եւ առաւել երբ շատ ջուր առնու յանձրևէ կամ ՚ի գետէ։ Պարտ է որ շրջեն զկարմիր գետինն և զաւզակն[1] և զսևն և զսպիտակն և զչորն որ ցամաք լինի ՚ի հիւթոյ և բլրնով լինի և մատներով[2] ՚ի ձմեռան աւուրքն. և ՚ի լաւագոյն գետինն միայն յաշունն է պարտ վաստակել։ Յառաջին անձրևն և յառաջին շուրջն՝ փոքր խոփ է պատեհ դնել ՚ի հարօրն, թէ չէ՝ մեծ խոփով շրջելն սպանանէ զպախրէքն. և փոքրովն զդժար գետնոյն երեսն կակղացընեն, և ապա մեծ խոփովն։ Եւ ՚ի վերայ այսպիսի գետնոյս յարդ պարտ է ցանել, եւ առաւել բակլայի յարդն է լաւ. զի երբ բորբոսի՝ նա պարարտացընէ զգետինն և քաղցրացընէ, և չթողու որ ՚ի գարնան բոյսն աղի գիջութիւն առնու։ Եւ պարտ է զաղեհամ գետնի՝ տարի մի զհերկն խափան թողուլ, և ապա պախրէի աղբով աղբել, որ աղբն քաղցրացուցանէ զկնքն. և յառաջ դարի պարտ է ցանել, և այլազգ հնտանք։ Եւ ՚ի լեռնայքն, պաղ և սառնային երկիրն՝ պարտ է զգետինքն յամառն ՚ի շող աւուրսն շինել. և որպէս յառաջ զխորու գետնոյն նշանքն տուաք, այնպէս պարտ է զվատակն։ Եւ եթէ փորչով շինեն զգետինն ՚ի լեառնն՝ լաւ է, քան լծովքն. բայց թէ վասն գետնին շատութեանն չկարէ զօրել փորիչն՝ նա ապա լծօքն։ Եւ զայն՝ ՚ի լուսնկայ գիշերն պիտի առնել մինչև յարևցայթն, վասն հիւթոյն և գիճութեան գիշերոյն։ Եւ զմէկ հարօրն չորս եզօք պարտ է բանեցընել, որ փոփոխեն զիրեար, և հերկեն զգետինն ծանր խոփովքն. և առնեն զհերկն երեք հարօր, և զհարօրն խոփովն խորու տանին, որ ՚ի գետնին պարարտութիւնն հասանի։

1. Յօր. զօղակն. այլ յայտնապէս պիտի [illegible] [illegible] յատկութիւն հողոյ, ըստ կարգի յունին և Օ մի գրէ զօղակն։

2. Բլրնով, բլրոտ երկիր, յորմէ և մատներովն ցուցանէ զգետին՝ յորում իցեն հողակոյտք ցցուեալք իբրև զմատունս։

## ԴՈՒՌՆ ԺԹ.

*Ցաղագս գիտելոյ զիւրաքանչիւր սերմանցն թէ ո՛ր ազգ գետնի պատշաճի։*

Պարտ է գիտել զիւրաքանչիւր սերմանքն, եթէ որն 'ի նոցունց որ ազգ գետնոյ պատշաճի։ Արժան է զցորեանն և զկտաւատն 'ի խորու գետինն ցանել և 'ի դուրն. և զգարին՝ 'ի միջաչափին, որ ոչ խորու լինի և ոչ նօսր. և այլ ազգ սերմունքն լինի՝ թէ 'ի նօսր ցանես, զարդել 'ի մեծաղայն սերմանցն, որպէս բակլայն և այլք, որք նման են սմա, զի 'ի պարարտ գետին պարտ է ցանել զմեծամեծ սերմանքն. և թէ 'ի հերկոտն խոզան՝[1] որ տարի մի հանգչած լինի բարւոք է, բաց 'ի սիսեռնէ։

## ԴՈՒՌՆ Ի.

*Ընտրողութիւն և սահման վասն սերմանց։*

Ասացին ոմանք 'ի փորձականացն՝ եթէ փոփոխէ ոք զսերմանքն յետ բնական տեղւոյն 'ի յայլ տեղի, նա այլ առաւելուն և գիրանան. մանաւանդ երբ ի լերանց 'ի դուր տեղիք տանիս, կամ 'ի գիջային տեղւոյ 'ի ցամաքային կամ 'ի չորային։ Բայց տես զի փոխեն 'ի վատ տեղւոյն՝ յայլ աղէկն լինի, կամ պակաս՝[2] 'ի միջակն լինի, որ չլինի սայլութ 'ի վատն։

Եւ են ոմանք՝ որ այլ գեղեցկաբար առնեն քան զոր ասացաք, զի հային 'ի գետինն ուստի առնուն զսերմանքն. և երբ կամենան ցանել, նա զգետինն նմանեցուցանեն 'ի գոյնն և 'ի կերպս յայն՝ և ապա ցանեն. և այսու այլ առաւելուն, և չկորուսանեն զիւրեանց յատկութիւնն։

Եւս առաւել զսովորական օգքն պարտ է իմանալ և

1. Այսյետին հատուած բանի չեք յայլ ՕՕ. և պակասէ բայ մի, նայ կամ խառնէ։
2. Կամ գոնէ։

ընտրել. և այնոքիկ որք հմտանան յարուեստ վաստակոցն՝ նա ընտրեն յարտէն զմեծ և զգէր հասկերն, և յետոյ ծեծեն և յխտակեն և զայն ցանեն. նա յայն սերմանց բուսեալքն ևս գէր և առաւել ազնիւ լինին: Եւ են ոմանք որ զաղաւնոյ ծիրտն փշրեն և 'ի սերմն խառնեն և ապա ցանեն, նա խիստ ազնիւ է և լաւ. 'ի տաք և 'ի չոր գետինն մէն առներ, այլ 'ի հով գէջ տեղիս: Եւ են այլ ոմանք որ զեղլին եղջիւրին տորոսուքն և զփիլին [1] ոսկրն թրջեն, և ջրովն զսերմն մնչեն, և զինքն ևս ի ներք խառնեն և շփեն և միաւորեն ընդ սերմանցն և ցանեն. նա պահէ զնոյն սերմն յամենայն կերչաց և ժժմանց, և զբոյսն արքինի առնէ: Եւ այլ դեղ օգտակար և լաւ. Առ զգառնադմակիկ խոտն և ծեծեա 'ի սանդի, և զնոյն իւր ջրովն լից 'ի տաշտ, և զսերմն այնով շփեա և մնչեա աղէկ և ցանեա, նա ոչ մուկն մերձենայ և ոչ թռչունք. և լինի բոյսն խիստ թորթոչ և լաւ. և սերման՝ մէկ տարւոյ եղած լաւ է. վասն զի քանի տարեօք հնանայ՝ նա այնքան վատ լինի:

Եւ ասացեալ է Ապիլլոս իմաստունն, թէ զպահելոյ սերմանքն գինեաւ մնչեա և պահեա, նա շատ մնայ: Նոյնպէս և պտղի ձիթի տուրտնով և ջրով մնչեա, աղէկ է պահելոյն: Նոյնպէս, ծեծեա զկիպարի ծառին տերևն և այնու մնչեա՝ լաւ պահի: Ասացին ոմանք, թէ առ զմարզպանն և 'ի ջորեկի մորթի փաթթեա և պահեա. երբ այն մարզպանովն հընտանք չափեն՝ չուտուի այն իրքն 'ի կերչաց: Եւ բազումք 'ի փորձականացն հաւանեալ են այսմ. և թէ առնուս չափ մի ցորեան և խառնես 'ի յինքն սակաւ մի խարբախ և ցանես 'ի վերայ նոր ցանած արտին, նա այն պահէ զցանն, որ չմերձենայ յինքն ձագ կամ այլ կերիչ, և թէ մերձենայ՝ սատակի. և երբ մեռանին, դու առ և կախեա 'ի յարտն՝ որ հողմն շարժէ զինքն, այլ բնաւ թռչուն չմտանէ 'ի յարտն: Եւ այլք ասացին թէ ա՛ռ զվայրի խիարկին տակն և լեսեա և և պահեա, և 'ի ցանուն ժամն ա՛ռ յիւրմէ և լից 'ի տաշտ, և եդ ջուր լից 'ի վերայ՝ որ թրջի որ մի և գի-

[1] Եղջիւր եղջերուի և ոսկր կամ ժանիք փղի:

*շեր մի. և ապա զցորեանն մաշեա այնու երեք չորա-հեա, որ աղէկ թանուի սերմն, և լեհեփով ծած-կեա և թող երկու օր, և ապա ցանեա, բնաւ կերիչ չմերձենայ 'ի սերմն, և բուսանի յոյժ աղէկնի և ատոք։*

## ԴՈՒՌՆ ԻԱ.

### *Յաղագս Ոսպան։*

*Ա՛ռ պախրէից աղբ չոր և լեսած և խառնէ 'ի յոսպն և այնով ցանեա. նա ատոք ելանէ բոյսն և լաւ։ Եւ Ապիլլոս ասէ, թէ ով յայն ոսպէն ուտէ՝ նա իւր ուրա-խութիւն բերէ։ Եւ ոսպան ցանելն՝ յայն աստղին անկմանն պատեհ է՝ զոր արապերէն կոչեն Սեմմաք—ռամիհ*[1]*. և լինի այս յունվարի ամսումն, մինչև որ եօթն օր մնացեալ լինի գարնան, որ լինի 'ի քսանևմի մարտի։*

## ԴՈՒՌՆ ԻԲ.

### *Յաղագս Սիսռան։*

*Ա՛ռ զցանելի սիսեռն, և գիշեր մի 'ի յեղկ ջուրն թրջոց դիր, և ապա ցանեա։ Գիտացիր որ սիսեռն զծովեզրն խիստ ընդունի, զի ինքն բնութեամբ խիստ աղի է. և թէ ուզենաս որ զսիսեռն կանուխ հասու-ցանես՝ նա դու կանուխ հետ գարունն ցանեա որ ճարտար եղանի, ուտելոյ ժամանէ։ Բայց թէ պահե-լոյ համար ուզենաս՝ նա լաւն այն է որ հետ ոսպանն ցանուի, որպէս յառաջ գրեցաք։ Եւ են ոմանք որ զսիսեռն նոյն իւր պարկըճովն պահեն և նոյն պարկը-ճովն թրջեն և ցանեն, նա խիստ աղէկնի լինի։*

1. Սիմաքի-ռամիհ Արաբաց, որ թարգմանի տիգաւոր, Հայկն է ըստ Գէորգայ։

## ԴՈՒՌՆ ԻԳ·

*Յաղագս Բակլայի և Ճուլպանի:*

Ասացին ոմանք 'ի փորձականացն և հաւանեցան, թէ զբակլայն 'ի գիջային և 'ի շաղախուտ տեղ պարտ է ցանել, զի թէ 'ի նօսր և 'ի չորային տեղ ցանես՝ նա մանր լինի և անեփ. և բակլայն երբ ծաղկի՝ զանձրևն խիստ ընդունի: Նոյնպէս և զբակլայն պարտ է թրջել և ապա ցանել. և մինչ թրջել կամենաս՝ 'ի ջուրն սակաւ մի նատրուն դիր. — նատրունն զերդ աղ է, և ինքն 'ի Մսրայ գայ. — երբ հանց անես՝ նա բակլայն մեծ գայ և եփուն լինի և լաւ:

Եւ գիտելի է, զի չէ պարտ զառաջնոց իմաստուն և փորձական արանց խրատուքն զանց առնել և հակառակիլ բանից նոցա. քանզի գրեալ են, թէ բակլայն զմարդն մոռացկոտ և անմիտ առնէ. և աստի է յայտ, որ երբ զինքն զատ ուտէ ոք, նա զբոլոր գիշերն մինչ 'ի լոյս յերազանայ. նոյնպէս և ազգի ազգի քամիք ընծայէ 'ի մարմինն: Եւ ասացեալ են, եթէ ոք զտունկ տնկէ և զբակլային խեճեալն ափչայք մի 'ի տակուիճս տնկին լնու, նա չորացուցանէ զտունկն: Եւ թէ հաւերուն ստէպ բակլայ տաս ուտել՝ 'ի ձու ածելոյ կըտրին: Եւ պարտ է զբակլայն յունվար ամսոյ եօթն օրն սկսանիլ 'ի ցանել, մինչև 'ի յունիս ամսոյ 'ի չորս օրն՝ որ քաղելոյ լինի:

Եւ ճուլպանն այդու խրատովդ առնելի է:

## ԴՈՒՌՆ ԻԴ·

*Վասն կորեկի:*

Մեծ կորեակն զշաղախուտ և զգիջային զաղէհամ և զջրարբի վայրմն սիրէ, և քչիկ սերմամբն շատ գետին լնու. և զքաղհան առնելն՝ խիստ ընդունի և ախորժէ. և իւր ցանելոյն ատենն 'ի մարտի ամսոյ ժե աւուրն 'ի վեր է. և թէ թանձր բուսանի՝ նօսրացընել պիտի, զի մէկ հատն բազմապատիկ պտղաբերի:

## ԴՈՒՌՆ ԻԵ.

*Յաղագս Քապրցախի և Թրմզի։*

Թրմուզն զնօսր և զաւազուտ վայրսն ախորժէ. և յերեւան պարտ է ցանել զնոյն, որ լաւ բուսանի և աճէ։ Եւ քապրցախն հակառակ է սմա, զի ինքն ըստ ինքեան բուսանի։ Եւ Թրմուզն պարտ է որ յառաջ ցանուի քան զայլ սերմանիքն. և թէ 'ի հերկուածն ցանես՝ նա խիստ լաւ է. և յաշնան ցանեա 'ի սեպտեմբերի ժէ աւուրն, յառաջին անձրևին։

## ԴՈՒՌՆ ԻԶ.

*Վասն ամենայն ազգ սերմանց, եւ առաւել վասն կտաւատի և կանեփի։*

Պարտ է գիտել որ ամենայն սերմանիքն ընդունեին և ախորժեն զցամաքային վայրսն, բայց միայն 'ի բակլայէն։ Բայց կանեփն ընդունի զթանձր և զգէջ գետինն. և պարտ է զինքն 'ի փետրվար ամսոյ իզ օրէն ցանել, մինչև 'ի իէ օրն մարտի ամսոյն։ Եւ զկտաւահատն որ է քթան, պարտ է 'ի ծիրանագոյն գետինն ցանել։

Երբ հաստատի աշունն որ է 'ի սեպտեմբեր ամսոյ քսանևերկու աւուրն 'ի վեր մինչև 'ի յունվար ամսոյ երեք օրն՝ պիտի ցանել։ Թէ կամենաս հետ կտաւատին սալէթին ցանեա, զի այն ևս եղանի։

Զկանեփն ծեծես, 'ի պարկն լնուս, զքերանն կապես, 'ի տակ ջուրն ձգես, փայտով մի թրես, եղն 'ի դուրս ժողովի։

## ԴՈՒՌՆ ԻԷ.

*Վասն խոտին որ անուանեալ կոչի Խատախալ, զոր ոմանք Աւրիծախոտ անուանեն:*

Ինքն հետ հնտանացն լինի և խածաբրէ զոսպն, և առաւել զբակլայն: Արդ առաջինքն գտեալ են դեղ այն խոտին, և Դիմոկրատէս վկայեալ է գործոյն. և է դեղն այս: Տանիլն կոյս աղջիկ մի յայն տեղն՝ ուր խոտն լինի, և սոսկ մերկացուցանեն զինքն 'ի յամէն հալաւէն և 'ի սոլերացն. և ածիլեն զմազն նորա, և տան 'ի ձեռն խօսող մի, որ գայ շուրջ 'ի վերայ տեղացն ուր խոտն լինի. նա 'ի նոյն ժամն չըքի խոտն և չորանայ, և սերմանքն զերծանին և արքինանան: Եւ ճշմարտած է որ զերդ խոտս սատանի 'ի կուսէն և 'ի խօսողէն. նա և թէ կենդանի առիւծ երթայ՝ խրտչի 'ի նմանէ: Եւ որ առնու զսերմն և խօսողի արեամբ մինչէ և ցանէ այս խոտս բնաւ չմերձենայ 'ի յինքն: Եւ այլք 'ի փորձականացն ասացին, թէ պարտ է պատրաստ կենալ, որ ամենայն սերմն 'ի ցանելն չդիպի 'ի յեղջիւր եզինն, թէ դիպի՝ չբուսանի, և թէ բուսանի՝ չօգտեցուցանէ զտէրն:

## ԴՈՒՌՆ ԻԸ.

*Յաղագս թէ յորժամ պարտ է ցանել ցորեան և գարի, կամ որպէս:*

Գիտացիր որ կանուխն լաւ է և 'ի խորու գետինն, երբ մէկ անձրև գայ: Առաւել ևս յայս հաւանեցան փորձականքն, որ պարտ է զցանն մենակ յաշունն սկըսանիլ, և յամէն երեք ամիս ձմեռն ցանել. բայց 'ի պաղ տեղիքն պարտ է զցանն 'ի մարտի քսանուհինգէն 'ի վեր սկսանիլ՝ մինչև 'ի մէջ գարնանն: Եւ ոմանք զցանուն սահմանն այսպէս արարին. զգարին 'ի մէջ աշնան ցանեցին, որ է 'ի հոկտեմբերի իզ օրն. և սկըսանին 'ի ցանել զցորեանն 'ի նոյեմբերի իա օրն: Եւ

վկայէ Աստղալիոսի որդին[1], որ երբ շրջի ձմեռն որ լինի 'ի ԻԴ օրն դեկտեմբեր ամսոյ, նա այլ չցանեն։ Եւ Դիմոկրատէս յիշեալ է զիր մի՝ զոր ինքն է փորձեալ, թէ զցորեանն և զգարին 'ի յանկանիլն Բաքհայ աստեղին[2] պարտ է ցանել. 'ի յայն ժամն անձրևք բազումք են, նա կրկնի գետինն սերման, և այժմու ցանօածն բերէ զտասնեակն, և հատն գէր լինի։ Եւ է անկումն Բաքհայ աստղիս՝ 'ի նոյեմբերի ԻԶ օրն։ Որ ցանել կամի՝ զամնոյս քանիքն պինտ կալցի 'ի յուշի, զի բազումք ոչ ճանաչեն զաստղն։ Եւ ամենևին չէ պարտ 'ի պարխրցնոցն[3] 'ի չորութեան ժամանակն սերմն ձգել. զի երբ գետինն 'ի չորութենէն կծկեալ լինի և յերար եկեալ, նա ե՞րբ բուսուցանէ զսերմն։ Ցորժամ սերմն յամէ 'ի հողն, նա կամ աւիրի կամ ուտուի, և այսու բոյսն սղալ գայ և վատ. ապա պարտ է որ այլ գիջային օդերով՝ ցանուի հիւթով, որ սերմն անաղալ շուտ և լաւ ելանէ։ Եւս առաւել թէ 'ի ջեր օր լինի, զի գետնին արգանտն բաց լինի և ընդունակ, որպէս յառաջ ասացաք։ Եւ այսու՝ սերմն ուժով և հաստատակուռ և կոճակ առնու, և զհատն գէր բերէ։ Եւ այլք ոմանք հաւանեալ են, որ զսերմն 'ի լուսնին լրութեան պարտ է ցանել, չորս աւուրն 'ի վեր որ նոր է, մինչև ԺԵ աւուր լինի, որ է լրումն լուսնին. և այս է արդիւնաւոր ցան։ Եւ այլք ասացին, թէ պարտ է համբերութեամբ զսերմն 'ի հինգ անգամ ցանել հետ 'ի հետ. վասն այսորիկ որ բոյսն և հասկն և ժողովելն՝ հետ 'ի հետ լինի, որ լաւ 'ի շահ գայ։

Այծու աղբով թրջէ զցորեանն գիշեր մի, և ցանեա, արդիւնաւոր լինի։

1 Ըստ ընտրելագոյն ընթերցուածոյ բնագրին պարտի լինել Կունտիլիոս. այլ զի և 'ի յոյն ձեռագիրս աղաւաղեալ է անունդ, մինչև յՈւիտիլլիոս Οὐίτιλλιος, Արաբն՝ յորմէ և Հայն առաւել ևս այլայլեալ են։

2 Պակ համաստեղութիւն, ըստ բնագրին։

3 Յայլ ՕՕ չկայ այս բառ։

## ԴՈՒՌՆ ԻԹ·

*Նախագիտութիւն յաղագս անձրևի, կանոնս գալ թէ անգալն։*

Այս պիտի և յոյժ օգտակար է առ 'ի գիտել. զի զայս երբ գիտեմնայ ոք՝ նա յառաջգիտութեամբն զամենայն պէտս սերմանց ցանելոյն՝ սահմանէ 'ի կանուխն և յանագանն, 'ի թանձրն և 'ի նօսրն. և յետ ամէն օգտութեանն՝ երբ գայ անձրևն՝ յառաջ քան զանկանիլն այն աստղին, որ կոչի Թուրայա[1]։ Եւ երբ տեսանես այսպէս զանձրևն՝ գիտասցիր որ տարւոյն գնացքըն միջաշաւիղ լինի 'ի կանուխն և յանագանն։ Եւ երբ սկսանի՝ այն ինչ զկնի անկանելոյ այս Թուրայա աստղիս գալ անձրևն, նա տարին անագան գայ։ Եւ ասեն Դիմոկրատէս և Ապօլլոս, թէ պարտ է զանձրևային ձմեռն 'ի Պրամի տօնն[2] ճանաչել, և առնեն զայս տօնս յոյնք 'ի իդ օրն նոյեմբեր ամսոյ. և արժան է ճշգրտիւ ճանաչել զայս տօնս և զպատկեր աւուրս և զնշանքս, որպէս զի այսու իմասցիս զբոլոր տարւոյն որպիսութիւնն։ Եւ թէ 'ի նոյն աւուրն՝ ընդ առաւօտն՝ օրն հողմային լինի, գիտասցիր որ գարնան կանուխ անձրև գայ, թէ 'ի կէս օրն լինի շարժումն հողմոյն՝ նա միջակ գայ, և թէ յերեկոյին ժամն շարժի հողմն՝ նա անագանանայ, և այս է վատ։

## ԴՈՒՌՆ Լ·

*Նախագիտութիւն յաղագս հնձանաց։*

Մարայ բնակիչքն բազում գիտութեամբ փորձ առեալ են յաղագս սերմանց՝ 'ի շրջագայութենէ աստեղաց. և գիտեն նախագիտութեամբ՝ թէ ո՛ր սերմն գիրանայ 'ի վերայ տարւոյն։ Եւ իւրեանց գիտութիւնն այսու է՝ որ առնուն զսերմն նախ քան զելանելն այն աստղին որ կոչի արաբերէն Նէղր-իւլ-Ղէպուր,[3] և

1 Տե՛ս 'ի Դուռն ԺԱ։
2 Տե՛ս 'ի նոյն Դուռն ԺԱ։
3 Լաւ ևս Նէրի տղուր· Մեծ Շուն համաստեղութիւնն, կամ Շնիկն։

յառաջ քան զելանել աստղիս՝ սակաւուք ժողովեն և 'ի չափ ածեն. և երբ ելանէ աստղս՝ նա բաժին մի 'ի հնտանանացն ահոկէ։ Եւ այս նշանքս հաստատած են առ Մըլըրցիս, որք բնաւ ոչ ցանեն զայն սերմն զոր աստղն աւերեալ իցէ. և ինքն այս աստղս Շէղր-իւլ-Ղէպսուր 'ի յուլիս ամսոյ ԻԳ[1] օրն ելանէ։ Եւ ոմանք առասցեալ են թէ աստղս այս, և այն աստղն զոր արաբերէն Նիսր-իւլ-Վագի կոչեն որ է Անկեալ արծիւ, 'ի մէկ ժամ ելանեն, 'ի ԻԸ օրն յուլիս ամսոյ։

## ԴՈՒՌՆ ԼԱ.

*Վասն գետնի բնութեան որ որպէս առաւել սնուցանէ այլ բուսոցն քան զօդն։*

Թէպէտ երևի թէ չորք մի քանի օդն դարմանող է բուսոցն,[2] բայց ոչ որպէս գետինն բնութեամբ։ Այլ զայս ունի հօդմն որ երբ հողն բուսուցանէ, ինքն սնուցանող և դարմանող է բուսոցն. և առաւել տաք հողմն 'ի ցրտային ժամն, և ցուրտ օդն 'ի շոգային պահն։ Եւ զայս գիտեմք որ Եգիպտոսի երկիրն և Բուսպացւոցն[3], յոյժ ջերմայինք են և շոգ և գոլած. զի ճշգրտիւ երբ զմէկ մօդն ցանեն՝ նա գՃ մօդ առնէ. և այսմ վկայէ Աֆրէուդոս[4] իմաստասէրն. և վասն գովութեան երկրին՝ կոչեն Ցառնամիդոս։ Եւ Բաբիլօն, որոյ լաւութիւնն և տաքն՝ մօտ է Մսրայ երկրին, բայց հով լինին

1 Բնագիրն յ՚ ԺԹ յուլիսի ասէ։ Իսկ յետագայ համաստեղութիւնդ Անկեալ արծուի ոչ յիշի. բայց այլուր (ՂԵ) դնի փոխանակ Քնար աստեղաց։

2 Միւս ՕՕ. պարզագոյն, « Թէպէտ և երևի օդն առաւել դարմանիչ բուսոցն՝ բայց ոչ որպէս գետինն », և այլն։

3 Ոչ այս և ոչ որ զկնի յիշեն տեղիք՝ ծանօթ են, զի չկայ այս հաստուած բանի 'ի բնագրին, և եղծ զեղծ թուին անուանք տեղեացդ և իմաստասիրին. բայց միայն երևի առաջնոցն լինել 'ի յԵգիպտոս և 'ի Լիբիա, վերջնոցն՝ յԱսորեստան և 'ի սահմանս. յորոց Մբնօնէս թուի Միւգդոնիա, որ է կողմն Նինուէի և Մծբնայ, որք և քաղա-նեղոյն՝ Էշէրք են երկրին Բաբիլոնի, և լերինք և հիւսն անդ. Ցրտածին զուգաձայն է Փռիւգիոյ՝ 'ի միջնաշխարհին Փոքր Ասիոյ։

4 Թուի Ափրիկանոսն յիշեալ 'ի յոյն բնագրին. զոր գիրք Նաբաթացի երկրագործութեան՝ Ադրիանէոս գրեն, որպէս և այլ երկրախօսք Արաբացիք։

եղերքն, որք են այս գաւառքս Ցրուճիա, Պարսքի, և Մեթնօնիա. և չեն սոքա հանց շող, վասն զի լերինք են և ձիւն գայ անդ, և ձեան պատճառանօքն քրքրութիւն առնու հողն. և այնու զօրանան տակուիճք բուսոցն, և առաւել եւս պտղաբեր լինին։

## ԴՈՒՌՆ ԼԲ.

Վասն ցանելոյ և վատատակելոյ։

Երբ ցանէ ոք զգետինն, և 'ի հետ փորչով գայ և ծեծէ, և զգուղձն մանրէ և զսերմն ծածկէ՝ նա այն լաւ է. և ոչ թէ լծօք վատատակելն 'ի հետ, անճարողացն ճար է. և 'ի հետ տափելն անհնար պիտի. վասն զի այն բանայ զտակուիճս վայրապար բուսոցն և չորացուցանէ։ Եւ երկու հետ քաղհնելն աղէկ է գետնին, և զսերմն գիրացուցանէ, որպէս վերոյ գրեալ եմք. զի երբ այս բոյս չկենայ՝ որ գետինն մշղըլի[1] 'ի դարմանել զնա, նա զիւր ամէն ուժն 'ի սերմն տայ և զայն դարմանէ և սնուցանէ։

## ԴՈՒՌՆ ԼԳ.

Յաղագս աղբի։

Գիտելի է որ աղբն խիստ օգտակար է և լաւացուցանէ զգետինն յոյժ, զլաւ գետինն և զվատն. բայց աղէկ գետինն զսակաւ աղբն հերիք առնէ, և միջակն՝ միջակ աղբովն շատանայ. և նօսրն և վատն՝ շատովն։ Զի բազմիցս պարտ է աղբել զվատ գետինն և ոչ մէկ հետ. զի թէ հետ 'ի հետ չաղբի՝ նա պաղ լինի։ Բայց թէ տունկ կենայ աղբելոյ՝ նա չէ պարտ 'ի վերայ տակերչացն ածել զաղբն, զի չորացուցանէ զտակուիճսն. ապա յառաջ հող ած և ապա զաղբ. և լաւ քան զամէն ազգ աղբերոյն՝ հաւուց աղբն է, զորդել 'ի սա-

[1] Միւս ՕՕ. չէ գրեն. այլ ուղիղ է մեր, և նշանակէ ըստ գե-րեցելուածն 'ի լուսանցսն՝ զբաղել։ Կայ 'ի գիրս և ծծղլակ, որ է զբաղումն։

դուն և յայլ ջրային հաւուց. զի նոցա աղբն վնաս է. բայց թէ զնոցա աղբն յայլ հաւուց աղբն խառնեսս՝ կու լինի։ Եւ լաւն 'ի մէջ աղբից՝ աղաւնւոյ ծիրտն է. բայց չէ արժան զնա զերդ այլ աղբ 'ի բան տանել, այլ արժան է զնա հետ սերմանն խառնել և ցանել, զի խիստ օգուտ է, առաւել 'ի վատուժ գետինն. զի դալարմանիչ է բուսոյն և անցուցիչ որդանն և այլ պատահարացն։ Կամ թէ նմանեցուցած է աղաւնւոյ ծիրտն մարդոյ աղբին, և այլ ևս առաւելութիւն ունի. քանզի անցուցիչ է վայրապար բուսոցն։ Եւ Արաբացւոց բնակիչքն զծիրտն աղաւնւոյ այսպէս տանին 'ի բան. թանան ջրով և ցամաքեցուցանեն. ապա այգեացն ևս առաւել լաւ է այսպէս առնելս. և թէ յայլ աղբ խառնես, որ զիւր հոտոյն պղծութիւնն տանի՝ լաւ է։ Եւ խշոյ աղբին օգտութիւնն յերեք տէրէճէն է[1]. և այծուց աղբին 'ի չորրորդ տէրէճէն է։ Եւ յետ այսորիկ վայրի ոչխարացն այլ՝ պարարտահամ առնէ քան զընտանւոյն, և հետ այսր պախրէիցն է։ Եւ խոզից աղբն չէ գովելի, զի տաք է և այրեցող և քան զամենայն աղբ վատթար։ Եւ ձիոյն աղբն, նաև ջորւոյն՝ վատուժ է. բայց թէ հետ այլ աղբից խառնէ ոք՝ կու լինի։ Եւ գիտելի է զի զմէկ տարւոյ մնացած աղբն պարտ է 'ի բան տանիլ, և զայն որ չէ հին՝ ոչ է պարտ ուրեք ձգել։ Եւ թէ տարւոյ հնացած լինի լաւն այն է. և յաղբելն լուսինն 'ի փուլն պիտի, և թէ 'ի նորն աղբես՝ վայրապար խոտ բուսուցանէ։

## ԴՈՒՌՆ ԼԴ.

*Թէ որպէս շինեն զաղբն և լաւացուցանեն։*

Են ոմանք որ մեծ և խորու փոսեր առնեն և ժողովեն յամենայն ազգ աղբէ, 'ի վատթարէն և 'ի լաւէն, և անդ ընուն և թողուն որ փտի. և կրակաց մոխիր ևս 'ի ներքս խառնեն. և թոնրին մոխիրն լաւ է. և մարդոյ աղբ այլ խառնեա դու, զի տնկոց օգտակար է քան զայլ աղբ. և խառնեա 'ի ներքս կաշէգործանոցի

1 Աստիճան, ըստ առաւել զօրութեան կամ սաստկութեան։

աղբ, զայն որ 'ի դուրս ձգէն. և առ զծեղն և ձգեա-յախառն որ գողէն շատ 'ի վերայ. և զայն ևս անդր խառնեա, և շուկայի շաղախ և յարդի և հօտի և փը-շոց կրակաց մոխիր 'ի ներքս խառնեա, նոյնպէս և գաղ-ձըրն՝ զոր ծովն 'ի դուրս ձգէ, լաւ որ աղխութիւնն ե-լանէ, և 'ի ներքս խառնեա. նոյնպէս և գետի[1] լինի։ Յամենիս վերայ ջուր ցանեա 'ի փոսն, և թող որ փտի տարի մի։ Եւ թէ կարես կածնել, որ փողոցաց հեղե-ղըն 'ի յառաջին երակն 'ի ներքս 'ի փոսն լցուի՝ լաւն այն է։

## ԴՈՒՌՆ ԼԵ.

Վասն կալերոյ։

Արժան է կալի տեղեացն աղէկանալ և լողել, և ա-պա պտղի ձիթի տուրտնով օծանել, վասն այնր որ ոչ խոտ բուսանի և ոչ մրջիւնն մերձենայ։ Եւ երբ զորայքն բերես դու՝ կամ 'ի յաջ կամ 'ի յահեակ դիհի վերայ լից. բայց ահեակն լաւ է։ Եւ վասն երնելոյ՝ զբարձ-րագոյն տեղիքն արա և հեռի 'ի բնակութենէ և յա-ծուոյ. զի մռեղն՝ բանջարաց և ծառոց տարուոյն բերին վատ է, թէպէտ և տակուցն օգուտ է. բայց ուր ան-կանի 'ի վերայ տերևի, ծակէ զտերևն և չորացու-ցանէ։

## ԴՈՒՌՆ ԼԶ.

Յաղագս հնձոց։

Արժան է որ թէ գարին հասեալ իցէ, յառաջ զայն հնձեա. զի թէ յամէ՝ մծրի. և զկնի այնր զցորեանն հնձեա և եղէկոթ[2] հիւթով, որ զհատն աղվոր երևե-ցուցանէ, նոյնպէս և զայլ սերմանքն յիւր ժամն. և

1 Այսինքն գաղձն կամ սէզ յատակաց գետոց։
2 Ի միւս ՕՕ. կրկնի բառս և յետ տողի միոյ. «Նոյնպէս և զայլ սերմանքն՝ 'ի ժամու և եղէկոթ». և թուի իմանալ՝ զկորն սերմա-նեացն՝ մինչդեռ չիցեն իսպառ չորացեալ՝ այլ իբրև եղոտ են։

առաւօտուն 'ի շահ ածելն՝ շողուն աղէկ է. և երբ չիստակի հովուն՝ պաղ ած 'ի յամանն, որ չաւրիրի երբ շողանայ:

## ԴՈՒՌՆ ԼԵ·

Վասն պահելոյ զցորեանն:

Արժան է զհացն[1] յայնպիսի ամանս պահել, որ արևելից լուսն և պարխրային հողմն 'ի ներքս մտանէ, և ունենայ շնչահան, որ ամէն ծուխն ելանէ: Եւ մօտ 'ի հորոնն՝ ախոռ, արտաքնոց և այլ ինչ գիշահոտ տուն մի թողուր. և առ սպիտակ հող և շաղախ արա, և մազ խառնեա 'ի ներքս, և յարդի ծեղ, և լաւ կոխեա և նեխեցո քանի մի օր, և այնու ծեփեա 'ի ներքսէ. Թէ քարուկիր առնես և թէ այլ ցեղ շէնք՝ դու զներսն և զդուրսն ծեփէ և թող որ չորանայ և մնանի աղէկ. և ապա ժողովել տուր զվայրի լեղի խիարկի տակն՝ որ յաւերականն լինի՝ իւր ցօղունովն, և դիր 'ի ջուր և թրջեա երեք օր, և եռ անցո 'ի վերայ. և առ աւազ մանր և կրակաց մոխիր. և այն ջրովն շաղախեա նոսա և օծեա զմէջգետինն և զորմունքն՝ աղէկ, և լից զցորեանն: Եւ են ոմանք, որ զաւազն և զկրակաց մոխիրն՝ գրաստուց գոզով թրջեն. և այս աղէկ է, զի սպանանէ զոջիլն և զայլ կերիչսն: Եւ ոմանք 'ի յաւազի տեղ՝ զկղմինտրն լեսեն և դնեն, և այս լաւ է. և այլք առնուն զհօտին մոխիրն կամ զկաղնի փայտին, կամ զգշկուրն. աղա զորն և կամիս յայս երից. և երբ լնուս զամանն 'ի վերայ ցորենին՝ ցանեա աղէկ քանի կարես. խիստ պահէ զցորեանն: Եւ ոմանք զգառնագմակիկ խոտն չորացուցանեն և լեսեն և 'ի վերայ ցանեն. և այլք զպտղի ձիթի տուրտինն առնուն և զաւազն և զկրակաց մոխիրն, և յիրեար խառնեն և օծանեն. զհատն չէն և գէր պահէ: Եւ այլ ոմանք եփեն զտուրտինն որ կէսն մնայ, և սոսկ այնու օծեն: Եւ այլ՝ առնուն զմաղած սպիտակ հողն և զնռան ծառին տերևն, և չորացուցեալ լեսեն և մաղեն, և կէս 'ի կէս

1 Ցայտ է թէ վասն ցորենոյն ասէ հաց:

առնեն զխնքն և զհողդ, լաւ ցամաք և չոր. և 'ի հա-
րիւր մոդ հաց՝ մոդ ու կէս խառնեն և միաւորեն ա-
ղէկ ընդ ցորեանն, և յետոյ 'ի ծեփած հորոնն ամնեն,
և պահէ զցորեանն: Այլ. առ զխոտն որ կոչի արապե-
րէն Խօլօրա, և թօշմեցո զնա, և տարածեալ մեկնեա
'ի յատակն հորոնին, և զցորեանն 'ի վերայ ած. յամէն
երեք թիզ՝ կարգ մի խոտ դիր մինչ 'ի վեր. պահէ այս
խոտս զհացն չէն՝ իւր հոտովն և համովն և կշռովն, որ
չթեթևանայ բնաւ: Եւ ոմանք զթզենւոյն տերևն ապ-
րացուին ներքև փռեն, 'ի կերչէ պահէ:

## ԴՈՒՌՆ ԼԸ.

*Վասն ճանաչելոյ և ընտրելոյ զլաւ և զպակասելի հացն:*

Առ 'ի հացէն չափ մի, և հնտրեա և մաղեա, և
կշռեա զերեքեանն[1], որ յերեսունն Ճ յաւելանայ 'ի
վերայ. և մնչեա և աղա, և հաց շինեա, և կշռեա
զհացն. տես թէ զառաջին կշիռն յաւելուածով իս-
լիմի տեղ պահէ՝ այն լաւ է: Եւ տես զի չասնես զթեփն
թէ ելած է և պակսած 'ի կշռոյն. զի ջուր որ 'ի հացն
մտաւ՝ զնորա տեղն ելից: Բայց թէ հացն քաջէփ է,
նա պիտի պակասի 'ի Ճ լիտրն՝ լիտր ու կէս. և Ճանա-
չած իրք է. 'ի հացպանիցն զայս պարտ է խնդրել:
Վասն հաց եփելոյ՝ զմայան, գինւոյ մրուրովն բռնէ:

## ԴՈՒՌՆ ԼԹ.

*Վասն հաց եփելոյ:*

Ոմանք 'ի խմորի տեղն նաշխրուն դնեն 'ի հայսն,
և ոմանք առնուն զչամիչն, և 'ի թուրջ արկանեն 'ի
ջուրն՝ օր մի և գիշեր մի, և քամեն, և այնու թրեն.
բերէ զհայսն՝ որպէս խմոր, և լաւահամ առնէ և գե-
ղեցիկ օգտակար և յորդորիչ է բնութեանն. զի խը-
մորն հակառակ է բնութեանն և վատուժացնող:

1 Միւս ՕՕ. շէրէւէւլ:

## ԴՈՒՌՆ Խ.

*Յաղագս քաղցրացուցանելոյ զԹրմուղն ։*

Դնել զԹրմուղն 'ի Թրջոց կամ 'ի ծովու ջուր կամ 'ի քաղցր. և Թէ խառնած լինի ծովուն և քաղցրին՝ լաւն այն է ։ Եւ մնայ երեք օր և քաղցրանայ ։ Ի բան տար յանասուն և 'ի մարդ. և Թէ յալիւր խառնեա՝ լաւ հաց առնէ ։

## ԴՈՒՌՆ ԽԱ.

*Վասն ամենայն ազգ ալեր և զարդոյ խիտա, որ դիմանայ ։*

Առ բուռ լեսած, և 'ի գարին մէն խառնեա, շատ դիմանայ ։ Առ զչաման և կարմիր աղ լեսած՝ և յերար խառնեա, և բաղարջանի արա և Թաղեա 'ի յալիւրն, լաւ է ։

Այլ. 'ի մոդ մի ցորեանն ափկից մի աղ խառնեա. և տալը աղա և պահէ, շատ դիմանայ ։

## ԴՈՒՌՆ ԽԲ.

*Յաղագս Եղեգան, Միզի, և Վարձողի, թէ որպէս անցուցանեն և չորացրնեն ։*

Առ զԹրմուզին ծաղկած արմատն, և 'ի վերայ սիզին ցանէ, և ժը օր 'ի տեղն Թող. նա չորացուցանէ զամէնն, և յետոյ աղը ցանեա 'ի վերայ գետնին ։

Պօլոս և Տիմոխար[1] ասացեալ են, Թէ առ զԹրմուզին ծաղիկն և զաղշպէնկին ջուրն՝ ծեծեա և քամեա. 'ի Թուրջ դիր օր մի և գիշեր մի, և յետոյ զայն ջուրն 'ի վերայ սիզին ցանեա, նա չորանայ ։ Եւ որ կամի սպառել զսէզն, նա 'ի Թէմուզ[2] ամսոյ երբ արեւն 'ի

1. Պօլոս է Ապուլէոս. Տիմոխար՝ Դամոգերոն մոգ, սանկաւածանօթ սնձն՝ յորոյ անուանն նշանակեալ է նոր կամ նոգէր մասանեկդ ։
2. Յունիս-Յուլիս ամիս ։

Խեցգետնին մտանէ և լուսինն յԱյծեղջիւրն, դու վաստակեա՛ 'ի վերայ սիզին և փորեա, և տակովին հանել տուր և 'ի դուրս ձգեա, այլ բնաւ չլինի։ Եւ երբ սէգն փտի՝ լաւ աղբեա. և թէ ուզես որ բնաւին չորանայ, տուր շինել պղնձի փորիչ, և շող[1] 'ի քօշի արիւն մխեա, և այնու փորեա զկակղացուցած տեղն և համն, ամենեւին չորանայ։ Եւ թէ ուզես որ եղէգն, վարձոխն և հալֆայն սպառի, տես զժամն յորում ելանէ Շէղր-իւլ-ղէպուր աստղն,[2] և առ եղէգնի[3] դանակ կամ այլ ինչ նման նմին, որով կտրել կարենաս և այնու կտրեա զեղէգն և զհալֆայն չորս մատն ներքև հողոյն. և ապա սեւ ձիւթ եւ գինի ընդ իրեար եռացո, որ կակղանայ, և այն ձիւթովն զխոտին կտրուքն օծ, նա այլ չբուսանի, ամէնն չորանայ։ Բայց միայն մորենւոյն և այլ փշոցն պարտ է զտակն փորել և բանալ, և ապա զտակքն երկաթի սարուածով կտրեա, և հալած ձիւթ կալ, և զտեղին որ կտրես՝ ձիւթեա, ամէնն չորանայ։ Եւ եթէ տակն հաստ լինի և չկարես կտրել, ընդ տակուիձքն 'ի վայր լից եռ ընդ եռ, նա չորանայ։ Եւ զխոտն որ կոչի յունարէր Փիսմիալոս՝ յելանելն Շէղր-իւլ-ղէպուր աստղին թէ կամենաս սպառել, վաստակեա և հողով ծածկեա, նա անհետ կորնչի։ Եւ են ոմանք որ զսա սահմանեն՝ երբ լուսինն յԱյծեղջիւրն լինի և լրումն ունենայ, և չորանայ։ Եւ տես զլուսինն՝ երբ յայն պուրճն[4] լինի, որ չէ ցանելոյ և սերմանելոյ պուրճ՝ առ զԹրմուզն և 'ի հալֆայուտ տեղին ցանեա, նա զամէնն սպառէ։ Եւ ոմանք զԹրմզին ցողունն ցանեն 'ի վերայ վարձոխուտ և հալֆայուտ տեղւոյն, նա չորացուցանէ զամէնն. և այլք զԹրմուզն ալիւր առնեն և բողկի ջրով թրջեն, և երբ կտրեն զտակն՝ զայն ջուրն 'ի վերայ ցանեն, նա այլ չբուսանի։

1. Այսինքն, մինչդեռ ջերմ կամ հրացեալ է փորիչն՝ մխեա։ և այլն։
2. Տես 'ի Լ։
3. Եղեգէ շինած։
4. Բուրջն. Դիրք կամ կայանք աստեղաց։

## ԴՈՒՌՆ ԽԴ.

*Յաղագս երկոտասանից ամսոց տարւոյն եւ յիւրաքանչիւր ամսու զինչ պարտ է առնել։ — Դեկտեմբեր։*

Պարտ է զինչ և իցէ փայտ զոր կտրել կամենայ ոք, 'ի դեկտեմբերի ԻԵ օրէն 'ի վեր մինչև 'ի յունվարի ամսոյ ելն կտրել, 'ի փուլն, որ լուսնի լոյս չկենայ, զի լուսնկային լոյսն աւրոկէ կտրած փայտին, և ճիճի ընծայէ 'ի փայտն, և շուտ փտել տայ։

## ԴՈՒՌՆ ԼԴ.

*Յունվար։*

Արժան է զամենայն ազգ. իրս հօտել, զայգւոյ և զծառոց՝ 'ի յունվարի երկու օրն սկսանել, մինչև այգեաց տերևքն երևանան. և տես որ զհօտելն 'ի յայգուոջ երբ յօրէն երկու պահն եղեալ լինի՝ սկսիր, մինչ 'ի յինն պահն աւուր, բանէ՛. և այլ մի հօտեր, մինչև 'ի մէկ այլ օրն. և պատրաստ կաց զի 'ի յօրն յորում դժնդակ հողմն լինի՝ չհօտես, թէ ոչ՝ զամենն աւիրէ. այլ ընտրեա զաւուրսն հօտելոյն, զի լիցի ջեր և պայարզ, և առանց ցրտաբեր հողմոյ. և զհօտոցն սուր արա որ չաւիրէ զտունկն։

Եւ զտնկելն 'ի յունվարի ԺԵ աւուրն 'ի վեր արա, մինչև ձմնաչես զտեղին, որ այլ տունկ չընդունի 'ի չորութենէ. և յայն աւուրն 'ի վեր՝ պարտ է աղբել զծառքն, մինչ 'ի մարտ ամսոյ ԺԵ օրն։ Եւ պարտ է զպատրուսելոյ տեղիսն 'ի յունվարի ԺԵ աւուրն 'ի վեր առնել. Եւ առաւել զայն ազգ. ծառքն, որք կանուխ լինին ծաղկեալ։

## ԴՈՒՌՆ ԽԵ.

*Ցաղագս զպանդրած և զմազմզկած այգւոյ տունկն հանելոյ և տնկելոյ : — փետրվար ։*

Արժան է զպանդրած և զմազմզկած այգւոյ տունկն, զերդ մտանէ ոք 'ի փետրվարն, հանել և տանել 'ի յայգետեղն տնկել. նոյնպէս և թէ ասլը լինի՝ այսինքն արմատաւոր. և թէ երկու տարւոյ պանդրած լինի՝ լաւ է քան զմէկն. և թէ երեք տարւոյ լինի լաւ է քան զերկու տարւոյն ։ Եւ զայս փորձելով գիտեմք, որ քանի ոք փոփոխէ շատ զայգոյն տունկն 'ի տեղաց 'ի տեղ՝ նաա այլ աղէկանայ, և յորդորի 'ի պտղաբերութիւն. նոյնպէս և ամէն ազգ ծառ զինչ և իցէ ։

Պարտ է զտնկելն և զսերմանելն և զպատրուսելն 'ի լուսնի նորն առնել, զի 'ի նորն արքինի լինի ծառն և զպտուղն շատ առնէ, քան զայն որ 'ի փուլն ։ Նոյնպէս և վարդենիք, եղէգն և այդպիսիքդ 'ի նոյն ժամդ ։

## ԴՈՒՌՆ ԽԶ.

*Ցաղագս 'ի լեառն և 'ի հովային տեղիս տնկելոյ և պատրոյս առնելոյ՝ խրատ: — Մարտ ։*

Արժան է 'ի լեառն և 'ի հովային տեղիսն զտնկելն 'ի մարտին առնել, որպէս 'ի փետրվարին զդաշտն յիշեցաք. նոյնպէս և զպատրուսելն յառաջ քան զպըտկելն. վասնզի 'ի հոմն է իւր ժամն. և զպատրուսին կտրելն և շինելն՝ սուր սարուածով պարտ է առնել, որ չաւիրէ զմայրասն և զպատրոյսն ։ Եւ զփորելն, զվաստակելն և զակնբացելն 'ի սոյն ամիսս և 'ի ժամս պարտ է առնել ։ Եւ սոյն ժամու անձրեւն զոր հետ վաստակելոյն առնէն՝ խիստ պիտանի է և պտղաբեր առնէ ։ Եւ զքաղհնելն պարտ է յառաջ քան զխոտին հնտրելն առնել 'ի սոյն ժամս. և զձիթենիքն յառաջ պարտ է ակնբացել և շինել քան զայլ ծառս. Եւ զհերկերն նոյնպէս վաստակել, յեղել և սրբել յամենայն ազգ խոտոց, որ զարտն աղէկ տայ ։

## ԴՈՒՌՆ ԽԷ·

*Յաղագս յայլ խիստ ցրտային լեառն տնկելոյ և պատուաստելոյ, խրատ: — Ապրիլ·*

Արժան է յայլ խիստ ցրտային լեառն 'ի յապրիլին առնել զյառաջասացեալ տնկելս. զի այլ անաւգան է 'ի ծաղկիլն և 'ի պլպլկելն զտերևս. Նայեաց և անտի ուսիր, որ յառաջ քան զծաղկելն առնես զպատրուասեն. և թէ ակնեցես՝ արձակ փորեա. և չափ մի 'ի հողոյն 'ի տակն տնկին 'ի վեր կուտեա, որ յարևէն պահէ զտակքն: Եւ զմատղաշ այգին երկու հետ ոչ է պարտ փորել և ոչ ակնեցել, և յապրիլին փորեա զոր փորես: Եւ զնոր տունկն որ մէկ տարւոյ լինի՝ չհօտես, և բնաւ սուր չհասուցանես, զի լաւն այն է: Եւ զընկուզին և զձիթենին և զհապալսին՝ 'ի սոյն ժամս հօտեա, որ յորդորի պտուղն. և զինջերղ ծառոյն սերմն [1], և իւր տառ ասեն, 'ի սոյն ժամս պարտ է քաղել և ցանել. Նոյնպէս և թզենին առնելի է:

## ԴՈՒՌՆ ԽԸ·

*Յաղագս որ 'ի ցրտային և 'ի գիջային լերինս զտնկուածն առնեն: — Մայիս:*

Են ոմանք որ 'ի ցրտին և 'ի գիձային լերինս՝ զտըն-կուած տնկոց 'ի մայիսի մտէն մինչ 'ի յունիս ամսոյ ժէ. օրն առնեն: Եւ գիտելի է զի լաւն այն է, որ զամէն ազգ տունկ յառաջ քան զպտուղն պարտ է տնկել, զարդել 'ի թզենւոյն, զի զայն թէ յառաջ տնկես թէ յետոյ՝ լինի: Եւ են ոմանք որ զայգիքն թողուն՝ պտկէ, և ապա տնկեն. Նոյնպէս և զպատրուսեն առնեն, զի ծառոց ջուրն զերդ սոսինձ է դարձեալ. բայց մեք յա-ռաջինն և 'ի կանուխն եմք հաւան. և այլք յետ պտկե-լոյն փորձ արարին սպատրուեցին նա եղև՝ չաղալեաց:

1. Յօր. սէր՛. այլքն և բնագիրն սերմն, զոր ասէ փառ կոչել, որպէս թուի՝ արաբերէն:

Եւ զպատրոյսն թէ կամենաս 'ի ջերմային տեղւոյն 'ի ցուրտն տանել, դու քաղեա և դիր 'ի ձառայ, և զբերանքն կալ և 'ի հիւթ գետին թաղէ, մինչև՚ քանուր ցրտայինն և իւր ժամն գայ։ Եւ փորձած է որ երբ 'ի յերաշտն զայգին լաւ փորես՝ նա փորելն պաղեցուցանէ զտունկն և զծառաւն անցուցանէ։ Եւ 'ի մայիսն պարտ է փոփոխել զտունկս հով տեղեացն և զմեծամեծ ձիթենիսն և զայլ ազգ ծառսն։

Ի մայիս ամսոջ պարտ է աղբել՝ այս նշանովս զոր գըրեմք. փորեա և բաց աղէկ զտակն ծառոյն, և զմաքուր հողն 'ի տակն 'ի վեր կուտեա, որ աղբն 'ի յինքն չհասանի, և ապա զաղբն 'ի շուրջ փորածն լից և հողովն ծածկեա. զի թէ 'ի ծառն կամ 'ի տակն հասանի՝ այրէ և ապականէ զծառն։ Եւ զպատրուսանին յայս ամիս ջրեա, և ջուր 'ի վերայ սրսկեա։ Եւ զայն գետինն թէ ուզենայ ոք որ զքաղն սպառէ, յայս ամիս հնձէ զթրմզին հերն[1] և 'ի վերայ խոտին կրէ, որ չորացուցանէ զայլազգ խոտն, որպէս յառաջագոյն գրեցաք։ Եւ ոմանք որ հոգցի ցանեն զթրմուզն 'ի սիզուտ և 'ի փշաքեր վայրսն, նա սրբէ զտեղն և չորացուցանէ զամէն վայրի խոտսն։ Նոյնպէս երբ վաստակես զառւսած և զծաղկած թրմուզն հետ այլ խոտին, նա փտի թրմուզն և զայլ խոտն 'ի հետ փտեցուցանէ։ Են ոմանք որ զթրմուզն 'ի յայգին ցանեն, նա զայլազգ խոտն սպառէ և տայ ինքն զիւր պտուղն։

Եւ 'ի մայիս ամսոջն՝ պարտ է զգինին 'ի յայլ աման փոխել. և տես, յոր կարաս որ փոխես և նոր ընուս՝ դու 'ի լի չընուս, զերդ երկու թիզ պակաս լից, որ շունչն և ծուխն գինւոյն ելանէ, և թէ յիւր մըրէն 'ի հետ ընուլ՝ չքննէ[2]։ Ապա տես որ 'ի մէկ այլ կարասն՝ տար մրուր՝ մնացեալ չլինի, թէ ոչ աւրրէ զամէնն։

1. Մաղ. քարակ ներկք։
2. Միւս ՕՕ. չէն լունի տաեն։

## ԴՈՒՌՆ ԽԹ·

*Յաղագս զպատրուսած այգին փոքեկոյ: — Յունիս ։*

՝Արժան է որ քան զյունիս ամսոյ հասարակն յառաջ, զպատրուսած այգիսն փորեն աղէկ երկու երեք հետ, 'ի մարտին հասարակէն մինչև յունիսի ժե օրն. և զակնուռքն որ 'ի մայրանն ելեալ լինի, հան և 'ի մատղաշ նոր տունկն քչիկ ու. թող մէկ կամ երկու. որ չխառնուժացուցանէ զինքն. զառաջի ուռն և զերկուն թող և զերրորդն կտրէ։ Եւ 'ի յունիս ամսոջս պարտ է ծայրատել զայգին անթինինոս [1], թէ ոչ որ յամենայ՝ այլ աւերի։ Եւ յայս ամիս ևս պարտ է ակնքցել և զտակքն ծածկել, որպէս յառաջ գրեցաք։

Եւ յայս ամսոջս առ զվայրի թաւալ թուզն որ 'ի վայր գայ, և շարոց արա և կախեա 'ի տանու թզենին. նա չտայ թափել զպտուղն, արգելու և շատքեր տայ առնել, և ճարտար հասուցանէ զթուզն։ Եւ 'ի յունիսխս պարտ է սատրել զհիլիօնն և զտուղտն, և զխոտն որ ասի յունարէն փարիգօն [2], որ է հայփարիխօն։

## ԴՈՒՌՆ Ծ·

*Յաղագս զհին այգիս վատակելոյ խրատ:*
*Յուլիս որ է թէմուզ ։*

Արժան է 'ի թէմուզիս զհին այգիքն վատատակել. ոչ յամէն օրն 'ի բուն, այլ յառաւօտն սկսիր, մինչ երեք պահն լինի աւուրն վատատակեա և թող. և երբ ընդ կէսօրն և ընդ իննն ժամն անցանէ օրն՝ ապա այլ

1. Տես 'ի դուռն Ժ։
2. Փարիգօն, ըստ այլում Օր. և ըստ միւսում՝ Հօփարիկօն։ Ի բնագրին՝ յերից աստի ծաղկանց կամ բուսոց՝ տուղտն միայն յիշի. և փոխանակ երկուցս այլոց Նեխուր՝ (Apium), և ամարանոց։ Իսկ հեյ-փարիքօն ըստ Պարսից է Bellis, և փռ. Paquerette. ըստ բժշկարանաց կոչի Հօմէրշի-Տափի կամ փափլտուտի, ևս Անդարատամնն. « Երկու ցեղ « կու լինի. լաւն այն է որ կարմիր լինի և կատարեալ հասուն լինի. « և հոտն նման է Լուսթեանայծին հոտին (տ. Բէտինէճ)։ . . Եւ « ցեղ մի այլ կայ որ ծաղիկն դեղին կու լինի », և այլն։

վաստակեա մինչև 'ի մուԹն. և յակնբացելն ծածկել զանկլեն տակքն որ արևն չաւիրէ. և զգուղձն պարտ է մանրել անհնար. զի գղձան փոշին սնուցանող և մեծացնող է հուզին և պտղին։

Եւ 'ի սոյն ամիսս Թէմուզ պարտ է զպատերն շինել և զմորենին տնկել, զի լաւ բռնէ։ Եւ 'ի սոյն ամիս վաստակէ զփզուտ և զհինդնուտ տեղիսն։ Ապա տես որ լուսնին մէջ օր լինի, և արեգակն 'ի խեցգետինն. և երբ վաստակիս Թող որ չորանայ և ապա ժողովեա. զի Թէ երբ կանաչ լինի՝ ժողովես, կրկին բուսանի. բայց Թէ Թողուս որ չորանայ՝ այլ չբուսանի. և այս է իւր յատուկն։ Եւ պատեհ է յեղել զհերկեւն 'ի մայիսի մէջ աւուրն 'ի վեր մինչև 'ի Թէմուզն, որ մտանէ լուսինն 'ի յԱյծեղջիւրն։ Եւ 'ի Թէմուզի մէջ օրն՝ պարտ է ժողովել զխոտն և 'ի դուրս ձգել 'ի հերկոյն, այլ չլինի. և այս է յատուկն։ Եւ Թէ մնկուԹիւն կենայ փայտի՝ որ շինուց լինի, կտրեա յայս ամիսս, երբ փէլ լուսինն, և զհերկ կամ զհերկոտն որ բակլայ կամ հուլպան լինի ցանած և քաղած, զգետինն 'ի սոյն ամիսս վաստակեա, նա խամ հերկ արժենայ։ Նոյնպէս և Թէ այլ խամ գետին չունենայ դք որ փոփոխէ, երբ հնձէ զարտն զինչ և լինի, նա մինչդեռ խոզանն դալար լինի՝ պատեհ է միսակ զլուծքն 'ի ներք դնել և վաստակել, որ յաշնան կրկին ցանես կամ խափանհերկ Թողուս մինչ 'ի մէկ այլ աշունն, ըստ ուժոյ գետնոյն և տեղւոյն։ Նոյնպէս և յայս ամիսս կոտրեն զծառոց և զԹփոց տերևսն, հնձեն զմարգաց և զդաշտաց խոտն, և չորացուցանեն և պահեն ձմեռան համար. զի Թէմուզն յոտած ծառոցն և պատրուսանոյն զերդ գարուն է բուսուցանող։

## ԴՈՒՌՆ ԾԱ.

*Ցաղագս զհասած այգիսն կրելոյ՝ խրատ: — Օգոստոս։*

Արժան է զհասած այգիքն 'ի յայս ամիսս կԹել. ապա Թէ հատեալ չկցէ՝ շուրջ փարեա. զի փոշին որ 'ի փորչէն և 'ի գղձան մանրելոյն ելանէ և 'ի խաղողն հասանի, հասուցանէ զխաղողն, որպէս յառաջ աաս-

ցաք։ Եւ միտ դիր որ ծառ և այգի որք մօտ 'ի ճա-
նապարհն լինի՝ և փոշի նստի 'ի վերայ իւրեանց՝ շուտ
հասանին, քան զայնս որք լինին հեռի։ Նոյնպէս և
ամենայն այգի որ 'ի ծանր գետին կենայ՝ 'ի չորն պա-
տեհ է որ փորուի, բայց թէ նոր լինի՝ չքննէ. և 'ի
գիջային գետինն չէ պարտ զտունկն խորու տնկել,
թէ ոչ նեխեցուցանէ զգետինն։ Եւ այգի որ յայս ա-
միսս չհասուցանէ, դու ծայրատէ և տերևաթափ ա-
րա, որ բացուի խաղողն և հասուցանէ արեգակն. և
տես որ թէ այգին նորատունկ լինի և շատ բեր առ-
նէ, չշահասիրիս 'ի բերն. ծայրատեա կարճ, և 'ի բե-
րէն հետ ուռին կտրեա և թեթևացո քանի կտրես
զբերն, և թէ ոչ՝ զայգին վատուժէ, և նոյնսն 'ի յայլ
տարիքն տայ. և թէ այսպէս առնես՝ խաղողին պտ-
տուղն մեծ լինի, և այգին ուժով գայ. և զայնչափ
վզենակին վճարն՝ շուտ իմանաս։ Առ սպունգ և դիր
յեղէգն և թաց 'ի ջուրն, և զպատրուսած ծառերն
անպատճառ թաց. և զպահելի խաղողն յայս ամիսս
քաղէ և կախէ. և զպահելի թուզն 'ի յայս ամիսս չո-
րացո. և ուր յաշնան ձիթենի կամենաս տնկել՝ նա
դու զծառին փոսն յայս ամիսս արա և բաց. Նոյնպէս և
զայլ աշնանատունկ ծառոցն. և 'ի բաց թող զփոսերն,
որ արևն այրէ և շինէ զտեղին. որ երբ տնկես՝ աղքի-
նի առնէ զտունկն։ Նոյնպէս և զգինւոյ համար կարա-
սանին, յայս ամիսս արևէ, փանօսէ և ձիւթէ նոր
գինւոյն համար։

## ԴՈՒՌՆ ԾԲ·

*Ցաղագս երկրորդ այգեկիթս առնելոյ, խրատ։ — Սեպտեմբեր։*

Արժանէ է զերկրորդ այգեկիթքն 'ի յայս ամիսս
առնել, և զտունկ առնելոյ սերման համար տունկն 'ի
յայգին յայս ամիսս պարտ է նշանել, զոր 'ի հօ-
տելոյն ժամն ճանաչես. և զոր նշանել կամենաս՝
այսպէս նշանեա. զի լաւ նշանն քան զքթեթ կամ
զչուան՝ որ կապէ մարդ, այս է, զոր չհանէ ոչ
հողմն և ոչ անձրև։ Առ սուսր և սեւ ձիւթ և
ձէթ, և եփեա 'ի մի տեղ 'ի մէջ խեցատի, և

զտունկն զոր նշանել կամիս՝ այնու խաչ հան, կամ այլ նշան ինչ և իցէ 'ի վերայ տնկին արա. և մինչեւ յիւր ժամն զնշանն անշարժ գտանես։ Եւ վասն ձմեռան պահելի մրգերուն զամանսն՝ յայս ամսոյս պարտ է արեւելն և ցամաքեցուցանել, որ դիմացընէ և պահէ զմրգերն։ Եւ յայս ամիս առ մեծ տախտակք և շինել տուր մեծ սնտուկ, և ապա զտախտակաց միջոցսն աղէկ կալ ափտէ կտաւով կամ բրդով, և ապա առ սեւ ձիւթ և կվենւոյ փայտի կամ մարխի սղոցուքով, եռացո զձիւթն և զայն սղոցուքն 'ի ներքս խառնէ. և զսնտուկն աղէկ ծեփեա 'ի ներսէ, և դրուցէ ևս օծանես՝ նա աղէկ է. և ապա զմրգերն, ևս առաւել զխաղողն՝ 'ի ներքս կախեա. և թէ խնծոր լինի կամ սերկեւիլ, այլ սղոցուք 'ի նոյն անուշահոտ փայտից 'ի յատակն սնտկին լից, և 'ի ներքս թաղեա զնոսա. նա երբ ուզես՝ իբր նոր գտանես։ Բայց երբ փակես զսնտուկն՝ զփակսն աղէկ ծեփեա, որ բընաւ օդ 'ի ներքս չմտանէ, թէ ոչ զամէնն աւերէ. նոյնպէս և զընկոյզն 'ի սոյն ամիս թափեա 'ի ծառոյն։

## ԴՈՒՌՆ ԾԳ.

*Յաղագս զերրորդ այգեկիթք առնել: — Հոկտեմբեր։*

Արժան է զերրորդ այգեկիթքն 'ի հոկտեմբերն արա։ Եւ աստի իմացիք զմեր այգեկթոց խալատն, որ սահմանէ թէ 'ի յայս երեք ամիսս, յամէն ամիս հետ մի կթեն. յօգոստոս և.[1] . . . . . . . . .
եկ հասածն. և 'ի խաչին ամիսն, և 'ի սուրբ Գէորգին ամիսն զձուռն. և այս պատճառանօքս մեծ վզեան կու լինի, զորս արժան է ուղղել թէ հնար ինչ իցէ։ Բայց առաջին կիթն անոյշ և կակուղ լինի, և ձուին՝ պինտ և օգտակար ստամոքսին յոյժ. Եւ են ոմանք՝ որ զնոր տնկերն՝ յայս ամսոյս ժե աւուրն 'ի վեր սկսանին 'ի

1. Յերեսին ևս 00 պակասէ տառանօր, և թողուն դատարկ. այլ թուի մի կամ երկու բառից պակասել, որպէս թէ, «կթեն յօգոստոսի զկանխեկ հասածն, և 'ի խաչին ամիսն», եւն. յայտ է թէ զսեպտեմբեր կոչէ յայս անուն, որպէս և զհոկտեմբեր յանուն Ս. Գէորգի, ըստ տօնից շարժական տօմարիս մերոյ։

տնկել մինչեւ 'ի դեկտեմբերի քսան օրն, որ բազ-
մաստղն անկանի: Եւ ամենեքեան այսմ հաւանեալ
են, որ նոր տնկերն տնկեցեալ լինին, վասն այնորիկ
(զի) արձակեն զմազմզուկքն և զտակուիճքն մինչեւ 'ի
գալն անձրեւաց, և տեղի առնուն, որ երբ գարունն
գայ՝ զտերեւսն արձակեն և արմատ առնուն: Եւ ըզ-
տունկսն՝ պարտ է շուրջանակի փորել, և մարդոյ հին
աղբ և հին գոմ և չոր գինեմրուր և յարդ պարտ է
ածել: Եւ փորձով լաւ է, որ զերդ կթեն՝ մինակ հօ-
տեն զայգին, և յետ հօտելոյն վաստակեա որ զկոխած
գետինն կակղացուցանէ, որ առաջին անձրեւն աղէկ
մտանէ, և զամառան ծարաւն հանէ 'ի սրտէն, և ըզ-
գարնային խոտսն պակասեցուցանէ: Եւ յայս հոկտեմ-
բեր [1] ամսոջս պարտ է զայս հաւանեալ ծառքս տնկել.
ձիթենի, եղջիւրենի, սոնոպրի, բեւեկնի. . . . . [2]
կարէ լինիլ, ապա զամենայն ծառ անսերմն զինչ և
լինի՝ յայս ամիսս անհնար 'ի հողն դնել, նա աղէկ բու-
սանի և անսղալ: Եւ յայս ամսոջս՝ պարտ է զաղէկ ազգ-
ձէթն 'ի պտղէն հանել. եւ ընտրեա զայն պտուղն որ
խաժ գունով լինի, և չլինի 'ի մէկ հետ սեւացեալ. և
զնորա ձէթն հա՛ն վասն ուտելոյ, զի այն է լաւն և
գովականն: Եւ յամիսս յայս պարտ է զթրնջիքն, և
զնուռմայիքն, և զլիմոնիքն ծածկել: Եւ զջրաառուն
ղորդել, որ ջուր չնստի 'ի վերայ և կամ եղեամն և չո-
րացուցանէ: Եւ այս օրինա [3] . . . . . . . .
որ և զլիմոնեաց ձիւղքն փաթթէ, և զտերեւսն 'ի
վերայ ղորդէ, որ ծածկէ զծառսն, և չառնէ նոցա
պարզկայն այլ բնաւ ուժ [4]: Եւ այլ ազգ. ա՛ռ զդդմե-
նւոյն ցօղունն և այրեա, և ա՛ռ զմոխիր և լից 'ի ծառոյն
տակւացն վերայ, այլ բնաւ չվախէ 'ի պարզկայէն. ապա
տե՛ս աղէկ, որ շատ չլնուս, թէ ոչ՝ չորացուցանէ վասն

1. Երեքին ևս ՕՕ. սեպտեմբեր գրեն, որ ոչ միայն 'ի վերնագրէն յայտնի սխալ գոլ, այլ զի և 'ի բնագրին յամսեան հոկտեմբերի կարգեալ է խրատդ տնկելոյ ծառսն յիշեալս:

2. Այսպէս յՕ. պակաս թողեալ, այլ միւս ՕՕ անընդմէջ կցոր-դեն « բեւեկնի, և այլ ամենայն ծառ անսերմ, և այլն:

3. Ասա ևս միւս ՕՕ. միահետ գրեն. « եղեամն չորացնէ: Այլ զլի-մոնի ծառոց ձուղքն. և այլն:

4. Այսինքն, պարզկայ օդն չվնասէ:

իւր առաւել տաքութեանն. ապա քիչ լից և փորձեա, ազնիւ է և լաւ. ամենայն հով իրաց մոխիր՝ առաւել տաք է, փորձով:

Նոյնպէս և զմիրգսն, զորոց վերագոյն գրեցաք՝ յայս ամիսս պարտ է դնել 'ի սնտուկն և պահել ձմռան համար: Նոյնպէս և զհիլլիօնն սրբել և սաածել: Եւ շատք այն են որք զիւրեանց հերկերն չինեն և սարեն և 'ի հոկտեմբեր ամիսն ցանեն: Եւ թէ լինի որ յետ ժը աւուրն անձրեւ գայ մէկ հետ՝ լաւ է. բայց թէ չգայ՝ չքննէ վասն այնր, որ երբ գայ՝ լաւ է աղէկ: Բայց յառաջ քան զհոկտեմբերի մուտն չէ ամենեւին արժան հնտանք ցանել, զի պիղծ է. և տես աղէկ՝ երբ աստղն որ անուանեալ կոչի Փեքհէ՝ անկանի, ապա ցանես, նա խիստ ազնիւ լինի և լաւ:

## ԴՈՒՌՆ ԾԴ

*Յաղագս տնկելոյ խրատ: — Նոյեմբեր:*

Արժան է 'ի շող և 'ի ջերմային վայրսն ուր մատներ և նօսր գետինք լինին և ծպիտակ՝ 'ի նոյեմբեր ամսոյ մուտն սկսանիլ և տնկել զայգիսն, մինչև 'ի դեկտեմբերի քսան օրն. բայց 'ի ծանր և 'ի գիջային գետնի 'ի փետրվարի նոյնպէս և 'ի նոյեմբերիս պարտ է վատակել և փորել և աղբել զամենայն այգիսն, զդահն և զմատղաշն. և գոզն լաւ է այգեայն քան զաղբն, որ յամէն տնկի տակն կիսակուժ մի լնուս, կամ հանապ մի, երբ նոր փորած լինի. և թէ 'ի սոյն ամիս հօտես 'ի ջերմային վայրսն՝ աղէկ է. բայց ստուգեցաք որ յաշնան հօտելն աղէկ է, ուժաւոր առնէ ըղտունկն: Բայց 'ի գարնան հօտելն՝ բերին լաւ է, զի շատ բեր տայ առնել քան զաշնանն: Նոյնպէս և զձիթենիքն՝ 'ի յայս ամիս պարտ է հօտել, և զհին գոսացեալ ձիւղսն հատանել. զի թէ հատանես զգօսն՝ նա մատղաշն լաւ է, ծաղիկ և բեր առնէ և մեծ լինի պտուղն: Եւ 'ի սոյն ամիսս զպատրուսած տունկն և և զորթն 'ի հող թաղել, զի եռացուցէ զինքն հողն ընդ մայրանն և ամրացուցանէ. Նոյնպէս փորել և ակնբացել զամենայն՝ լաւ և աղէկ ոչխարաց աղբով:

կամ յամեն տնկի տակ պտղի ձիթի տուրտին լից երեք նուկի կամ չորս, և 'ի տուրտինն սակաւ մի աղցանեա։

Եւ 'ի Նոյեմբեր ամսոջս տնկեա և ցանեա զկաղնի ծառն, և ցանեա զբակլայն, և զքաղցուով լցած կարասանւոյն զփրփուրն սրբեա 'ի բերանոյն, որ յեռացմանէն ժողովեալ լինի։ Եւ յայս ամիսս պարտ է ժողովել զայս ազգ ծառոց տունկքս, զոր գրեմք, և տնկել. տանձենի, խնձորենի, կեռասենի, նռնենի, ընկուզենի, և զայլ այսպիսիս։ Եւ զշուտահաս ծառսն յայս ամիսս արժան է պատրուսել։ Եւ յայս ամիսս 'ի փուլն պարտ է զամենայն փուշ և զանտառախիտ քաղն սրբել կտրել, և 'ի շինոյն հանել, 'ի փուլն՝ որ՝ լուսնկայն փուլ լինի լաւ է։ Եւ են ոմանք որք 'ի նորն լուսնին մինչև 'ի լրումն տնկեն. և այլք՝ երբ լուսինն երեք աւուր լինի։ Եւ են՝ որ երբ լուսինն զԺ օրն անցանէ, նա մինչև քսան աւուր լինի՝ չիշխեն տնկել. վասն զի ասեն, թէ լուսնին լիութիւնն չորացուցանէ և սմքեցընէ զտունկն։ Բայց մեք յայն եմք հաւան, որ 'ի չիքն, երբ աներևան լինի լուսինն՝ լաւ է քան զամէնն, զի տունկն զարևուն ջերմութիւնն միայն առնուցու, և չառնուցու զարևուն և զլուսնին՝ 'ի ցերեկն և 'ի գիշերն, և յերկուցն շողէն չորանայ։ Եթէ ոք կամենայ շինուց փայտ կտրել, 'ի չիքն երբ լուսինն չկենայ՝ լաւ այն է [1]։

1 Յետ այսորիկ միւս ՕՕ կարգեն զյետագայ երկար բանն, զխաւարչանչիւր աւուրց կամ գիշերաց երևոյթս կամ փոփոխմունս լուսնին այսպէս. «Եւ այսով ճանաչես զլուսինն երբ ներքև լինի ծնեալ. Որ առաջին, իրիկունն երևայ լուսինն 'ի կէս պահէն. յառաջ ներքև գետնին է, մինչև 'ի մէկ այլ օր յառաջի պահուն կէան ելնէ։ Յերկու գիշերն երևայ մինչև 'ի մէկ այլ աւուր 'ի չորս բաժնէն մէկ կենայ աներևան։ Ի Դ գիշերն՝ երեք պահն, ու պահ մի մէկ բաժին կենայ, մինչև 'ի մէկայլ օրն 'ի յայդ չաքդ կենայ։ Ի Ե գիշերն զերեք պահն և պահ մի վեց բաժին, մինչ 'ի մէկ այլ օրն 'ի նոյնդ։ Ի Զ գիշերն մնայ զչորս պահն ու պահ մի եօթն բաժին. մինչ 'ի մէկ այլ օրն 'ի նոյն։ Է գիշերն մնայ Ե պահ, և պահ մի վեց բաժին, և բաժին մի վեցեակ, մինչ 'ի մէկ այլ օրն 'ի նոյն։ Յ' Թ գիշերն եօթն պահուն 'ի գիշերոյն 'ի վեր կենայ, և պահու մի վեցեակ, մինչ 'ի մէկ այլ օրն 'ի նոյն։ Ի տասն՝ կենայ 'ի գիշերուան յութ պահէն 'ի վեր և պահու մի ութ բաժին, և բաժնի մի վեցեակ, մինչ 'ի մէկ այլ օրն 'ի նոյն։ ԺԱ գիշերն կենայ ինն պահէն 'ի վեր մինչև զմէկ բաժնին վեցեակն։ Ի ԺԲ գիշերն կենայ Ժ պահ. և

## ԴՈՒՌՆ ԾԵ·

*Յաղագս գիտութեան աստեղաց։*

Ի վեցերորդ օրն ամսոյս [1] ելանէ աստղն որ կոչի Փէքհէ՝ յարևելից կողմանէ. և յութերորդ օրն ելանէ Ճէտին, որ է Այծեղջիւրն, յարևմտից կուսէ։ Եւ 'ի ժը երորդ օրն ելանէ Տապրանն յարևմտից կուսէ. 'ի քսան և չորրորդ օրն մարի Տապրանն 'ի յարևցայթքն։ Ի ժա օրն անկանի Բազմաստղն յարևելից, և անկանի Անագ իւլ-Ճէվզայն [2]։ Ի ժդ օրն ելանէ այն աստղն Նիսր իւլ-վագի, որ Թարգմանի Անկեալ արծիւ։ Ի ժե օրն անկանի Տապրանն. և 'ի ժը օրն ելանէ Ճէվզայն. և անկանի Փաքհայն յարևմուտք։ Ժա օրն անկանի Ճէվզայն։ Ի ժե օրն ելանէ Այուխն [3] յարևելք։

պահու մի զերեք բաժինն, և պահու մի վեցերակն, մինչև 'ի մէկ այլ օրն 'ի նոյն։ Ի ժգ կենայ ԺԱ պահն և պահու մի զերեք բաժին։ ԺԴ գիշերին կենայ յարևցայթն մինչև յարևմարքն. և յայս օրերս լաւ է բանել 'ի տնկելն, քան երբ արեգակն վերև կենայ։ Ի ժե գիշերին 'ի կէս պահէն կենայ աներևան, և Թապալուամն առնէ 'ի մէկայլն որ պակսէ։ Ի ժզ կենայ 'ի մէկ պահուն մինչև 'ի գիշերուան Ա պահն։ Ի ժէ կենայ զաւուր Ա պահն և զմէկայլն կէսն մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ Ի ժը կենայ Բ պահէն 'ի վեր ու զմէկ պահուն վեցերակն մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ Ի ժթ օրն կենայ յաւուրն Գ պահէն 'ի վեր մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ Ի օրն կենայ զերեք պահն ու պահուն Զ բաժին մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ ԻԱ օրն կենայ յաւուրն 'ի Դ պահէն և պահու մի Թ բաժին մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ ԻԲ օրն կենայ աներևան զհինգ պահն և պահու մի Զ բաժին. և պահու մի վեցերակ մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ ԻԳ կենայ աներևան 'ի Զ պահ զաւուրն և պահու մի Ա բաժին, և բաժնոյ մի վեցերակ մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ ԻԵ կենայ աներևան ութ պահն, մինչև 'ի նոյն։ ԻԶ կենայ աներևան ութ պահ, և պահու մի ութ բաժին, մինչև 'ի նոյնն։ ԻԷ, կենայ աներևան յ'ինն պահէն 'ի վեր, և պահու մի Է բաժին. և բաժնի մի վեցերակ մինչև 'ի գիշերն 'ի նոյնն։ ԻԸ, կենայ աներևան 'ի Ժ պահէն 'ի վեր և զմէկ պահու Գ բաժինն, և բաժնի մի վեցերակ մինչև 'ի գիշերն 'ի նոյնն։ ԻԹ, կենայ ներքև գետնին 'ի ԺԱ պահէն 'ի վեր, և պահու մի Գ բաժին և բաժնոյ մի վեցերակ, մինչև 'ի գիշերն 'ի նոյն։ Լ օրն դառնայ յարևելս։

Եւ յեօթն օրն 'ի յայս ամսոյս ելնէ աշուննն և մտանէ ձմեռն։

1. Միւս 00. Ի դեկտեմբեր ամսոյ վեց օրն։
2. Երկաւորք համաստեղութիւն։
3. Թուխ Սրջ համաստեղութիւն։

ԺԷ օրն շրջի աշունն 'ի ձմեռն ։ Ի ԻԷ օրն ելանէ աստղն Ջրհոս ։ ԻԵ օրն անկանի Անկած արծիւն յարևմուտք ։ ԻԵ օրն անկանի աստղն Գաղպ իւղ-եսէտ, որ է Միրատ աւուիւծու ։ Ի ԺԹ օրն անկանի Ջրհոսն յարևմուտք ։ Ի Նոյեմբերի Գ օրն անկանի՝ Անկած արծիւն 'ի յարևմուտք ։ ՑԷ օրն ելանէ 'ի հարաւային կողմն ։ ԻԳ օրն անկանի Շէրղայն [1] 'ի յարևմուտք. 'ի ԲԷ օրն ելանէ Սեմմաք ռամիհն յարևելք. 'ի ԻԷ օրն ժամ է՝ յորում երևի Միծառն ։

## ԴՈՒՌՆ ԾԶ·

*Ցաղագս ձանաչելոյ զայգեաց պատշաձաւոր գետինն :*

Քան զամենն լաւն սևն է և մաքուրն, որ կազմին և կաւոտ չլինի. և երբ հոր փորես՝ նա ջուրն քաղցր և անուշահամ լինի, և ոչ լինի աղի, լեղի կամ ծանրահամ. յայսպիսի գետինս՝ ոչ երաշտն վնաս առնէ և ոչ անձրևն. բայց զայգւոյ համար գետինն պարտ է լաւ փորելով՝ իմանալ զխորութիւն և զհամն. զի մի լիցի երեսքն աղէկ և տակքն վատթար. կամ ատակն աղէկ և երեսքն վատ. և այս այսքան ։

## ԴՈՒՌՆ ԾԷ·

*Ցաղագս ցեղից և ազգաց խաղողից և տնկոց :*

Եթէ որ ազգ որ կերպ գետնոյ պատշաձի. զի պարտ է գիտել, որ զսև ազգ խաղողն՝ 'ի սպիտակ գետին պարտ է տնկել, զի անդ լաւ դարմանի. և զսպիտակ խաղողն 'ի սև գետինն, զի և այս անդ լաւ դարմանի ։ Բայց եթէ 'ի սպիտակ գետինն պատառած մքռա չըլինի՝ նա լաւ է սակաւ մի. բայց թէ լինի՝ ամենևին պիղծ է. մի անդ հալաս առներ ։ Նոյնպէս և ինչ որ նօսր և աւազոտ գետինն. չէ պարտ տնկել, քան զայն ազգ խաղողն որ որթն սպիտակգոյն լինի և պտուղն

1. Տես 'ի Լ դուռն ։

բոլոր և պինդ՝ 'ի սև պատուպուի[1] կերպ։ Եւ 'ի նոսր գետինքն, ազգ մի սպիտակ խաղող կայ, որում Հոռոմն Ատինաս[2] ասէ։ Եւ այլ կայ որում Փուրփուզնա[3] ասեն։ Եւ այլ որում Ճաւարս[4] ասեն. զայսոսիկ թէ տնկես՝ լաւ է քան զայլ ազգ։ Եւ արժան է որ զամէն ազգ մեծապտուղ և ջրջրուկ խաղողն 'ի նոսր և 'ի ցամաքային վայրում տնկէ ոք. և զցամաքն և զպինդն 'ի գէջ և 'ի յուժով գետինն, որ այն՝ զայն կեցուցանէ և այն զայն։ Զի թէ զգէջն 'ի թանձր գետինն տնկես՝ նեխեցուցանէ երկու գիջութիւնն (և) զպտուղն աւիրէ։ Նոյնպէս և թէ զցամաք խաղող ազգն և զանջուրն 'ի նօսրն՝ նա երկու ցամաքայինքն զպտուղն ցամաք և անջուր առնեն, և չօգտիս ընաւ 'ի վաստակոյն։

Եւ գիտելի է որ բուն և լաւ գինին այն է, որում յունարէն ասեն Բուրդամուշ ալինոս[5], և լինի 'ի Փուսայու երկիրն՝ 'ի յԱփլինու գաւառն։ Եւ յայն այգեացն 'ի տնկէն ով կարէ գտանել՝ նա լաւ է քան զամենայն տունկ. և մեղուքն ցանկան յայն պտղոյն ճաշակել. և այնչափ պտղաբեր լինին տունկք այնորիկ՝ որ դժար երեւին տերեւքն, այլ շրջապատեալ ունին բազմութիւնք կուզիցն զտունկն, և պտուղքն 'ի կոյզն իբրև զձիւն փայլին. և 'ի վերայ ծառոյ հանես զնոսա, կամ 'ի վերայ արիշայ. և յամենայն ժամ զտերեւն քաղեն վասն այն՝ որ հասուցանէ զխաղողն։ Եւ երբ գինի նորա յիստակի՝ պարտ է փոխել 'ի մրրէն և յայլ աման լնուլ։ Եւ այն այգին որ 'ի չոր և 'ի նոսր գետինն լինի դրած, նա ընդդէմ արեւուն արեգին լինի

1 Միւս ՕՕ. պատուղակի կամ պատուրկի։ Տես 'ի բառս։

2 Յոյնն՝ Փսիթիա կամ Իփսիթիա։

3. 4. Յոյնն՝ Կորկինթական կոչէ զերկրորդս այս ազգ խաղողոյ. և զերրորդն խըշխ կամ զխուս, որ է չիկագոյն։

5 Աղաւաղեալ է ընթերցուած բնագրին և թարգմանութիւնն. զի Յոյնն ասէ լաւագոյն յայգեաց զկոչեցեալն Մերոփիս Μεροίτης. որ և թուի մրտենեայ կամ մրտենական կոչումն. 'ի Բուրդամուշ յեղափոխեալ 'ի մերումս. և զգինի սորին կոչէ Տենփրողուլինոս, (ծառագուարձ?), որոյ կէս բառիդ՝ փոխեալ է յ'ալինոս' 'ի մերումս։ — Միւս ՕՕ. ընթեռնուն Բուրգամուշալինոս։ Իսկ գաւառք յիշեալք 'ի բնագրին՝ են Բիւթանիա, որոյ փոխան Թերևս մերս եդեալ է Փուսայու երկիր, իբրու Պրուսայ՝ որ մայր քաղաքաց է Բիւթանիոյ. և հանդերձ այլովք Պափլագոնիա, որ թուի յեղեալ յԱփլինու կամ յԱփլինու գաւառ։

և կամ ընդ հարաւ և ընդ արեգելին 'ի մէջն, նա լաւն այն է:

Եւ թէ զամենայն տունկ որ յօտար երկրէ յերկիր տանիս, և 'ի խորու և յուժով գետին դնես՝ լաւն այն է. և թէ 'ի կռնակս լերանց լինի՝ լաւն այն է. զի նարեգակն և բարձրութիւն լերանն յօդոյն ցասմանէ զերծ պահեն և փրկեն զայգին: Բայց 'ի կատար լերինն մի դներ, զի վատ է. 'ի լեռնոտներն աղէկ է: Եւ թէ ցած բլուր լինի՝ տես որ հանց տեղ չլինի՝ որ երբ անձրև գայ՝ նա զհողն տանի: Եւ Թրակի գինին[1] լաւ տունկ է քան զինչ այլ ազգ կայ, բայց ինքն բարակ լինի և վատոյժ. և այսմ Դիմոկրատէս իմաստունն[2] վկայեաց, և ճշմարիտ է:

## ԴՈՒՌՆ ԾԸ.

*Յաղագս թէ յորպիսի վայրս պարտ է զայգին տնկել:*

Պարտ է նայել 'ի տեղին. թէ ջերմային լինին տեղիքն՝ նա ծմակն լաւ է, 'և թէ ցրտային՝ արեգդէմն լաւ է. զի լերանց օդն ջերմայնոյն օգուտ է, և հարաւայինն՝ ցրտայնոյն. և եթէ միջավայրք լինի տեղն, նա ընդդէմ արևելիցն լաւ է, որպէս յառաջ յիշեցաք: Բայց 'ի յայն հողմոյն որ յունարէն արիս[3] անուանի՝ պարտ է զայգին պատրաստ ունել. և վասն այսորիկ զարևելեան սահմանքն գովեցաք, զի լաւ է. քանզի այդ հողմդ յարևելից կուսէ է և խռուացուցանէ և չոր չամիչ առնէ զբերն և աչոկէ: Բայց երբ յարևմտից կուսէ լինի՝ նա արևմտեան օդն խոնաւ է և լաւ, զբերն առողջ պահէ և զխաղողն ջրով:

1 Միւս ՕՕ. ԽԳԻՆ. այսինքն՝ այգին: Բայց Թրակի ոչ զԹրակիա աշխարհն ցուցանէ բնագիրն, այլ զԹիրակեան գինի, այսինքն գեղթափ. և զայս յատկութիւն ընծայէին ընտիր գինւոյ Թասոս կղզւոյ. որև Թասուն գինի:

2 Դիմոկրիտոս իմաստասէր ժամանակակից Սոկրատայ, գրեալ էր գիրս զՎաստակոց երկրի, զոր գովութեամբ յիշեն և այլք:

3 Այսինքն Եւրոս հողմն:

## ԴՈՒՌՆ ԾԹ·

*Ցուցակս այգեաց որք 'ի ծովեզերս և 'ի գետեզերս լինին:*

Պարտ է գիտել որ ծովեզրին վասն իւր գիջային օդոյն՝ լաւ է այգեացն և դարմանիչ է տնկոցն: Բայց ամենայնիւ գետեզերքն վատ են և ապականիչ, մանաւանդ այն գետափն՝ որ յիւրմէ բալ և ծուխ վերանայ. զի ծուխն ծնուցանէ զամենայն որդնային և ժժմային հարուածքն. և վասն այսորիկ յայնպիսի վայրացն փախչիլ պարտ է: Եւ ծառոց՝ գետափն ահոկ չէ, այլ օգուտ է:

## ԴՈՒՌՆ Կ·

*Ցուցակս այգեաց և տնկոց սեռից և ազգաց:*

Պարտ է գիտել, զի ամէն ազգ տունկ ամէն տեղւոյ ոչ պատշաճի. ոչ թէ վասն բուսանելոյ, զի թէպէտ բուսանի, բայց գինին վատահամ լինի. քանզի ամենայն գաւառի օդք չեն միապէս, այլափոխէ օդն ըզհամն գինւոյն: Ամիաս[1] տունկն լաւ հաստատուն մնայ յայլափոխմունս օդից և գաւառաց՝ քան զայլ խաղող. և զգինին միահամ բերէ 'ի գիջային 'ի չորային, 'ի հովային և 'ի շողային վայրսն քան զայլսն: Բայց սպիտակ ազգն որ մանրապտուղ է և զտոլի սիրէ ինքն և զծառս 'ի ջերմային գաւառսն, լաւահամ գինի առնէ. և իւր կոյզերն երկայն լինի և տակքն և ծայրքն կուզիցն միապէս հաստ և պտուղքն բոլոր. և երբ լաւ հասանի՝ կարմրագոյն լինի: Եւ է երկիր մի որ կոչի Բծունիա[2], և լինի անդ ազգ մի տունկ որ անուանի

1 Ցոյնն ամինէոս, այսինքն ամինեան, յանուն տեղւոյ 'ի Սիկիլիա կամ 'ի հարաւային Նէապոլիս, որոյ գինի 'ի բազմաց յիշատակի գովութեամբ: Ի թարգմանութեան մերում՝ ստորև Մենիաս և Ամիատին կոչի սա:

2 Այն է Բիւթանիա:

փուքնի[1] և ինքն շոյտ հաստուցանէ զխաղողն, և է մե֊
ծակոյզ. ամէն կուզի երկայնքն բազկականգուն մի է.
և պտուղն բոլոր և սպիտակ, որ՝ զկտերն 'ի ներքս կա֊
րես համարել. և ունի ինքն առաւելութիւն մի քան
զայլ տունկ, զի յամէն ակնէ որք 'ի յուռն լինին՝ ե֊
րեք կոյզ հանէ, և այլ ազգերն հազիւ թէ երկու։
Վասն այսորիկ զսա պարտ է կուրծ հօտել որ չվատու֊
ժէ զտունկն, և զինքն առնէ մեծ տունկ։ Եւ դիմա֊
կաց է ընդդէմ ամենայն ազգ օդոց և անազան ծե֊
րանայ. և գինեթուղխ է և անուշահամ. և զայս ազգս
պարտ է հանել 'ի յարիշ կամ 'ի ծառս։ Եւ այս միայն
կայ, որ շատ չդիմանայ գինին։ Եւ է ազգ մի ևս զոր
ամինատին[2] անուանեն, որ չէ այլ քան զփուքնի, որ֊
պէս գրեցաք։

Եւ յամենայնի արժանէ զաղէկ ազգ տունկն փրնտ֊
ռել. զի Մաղվան[3] անուն ոմն գրեալ է թէ մենիաս
տունկն 'ի լծվար մի այգին Գ̃Ճ ձառայ գինի կու տայ,
և ձառայն է խ̃գ խաստ[4]. և այս ճշմարիտ է։ Բայց
մենիաս տնկիս շատ փոյտ[5] պարտ է թողուլ 'ի հօ֊
տելն։ Եւ ինքնս առաւել լաւն և ազնուականն է. և
վասն այսորիկ պարտ է 'ի մէջ ամենից առաւել զսա
սերմանել, տնկել և պատուսել, և հողով ծածկել, և
յերկայն հօտել քան զայլ ազգ։ Եւ են ոմանք որ խիստ
սակաւ կտրեն 'ի հօտելն, զի շահասիրեն 'ի բերն։
Բայց միջակն լաւ է, որ զտունկն և զբերն շահի։

1 Ի բնագրին այլևայլ ազգք խաղողոց Բիւթանիոյ յիշին, յորոց մի Վոլինի կամ Վոլոնի, յեղափոխեալ 'ի Փուքնի, կամ ըստ այլ ՕՕ. Փուքնին և Փոքինին։

2 Վերոյիշեալն ամինեան։ Բնագիրն ասէ, զՎալինի (փուքնի) ոչ ստորև լինել քան զամինեանն, այլ հաւասար ազնիւ։

3 Այն է Վարրոն Հռովմայեցի։

4 Տես 'ի ծանօթ. ԺԵ գլուխ. աստ Ճառայ կոչի Ամփորեան Յունաց։

5 Մի օր. ֆոյփ։

## ԴՈՒՌՆ ԿԱ.

*Ցուցանէ թէ որպէս պարտ է քաղել[1] զտունկն 'ի յայգւոյն:*

Պարտ է գիտել, զի յամենայն կողմանց չէ պարտ քաղել զտնկելացուն, ոչ 'ի ծայրիցն և ոչ 'ի տակիցն, քան թէ 'ի տնկւոյն միջոյն։ Եւ զմատղաշ ուռն, և ոչ զդահն. զի դահն շուտ դահանայ, և ծայրքն սակաւ բեր առնեն։ Եւ լաւ տնկացուն այն է՝ որ մէջն ուռեր լինի և կարճոստ, և ողորկ և ոչ շատ հաստ։ Եւ յերկայնոստ տնկացուէն՝ որ հաստ լինի և անգիտացն աղուոր թուեսցի՝ պարտ է փախչիլ։ Եւ չէ աղէկ որ ընդ տունկն աւելի կանուխ քաղեն, յառաջ քան զլաւ մի պտկին երևիլն. և այն որ ճարտար շարժի՝ լաւ է, դու զայն ուռն քաղեա. և թող տունկն անհնար 'ի մայրանէն կոճ ունենայ. և 'ի կոճէն՝ որ է 'ի տակքն տնկացուին մինչև 'ի ծայրն՝ տասն ակն լինի։ Եւ զկտրելն սուր կտրչովլ արա, և զկոճն մատին մի չափ արա և ճեղքեա, և զորտուկն հան. և ջախջախեա զտակսն և ապա տնկեա 'ի փոսն. այս լաւ բռնէ և անսղալ։ Եւ թէ 'ի դահ այգւոյ տունկ առնուս, կամ 'ի մատղաշ այգւոյ՝ որ քան զվեց տարւոյ մատղաշ լինի, չէ աղէկ, պիղծ է։

## ԴՈՒՌՆ ԿԲ.

*Ցուցանէ թէ յորժամ է պարտ զտունկն քաղել:*

Եւ թէ ուզես որ յամեցուցանես զտունկն՝ թէ որպէս պահես. են ոմանք որ 'ի գարնանային սկիզբն 'ի փետրվարի եօթն օրն սկսանին և քաղեն. և են ոմանք որ ասեն, թէ երբ պտկէ՝ լաւ է առնուլ զտունկն. և են որ ասեն թէ 'ի սկիզբն։ Եւ թէ յամեցուցանել կամիս զտունկն և ապա դնել, քաղեա զտունկն և ընդ մկրատոմ սրբեա յիւրմէ աղէկ. և զտունկն շինեա և

1 Քաղել՝ իմա առնուլ հանել յորթոյ ուռս, կամ 'ի ծառոց՝ ոստս, առ 'ի տնկել առանձինն, այս է մատաղատունկ առնել:

փոս արա, և 'ի ներքս դիր առանց կապելոյ, և թաղեա 'ի հիւթ տեղւոջ. և 'ի նոյն հողն ուստի առնուս զկնքն թաղես, լաւն այն է։ Բայց թէ շատ կամենաս պահել, թէ 'ի ներքոյ տանն թաղես՝ այն է լաւն։ Եւ ճծ զտնկացուն՝ այս օրինակաւս. զտեղւոյն որք սրով կրտրած լինին, կեղեւեա զտնկին բարունակին կեղևն և ծեծեա զկնքն մանր, և զսատտապն 'ի միասին. և դիր 'ի պտուկ, և ջուր արկ 'ի վերայ, և եփեա մինչև զերդ մեղր դառնայ. և ապա ճծ զտնկացուին կտրուքն, և պահեա հողով քանի ուզես, և տար յերկրէ յերկիր այսու զոր գրեմք։ Շինեա զտախտակէ սնտուկներ, և ծիւթեա աղէկ 'ի դրուցէ. և շինեա արճրճեայ նօսր տախտակ, և դիր 'ի սընտըկին ռւն, և դիր զտնկացուն 'ի ներքս և ամուր փակեա. և խծկեա զփակսն և ծիւթեա, զի 'ի ներքս օդ չմտանէ, և տար քանի կարես. երբ բանաս՝ նոր և թազէ գտանես։ Եւ են ոմանք որ ծածկեն զտակս տնկացուին այն իրօքն՝ զոր Պօլօնիացիքն կոչեն գետնամօրուք, և Սուրացիք ռիպուս[1]. և այս սովորական է մեզ և փորձով որ լաւ պահէ։ Եւ այլ ոմանք զփառային կոթէքն[2] փետեն 'ի գետնէն և 'ի վերայ զտունկն ծածկեն, նոյնպէս և ներքեւն, նա լաւ պահէ. և թէ զնոյն ինքն փառայն դնես։ Արդ՝ այս ճշգրտիւ գիտելի է որ տնկին չորացուցանողն և ապականողն օդն է. և անտի պարտ է զկնքն աղէկ պահել, և թէ յայլ պատճառանաց թռումի՝ բաց 'ի հողմոյ, նա օր մի և գիշեր մի զտունկն 'ի գնայուն ջուր դիր, և ապա հան տնկեա աղէկ լինի։ Եւ տես թէ գետինն ուր տնկել կամենաս չորացեալ իցէ, և կենայ հնար որ ջրես և ապա տնկես՝ լաւն այն է։ Եւ որպէս յառաջն գրեցաք՝ խիստ լաւն զոր փորձեալ եմք այն է, որ երբ աղէկ շարժեալ լինի տունկն՝ յայնժամ տնկես։

1 Ի բնագրին չիք այս բան, ոչ ազգքն և ոչ իրքն. Գեփնամօրատ թուի ազգ մի մամռոյ. իսկ առ ոճդաս միւս ՕՕ. յաւելուն՝ «որ է մեզ». գուցէ սեւագրելի էր։
2 Միւս ՕՕ. կոթերն։ — Իսկ ֆառայ բոյս անծանօթ է մեզ։

## ԴՈՒՌՆ ԿԴ.

*Երբ յորժամ պարտ է տնկել։*

Եւ գիտելի են գաւառքն և ազգի ազգի սովորութիւնք մարդկան ազգիս։ Են ոմանք որք ասեն թէ մենակ[1] յետ կթելոյն 'ի տերևաթափին աղէկ է տնկելն. և են որք 'ի գարնանամուտն 'ի փետրվարի եօթն օրն։ Բայց մեք զայս լաւ փորձով գիտացաք, որ 'ի վատոյժ և 'ի չորային և 'ի մատներ գաւառումն՝ որ 'ի ջերմային դաշտումն, պատեհ է որ 'ի փետրվարի եօթն աւուրն 'ի վեր, մինչև 'ի մարտի առաջին օրն լցին տնկուածքն. և 'ի գիջային և հաստագետին գաւառումն՝ 'ի վերջս գարնան. բայց 'ի յաղթ և 'ի լեղէհամ տեղիսն, յաշնան յետ այգեկթոյն, յորում տեղան ձմեռան անձրևքն և ողողեալ լուանան զհողն և քաղցրացուցանեն և թունել տան զտունկն և դարմանեն։ Եւ արա[2] պարտակ. զխիճ' 'ի գետափին տեղեաց առնուլ պիտի, և լընուլ 'ի տակս տնկին, զի հովացուսցէ զնա և տարցէ զդառնութիւն հողոյն և մնուսցէ զտունկն և պահեսցէ։ Եւ երբ դնել կամենաս, նախ սրբեա զտերևսն և զմկրատոմն և ապա դիր։

Եւ զպարպարտ գետինն պարտ է յամառն վաստակիլ և կակղել. զի երբ գան անձրևքն՝ կակղացուսցեն և թարմացուսցեն զտեղիսն, որ յորժամ տնկես՝ աղէկ բռնէ։ Բայց զնօսր գետինն չէ պատեհ յամառն վաստակել, զի չորացուցանէ և աւերէ զնա արեգական ջերմութիւնն։ Ապա զվաստակելն, զփորելն և զտընկելն՝ 'ի մէկ ժամանակ արա, 'ի յաշնան, երբ անձրև առնու։ Եւ են ոմանք որք հաւանեալ են, զի զջերմային գաւառաց տնկելն 'ի հոկտեմբեր ԺԵ օրն սկսանին, մինչև 'ի դեկտեմբերի ԻԵ օրն. և անտի մինչև ԽԵ օր ելանէ, որ լինի փետրվար ամսոյ եօթն օրն, տես որ ամենևին տունկ չցըցես 'ի հող. թող որ գարնանային օդն քաղցրահամ փչէ, և ապա համարձակ տնկեա։

1 Այսինքն շուտով, անմիջապէս։
2 Միւս ՕՕ. գարմաննեն և առնեն պարտակ։

Բայց 'ի լերինս և 'ի ցրտային ձմեռան՝ ըստ իւրաքանչիւր ցրտային կերպիցն, 'ի ջերմութիւնն և 'ի շարժս տնկոյն պարտ է հայել, և ըստ այնմ առնել զտնկուածքըն։ Եւ այսր աղագաւ հաւանեցաք, որ զջերմային և զնօսրագետին տեղեաց տունկսն՝ յաշունն դնեն, զի զձմեռն բոլոր՝ զտակն և զմազմզուկսն դէպ 'ի վայր շինեսցէ, որ երբ գայ գարունն, նա զվայրն սար շինած գտանես. այնուհետև դու զվերն և զծլելն միայն հոգա. Թէ ոչ՝ զերկու դեհն զվայրն և զվերն 'ի միասին չկարէ պաշտպանել. և այնր աղագաւ սղալութին լինի։ Պարտ է ...[1] պահէն մինչև 'ի տասն պահն առնել զտնկուածքըն. քանզի 'ի յուժգին հողմոյ սկիզբն՝ 'ի կատարումն գան աւուրն. և տես աղէկ որ տնկելոյ գետինն աղէկ հիւթ լինի և չլինի չոր։

ԴՌՌՌՆ ԿԴ.

*Յաղագս ճանաչելոյ զտունկն և զտնկուածս նոցա թէ որպէս լինի:*

Են ոմանք որ 'ի ցրտային լերինսն 'ի մէկ փոսն երկու երեք ուռ տնկեն, որ Թէ ամէնն բռնէ՝ նա լաւ է, և Թէ ոչ՝ մէկն անսղալ լինի։ Եւ արժան է զտունկն 'ի պառակ դնել և չդնել 'ի յոտն, զի պառակն լաւ տակ առնու։ Եւ զփոսոյն խորութիւնն երկու Թիզ արա, և զտնկին դնելն աղուոր 'ի համկէք արա, որ չճխմի. և Թեթև ծածկեա, որ արեգական ջերմութիւնն իջանէ 'ի տակսն և բանեցընէ զլինքն։ Եւ զգետինն այսպէս պարտ է համտեսել. 'ի ջուրն դիր զհողն և պըղտորեա, և առ զհամն. եԹէ աղեհամ լինի՝ աւազ դիր 'ի տակսն, կամ անոյշ հող, որպէս յառաջն ասացաք։ Եւ գիտացիր. փուխ գետինն լաւ է այգեաց հաստար քան զկաղձինն։ Եւ այսպէս արա զճանաչելն գետնոյն. փորեա կանգուն մի, և զհողն կուտեա յեզերն փոսոյն, և դիր ընկոյզ մի 'ի փոսն, և արկ զհողն դարձեալ 'ի վերայ փոսոյն. և տես, Թէ փոսն կրկին զբեր հողն

[1] Պակասէ սկիզբն կամ Թիւ պահուն. բայց միւս ՕՕ. Այլ և պարտ է մինչև 'ի տասն պահն, ևն։

խոլխմ առնու, գիտացիր որ փուխ է գետինն և գեղեցիկ և լաւ. և թէ փոմն 'ի հողոյն չառնու 'ի լման, նա կաղձին է և վատ տնկի, բայց արտի աղէկ է։

## ԴՈՒՌՆ ԿԵ·

*Երբ քանի ակն պարտ է 'ի տնկին ուռն թողուլ :*

Տես թէ ակներն արձակ լինին որթոյն, նա ութ ակն պարտ է թողուլ. և թէ կարձոստ է և նեղակն՝ տասն ակն թող։ Բայց երբ բռնէ տունկն, տես թէ բազմախիտ լինի և շատ հանէ, դու ըստ չափոյն պակասեցո։ Բայց 'ի վեր քան զամէնն տես բնաորթն և զուժոյն, և անտի թող զաձն, մէկ աձ, և երբ խիստ շատանայ, երկու, տես որ այլ աւելի չթողուս։

## ԴՈՒՌՆ ԿԶ·

*Երբ որպէս պարտ է առնել զփոսս տնկոցն :*

Տես, 'ի դուր տեղն երեք թիզ արա զխորութիւն փոսոյն. և տեղի որ դարեփոս լինի՝ չորս թիզ պիտի առնել. վասն այնորիկ որ հինքն հաւանեալ են. զոր թէ այլ խորու առնես՝ արեգակն չկարէ գոյացուցանել զտունկն. և թէ այլ պակաս՝ նա աւելի ջերացուցանէ և չորացուցանէ. և այսու չափած և կշռած է իմաստնոցն. զոր թէ աւելի խոր առնես՝ արեւն չկարէ ծառայել, նեխեցուցանէ զտունկն գիջութիւնն գետնին. և թէ պակաս՝ չորացուցանէ արեգական ազդուութիւնն. ապա չափն և սահմանն այդ է։

## ԴՈՒՌՆ ԿԷ·

*Երբ որչափ պիտի այգեպարտիզոյն և տնկոցն 'ի միմեանց հեռաւորութիւն, կամ քանի պիտին :*

Զհետեւակ այգւոյն զպարտէզն, հեռի 'ի միմեանց վեց ոտն պիտի առնել, մեծ ոտներ, և զտնկերն նոյն-

պէս, որ ղորդ 'ի պարան գայ զսարբնայոյն.[1] Հեռի 'ի միմեանց պարանքն ժԵ ոտն, և տունկք վեց ոտն, զի սարբնայոյն միադեհ ունի զպարանին ղորդութիւնն, չունի չորեք կողմանց։ Եւ թէ այսպէս չլինի՝ նա չկարէ մտանել օդն 'ի ներքս, և մնուցանել զբերն։ Եւ եթէ ոք յամէն երկու տարի մէկ անգամ զսարբնայով այգին աղէկ վաստակէ և ցորեան ցանէ, նա գինին այլ աղէկ լինի և անոյշ։

## ԴՈՒՌՆ ԿԸ·

*Յաղագս այգի տնկելոյ խրատք:*

Են ոմանք՝ որք առնուն զխաղմատն և զկաղինն[2] և կեղևեն և աղան խոշոր զերդ բակլայ և այլ մանր, և երբ դնեն զտունկն՝ նա յիւրմէ 'ի տակն լնուն ճանկ մի, և ապա զհողն 'ի վերայ ածեն. և այլ ոմանք՝ ըղձքուշնայն աղան կորկոտ, և 'ի կաղինն խառնեն կէսուկէս. և զերկուսն ևս լնուն 'ի տակն տնկին, և ապա զհողն 'ի վերայ. Եւ այլք զբակլային և զխսուան, ըղձքուշնային և զոսպան յարդն՝ միաչափ յիրեար խառնեն և լնուն 'ի տակն, և ապա զհողն 'ի վերայ։ Եւ այսոքիկ ամէնքս տան աղէկ բռնել, և զամենայն ազգ պատահարս ճիճեաց և որդանց սպանեն 'ի տնկէն. և թէ գողով թանաս զվերոյանուանեալ դեղերդ՝ նա խիստ լաւն այն է։ Եւ պարտ է որ թազէ կուով պախրէից օծանեն զտնկին տակն, ևս առաւել զկտրածսրն և զգանածսն. և թէ զփոսն այլ օծանեն՝ լաւ է, որ պատահարաց բնաւ մերձենալ չտայ 'ի տունկն։ Եւ թէ կամիս որ այգւոյն բերն շուտ գոյանայ 'ի տնկէն, դու ժողովեա խաղողի կտեր բազում մօդ, և յամէն տնկի տակ ափ մի լից, նա տայ աղէկ բռնել, և շուտ բեր առնել։ Ի ծայրն տնկին ամանով մի ջուր կախեա, զտնկին ծայրն 'ի մէջն դնեա, ոյժ տայ տնկին։

1 Թուի յայսմ տեղւոջ պակաս բան՝ զքաշաբեր այգւոյ։
2 Միւս ՕՕ. Խաղմատ կաղինն։

## ԴՈՒՌՆ ԿԹ.

*Այլ խրատ յաղագս այգի տնկելոյ:*

Գիտելի է որ ամենայն ազգ խաղող չէ մէկ բնութեան, այլ զանազան են. և 'ի մէկ ժամ ոչ հասուցանեն զխաղողն՝ տունկքն: Զի կան որ կանուխ հասանին և կան որ անագան. են որ սև են, և են որ սպիտակ. են որ կարմիր, և են որ կանանչ. են որ երկայնապտուղք են և են որ բոլոր, և այլք միջակք. են որ քաղցր են, և են որ թթուահամ, և են որ փոթոթ. և զամէն մէկն ըստ բնութեան իւրոյ ազգին՝ պարտ է ստածել և չինել: Վասն այսորիկ չէ աղէկ զամէն ազգերն 'ի միասին տնկել, որք չիցեն հաւասարք, զի խանգարեալ աւերեն զմիմեանս. և այն կու աւերէ զգինին, որ զհասածն և զխակն հետ իրերաց կու խառնեն 'ի կթելն: Նոյնպէս և զսպիտակ խաղողն հետ սևին չէ պարտ կթել, ապա թէ զատ զատ տնկես և 'ի շահ ածես՝ արժան է և լաւ:

## ԴՈՒՌՆ Լ.

*Վասն այնր՝ թէ զտնկին փոսն քանի ցեղ պարտ է առնել:*

Գիտելի է որ 'ի սպրկիկ և 'ի դուր գետինն՝ պարտ է զփոսն տնկին բոլորակ առնել, և խորու երկու ոտն և լայնութիւն երեք ոտն. և ապա 'ի փոսիդ զուռն պերպեռով ցից 'ի վայր զարկ՝ ութ մատն, և դիր ըզտունկն այն օրինակաւն և դեղերովն, որպէս գրեցաք յանցեալում դրանն. և կամ աղբ ոչխարաց լից և ապա զհողն 'ի վերայ: Եւ հետևապէս զամէն տնկմիջերն աղէկ փորեա. և 'ի ցախուտ դարուփոս գետինն՝ պարտ է ըստ երկայնութեան պարանին ծայրէ 'ի ծայր խէնտէկ փորել, երկու ոտն 'ի լայն և երկու ոտն 'ի խորուն. և ապա 'ի տեղն տնկին՝ ուր չափն առնու՝ պերպեռովն զարկ և ծակ արա ութ մատն, և զտունկն 'ի ներքս դիր, և զբոլորն տնկին աղէկ ծածկեա. և զայլ խէնտէկն 'ի բաց թող երկու տարի. և յետ երկու տարւոյն լից աղ-

բով զխէնտէկն, և զհանած հողն 'ի վերայ բեր. և դուրծ և վաստակեա, և երեք տարի ապա հօտեա: Եւ տես որ մինչև երեք չորս տարիքն լմըննայ՝ յինքն բնաւ սուր չհասուցանես: Եւ այսմ հին իմաստունքն հաւանեալ են, որ թէ հասուցանես կամ հօտես՝ վատուժէ և աւերի. զի պիտի որ երեք տարի հանգչին: Ապա զգետինն աղէկ վաստակէ և փորեա քանի կարես:

## ԴՈԽՈՒՆ ՀԱ.

*Ցաղագս ազգաց և կերպից այգւոյ, որք 'ի վերայ ծառոց ելեալ պատատին:*

Եւ զայսպիսիս արձակ արձակ պարտ է տնկել, զի 'ի միջոցմն վաստակեսցեն և ցորեան և հըռնտանք ցանեսցեն: Եւ չէ պարտ յօտար ազգ ծառս հանել զորթատունկն, որ թանձրատերև և խիստ շուք լինին, այլ 'ի փիճի, կամ 'ի սօնոպրի կամ 'ի բարտի և կամ 'ի պիծխի,[1] և յայլ այսպիսիս. և զծառսդ երեք գիրկ թող որ բարձրանայ կամ թէ երկու գիրկ,[2] ըստ ուժոյ գետնոյն. զի 'ի յերկիրն Պօլոնիոյ 'ի գաւառն Թրսանոս,[3] զծառսդ վեց եօթն գիրկ թողուն որ մեծանայ, և այս է լաւ: Եւ գիտացիր զաղէկ գետինն, և երկայնացո զծառն որ ուժաւորի, ապա 'ի վատոյժն երեք գիրկ արա ըստ ուժոյն. և զճիւղմն ուժովացո ընդդէմ արևելից և արևմտից. և յերկու կողմանց տարածեա զճիւղմն և զայլն կտրեա, որ պարընմիջերն 'ի բաց հանն, նոյնպէս և զգլուխն ծառոյն կտրեա քան զչափն զոր գրեցաք: Եւ զծառտկերն այնպէս փորեա և սրբեա, որպէս զտնկին, և այլ աղէկ: Եւ զայսպիսի այգիս պանդրած մազմզկերովն պարտ է տնկել. և

1. Ծանօթագոյն են այլք 'ի ծառոցդ յիշելոց, թէ և ոչ նոյնք ըստ բնագրին այլ նմանատեսակք. իսկ Պիծխի՝ զոր միւս 00 Բէծխի գրեն, 'ի յունին σφένδανος և 'ի լատինն Acer գրի. ապա նոյն է ընդ թխկի կամ Ըխքի ծառոյ, որ ցարդ լսի 'ի Հայս. փռ. Erable.

2. Բնագիրն 30 կամ 40 ոտն ասէ, և զվեց եօթն գիրկսն՝ 60 ոտնաչափ:

3. Երկիրն Բիւթանիա է 'ի բնագրին, տեղիքն՝ գետոյք Տարսինոս և Վուանիս Ταρσηνός, Βοανοῖς: Միւս 00 մեր գրեն Պորոնիա, Թոսաբոս:

զտարեց ծառս՝ առաջև պարանին պիտի տնկել և հաստատել, և ապա զտակուճած տունկդ հան և տար 'ի տակքն տնկեա, և 'ի վերայ հան. և զտունկդ՝ 'ի տակացն ծառին վեց Թիզ յետ [1] դիր. և տես որ բնաւ ակնուռ չԹողուս 'ի տունկն և ոչ 'ի բազուկն, զամէնն 'ի մատղաշուԹեանն խլեա 'ի տնկէն, որ չԹողուս քան Թէ երկու երեք ծիլ [2] 'ի ծայրմն, որ 'ի վերայ ծառին հանես։ Եւ 'ի ծառն աղէկ կապեա, և միաւորեա զտունկն ընդ նմին, և զտակն աղէկ շինեա։ Եւ մինչ հոտել կամենաս՝ 'ի ծառէն վայր ա՛ռ և աղէկ հոտեա. երկու ուռ Թող 'ի ծայրմն կամ երեք ուռ. և զուռերուն աւելքն կտրեա, մի Թողուր. եԹէ ոչ՝ չորս Թիզ մէն և կրկին 'ի վերայ ծառին հան և կապեա։ Եւ զպարանս ծառոցդ երեսուն Թիզ 'ի յիրերաց յետ արա։ Եւ Թէ ոք զոր ինչ գրեցաք՝ առնէ, լաւ և անոյշ գինի խմէ, և շատ խաղող առնու։

Եւ ոմանք որք ոչ կամեցան զմէջն ցանել, 'ի միջոցն Թզենիս և զայլ մրգենիս տնկեցին, այլ Թզենին լաւ է. եւ առաւել զոր փորձեցաք այն է, զի յեզերմն բոլոր շուրջանակի տնկես զինչ կամիս 'ի ծառոց, և զպարընմիջերն 'ի վաստակ ունենաս [3] քան զայլն։ Եւ մեք տեսաք որ շատն 'ի յորԹոց 'ի վերայ կեռասենեաց հանած էր, եւ առաւել մենիաս [4] ազգ խաղողն, զոր 'ի միւս գլուխն յիշեցաք և գովեցաք։

Արժան է զմիջոցն տարի ընդ մէջ ցանել, և լաւ է երկու դեհին. զապլմոզն և զամէն ազգ քաղ՝ սրբէ ցանն 'ի ծառոցդ. և մանուշակ սատրել 'ի տակքն՝ լաւ է։

## ԴՈՒՌՆ ՀԲ.

*Այլ խրատ յաղագս տնկոց, թէ որպէս դնես, որպէս պատուաստես ու մազմզուկ առնես, կամ որպէս հանես և տնկես։*

Արժան է յայգետեղն 'ի գարնանամուտն յաղուհացմն աղէկ վաստակել. և յետ այնորիկ տես որ այլ

1 Հեռի յարմատոյ ծառոյն վեց Թզաչափ։
2 Միւս Օ. խաւրծիլ։
3 Գործել զերկիրն որ 'ի մէջոցս այգեպարանացն։
4 Տես 'ի Ч գուռն։

բնաւ հարօր 'ի ներքս չմտանէ, քաւէլ թէ թուփ կենայ որ զայն տակհան առնես, մինչև 'ի յաշնան անձրևանին, որ կշտացուցանէ զգետինն. և ապա վաստակեա և զփոսերն շինեա այն նշանօքն՝ որպէս գրեցաք 'ի միւս գլուխն, 'ի լայնքն երկու ոտն, և 'ի խորուն երկու ոտն. և ապա պերպեռեա ուլթ մատն, և դիր այն դեղերոճն զոր գրեալ եմք, որ է խաղողին կուտն, և կաղին, և սպասցուերուն յարդն, և ծածկեա: Ապա տես, յոր գետին որ 'ի պանդրել դնես՝ նա նման լինի հողն այգետեղւոյ հողոյն. Թէ ոչ՝ զերդ այն տղայն լինի տունկն՝ զոր յաղէկ ծծէն 'ի վատթարն փոխեն, նա ապականի, բայց թէ 'ի վատթար կաթնէն 'ի լաւն փոխէ ող զտղայն՝ նա գոյանայ և գիրանայ և ապրի. նոյնպէս և զտունկն: Եւ այսպէս դիր որ պանդրի. և արա բահով խէնտէկներ, զամէն խէնտէկ յիրերաց յետ թիզ մի, լայն երկու ոտն, և խորու երկու ոտն. և այնչափ թաղեա որ 'ի խէնտէկն մնայ, զի ջուրն 'ի յինքն անցանէ. և ստէպ ջրեա, և տես որպէս գրեալ եմք: Թէ կարճոստ լինի ուռն 'ի տնկին, նա դու տասն ակն թող, կամ գոնէ 'ի պակասն վեց ակն թող. ապա թէ երկայնոստ լինի՝ նա կամ հինգ ակն, կամ վեց ակն, կամ գոնէ 'ի պակասն չորս. ապա քան զթիզ ու կէս կարճն ձգեա, չէ 'ի բան. թող անճար 'ի հին բարունակէն կոճ ունենայ 'ի տակնն, զի իւր ինքեան մայրան լիցի այն: Եւ երբ տնկես՝ այնպէս արա որ 'ի հողէն 'ի վեր երկու ակն մէն կենայ, ոչ աւելի և ոչ պակաս. և յամէն ամիս փորեա զշուրջն նոր տնկին: Նոյնպէս և մինչդեռ 'ի պանդրելոյ տեղն կենայ՝ զինքն փորր փորչով յամէն ամիս փորեա. և լըդխոտն սրբեա յիւրմէ. և երբ տնկես զնոր տունկն, ստէպ զակնուռն՝ որ 'ի յակնէն ելանէ՝ պտղովմնայ[1] սրբեա. 'ի խաւրծիլն՝ 'ի մատղաշն տես որ մինչև երեք տարւոյ լինի, բնաւ սուր չհասուցանես 'ի յինքն: Եւ զվերի դեհին ուռն՝ որ ղորդեալն է, այնմ ծառայեա և ստածեա. և զայն որ քան թիզ մի աւելի երկայնանայ դիպան 'ի վեր, կտրեա սուր իրօք, որ զոյժն 'ի բա-

1. Իմա պտեղամբ. որպէս ասէ այլուր. այսինքն է ծայրիւ մատանց:

զուկն տայ 'ի վայրն և շոյտ հաստանայ: Եւ թէ երկու տարի 'ի պանդրելոյ տեղն թողուս և զայգետեղն շէնես, և պարտեզ և այլ այդպիսի իրք ցանես, և զպատերն ամրացուցանես, և թէ ծառ կամենաս դնել 'ի շուրջն, դիր, և զամէն իրքն այգւոյն յայն երկու տարին կատարես, և զտունկն թողուս 'յայն պանդրելոյ տեղին, որ մազմզուկ և գլուխ առնու. և ապա երբ երեք տարւոյ լինի, դու սար տունկ հան և դիր: Նա խիստ լաւն և շահաւէտն և ղորդ սահմանն, որում ամէնքս հաւանեցաք՝ այս է, որ յետ առաջին տարւոյն 'ի միւս տարին՝ զտունկն 'ի սարընայ հան. և թէ այլ ցեղ՝ նա 'ի սահմանէ 'ի դուրս է, զայն չգիտեմք. և զայս Սևոն իմաստունն[1] որ վաստակոց գլուխն է՝ գտեալ է և հաւանեալ, որ մինչև բռնէ տունկն՝ ջրեա, և այլ մի, որ չսովորի, և յամէն հաղ զայն ուզէ. ապա աղէկ փորեա և վաղհան արա:

## ԴՈՒՌՆ ՀԳ.

*Խրատք, թէ որպէս զայգւոյն տունկն կարես հեշտութեամբ քարշել և տանել յայլ ուրեք տնկել. և վասն աղուրայից, որ զհին այգին նորես:*

Առ 'ի հին այգւոյն զուժով ուռն՝ որ 'ի տակուցն ելանէ, և քարշեա աղուրայ, որպէս արժան է. և երկու ոստ մէն թող 'ի յորթոյն 'ի դուրս. և հայնց տար զաղուրայտ՝ որ զլարին չափն և զտնկոցն հաւասարութիւնն ուղորդ 'ի տեղի պահէ: Եւ փորելով շինեա և ստածեա մինչև մեծանայ. և ապա զհին տունկն կրտրեա, և 'ի տակուցն ուռ հան, որ իւր տեղւոյն տունկ կանգնի 'ի պարանն. նա նորեցաւ այգին և եղև նոր: Նոյնպէս և եթէ տղայ կենայ՝ աղուրայ տար և լցնցէ զպակասն: Եւ վասն այնր զաղուրայդ գտաք, որ ճարտար է և անսղալ քան զայն՝ որ վարոց տնկեն առանց մազմզկի:

1. Անծանօթ իմաստուն, թերևս Սոտիոն, որ յիշէ ուրեք 'ի բնագրին:

## ԴՈՒՌՆ ՀԴ․

*Վասն տնկոց ։*

Գիտելի է որ մազմզկով տունկն անսղալ բռնէ, և յերկու տարին 'ի բեր հասանի. և այն որ առանց մազմզկի է՝ սղալական է և յուշաբեր։ Արդ. պնտած [1] է և սահմանած, որ քանի մազմզկով գտնուս՝ զայն տնկես. և զանմազմզուկն ոչ. և թէ չգտանես՝ նաա այլն անճարութեան է թէ առնես։ Եւ այս 'ի սոյն դըրանս աւելաբանութիւն էր [2]։

## ԴՈՒՌՆ ՀԵ․

*Երբ որպէս պարտ է զայգեստեղն շինել ։*

Պարտ է զտեղին լաւ ընտրել համոյն և գունոյն և տեսակաւն, որպէս գրեալ եմք 'ի տեղւոջ իւրում, և ապա բազմապատիկ վաստակել և փորել և սրբել յատարոտի տակէ և 'ի բուսոց, և քարքաղ առնել և դուրել. վասն զի 'յամառնային տօթն՝ շողանան քարինքն և այրեն զտունկն, թէ փոքրքարուտ լինի և սալուտ, և կոկնուտ. նոյնպէս և ձմեռն պաղի քարն և ահոկ է. զայս այն քարինքն առնեն, որք վերև գետնին լինին։ Բայց այնոքիկ որ ներքևն լինին՝ զընդդէմն գործեն 'ի տակքն. և այսոքիկ հովացուցանեն զտունկն և օգտեն, և 'ի պաղն ջեռացուցանեն։ Եւ այս պատճառանօքս պարտ է աղէկ փորել և զգետինն շրջել, և զայն քարինքն որք յերևան են՝ քաղել և հանել։ Եւ թէ փոսեր կենայ՝ դուրել, և ապա տնկել այն նշանօքն, զորս 'ի տեղիս իւրեանց գրեալ եմք. և լաւ ակնբցել և ակնուռիցն արի կենալ [3], որպէս գրեալ եմք։

1 Ապացուցեալ, հաստատեալ։

2 Թուի թէ 'ի բնագրի Թարգմանչին երկար բանք էին յայս գլուխ կամ դուռն՝ որ ոչ գտանին և 'ի կարգին յայժմու յոյն բնագրիս։

3 Զգուշանալ 'ի թողլոյ զաւելի ակնուռս, որպէս գրէ և 'ի ՀԲ Դուռն։

## ԴՈՒՌՆ ՀԶ.

*Յաղագս փորելոյ և ակնրցելոյ :*

Երբ այգին հնանայ և տունկն մեծանայ, երկու ոտին չափ խորու պարտ է փորել շուրջանակի. և երեք ոտն արձակ 'ի լայնքն. և թէ այն ազգ այգիքն լինին որք 'ի վերայ ծառոց պատատեալ լինին՝ արձակ փորել պարտ է, և զտակքն սրբել, և չթողուլ ամենևին ճեղ, և ոչ ակնուռ, ոչ 'ի տնկոցն և ոչ 'ի ծառոցն, որ ընաւաճէ, կամ յիրեար շնկղկեալ [1] խառնին։ Եւ այս այսքան։

## ԴՈՒՌՆ ՀԷ.

*Վասն հոտելոյ :*

Ասացին ոմանք եթէ լաւ հոտելն յետ կթելոյն է, զերդ անկանի Բազմաստղն, զի շոյտ հանէ զպպղուկն, և 'ի պատահարաց ամբողջ մնայ. վասն զի 'ի գարնան հոտելն՝ ջուրն որ ելանէ՝ ահոկութիւն առնէ տնկին և բերին. և արենդքըմէ զտունկն և վատուժացընէ, որպէս մսեղի մարմին, և ահոկէ տնկին յամենայն կողմանց։ Եւ չէ պարտ առնել 'ի գարնան զհոտելն, եթէ ոչ 'ի ձիւնային և ցրտային գաւառսն, վասն անճարութեան ցրտոյն։ Եւ այս քեզ օրինակ. զի թէ հատանէ ոք 'ի մարմնոյ առանց արեան ելանելոյ՝ լաւ է և անվնասակար, քան թէ երակ հատանէ և 'ի ձեռն արեանն ապականէ զմարմինն։ Բայց եթէ 'ի ցրտային տեղիսն ևս թեթևացուցանէ ոք զտունկն 'ի բազմամբոխ որթոյն՝ լաւ է. և ապա 'ի գարնան զհոտն կատարէ որպէս արժան է։ Եւ այսպէս առնելն աղէկ է, զի 'ի ցրտային գաւառսն՝ 'ի վաղվնէ ոչ է պարտ հօտել, և ոչ յերեկոյն ընդդէմ ցրտոյն, այլ երբ ջեր է օրն։ Եւ 'ի հաստատած այգին որ սարընայով լինի չորս ուռ պարտ է թողուլ 'ի ծունգն. և յամէն ծունգ

[1] Մի.օ ՕՕ. շանկղկեալ։ Տես 'ի Բառս։

երկու որթ ուռ, և զայն լաւ փաթթել և 'ի սարքնայն հանել, և այս է լաւն և օգուտն։ Եւ զայս այնպէս արա-հեա, զի զայն ուռն՝ որ յայն երկուքէն բեր տայ, դու 'ի մէկայլ տարին մայրան թողուս, որ է ծունգ, և անու-տի երկու նոր վարոց ուռ այլ. և այսպէս է գործ ա-րուեստիդ յաղագս հատելոյն։ Բայց արիական պարտ է կենալ որ բազմաճիւղք չթողուս, զի մի տունկն վա-տուժացեալ աւերիցի։ Եւ գիտեմք Ճշգրիտ փորձով, և ևս առաւել Պօլօնացիք[1]. զի զայն ազգ այգին՝ որ յունարէն մարունդէխի անուանի, պարտ է զիւր եր-կու ճիւղն թողուլ և յայն երկու ճղէն չորս կամ հինգ որթ արձակել և զայլն հատանել։ Եւ զայգին զոր յունարէն խաւլին անուանեն, պարտ է թողուլ նոյնպէս երկու ճեղ և յամէն ճեղ երկու կամ երեք որթ միայն. նոյնպէս և զայգին զոր լաւխապրախի[2] ա-սեն. և զմէնիասն նոյնպէս երկու ճեղ, և յամէն ճեղ հինգ վեց որթ, և զայլն հատանել. և այս ազգ այգիս շատ բարունակ հանէ, և երկայնորթ լինի. բայց 'ի յայդշաքդ կեցի, որպէս գրեալ եմք։

## ԴՈՒՌՆ ՀԸ.

*Վասն նոր տնկի որ չորս տարւոյ լինի, երէ քանի ուռ պարտ է թողուլ։*

Ի չորս տարւոյ տունկն երկու ուռ պարտ է թողուլ, և յամէն ուռ չորս ակն, և զերկու ակն որ 'ի ներքի դեհն լինի 'ի յուռին, սուր դանակով կտրեա և հան, որ խոպանի, և երկու վերինքն մէն մնան, և անտից ծլին. և զայս 'ի գարնանամուտն արա. և մենակ 'ի սարքնայ հան։ Եւ սարքնային յերկայնքն վեց թիզ կամ եօթն պիտի. և տես որ 'ի սարքնայն կեղև չթո-ղուս, զի կերիչքն և մնասակար ժժմունքն 'ի կեղևն

1 Քանզի այլուր այսպէս կոչէ զԲիւթանացիս՝ թուի թէ և աստ նոյն է. այլ չգտանի 'ի մերում բնագրիս, որպէս և ոչ յունարէն անուանք այգեաց, եթէ չիցէ առաջինն Մարէոտեան գինին (Μαρεατικός) յանուն Մարէոտա լճի յԵգիպտոս։

2 Թուի Լևգոթրաքեա, զոր յիշէ բնագիրն (Ն. ժՇ) լինել 'ի Բիւ-թինիա, Λευκοθρακία։

կու բնակյն։ Եւ երբ ընդ վեց տարին անցանէ այգին, և տեսանես որ ուժաւորի, նա պարտ է երեք ուռ թող-ղուլ. բայց թէ վատուժ լինի՝ երկու պարտ է թողուլ. և յամէն ուռի՝ սարընայ մի կանգնեցո. և զսարընային ներքին ծայրն այրեա, որ հողն շուտ չփտեցուցանէ զինքն։

## ԴՈՒՌՆ ՀԹ.

### Յաղագս ակնբցելոյ։

Պարտ է զհին այգիսն՝ քան զկանաչիլն և քան ըզ-բերցոյցն յառաջ՝ ակնբցել. զի թէ կանաչ ակնբցես՝ վզեան առնես 'ի խաւրծիլն. և կանուխ ակնբցելն ա-ղէկ է և շատ բեր առնել տայ։ Եւ տես որ թէ չկա-րես կանուխ անկնբցել, նա դու կենաս՝ որ պնտին ուռքն և ապա փորեա. և պատրաստ կաց 'ի բրելն, որ չքշտես և չզանես զտունկն. զի թէ խոցոտես ըզ-տունկն՝ վնաս է, որպէս մարմնոյ։

## ԴՈՒՌՆ Ձ.

### Յաղագս տնկի, որ 'ի միջոցն աղաղեալ լինի։

Եւ այդորիկ դեղն այն է՝ որ քաշեր առնես 'ի բուն և 'ի մօտաւոր տնկոցն, և յետ տարւոյն կտրես 'ի մօրէն. և քան զայս լաւ չկայ, չէ պարտ երկարաբանել։

## ԴՈՒՌՆ ՁԱ.

### Յաղագս նոր տնկոցն ստածման։

Պարտ է զնոր տունկն լաւ ստածել և զաւելն եր-կայնութիւնն կտրել 'ի հետ. և տես՝ որ մօտ 'ի յակն չկտրես. արձակ կտրեա երեք մատն 'ի յակնէն։ Եւ զկտրուքն ընդդէմ հարաւոյ արա. և թէ 'ի շարժն՝ 'ի յակլին 'ի դեհն որ չիջանէ ջուրն[1] և աւրէ զակն։ Եւ

1 Հիւթ կամ ջուրն որ խաղայ յուռս որթոյ և կաթէ 'ի կը-տրուածոցն։

պարտ է պտղի ծիթի տուրտին ունել 'ի հետ, և ըզ-կատարումն օծանել, այլ ընաւ ջուր չերթայ։ Եւ թէ յոջլէ վախես՝ զտիպին[1] զոր 'ի կաղնոյն Ճագմընեն չինես, ներքև ակինն ընդ ուռն փաթաթ անցո, որ ոջիլն 'ի վեր չգայ։ Եւ երբ երեք տարւոյ լինի՝ հատ և սրբեա զակնուռսն և զաւելի ճիւղսն, և զչափաւորն մէն թող. և աղէկ խորու ակնբցէ ոտն խորու[2], և ըզ-փոսն աղէկ նեխած աղբով լից և զհողն 'ի վերայ բեր, և յաշունն արա զայս։ Ապա թէ 'ի մէջ և 'ի ջրընկեց գետին լինի այգին, նա չէ պարտ ակնբցել, զի ջուրն աւերէ զտունկն։

## ԴՈՒՌՆ ՁԲ.

*Ցաղագս թէ յայգեմէջսն զինչ ազգ սերմն պարտ է ցանել ։*

Են ոմանք որք բակլայ և քուշնայ և ոսպն ցանեն. և թէ ցանեն չէ վզենակ. ապա սխեռն ոչ է պարտ, զի աղիութիւնն վնաս առնէ տնկին։ Եւ թէ բանջար և պարտէզ ցանես՝ աղէկ է և օգտակար տնկին, որ պա-հէ զտունկն 'ի կերչաց։ Եւ 'ի հետևակ նորտունկ այ-գւոյն՝ յառաջին տարին՝ ոչ է պարտ ցանել իրք։ Եւ կաղամբ կամ շողգամ կամ բողկ ամենևին չէ պարտ ցանել, զի քարշող են գիջութեան և ապականեն զայ-գին։ Եւ այլ պատճառ. որ կաղամբն ընութեամբ հա-կառակ է գինւոյն. և թէ կամիս իմանալ՝ առ գինի և թաց զկաղամբն 'ի ներքս, նա փոխէ զգոյնն և այլ չե-փի։ Նոյնպէս և այգի որ 'ի ծառ լինի կամ 'ի սարքը-նայ՝ յամէն տարի ընդ մէջ կարէ ցանուիլ։ Որ 'ի ծառք լինին՝ ցորեան և գարի եւս ցանուին, զի արձակ է պարանմիջերն։

1 Միւս ՕՕ. Տեղի կամ Տիղի։
2 Աւելորդ. Թուին բառքդ. ոտն խորու. չկան և 'ի միւս ՕՕ. կամ պակաս Թիւ ոտնաչափին։

## ԴՈՒՌՆ ՁԳ·

*Ցաղագս ծայրատելոյ զայգին:*

Եւ իւր սահմանն այս է, որ բնաւ 'ի ծայրքն չթողու ոք զխաւրծիլն 'ի բերոյն 'ի վեր։ Բայց պատրաստ՝ որ բեր չկտրէ ոք կամ ընկենու զուռն զամէնն։ Եւ զմատղաշ այգին այլ հեշտ է 'ի ծայրատել քան ըզդահնն։ Եւ երբ աւելի տօթն 'ի հոմն դառնայ՝ նա պարտ է զայգւոյն տերևսն 'ի վայր տալ, որ արևն հասուցանէ զխաղողն։ Բայց երբ 'ի ծաղիկ լինի՝ ծածկեա տերևօքն զծաղիկն՝ քանի կարես, զի այն է լաւն։

## ԴՈՒՌՆ ՁԴ·

*Ցաղագս կրկնակի կտրելոյ, այսինքն ծայրատելոյ։*

Պարտ է զնոր տնկերն և զմատղաշ այգիսն ծայրատել 'ի ծաղիկն՝ պատրաստ, որպէս գրեալ եմք։ Վասն զի այգի որ նեխեցուցանէ կամ աւերէ կամ անապան հասուցանէ, նա վասն գիջութեան և չքին է, որ տերևքն շատ լինին և շուք առնեն ու աւերեն զխաղողն. զայնպիսին պարտ է երեսուն օր յառաջ 'ի վայր տալ և բանալ զբերն։ Բայց զայն տերևքն որ 'ի վերայ կուղերոյն կենան՝ մի բանար և մի կտրեր։ Եւ տես, որ թէ անձրև գայ և թանայ զխաղողն, և տեսանես որ ուռենայ պտուղն, մենակ զամէն տերևքն 'ի վայր տուր, և բաց զխաղողն, թէ ոչ՝ քացախի և աւերի խաղողն և գինին։ Զի են ոմանք որ փշով ծածկեն զխաղողն 'ի շող գաւառսն, 'ի վերայ զտունկն փշեն։ Եւ արժան է այգեպանաց արի կենալ և հանապազ զանկած ուռն վերացուցանել, և զծռածն 'ի պարանէն՝ ղորդել, և զողալանքն լմնցընել. զի երբ տունկն ծռի՝ նա այնպէս է, զերդ մարդն 'ի վերայ մէկ ոտին կանգնի և անհանգիստ լինի։

## ԴՈՒՌՆ ՁԵ·

*Վասն գինւոյ, որ քաղցր առնես:*

Առ զբարունակն նոյն խաղողովն, և 'ի նեղք հետ տնկին ընդ ներքսէ խաղողին ճիմեա և ոլորեա զորթըն, և թող. նա այն ոլորն արգելու զգինջութիւնն որ այլ 'ի խաղողն չերթայ. և զտերևն՝ որպէս գրեալ եմք՝ 'ի վայր տուր. և այնպէս թող քսան կամ երեսուն օր, և ապա կթեա. նա գինին զերդ ըռուպ քաղցր լինի:

## ԴՈՒՌՆ ՁԶ·

*Յաղագս ակնբցելոյ և աղբելոյ:*

Գիտելի է զի արևելցիք և Նինուէացիք[1] երբ ակնբըցեն՝ ոչ ծածկեն միանակ, այլ ի բաց թողուն. նոյնպէս և Կիւլիկեցիքն առնեն: Բայց 'ի գաւառս Հիւսիսոյ զերդ ակնբցեն՝ ծածկեն, որ առ ինքն ջուր չարգելու և սառոյցն ահոկէ, զի ցրտային երկիր է. և են որ երկու հետ փորեն և առնեն զփոսն թիզ մի խորու: Բայց այգի որ զիւր հասակն ունենայ, երբ փորեն՝ աղբել պիտի զինչ և իցէ աղբ. բայց միայն յաղաւնոյ ծրտէն պատրաստ կաց, զի այն խիստ տաք է և այրէ. և չորս մատն դիր զաղբն 'ի թանձրութիւնն, և արձակ 'ի տնկէն թիզ մի, որ չհասանի 'ի տունկն և այրէ. և տես որ տնկին մազմզուկն չկենայ 'ի բաց, երբ զաղբն լնուս: Եւ թէ աղբ չլինի՝ յարդ լից բակլայի կամ ոսպան կամ քուշնայի կամ զինչ և իցէ սպասցուի. և թէ խաղողի չիվ լնուս՝ զամէնն աժէ. նոյնպէս և գոզն քան զամէնն աղէկ է: Եւ այսպէս յամէն տարի առաւելուլ պարտ է զվաստակն, մինչև այգին հինգ տարւոյ լինի: Բայց 'ի ցրտայինս և 'ի ձիւնամեծ գաւառս տարի ընդ մէջ այսպէս պարտ է առնել. և 'ի ձմեռան մուտն ըզտունկն թաղել պիտի մինչև 'ի շլնին: Բայց եթէ աւազուտ գետին լինի՝ յամէն տարի աղբել պիտի ոչ-

1 Յոյնն՝ Լիբէացիք. իսկ Կիւլիկեցիք ոչ յիշին աստ 'ի բնագրին:

խարաց աղբով. և թէ սպիտակուտ [1] գետին լինի՝ պախրէից աղբով. զի սպիտակ գետինն վատ է և վատուժ. և պախրէից աղբն պարարտութիւն տայ գետնոյ և լաւացուցանէ զգետինն։

## ԴՈՒՌՆ ՁԷ.

### Յաղագս Սարքնայի։

Են ոմանք որք զսարքնայն 'ի դեկտեմբեր և 'ի յունվար ամիս կտրեն, և են որ 'ի յուլիս և 'ի յօգոստոս. և են որ յերկայն և են որ կարճ։ Բայց մենիաս [2] տնկեն սարքնայն թիզ մի աւելի պիտի։ Այլ 'ի նոսր և յաւազուտ գետինն սարքնայն կարճ պիտի չորս ոտն կամ պակաս. և զերկու ծայրն պարտ է սուր առնել. և զվերին սուր ծայրն ձիւթեա և ղորդ ցրցեա, որ ոչ 'ի յայն դեհն ծռի և ոչ յայն. նա և զվերին ծայրն ձիւթեա և զներքինն այրեա։

## ԴՈՒՌՆ ՁԸ.

### Յաղագս տնկելոյ ըստ ընթացից լուսնին։

Բազումք 'ի հին իմաստնոցն հաւանեալ են և փորձեալ, զի թէ տնկէ ոք յառաջին օրն լուսնին, մինչև 'ի չորս օրն 'ի մուտն [3], նա տունկն անսղալ բռնէ, և շատ պտուղ բերէ և արքենի լինի. և պտուղն պարարտ յոյժ, քան զայլ աւուր տնկածսն։ Եւ փորձով է. զի թէ ոք զգինին յայս աւուրքս յայլ աման փոխէ, անուշանայ գինին։ Եւ այլք ասեն թէ մինչև 'ի լրումն լուսնին. ամէնն աղէկ է։ Եւ ընդ թափնելն լուսնին որ ընդ ժե օրն անցանէ՝ չհաւանին տունկ դնել։ Եւ այսու է արժան զոմանցն զհալածականն 'ի տեղի տանել, որ արդիւնս առնէ։

1 Ըստ յունին λευκάργιλλος պարտ է գրել կամ իմանալ սպիտակակաւ։
2 Տես Կ Դուռն։
3 Միւս ՕՕ. 'ի տունկն։ Իսկ 'ի ձեռքն նշանակէ զառաջին աւուրս լուսնի՝ մինչչև է աճեալ լուսով։

## ԴՈՒՌՆ ՁԹ.

*Յաղագս որ չորացուցանէ զխաղողն:*

Տես, երբ ազոխն 'ի քուշնայի չափ լինի և չորանայ, քաղեա զչոր հատերն, և զորս իւրեանց մօտևոր կենան. և առ հօտի մոխիր, խառնեա 'ի բարկ քացախ, և մատամբդ 'ի կուզին յայն տեղիսն հասո. նոյնպէս և զտնկին բազուկն, մինչև հողն ողջանայ։ Եւ ոմանք գող ածեն 'ի տակն, լաւ է, ողջանայ, և այլ ոչ չորացուցանէ, և տայ շատ բեր 'ի բազում տարիս։

## ԴՈՒՌՆ Ղ.

*Յաղագս որ բեր չառնէ այգին:*

Դեղն այս է. դրով ձեղքեա զտնկին բազուկն. բայց լաւն այն է որ 'ի կաղնի փայտէ շինես զգուրն, և այնու ձեղքեա, և քար մի 'ի ձեղքածին մէջն դիր. և առ մարդոյ գող, կ խեցատով 'ի ձեղքածն լից աղէկ յոլով, որ մինչև 'ի մազմզուկն թափանցէ, և ապա հան զքարն. և աղբ և հող ընդ իրեար խառնեա. և այնու ծածկեա զտունկն և զձեղքածն։ Եւ զայս դեղս զոր գրեցաք՝ յաշունն արա, որ առողջանայ և բեր առնէ։

## ԴՈՒՌՆ ՂԱ.

*Յաղագս այգւոյ որ յաստղէ պատահարի:*

Եւ իւր նշանն այս է, որ կարմիր դառնան այգւոյն տունկն և տերևն, կամ ամէնն կամ բակ բակ։ Եւ իւր դեղն այս է. ծածկեա զտնկերն և կաղնի փայտ սրեա և խաչք անցո և հողովն ծածկեա, մինչև 'ի վերայ կաղնի փայտին անցանէ՝ բժշկի այգին։ Եւ ոմանք ծովու ջուր խմեցուցանեն տնկին. և այլ ոմանք զպըտղի ձէթն և զգինին յիրար խառնեն և օծանեն ըզ-

տունկն ։ Եւ Պօլօնացիք [1] փորձեալ են, որ երբ այգին այնպէս նեղ լինի, նա գամ մի խաչք անցուցանեն, լաւանայ ։ Եւ այլք գող արկանեն 'ի վերայ ։

## ԴՈՒՌՆ ՂԲ.

*Յաղագս այգւոյ որ բարականայ և վատուժէ բարունակն և տերևն և գոյնն վատի ։*

Եւ իւրեանոս քարակցաւ [2] ասեն, և դեղն այս է. առ հօտի մոխիր կամ կաղնւոյ, և խառնեա 'ի քարկ քացախն և լից 'ի վերայ տնկին մինչև 'ի տակն. եւ թէ մարդոյ գողով արբուցանես զտունկն՝ զնոյնդ առնէ ։ Եւ են ոմանք որ կտրեն զտունկն, և աղբ խառնեն հողով և ծածկեն, որ նոր հանէ [3]. և յայնց որք ելանեն՝ զուժողն միայն թողուն, և ստածեն որ տունկ լինի, և զայլսն հատանեն ։

## ԴՈՒՌՆ ՂԳ.

*Յաղագս որ 'ի հօտնյն շատ ջուր երթայ և արեանքըմի տունկն ։*

Դեղն այս է, որ զհոռոմ ձէթն եփեն՝ որոյ կէսն մնայ. և թէ տուրտին լինի՝ լաւն այն է. և կրկնակի կշռով որ սուր լինի՝ զհօտածն նոր քիչ մի այլ 'ի վայր կտրեն, և այնով զկտրած տեղն օծանեն ։

## ԴՈՒՌՆ ՂԴ.

*Յաղագս պտղի [4] ։*

Եթէ այգի է՝ անադանեցո՛ զհօտելն. և երբ աղէկ շարժի՝ ապա հօտեա, վնաս չլինի 'ի պտղէ ։ Եւ են ոմանք որ 'ի ներքս այգւոյն բակլայ ցանեն, նա ուր բակ-

1 Բիւթանացիք, որպէս և ամենայն ուրեք 'ի բնագրին ։
2 Նմանութեամբ հիւծական հիւանդութեան մարդոյ ։
3 Իմա՛ նոր ընձիւղ և ուռ ։
4 Միւս ՕՕ. Վերնագիր ունին, « Յաղագս այգեաց հօտելոյ » ։

լայ լինի՝ վնաս չկարէ առնել պաղն։ Եւ երբ խմմնայ ոք զժամն սառնութեան, նա մեծամեծ թորխս ծառեր վառեա, և շատ գշկուր առաջի հողմոյն, որ ըղծուխն 'ի վերայ տանի. այլ պաղն վնաս չառնէ։ Եւ քան զամէնն օգտակար փորձ այս է. առ արջու ձրագու և զհոտոցսն այնու սրեա և հոտեա, այլ պաղն վնաս ինչ ոչ առնէ. ապա իւրեանս յատուկն այն է, որ հոտողքն չիմանան թէ արջու է, թէ չէ՝ այլ իրք բնաւ չարժէ։ Եւ այս կարկտի այլ օգտէ, և չտայ դեղնիլ տնկոցն. և թէ 'ի փոյթ առնելոյ թողու ոք, որ պաղն զխուր այգին և զվաստակն աւերէ, նա չկայ այլ դեղ՝ քան թէ կրկնակի զհոտածն հետ մի ևս հոտես, այլ կարճ. նա թէ թափէ՝ այն թափէ. և 'ի միւս տարին կրկնապատիկ տայ զբերն։ Եւ Պոլօնացիքն [1] զայս ազնիւ են փորձեալ յաղագս պաղին, զի առնուն զմոշին [2] կարմիրն և այրեն, և առնուն զմոխիրն և ցամաք ցանեն 'ի վերայ տնկոցն. նա ուր հասանի մոխիրն 'ի յակն՝ նա զծիլն տաք պահէ, և ոչ տայ պաղին վնաս առնել։

## ԴՈՒՌՆ ՂԵ.

### Վասն կարկտի։

Բազումք ազգի ազգի իրս ասացեալ են. բայց մեք համառօտեսցուք աստ զճշգրիտ և զօգտակար դեղօրայս որք են այսոքիկ։ Առ զչորեկին [3] մորթին կամ զկոկորդիլոսին որ է թիմսահն. և թէ այս չգտանի և ոչ այն, մեծ քարթօշ գիտ, և զմորթին առ և կապեա 'ի չուանի քիթն, և 'ի հետոյ քարշեա. նա յայն տեղին և սահմանն ուր զինքն ծիր անցուցանես, և անդ կա-

1 Բիւթանացիք։

2 Ցոր. Մոզին։

3 Ըստ բնագրին՝ Բորենի գազանն գիշակեր. ընդ որում և ընդ կոկորդիլոսի յիշէ և զփոկ (որթ ծովային). զանուն նորին և զմորթոյն φώκης δέρμα (ֆոքիս տէրմա) թուի ընդխառնեալ և իբրև թարգմանութիւն անուան կոկորդիլոսի յաւելեալ 'ի միւս 00, «Առ զչորեկի մորթն կամ զկոկորդիլոսին, որ է ֆաւգադրիծն»։

խնս՝ ընաւ չթողու որ անդ. կարկուտ մերձենայ: Եւ այլ դեղ փորձով. գիտ անջրդի[1] կրիայ մի, և առ զինքն ալ ձեռամբդ, և տար 'ի մէջ տեղեացն ուր ուզենաս թէ պահուի. և շինեա փոս 'ի մէջն և զկրիայն 'ի փոսն դիր 'ի վերայ թիկանցն պառակ[2], այնպէս որ չկարէ շրջիլ կրիայն. բայց յառաջ քան զայսպէս առնելդ, դու ալ ձեռամբդ զինքն զայգեաւն և զարտուն ծիր անցո. և ապա թաղեա, նա այլ կարկուտ 'ի սահմանքն չանցանէ: Են ոմանք որք ասացին թէ 'ի վեց պահու աւուրն պարտ է զայս առնել. բայց մեք փորձեալ եմք, որ 'ի յամէն ժամ երբ արարաք՝ նա փորձով օգտեաց:

Այլ դեղ փորձով. յորժամ տեսանես զկարկըտին ամպն՝ զաղէկ սրբած հայելին ընդդէմ շողկտացն, նա ցրուէ զամպն: Եւ թէ ոք զքարթօշին մորթին առնու և 'ի մէջ այն այգւոյն կախէ, որ 'ի մէջ շատ այգեաց լինի, նա փրկէ զայլ այգիսն որ շուրջ կան՝ 'ի կարկտէ, և չտայ վնաս առնել: Եւ Պաւլոս[3] հռոմին ասաց փորձով, թէ՝ առ տախտակ մի և խայտեա 'ի նմա յայգւոյն տունկ մի կուզերոմն, և յայգւոյն մէջն կախեա զտախտակն. ամենևին պատահար ինչ յայգին չմտանէ, և զերկն անսասան պահէ: Բայց զայս 'ի դեկտեմբեր ամսոյ ժզ աւուրն 'ի վեր մինչև 'ի փետրվար ամսոյ իդ օրն պարտ է առնել, որ աստղն զոր կոչեն Անկեալ արծիւ՝[4] անկած լինի:

1 Անջրդի՝ ցամաքային է ըստ մեզ, այլ բնագիրն՝ Ճախնային կրիայ ասէ:
2 Զառաջինն գրեալ է յՕր. միայն. «Եւ զկրիայն 'ի վերայ բերանոյ փոսին դիր»:
4 Ապուլէոս Հռովմայեցի: Իսկ առաջնոյ մնոտխապատեր բանեցն հեղինակ ոչ նշանակի 'ի բնագրին:
4 Տես 'ի Լ Դուռն:

## ԴՈՒՌՆ ՂՋ·

*Յաղագս այնր որ չոպ կամ դեղնութիւն դիպի արտի կամ այգւոյ ։*

Երբ տեսանես որ այն պիղծ հողմն ելանէ որ այրեցողն է, առ զկովու ձախ եղջիւրն և պախրէից աղբովլ այրեա 'ի յեզերս արտին. նա ուր ծուխն դիպի՝ բնաւ չթողու որ թոռմի և կամ աւերի ։ Եւ Պաւլոս ասէ. Թէ ոք առնու զկաղնւոյ չոր սունկն և երեք խեչափառ և յարդ և այծուց աղբ, և զայսոց ծուխն առնէ, յանդն ուր մուխն հասանի՝ չոպն մնաս չառնէ ։ Եւ թէ այս դեղերս չլինի ոք արարեալ, և 'ի չոպէ մնասեալ լինի, յառաջն դու զայս դեղերս արա. Ա՛ռ զվայրի խիարկին տակն կամ զցօղունն, նոյնպէս և զշահմիհամին արմատն, և ծեծեա և 'ի ջուր խառնեա, և 'ի վերայ մնասած արտին ցանեա, յառաջ քան զարեւածագն, նա ողջանայ ։ Եւ թէ ոք զկաղնի մոխրին ջուր ցանէ՝ օգտէ ։ Եւ Պաւլոս ասէ. Թէ ոք առնու զճիւղմն կաղլային և ցրցէ 'ի մէջ անդին՝ դեղնութիւնն 'ի նոսա փոխի և արտն աջողանայ ։ Եւ այս ոչ եթէ արտի կամ այգւոյ միայն է դեղ, այլ ամէն ազգ մըրգաբերաց, որք 'ի չոպէ մնասին ։ Եւ այս ազգ պատահարս խիստ յայնժամ գայ՝ երբ լուսինն 'ի լի լինի, նա արեգական տաքութիւնն 'ի ցերեկն և լուսնկային 'ի գիշերն շատ լինի, խաշոփէ զպտուղն ։ Եւ գիտելի է իմաստնոցն, որ զինչ արեւն 'ի ցերեկն ջեռուցանէ, նա՝ զայն գիշերոյն հողմն հովահարէ. սակայն երբ լուսինն 'ի գիշերն ջեռուցանէ, նա ե՞րբ կարէ ապրիլ ։ Եւ ամենայն խաշոփունքն պարտ է գիտել որ աստից կու գայ. եւս առաւել 'ի Կիլիկիոյ գաւառս [1] ։ Եւ թէ ոք զատեպղինն ծխէ՝ օգտէ. նոյնպէս թէ ոք առնու զկենդանւոյն մորթին, որ կոչի արպերէն խուլխի [2], և զմորթին մաղ զուգես, և զսերմն այնու մաղես և ապա ցանես՝ օգտէ ։ Նոյնպէս և կարկտին բնութեամբ աղէկ է ։

1. Բնագիրն ոչ յիշէ զգաւառս. Թուի թարգմանչին յաւելեալ ։
2. Յոյնն ունի աստ զվերոյիշեալն (ՂԵ) փոկ (Ֆոքիս), և նոյն թուի այլայլեալ յարաբն և 'ի հայումս խուլխի ։

## ԴՈՒՌՆ ՂԷ·

*Յաղագս այգեաց որք թափեն զպտուղն:*

Եւ այսր նշան այն է՝ որ տերևքն սպիտակին, և զերդ թօշմած լինին, և բարունակքն կակղանան. երբ տեսանես զայս՝ մենակ առ կրակաց մոխիր, և քացախով խառնեա ջրի. և զտնկին բազուկն բոլոր օծ. և թէ 'ի վերայ տնկին ցանես՝ օգտէ: Եւ թէ ծովու ջուր ցանէ ոք 'ի վերայ տնկին՝ օգտէ: Եւ այլ ոմանք երթան զկուզերուն ծայրքն զերդ ժէ պտղով կտրեն, նա՝ այլն մնայ, չծորի [1]:

## ԴՈՒՌՆ ՂԸ·

*Յաղագս այգւոյ որ շատ ձղեր հանէ:*

Դեղն այն է որ կուրծ հօտես, և չթողուս որ երկայնանայ. կտրեա զերկայն ուռերն և առ աւազ 'ի գետէ և լից 'ի տակն. և թէ գետի աւազ չգտանես՝ խիճ լից որ հովացուցանէ, նա օգտէ. և թէ կրակաց մոխիր ցանեն 'ի վերայ՝ օգտէ:

## ԴՈՒՌՆ ՂԹ·

*Յաղագս այգւոյ որ ճեխեցուցանէ զտունկն և զպտուղն:*

Են ոմանք յայգեաց, որ յառաջ մենակ 'ի յազոխն նեխին. և են ոմանք որք 'ի խաղողն նեխին. և այդորիկ դեղն այս է. Առ անմեռուկի ջուր և գարէ փոխինդ, և խառնեա ընդ իրեար. և օծ զտունկն. և թէ անմեռուկով ջրովն ողկոյզ ես օծանես՝ օգտէ: Եւ են ոմանք որք առնուն հին կրակաց մոխիր, և 'ի տեղի աղբի 'ի տակն տնկին լնուն, օգտէ:

1. Ոչ թօթափի պտուղն:

## ԴՈՒՌՆ Ճ·

*Ցաղագս որ 'ի տունկն փորիչ կամ խոփ կամ այլ սուր իրք դիպի՝ և զանէ զինքն ։*

Տես, թէ գամնն բարձր լինի 'ի հողոյն, առ մաղած հող և այծու աղբ, և խառնեա ընդ իրեար, և ջրով շաղախ արա, և դիր ի վերայ գամնին, և քթեթով կապեա, և ստէպ արձակ փորեա, և տես որ կապն չարձակի ։ Եւ թէ 'ի հողն մօտ լինի գամնն՝ դու զաղբն և զհողն յիրեար խառնեա և ծածկեա նոյն հողովն. օգտէ գամնին ։

## ԴՈՒՌՆ ՃԱ·

*Ցաղագս ոջլի և այլ ժժմանց որք հարկանեն զտունկն և զայգի և ապականեն ։*

Բազումք յառաջնոցն ազգի ազգի հնարս գտին յաղագս ոջլի և այլ ազգ մանր ժժմանց որք հարկանեն զտունկն և ապականեն. բայց մեք համառօտ զօգտակարն գրեցուք աստ ։ Առ զայն ազգ մանր բզէզն՝ որ 'ի մէջ վարդին լինի, և շատ յիւրմէ արկ 'ի չիչ, և լից պաղի ձէթ 'ի վերայ. և դիր որ մնանի ձէթն. և 'ի հօտելոյ ժամն այնու օծ զհօտոցսն. և թէ սրես՝ այնու սրեա. նա բնաւ ժժմունքն չմերձենան ։ Եւ ոմանք պախրէի գշկուր ծխեն 'ի հողմոյն դէմն. նա ուր մուխն հասանի՝ զժժմունսն սպանանէ ։ Նոյնպէս և թէ չարհոտ ծխես՝ խիստ օգտէ. և այծու կճղակ ծխես՝ օգտէ. և թէ վրացի կոճ՝ որ է մրտին տակն, ծխես՝ օգտէ ։ Եւ այսոքիկ առ հասարակ փորձիւ օգտակարք են ոջլի, և ժժմանց զոր գրեցաք. և կնոջ մազն կարի օգտակար է. թէ ծխես՝ հատն զամենայն ժժմունսն սպանանէ ։ Նոյնպէս և թէ կին զտղայն չկարէ ծնանել և ծխես՝ ծնանել տայ. և թէ ծնեալ լինի մանուկն, և տղային պարկուճն 'ի փորն մնացեալ լինի, երբ ծխես զմազն կնոջ՝ արտահանէ զնոյն 'ի փորոյն ։ Եւ

Թէ Փայունիա որ է փիննաի տակն՝[1] ծխես՝ օգտէ։ Եւ են որք զխոտն ուսուղիխի[2] կոչեցեալ ծխեն, օգտէ։ Եւ թէ ոք տնկէ զինքն 'ի շուրջն այգւոյն՝ նա հանէ յայգւոյն զամենայն ժժմունս։ Եւ են որ զայս խոտիս ջուրն և զպտղի ձէթն առնուն և եռացուցանեն ընդ իրեար, և այնու օծանեն զտնկին բազուկն չորս մատն բարձր քան զհողն, յոյժ օգտակար է։ Եւ թէ զպիծակն դնէ ոք 'ի ձէթն և սնուցանէ, որպէս յառաջն գրեցաք, և այնու զսրոցն օծանէ 'ի սրէլն, նոյնպէս և զհօտոցն, պիծակին չտայ մերձենալ։ Եւ թէ ուզէ ոք որ բնաւ կերիչ չմերձենայ ոչ մեծ և ոչ փոքր, ոչ օձիլ և ոչ պիծակ, դու առ զվայրի խիարկի տակն և զպախրէի գշկուրն՝ միաչափ լեսած, և 'ի ջուր խառնեա, և երեք օր հետ իրերաց 'ի վրայ տնկոցն ցանեա, օգտէ։ Եւ այլք զշանփինն և զհին գոզն մարդոյ յիրեար խառնեալ սրսկեցին շուրջ զտնկովքն։

## ԴՈՒՌՆ ՃԲ·

*Յաղագս դեղոց որ օգտակար են ամեն ծառոց և տնկոց և ամենայն բուսոց:*

Դեղ բնութեամբ օգտակար, զոր իմաստունն Դիմոկրատէս եգիտ, և բազումք 'ի մարդկանէ փորձեալ են զսա, յոյժ օգտակար է ծառոց և ամենայն ազգ տընկոց, նոյնպէս արտորէից և ամենայն բուսոց։ Առ խեչափառ տասն հատ, և թէ այլ աւելի լինի լաւ է, պակաս չլինի, ծովու կամ գետոյ, և լից 'ի փարչ մի և ջուր 'ի վերայ, և կալ պինդ զբերանն և դիր 'ի դուրք,[3] որ ցերեկն արևն զինքն սնուցանէ և գիշերն աստեղքն, տասն օր, և թէ այլ աւելի՝ աղէկ է. և երեսուն օր զհետ իրերաց՝ 'ի վերայ նոր բուսեալ իրացն ցանեա. և տես զԱստուծոյ սքանչելիսն։

1. Յամենայն ՕՕ. գրեալ է Եփին կամ Փիննա 'ի տակն ծխես։
2. Ոչ ճանաչի յայդ անուն խոտ. այլ յոյնն աստանօր ունի προσωπῖτι, լատինն Personata, որ է յազգէ Echion բուսոց. փռ. Vipérine.
3. Յօր. 'ի դիւրք. միւս ՕՕ. պարզագոյն ասեն 'ի դուրս։

## ԴՈՒՌՆ ՃԳ·

*Վասն մարախոյ, կորի և մրջիւնոյ։*

*Հինքն բազում ազգ. են ասացեալ, բայց մեք աստ զօգտակարն և զփորձուծն համառօտեցաք, որ է այսպէս։ Յորժամ տեսանես զգալն մարախոյն՝ զընակիչս տեղւոյն ահաւասարակ 'ի տունս իւրեանց ած, որ երբ գայ՝ ըզմարդ ոք 'ի դուրս չտեսանէ, և զտեղն 'ի բաց թողու. և թէ յանկարծ գայ, որ զայդ չատակէ [1] ոք առնել, դու առ զթրմուզն և զվայրի խիարկի ցօղունն, լեսեա և յիրեար խառնեա և 'ի ջուրն արկ որ թրջի, և ապա զայն ջուրն 'ի վերայ բուսոց և տնկոցն ցանեա. նա ուր այդ ջուրդ հասանի՝ բնաւ մարախն չուտէ։ Եւ այլ. տես թէ 'ի սահմանս անդեացն չոր խոտ մօշի կենայ, կամ շամբ, կամ խարձ, յայն պահն վառեա կրակ. նա 'ի ծխէն և 'ի կրակին ահէն փախչին։ Եւ զառաջ եկեալ մարախսն թէ ծխես 'ի կրակն, ամէնն՝ որ զհոտն առնուն թուլանան և 'ի վայր անկանին առաժամայն։ Եւ թէ զկորն ծխես 'ի կրակն, նա զինչ 'ի մէջ տանն կոր կենայ՝ փախչին. և այս բնութեամբ է, որ 'ի ծխելոյն կենդանիքն փախչին։*

## ԴՈՒՌՆ ՃԴ·

*Յաղագս մրջիւնոյ:*

*Առ զլեռնային փօտանջն, որ է լեռան դաղձն, և զծծումբն, լեսեա հետ իրերաց, և 'ի ծակն ցանեա 'ի ներքև շուրջանակի, նա փախչին։ Ապա թէ մեղուք լինին 'ի սահմանն, վնասէ հոտն, և սպառէ զմեղուքն։ Եւ թէ զմարգարտի զստառաֆն [2] ծխես 'ի ծակն, և զայլուքն ընդ ծակն 'ի վայր ածես՝ փախչին մրջիւնքն։*

1. *Այսինքն եթէ չյաջողիցի կամ չկարիցէ։*
2. *Ստափաֆ իմանայ զգաղտակուրն, այսինքն զպատեանս յորում գտանի մարգարիտն։*

## ԴՈՒՌՆ ՃԵ·

*Ցաղագս մնջիխի։*

*Զարհոտ և ծծումբ ծխեա. մնջեխքն ամենայքն փախչին. և թէ զկանեփի կանաչ ցախն 'ի խեչղ պահես, մնջեխ 'ի քեզ չմերձենայ։ Եւ թէ զչոր գինեմրուրն ծխես՝ փախչին ամենայն մնջեխքն. նոյնպէս և 'ի ծխոյ գշկուրին փախչին։*

## ԴՈՒՌՆ ՃԶ·

*Ցաղագս լուոյ։*

*Առ զպտղի ձիթի տուրտինն և ժծ զտան միջգետինան, լուն սպառի։ Եթէ ոք առնու զճապուռն և լեսէ, և շող ջուր ածէ 'ի վերայ, և 'ի տունն ցանէ՝ լուն սատակի առ հասարակ։ Առ զվայրի խիարուկն և ծեծեա ջրով, 'ի տունն ցանեա. զնոյն գործէ։ Եւ թէ ուզես, արա 'ի մէջ տանն փոս մի, և ծեծեա զճփոյն տերևն և 'ի փոսոյն մէջն լից. նա ինչ լու կենայ՝ ամէնքն անդր ժողովին։ Եւ եթէ ոք առնու զայն վայրի ապխրշումն[1] որ 'ի ծառս լինի, նոյնպէս և զպարկուճն թրթրի փիճւոյն, և զինքն և զպապունէճն հետ իրերաց եփեա և զջուրն ցանեա, զլուն սատակէ։ Եւ թէ ոք առնու զծովուն լուն՝ որ ձուկն է և իւրն լու ասեն[2], և խաշէ զինքն և զջուրն 'ի տունն ցանէ, առ ժամայն սատակէ զլուքն։*

## ԴՈՒՌՆ ՃԷ·

*Ցաղագս թզեզի։*

*Առ չարհոտ և գշկուր, և 'ի հողմոյն դեհն ծխեա 'ի վերայ շինոյն, նա ուր ծուխն հասանի՝ սատակին. նոյն-*

1. *Մազանման մամուռք կամ բուրդք որ լինին 'ի ծառս ոմանս վայրենիս։*
2. *Չիք 'ի բնագրին այս բան։*

*դէս և ոթխսքն։ Եւ թէ զխխարկլին տակն ծխեա, զնոյն բան առնէ։ Զի Արիստոտելս գրեալ է, թէ զազրի բզէզն եթէ ոք ՚ի վարդն թաղէ՝ առժամայն սատակին, զի գխշահոտութեամբ է ծնեալ, նա ամենայն անուշահոտք նմա վքեան առնեն։*

## ԴՈԽՈՆ ԾԲ։

### *Ցաղազս քավխսի*[1]:

*Առ զհոռոմ ձիթի տուրտնին կամ զձէթն, և շողցո*[2]*, և զպախրեի լեղին ՚ի ներս խառնեա և ծծ զտեղին, ուր քավխսն լինի, և սպառի։ Եւ թէ առնու ոք արջասպ և քացախ և յիրեար խառնէ, և օծանէ, զտեղին ուր լինին՝ իսպառ սատակին։ Եւ եթէ ոք առնու զխխարկլին արմատն և եփէ ջրով, և լուանայ զտեղն՝ սպառէ զամէն։ Եւ թէ առնու ոք զնոր սապոնն, որ դեռ կենայ և եփի, և օծանէ զտեղին, սպառէ զքավխսն, և սրբէ որ այլ չլինի։ Եւ թէ ուզես որ տախտ շինես և քավխսն բնաւ չմնակի ՚ի յինքն, առ զտզրուկն որ ՚ի մարդ փակուցած լինի, և թափեա զարիւնն ՚ի փորոյն, և օծ զտախտն կամ զտեղն, զոր կարծես քավխս բնակիլ անդ, նա այլ բնաւ չլինի։ Եւ թէ ոք առնու աման մի ջուր լակամով և դնէ ներքև տախտին, և ՚ի վերայ այն ջրին ելեալ պառկի, քավխսն զինքն չուտէ։ Եւ թէ զհասարակաց հեշտ դեղն*[3] *առնէ ոք և եռջրէ, նա սպառէ զինքն, ապա կրկին լինի։ Զծաղիկն ընկզին չորացո և ծխեա, փախչին քավխսքն։*

1. Մխա ՕՕ. Բոքս կամ Գոքս։ Տ. ՚ի Բառս։
2. Ցօր. շողոս։
3. Մխա Օր. զհեշտ դեղս բացատրեն, «այսինքն, զոր եռ. ջրով լուան զտախտակներն»։

## ԴՈՒՌՆ ՃԹ·

*Ցաղագս մկանց որք 'ի տան լինին:*

Առ զպտղի ձիթի տուրտնին և լից 'ի պղինձ, մի և դիր գիշերն 'ի մէջ տանն. նա 'ի գիշերն ամէն մկունքն 'ի ներքս լնանին և մեռանին։ Առ սև խարբախ, և թէ աղէկ սպիտակ լինի, և աղա, և ընդ ալերն միացո, և լեսած պանիր ևս 'ի ներքս խառնեա, և մեղրաջրով շաղախեա, և հայս արա և դիր. մուկն որ ուտէ՝ առժամայն սատակի։ Եւ թէ առնու ոք զվայրի խիարկին տակն և զէնկիւժէնտն և ծեծէ և զալիւրն 'ի ձէթն խառնէ և թրէ և դնէ, առժամայն սպանանէ։ Եւ թէ առնու ոք զվայրի խիարկին տակն և զշահմիհամնտալին՝ և լեսած յիրեար խառնէ, և զնոյն անարատ եփէ 'ի ջուր և այն ջրովն զհայսն շաղախէ և ձգէ, նա սպանանէ զմկունսն։ Եւ թէ առնու ոք զսպունգն և մկրատով կտրատէ մանր, այնպէս որ մուկն կարիցէ կլանել, և առնու զճրագուն հալէ և զկտտորսն սպունգին 'ի ներքս լնու, և ցանէ 'ի տուն կամ 'ի դրունք, մուկն որ կլանէ՝, ուռչի 'ի փորն և առժամայն սպանանէ։

## ԴՈՒՌՆ ՃԺ·

*Ցաղագս վայրի մկանց, որք 'ի դարերն և 'ի յարտորայսն լինին։*

Ապօղլյոս ասէ, եթէ ոք առնու պախրէի լեղի և 'ի ջուր խառնէ, և զսերմն այնու մնչէ, ընաւ մուկն զբոյսն չուտէ։ Եւ սոյլ առնու զբողկին տակն և զխարբախն և զսպիտակն[1] լեսած և ալիւր, և զինքն թրէ աղէկ, և 'ի ծակդրունսն[2] ցանէ, մուկն որ ուտէ՝ առ ժամայն սատակի։ Բայց Պօլօնացիք զայս փորձեալ են, որք առին զցախն ձմնւոյն դալար, և այնու խծկեցին զծակադրունսն, նա մկունքն անճարացան, և զայն կերեալ սատակեցան։

1. Զանազանէ զսպիտակ եղեբորոսն 'ի սևոյն՝ որ պարզապէս խարբախ կոչի։
2. Միւս Օ. 'ի ծակերն։

## ԴՈՒՌՆ ՃԺԱ·

*Վասն խլրդան, փորձով:*

*Փարչ չինեա երկու լուլէով, մէկն արձակ և մէկն նեղ և երկայն, և դիր 'ի փարչն գազի խէժ [1], ծծումբ և մուր. և դիր զմէկ լուլէն 'ի ծակն, և զայլ ծակսն կալ. և բռնցո զծծումբն, և 'ի մէկ այլ արձակ լուլէն փչուչ դիր և փչեա, որ ծուխն ընդ ծակքն 'ի ներքս երթայ. նա զամէն խլուրդն սպանանէ և զմուկն:*

## ԴՈՒՌՆ ՃԺԲ·

*Յաղագս օձի:*

*Առ չարհոտ և ծխեա, փախչին օձքն 'ի տանէն: Եւ եղին եղջիւրն և մրտին տակն և այծու կճղակն, ընդ նոյնոդ առնեն. եթէ ծխէ ոք՝ փախչին 'ի տանէն օձերն և ամենայն ժժմունք: Առ աֆիօն, և մրտի տակ, և աղա մանր, և յիրեար խառնեա միաչափ, և քացախով թրեա, և կապեր արա և չորացո, և 'ի հետ պահեա, և 'ի տեղի ուր վախես յօձէ՝ մէկ 'ի յայնց ծխեա. առհասարակ փախչին անտի: Օձուն խորխն նաւթով վառեա երեք ճրագ 'ի մէջ տանն՝ օձք երևին: Խաթրան ծխեա, օձերն փախչին: Անմուխն ծխեա, ամէն օձքն փախչին:*

## ԴՈՒՌՆ ՃԺԳ·

*Յաղագս այգեաց կրմանց խրատք:*

*Պարտ է զհնձանսն յառաջ քան զկթելն լուանալ սրբելով, և ծխել և անուշահոտել և օրհնել:*

1. Միւս 00. խայծղան:

## ԴՈՒՌՆ ՃԺԴ·

*Վասն ճանաչելոյ զխաղողն թէ շատ գինի տանէ թէ քիչ։*

Գնա 'ի կուզերն և պատրաստութեամբ ընթանեա երկու մատամբք մէկ պտուղ մի, և խլեա 'ի կոյզկապէն, այնպէս որ չպտղի պտուղն. և տես, թէ ընդ կապծակն ջուր գայ 'ի դուրս՝ գինեբուղխ է և շատ գինւոյ նշան. և թէ չելանէ ջուր՝ նա վատ է, և սակաւ գինի լինի։ Եւ փորձեալ են ոմանք, որ երբ արտերն կամ այլ սերմանքն աղէկ լինին՝ նա գինին սակաւ լինի։ Եւ այլ ոմանք փորձեալ են, որ երբ գարունն անձրևային գայ՝ նա գինին շատ լինի. և թէ յայնժամ գայ անձրևն որ ազոխն քան զքուշնայ մի լինի՝ նա խիստ օգտէ. և թէ յառաջ որ հասանի՝ յոր ժամու գայ՝ օգտէ. և եթէ 'ի կթելոյն ժամն գայ անձրևն՝ շատ գինի առնէ, սակայն նօսր լինի և շուտ քացախի։

## ԴՈՒՌՆ ՃԺԵ·

*Յաղագս կթելոյ ժամուն և նշանացն որք 'ի խաղողն։*

Զխաղողին նշանսն դժուար է ճանաչել, և վասն ոչ ճանաչելոյն՝ ոմանք զկիթն անժամ առնեն, նա լինի գինին նօսր և վատոյժ, և ոչ դիմանայ։ Եւ այլ ոմանք զկիթն յամեցուցանեն և զայգին աւերլդատ առնեն 'ի պտղին դարմանելն. զի բազում աշխատութիւն կրէ տունկն 'ի դարմանելն զպտուղն այնպէս, զերդ երբ մեծ որթն զկոճն ծծէ և ցամաքեցուցանէ, ոչ միայն զկաթն՝ այլ և զարիւնն և զոյժն ևս. նոյնպէս է և տունկն։ Եւ ոչ թէ այս վնասս միայն 'ի յամեցուցանելն է, այլ և ամենայն պատահարաց ներքև 'ի բաց է, կարկտին և այլոցն. և ամէն իրօք պիղծ է յամենալն 'ի կիթն։ Եւ վասն այսորիկ իմաստունքն ոչ եթէ համտեսելովն միայն հաւանեցան ճանաչել, այլ և տեսութեամբ նշանացս, զորս գրեմք։ Տես զխաղողն. երբ աղէկ հասանի՝ նշանն այս է, որ վեց օր չփոխի յիւր գոյնէն։ Եւ այլ. հայեաց 'ի պտուղն, թէ կուտն 'ի

մէջն սև երևի՝ հասեալ է, կթեա։ Եւ այլ. պտղեա զխաղողն և տես. Թէ կուտն 'ի պտղին մնէն չզատի, այլ զերդ. տուրտին կենայ փակած, չէ հասեալ. և թէ ոչ՝ որ կուտն մերկիկ մնայ՝ հասեալ է, կթեա։ Եւ ծիլ գիտէ՝ 'ի կոյզն ուրեք պտուղ խակ մնացեալ լինի, նա չէ պարտ վասն այսորիկ զկթելն յամեցուցանել, կըթեա, և զայն ընտրեա և յետ հան. և արկ 'ի մըղըրուն [1], և դիր պղնձով եռջուր, աղէկ պահ մի, որ հասուցանէ զինքն շող ջուրն. և ապա հան և կախեա նոյն կթոցուն, որ չամաքի երկու օր, և ապա խառնեա յայլսն, աղէկ լինի. և թէ զինքն 'ի հետ քամես՝ այլ աղէկ լինի։

## ԴՈՒՌՆ ճԺԶ.

*Յաղագս բաժանմանց գինեաց ազգաց և կերպից ։*

Սև խաղողին գինին ուժով և թանձր լինի. սպիտակ խաղողին գինին միջակ է յուժոյն և վատոյժ և նօսր և սուր։ Կարմիր խաղողին գինին պարարտ է քան զսևին և խիստ արբեցուցանէ։ Նոր տնկին գինին բընութեամբ այլ հով է քան զհին այգւոյն, զի հին այգւոյն գինին բնութեամբ տաք է բնական գիջութեամբ։

## ԴՈՒՌՆ ճԺԷ.

*Յաղագս բաժանողութեան տնկոց և պտղոց նոցին ։*

Գիտելի է որ ամէն ծմակ տեղւոյ և տաք տեղւոյ գինին վատ լինի. զի արևն 'ի յինքն սակաւ հասանի. և այգեաց որք 'ի բարձրավանդակ տեղիս լինին՝ գինին անոյշ լինի, զի օդիցն պարզ գիջութիւնն և արեգական պարզ շողն՝ խաղողին սնունդ տայ և պահէ և հասուցանէ զխաղողն ։ Նոյնպէս և լուսնին ջերմութիւնն տաք և գէջ է բնութեամբ և հասուցանող պտղոցն, զի համաձայն է պտղոցն բնութեան և օդ-

[1] Մի օր. ծղրտողն. միւս՝ ծղրղուն ։ Տ. 'ի Բառս ։

տակար և հաստուցանող. և վասն այնորիկ որեն և պարզեալ յիստակեն զխաղողն, և զգինին անոյշ առնեն. և այսու ճանաչի որ շող տեղեաց գինին պարզ և անոյշ է քան զայլ ձիւնամեծ տեղեացն: Եւ գիտելի է, որ երբ բերն սակաւ լինի՝ գինին անոյշ լինի, զի տնկին ոյժն առաւել առնու և անոյշ լինի՝ քան 'ի շատ եղած բերն:

## ԴՈՒՌՆ ՃԺԸ.

*Յաղագս բնական օգտից զոր 'ի կրելն պարտ է առնել:*

Զոր հինգն բուռն հարեալ ասացին վասն հնձոցն, զոր 'ի յելն Բազմաստեղացն առնեն. Նոյնպէս և զաստաղըն որ կթելոյն է՝ պարտ է աղէկ իմանալ և յայնժամ կթել. և լինի 'ի փուլն, և ոչ 'ի նորն՝ որ վնասի: Եւ տես, որ լուսինն 'ի Խեցգետինն լինի, կամ յԱռիւծն, կամ 'ի Կշիռն, կամ 'ի Կարիճն կամ յԱյծեղջիւր, և կամ 'ի Ջրհոսն: Եւ աստ պարտ է իմանալ, որ իմաստունքն և գիտնականքն զբան իւրեանց այսպէս առնեն, և օգտին 'ի վաստակոցն. և անգէտքն իբրև զկոյր յընթացս ճանապարհաց՝ խարխափին անօգուտ. և վասն այնորիկ արժան է լաւագոյն հմտանալ գործոյս: Արդ արժան է զխաղողն աղէկ ընտրել 'ի խակէն և 'ի չորէն՝ 'ի հնձան ընուլն, և երեք օր անշարժ թողուլ. և ապա 'ի չորրորդ օրին կոխել. և կոխողքն սպրկիկ պիտին յամենայն ախտից, 'ի գողութենէ, 'ի պխսակոտութենէ, 'ի բորոյ և յամենայն խոցոյ և յաղտեղութեանց. և լուացած ազգի ազգի մաքրութեամբ մտանէ 'ի հնձանն և առնէ զկոխն. զի չէ արժան զմեղսաքաւիչ և զամենապէտ ըմպելին՝ աղտեղաբար և տաղտկալի գարշութեամբ առնել. և թէ ոք առնէ՝ ըստ Առաքելոյն բանի դատաստան անձին իւրում առնէ[1]: Պարտ է հալաւով մտանել, որ քիրտն 'ի լաթն արգելանի և չկաթէ 'ի խաղողն: Եւ կին մարդ

1 Յայտ է թէ այսպիսի բանք ոչ բնագրին են և ոչ Արաբացւոյն, այլ Հայ թարգմանչին:

բնաւ ոչ է պարտ մերձենալ 'ի կոխն, այլ յետ կալ 'ի 'ի հնձանէն։

## ԴՈՒՌՆ ԾԺԹ.

*Երբէ մրգես ոք զայն գինին լուացուցանէ՝ զոր անձրևն 'ի հնձանն թափեայ :*

Նոյնպէս և թէ անձրևին խստութիւն շաղախ լինի ածեալ 'ի ներքս՝ 'ի շաղախէն ոչ է պարտ երկնչիլ, զի այն 'ի յատակն իջանէ և մրուր դառնայ։ Եւ ոմանք յայդպիսի գինին գաղձ ձգեն ձարձատած, որ չլինի մանր, յամէն տասն լիտր գինի՝ երեք ճանկ կամ չորս մանր աղ։ Եւ պարտ է որ երբ յեռէ դադարի մուստառն, նա մենակ յայլ աման փոխեն, և այդ է դեղն։

## ԴՈՒՌՆ ԾԻ.

*Վասն գինւոյ օգտութեանց յամենայն կողմանց։*

Գիտելի է զի բազումք են պէտս այսորիկ. բայց յառաջ պարտ է զգաւառն և զհաւայն տեղեաց իմանալ. եթէ օդքն յոր բնութենէ ունին զառաւելութիւն, կամ որ հողմն անդ աւելի կու դիպի։ Եւ տեսանել պիտի եթէ ո՞ր գինի լաւ դիմանայ 'ի տեղն. հի՞ն այդեացըն թէ նոր մատղաշ տնկոցն. եթէ ո՞ր ազգ ցախ լաւ կու լինի, որ յեռն 'ի կարասին թերանն դրուի։ Եւ գիտելի է որ ամենևին մառանն լաւ պիտի և արուեստով շինած. և զվերոգրեալ խրատքս աղէկ պարտ է իմանալ։

## ԴՈՒՌՆ ԾԻԱ.

*Վասն Հնձանի։*

Արժան է զհնձանսն 'ի բարձրաւանդակ տեղիսն շինել, որ 'ի սահմանն կենայ, և մառանին վերև, և յամենայն գարշահոտութենէ հեռի, և յաղտեղութեանց և 'ի գիշահոտ վայրաց և 'ի բաղանեաց, և

յախուռոց և 'ի յարտաքնոցէ և 'ի ծառոց։ Եւ յառաջ տուր զանուշահոտ խոտս արկանել 'ի ներքս, և ծխել յետ լուանալոյն՝ որպէս արժան է՝ զանուշահոտ խունկ կրս. և ընդդէմ արևելից 'ի խոնարհ, որ խողովակն[1] ընդդէմ արևելից լինի։ Եւ եթէ 'ի ձիւնամեծ երկիր լինի, նա ընդ հիւսիսոյ դէմս առնելի է խողովակն. և եթէ 'ի միջասահման, 'ի ցուրտ և 'ի ջեր, նա ընդդէմ հիւսիսոյ պարտ է առնել զխողովակն։ Եւ 'ի հնձանին մէկ դեհն փոքրագոյն հնձան պիտի, որ զտրօսանքն անդ քամեն. և կրով ծեփած պիտի և կրակաց մոխրով և լեսած կղմինտրով, և 'ի վերայ ծածկած, որ իրք 'ի ներքս չանկանի. և եթէ տախտակով ոք շինէ՝ այլ աղէկ է։ Եւ եթէ զսիլայն ոք 'ի ներքս 'ի մառանն առնու, լաւն այն է, Եւ եթէ զխողովակն դնես, որ քաղցուն ընդ այն 'ի կարասն ընանի, նա իւր ղորդ սահմանն այն է։

## ԴՈՒՌՆ ՃԻԲ.

### Վասն Մառանի խրատք։

Արժան է զմառանն 'ի միջաշաւիղ տեղ շինել 'ի ջեր և 'ի ցուրտ. երկու պատուհան թողուլ, զմէկն ընդդէմ հիւսիսոյ, և զմէկ այլն ընդդէմ հարաւոյ. և եթէ ցրտային լինի՝ մէկ պատուհան ընդդէմ հարաւոյ։ Եւ զմառանն 'ի բարձր տեղ շինեա. բայց զհնձանն ներքև և ցած, որպէս գրեալ եմք։ Եւս առաւել տես որ բնաւ թզենի չլինի 'ի մօտն, և ոչ նռնենի, զի յատուկ քացխեցուցանեն զգինին, ևս առաւել ուր մաղմզուկքըն հասանին՝ խասխաթ ունին։ Եւ տես, որ կարաս որ քացախի՝ 'ի տունն չթողուս. հան մենակ զի զերդ բորն որ 'ի կենդանիսն փոխի 'ի մէկէն 'ի մէկն, նոյնպէս և քացախումն 'ի գինիս 'ի մէկէն յայլն փոխի, և աւերէ զամէնն։

1 Միւս ՕՕ. ճգանական աւեն փոխան խողովակի. լսի այժմ 'ի Հայս և ճաղբեան նովին նշանակութեամբ. Թ. օլուգ։

## ԴՈՒՌՆ ՃԻԳ·

*Վասն իմանալոյ զտեղն և զդիրս կարասից ըստ տեղեացն առնել ։*

Տես, թէ գինին խիստ ուժով լինի՝ դու զկարասսն 'ի բաց դիր, և պատ քարշեա ընդ մէջն, որ ոչ արևելեան հողմն հասանի յինքն և ոչ հարաւն, և երկուցն դիպան 'ի բաց [1] թող լինի ։ Եւ զնօսրագոյն գինին 'ի ծածք և 'ի ներքս տան դնել պարտ է. և թէ թաղէ ոք զկարասն՝ աղէկ է. և յարևելից և 'ի հիւսիսոյ դեհըն բարձր պատուհան, որ օդն մտանէ ։ Բայց թէ ջեր երկիր լինի, մի թաղեր, տանն ծածքն հերիք է ։

## ԴՈՒՌՆ ՃԻԴ·

*Այլ խրատ վասն կարասից ։*

Զկարասսն 'ի ցամաք օդ և յանդէջ վայրսն պարտ է դնել. երեք թիզ փոս արա ուիցն, որ ամուր նստի և չշրջի. և թէ տեղն ցուրտ լինի՝ մինչև ցկէսն թաղեա զկարասն, մանաւանդ թէ գինին նօսր լինի. և այն որ 'ի հողոյն դուրս մնայ՝ 'ի շուրջն աւազ և յարդած, որ չքորքոսի ։ Եւ գիտելի է որ աւազն խիստ օգտակար է այգեացն, և զգինին անուշացուցանէ ։ Եւ այսու պարտ է իմանալ, որ երբ գինին կտրէ, աւազ արկ 'ի ներքս, և աւազով պարզեա, նա անուշանայ ։

1 Միւս օր. 'ի վայր ։ Թուի՝ զմիջոց երկուց կարասից ասել 'ի բաց թողուլ, այսինքն սակաւ մի հեռի, որպէս և բնագիրն ասէ տանսաչափ հեռի դնել ։

## ԴՈՒՌՆ ՃԻԵ·

*Երբ որպէս պարտ է ձիւթել և շինել զամանսն։*

Զկարասն միայն զերդ 'ի բրտին փռնէն ելանէ՝ պարտ է կամ ձիւթել կամ կպրել. բայց զհին կարասն յիւր ժամու ձիւթեա, այն չքննէ։ Են ոմանք որ յամէն տարի ձիւթեն, և են որք տարի ընդ մէջ։ Եւ Պօլօնացիք յամէն հինգ տարի, թէ գինին աւերեալ չլինի։ Եւ են որ մազտաքէին ցախովն ձիւթեն կամ պանրին ցախովն. և են որ բևեկնի ցախովն, կամ այլ անուշահամ ծառոց։ Եւ են որք 'ի ձիւթն չոր լեսած խընծոր խառնեն. և են որք սերկևիլ։ Եւ են ոմանք՝ որք մինչ դատարկ է կարասն՝ միայն ջրով աղէկ լուանան, և այլք աղջուր առնեն և լուանան. և են որ ծովու ջրով. և են որ շող ջրով. և ապա ձիւթեն, որպէս 'ի վեր անդր գրեալ եմք։ Բայց թաղած կարասանցն՝ դժուար է յամէն տարի հանելն և լուանալն, ապա 'ի տեղն պարտ է ցամաքեցուցանել սպունգով և քերել և ձիւթել, նոյն տերևօք, և փանօսել՝ որպէս արժան է, և ապա ձիւթել և կպրել։

## ԴՈՒՌՆ ՃԻԶ·

*Երբ որպէս պարտ է փորձել զձիւթն կամ զկուպրն և ճանաչել զլաւն։*

Ծխեա զձիւթն, և տես. թէ ծուխն թանձր է՝ աղէկ է և ուժով, և թէ նօսր՝ վատ է, չէ 'ի բան։ Եւ թէ ուզես որ լաւանայ, 'ի քարէ պուտուկ մի ած, և յարէն կրակ վառեա, և մեղմ հալեա, և հօտի մոխրաջուր արա, և 'ի ներքս խառնեա. և եփեա աղէկ. և զայն ջուրն երեք հետ փոխեա երեք օր, յամէն օր երեք հետ, որ լաւանայ և ապա զջուրն սպունգով քաղեա, և 'ի բան տար։ Եւ թէ ձիւթն լեղի լինի՝ պինտ հալեա և անոյշ գինի լից 'ի վերայ և եփեա, լաւանայ. և թէ կակուղ լինի ձիւթն՝ երեք հետ պարտ է եփել որ պնտի, և ապա 'ի բան տանել։ Եւ են ոմանք որք

հօտի մոխիր խառնեն և եփեն. և են որք 'մոմ, և հօտի մոխիր և հին գինի: Եւ այլք զմոմն և զձիւթն հաւասար առնեն, և հալեն և ձիւթեն:

Գրեալ են, թէ խիստ աղէկ ձիւթն 'ի Սարոյ[1] երկրէն գայ. և թէ ուզես որ գինին պինտ լինի, զմոմն աւելի արա քան զձիւթն: Սակայն հինքն ամենայնքն ապիգովեալ են զմոմն, զի փոթոթէ զգինին և շուտ քացախեցուցանէ. և 'ի հնոցն հաստատեալ եմք փորձով, որ մենակ ձիւթն լաւ է: Եւ աղէկ ձիւթն յ'Ռուպոս[2] երկրէն գայ և յ'Ռօտիայ[3] կղզւոյն: Եւ մեք առհասարակ լաւ ձիւթ զայն համարեցաք՝ որ յիստակ և սպրկիկ լինի:

## ԴՈՒՌՆ ՃԻԷ·

*Երէ որպէս պարտ է ծխարկել:*

Անդալոյ[4] մարդիկն առնուն երեսուն լիտր ձիւթ, և լիտր մի մոմ և ութ խունկի նիշատիր, և քուշնայի ալիւր չորս նուկի, խառնեն յիրեար և եփեն, և այնու ձիւթեն. և մենակ 'ի շողն՝ լեսած հացհամեմ 'ի վերայ ձիւթին ցանեն որ փակչի: Եւ են ոմանք որք առնուն անհալ ձիւթ հարիւր լիտր և մոմ ժէ լիտր, և քուշնայի ալիւր երեք լիտր, հացհամեմ աղխձած և ծեծած երեք լիտր, յիրեար խառնեա և ձիւթեա, և լեսած համեմ 'ի վերայ ցանեա. այս է լաւն 'ի ձիւթելն քան զամէնն:

Այլ ազգ՝ որ նոր ձիւթես. առ ձիւթ և մունֆախրդէճ, և ծովու ջուր խառնեա ընդ իրեար, և նոր ձիւթեա. և բազումք այսու զբերանն ամանին միայն օծանեն, նա զիւր ներգործութիւնն 'ի յամէն գինին

1 Պարտ էր գրել Սարդոյ ըստ բնագրին, որ է Սարտինիա:
2 Ռեգէոն կամ Հռեգիա հրուանդան 'ի Տրովագա:
3 Հռոդոս կղզի:
4 Իտալիա, ըստ բնագրին, յորում խառնուրդ նիւթոցդ առնի ժ մաս ձիւթոյ, մաս մի մոմոյ, ութ տրաքմի կամ տրամ աղ ամմոնիակ, որ է Նիշատիրն, ըստ մեզ անուշադր, և չորս տրամ խունկ (Manna thuris):

կու տայ։ Եւ թէ ծովու ջուր չլինի՝ աղի ջուր արա ծովու նման։

## ԴՈՒՌՆ ԾԻԸ·

*Այլ ազգ որ ձիւթեն ։*

Առ կրետացի զուֆա Ժբ լիտր, և յայլազգ զուֆայէ[1] երկու լիտր. Մկընդ խոտ է. չոր սընֆուլ լիտր մի. սապրի սկուդրի[2] նուկի ու կէս, զաֆրան չորս նուկի ու կէս, վրացի կոճ լիտր մի. լեսեա և յիրեար խառնեա, և ձիւթեա զամանն. և 'ի վերայ ցանեա տաք զխառնեալ տեղերդ, այնպէս որ փակչի 'ի ձիւթըն. և զմուստառն յիստակացո և 'ի վերայ լից. և տես զարմացք[3]։ Եւ զայս ազգ ձիւթս յամէն երկու տարի հետ մի պարտ է առնել։

## ԴՈՒՌՆ ԾԻԹ·

*Ցաղագս գինի պահելոյ, որ յերկար հնանայ ։*

Պարտ է զմառանն բարձր առնել, որպէս յառաջ գրեցաք, և զդուռն 'ի հարաւոյ դեհն, և զպատուհանսն 'ի հիւսիսոյ. նա զգինին յերկար պահէ և թեթև լինի։ Եւ Ասիացիք և Ծամցիք՝ 'ի մառանսն վերնատունս առնեն, նա լաւ է։ Որ ուզես թէ քո գինին քաղցր և թանձր լինի, տես որ զբերանն կարասին բաց չթողուս, թէ ոչ հողմն զհոտն և զհամն գինւոյն աւերէ։ Եւ պարտ է հեռի դնել զկարասն 'ի միմեանց, որ բորն՝ որպէս գրեալ եմք՝ չփոխի 'ի վատթարէն 'ի յաղէկն։ Եւ լաւն այն է որ 'ի ներքոյ ռաիցն կարասին սամիթ դնեն, կամ անանուխ կամ այլ տաք անուշահոտ խոտ։ Եւ ոմանք փորձեալ են, որ զմառանն 'ի

1 Փոխան այլազգ զուֆայի բնագիրն աւէ Նարդոս Հնդէկ կամ Կելտացի։
2 Սապր՝ է Հալուէ, Aloe. Սկուտրի ազգ ընտիր հալուէի, որպէս և բնագիրն աւէ. յանուն Սկուտրի կղզւոյ Արաբիոյ, ըստ բժշկարանի։
3 Միւս ՕՕ. « Տես արմացք, Թագաւորական իրք »։

ծխագնաց[1] տեղ պարտ է շինել, մօտ 'ի փուռն և կամ 'ի տեղ ուր կրակ բանեցընեն, որ մուխն զգինջութիւնն քաղէ: Եւ թէ անձարակ լինի, նա փիճի կամ մրտենի կամ բևեկնի մուխ պարտ է 'ի մառանն առնել: Եւ թէ ոք 'ի կարաս ուր քաղցր գինի լինի կեցեալ 'ի ներքս, և առանց նոր փանոսելոյ և ձիւթելոյ նոր գինի ածէ 'ի ներքս, անհնար քացախի: Եւ թէ յաման ուր աղի իրք կեցեալ լինի 'ի ներքս, և գինի ածես՝ լաւ լինի: Եւ այլք որք զկարասն ուզեն ստէպ բանալ և յամէնն վնասէ պահել՝ յառնուլն, նա թող առնուն ծովու ջուր կամ մոխրաջուր, և լուանան աղէկ զկարասն և սպունգով մաքրեն զատակն և զգինշահոտութիւնն հանեն, և թէ չելանէ՝ շող ջրով և աղով թող լուանան. և ապա առցեն գարեալիւր և ձիւթ, և չորս բաժնին մէկն մոմ և հալեսցեն ընդ իրեար և ձիւթեսցեն զկարասն և թողցեն որ հովանան. և ապա խունկ ծխեսցեն և թողցեն զի ցամաքեսցին. և ապա զգինին 'ի ներքս լցցեն և սերտ 'ի բան տարցեն: Եւ են ոմանք որ պտղի ձիթի տուրտնով օծանեն զկարասն և ապա ձիւթեն. և այլք ոմանք են որ ծեծեն զչոր թուզն և այնու օծանեն զկարասն 'ի վերայ ձիթին, և ապա լնուն զգինին. և այս փորձով աղէկ է: Եւ փոքր կարասն աղէկ է քան զմեծն, որ շուտ շինվի. և թէ արատ ինչ անկանի՝ ձարտար[2] ելանէ գինին: Բայց աղէկն այն է որ մենակ զերդ 'ի փռնէն ելանէ՝ ձիթվի և լցուի քան զհինն: Եւ թէ բեկի կարասն՝ առ ծըծումբ և կարասկոտոր լեսած, և բրտի կաւ, և շաղախ արա և ծծ զբեկածն. նա քան զանարատ տեղն՝ այլ ամուր լինի: Եւ (թէ) կարասն կամ ապիկի կամ շիշ բեկի, առ բուռ՝ որ է աղչի, մաղեա մանր. ձուի ձերմակն խառնեա և ծեծեա որ մակարդի, և ծծ զբեկածն:

1 Միւս ՕՕ. Մխագնաց:

2 Դիւրաւ:

## ԴՈՒՌՆ ՃԼ·

*Դեղ ընդհանրական վասն գինի պահելոյ։*

Գիտելի է, որ կայծակն և որոտմն փոխէ զգինին յորպիսութենէն. և իւր դեղն այս է. որ երկաթի անօթինչ՝ զինչ ուրդի՝ 'ի վերայ բերանոյ կարասին դիր, այլ կայծակն և որոտմն վզեան չառնէ։ Եւ թէ ոք առնու փիճւոյ տերև և թարթւոյ կամ կաղմխոյ, և խփէ աղէկ զբերանն կարասին, այնպէս որ 'ի գինին հասանի, լաւացուցանէ զմուստառն, և ճարտար յիստակէ և լաւ գինի առնէ և անուշահամ. և թէ յառաջ քան զլնուլդ՝ զամէն ամանն շփես, աղէկ է։ Եւ թէ կամիս որ մուստառն շոյտ հասանի, 'ի ծխոտ տուն դիր, նա ծուխն շոյտ հասուցանէ. և պատեհ է որ ձարէ կամ երկաթէ ջօվլի շինես, և զվերայի փրփուրն 'ի բերանոցն ստէպ սրբես շերեփովն. և զջօվլին մինչև յատակըն կարասին ածես, և զինչ ագռ 'ի մուստառն խառնեալ լինի՝ զամէնն սրբես և 'ի դուրս ձգես։ Եւ զամենայն դեղ զոր գրեալ եմք գինւոյդ համար, պարտ է որ յետ կէս աւուր՝ երբ հարաւային հողմն ելանէ՝ տապա առնես, և օդն ամպ չլինի, այլ ջինջ և յիստակ։ Եւ տես որ հողմ չհասանի 'ի գինին 'ի մէջ կարասին, թէ չէ՝ վնասէ։ Նոյնպէս և թէ 'ի գիշերն բանաս, տես որ լուսնկայն 'ի ներքս չցայթէ, թէ ոչ՝ աւերէ զգինին։ Եւ գիտելի է, որ երաշտ տարւոյն գինին պինտ և ուժով լինի. և պարտ է որ առնուս անձրևաջուր, և եփես այնչափ՝ որ մնայ կէսն, և 'ի գինին խառնես, և սակաւ զըմուռ, նա խիստ լաւացուցանէ զգինին. զի անձրևաջուրն իւր ազգակից է։ Եւ պարտ է՝ որ ամենևին անպատեհացեալ կին 'ի մառանն չմտանէ, թէ ոչ՝ աւերի այն գինին որ այն կնոջ հոտն 'ի յինքն դիպի, և որպէս զջուր դառնայ։

## ԴՈՒՌՆ ՃԼԱ․

*Վասն գինւոյ եռալոյ։*

*Եթէ ուզես որ յեռալն չվայլթի, առ զդաղձն կամ զվայրի ասփուրն [1], և կանդի [2] շինեա կարասին բերանոյն չաքօք, զերդ գտակ, և 'ի վերայ բերանոյն դիր, այլ չթողու որ ելանէ։ Նոյնպէս և թէ ծեծես զդաղձըն և զբերանն կարասին օծանես, այլ ընաւ չվայլթի։ Եւ թէ ոք աղած ձրադուով օծանէ զկարասին բերանն՝ այլ ընդ օծածն 'ի վեր չելանէ եռն։ Եւ թէ կուռով օծանես՝ զնոյն օգտէ։*

## ԴՈՒՌՆ ՃԼԲ․

*Վասն որ զմոռստասան չոյտ յիստակես և գինի առնես։*

*Առ աւազ լուացած և յարդ, դիր 'ի պարզուտն և քամեա, և դարձո 'ի կարասն․ առժամայն գինի լինի։ Եւ այլ, փորձով․ առ զաման և լից մուստառով և աղէկ խծկեա․ և արա աղջուր, և թէ ծովու ջուր գտանես՝ լաւն այն է․ և լից 'ի յայլ աման․ և կամ 'ի նոյն ծովն թաղեա զլցած ամանդ մինչև 'ի բերանն․ և թող երեք օր և ապա տես, նա զերդ հին գինի լինի։ Եւ այլք առնուն նռան ջուր և խառնեն, զնոյնդ առնէ։ Եւ այլք զհօտի մոխիրն 'ի յաղջուրն կամ 'ի ծովուն խառնեն և եռացուցանեն և պարզեն և ածեն 'ի գինին, զնոյնդ առնէ։ Եւ այլք առնուն զխիճն և աղնձեն, որ աղէկ տաքնայ, և 'ի կարասն ընուն տաք, զնոյնդ առնէ։*

1 Տես 'ի Բառս։ Բնագիրն կարդէ ընդ սոսին և զգուերակ, Organum։

2 Յօր․ կանդխ․ եդաք ըստ այլ օրինակաց։

## ԴՈՒՌՆ ՃԼԳ·

*Յաղագս գինւոյ սառածման և մուստակի։*

Պարտ է զմուստակին փրփուրն ստէպ սրբել 'ի բերանոյ կարասին, և են ոմանք որ հինգ օր չմօտին, և ապա յետ հինգ աւուրն սկսանին 'ի սրբել. ապա լաւն այն է որ ստէպ սրբեն զփրփուրն 'ի յառաջին եռէն իվեր. զի թէ չսրբեն՝ նա 'ի փրփրէն որդն ծնանի և աւերէ զգինին։ Եւ են ոմանք որ զկարասն շուտ ծեփեն, և են որ անագան. ապա կանուխ ծածկելն՝ զգինին քաղցր առնէ, և անագան ծածկելն՝ անուշահոտ. բայց ըստ քո կամացդ արա։ Ապա թէ ուզես որ զերկուսն ևս ունենաս՝ զանուշահոտն և զքաղցրն, նա դու զկարասին զբերանն եղեգամբք կամ բարակ վարոցօք մուշապաք արա, ծածկեա, որ ծուխն 'ի միջոցացն ելանէ։ Եւ թէ ուզես որ գինին պինտ քաղցրանայ, դու զայն դեղերն ձգեա, զորս յայլ տեղ գրեալ եմք։

## ԴՈՒՌՆ ՃԼԴ·

*Յաղագս որ գինին ամէն մուստակ մնայ։*

Կպրեա և ձիւթեա զամանն 'ի ներքուստ և 'ի դրուց, և զհնձանին քամանն, որ ինքն ըստ ինքեան իջանէ զառաջին աւուրն, և լից՝ փիճի ցախով, պինտ զբերանն կալ. և 'ի վերայ բռէ, շաղախ արա, և ծեփեա. և այսպէս մուստառ պահէ, դիմանայ մուստառին բնութեամբ՝ քանի ուզես։ Եւ թէ ուզես որ բնաւ չեռայ՝ զամանդ 'ի պաղ ջուր թաղեա երեսուն օր մինչև 'ի փողքն. և թէ 'ի գէջ աւազ որ լինի թաղես զամանդ՝ աղէկ է փորձով. և թէ մինչև 'ի մէջսն թաղես՝ այլ աղէկ է։

## ԴՈՒՌՆ ԾԼԵ·

*վասն մուստակի որ նօրացուցանեն։*

Առ աղ և բորակ կէս նուկի, և ձգեա զինքն 'ի տասն լիտր մուստառ, նա նօրացուցանէ։ Եւ թէ ոք առնու զչամչի կուտն և մանր աղայ և կէս լիտր ածէ՝ 'ի հարիւր լիտր մուստառն, խիստ նոր առնէ. և ոմանք յորժամ հանգչի մուստառն՝ նա պարզեն, և ապա այլվեր կրկին 'ի նոր լուացած ամանն լնուն, նա և այս խիստ աղէկ է։

## ԴՈՒՌՆ ԾԼԶ·

*վասն ուժաւոր առնելոյ զմուստառն։*

Եփած գինի առա և 'ի ներքը խառնեա, ուժով լինի։ Առաջին փորձականքն և իմաստուն մշակքն երկրագործք՝ հանճարեղ իմաստութեամբ փորձեցին զայս և գտին. և առին սպիտակ քուշնա, և թէ չգտանի նա՝ զհասարակացն, և աղնձեցին և ալիւր արարին և ածին 'ի գինին, նա խիստ ուժաւորող է գինւոյն։ Եւ այլք ոմանք զչամիչն 'ի կորիզէն հանած 'ի ճուլպանին ալիւրն խառնեցին, և ծեծեալ և եփած գինեաւ շաղախեալ 'ի գինին կամ 'ի մուստառն խառնեցին, նա ուժաւոր և անոյշ արար։ Եւ այլ ոմանք զաղնձած կտաւհատն և զհում խաշխաշի հատն մանր ընդ իրեար ծեծեցին, և ցորենի ալիւր խառնեցին սակաւ մի, և 'ի մուստառն ընկեցին, յոյժ օգտեաց։

## ԴՈՒՌՆ ԾԼԷ·

*վասն թէ որպէս համտեսեն զգինին։*

Արժան է զգինին 'ի նոր ժամն և 'ի հինն՝ ստէպ համտեսել. և վասն այնորիկ պարտ է զնոր գինին յետ ունենալ 'ի հնոյն։ Եւ են ոմանք որ երբ բօրէասն եղանէ՝ յայն ժամն բանան զկարասն և համտեսեն, զի յայտ-

ժամն յիստակ լինի գինին. և այլք 'ի հարաւն քամեան, որ այնու զգինւոյն այպն իմանան: Զի պարխրցին' որ է քօրէամն' բնութեամբ յիստակացուցանէ զգինին. և հարաւն պղտորէ, նա 'ի պղտորն ամէն այպն երևի, որ ճանաչես: Եւ պարտ է որ զգինին յորժամ համտեսել կամենան, նա ոչ աղի կերած լինին և ոչ կծու. զի այդոքիկ ծածկեն զայպն գինւոյն: Եւ թէ ոք առնու նոր փարչ մի և մխէ 'ի գինին, և թողու որ կաւն աղէկ խմէ զգինին, և ապա 'ի կաւն հոտոտայ. նոյնպէս և 'ի փարչէն համտեսեա զգինւոյն ամէն որպիսութիւն և անոտի ճանաչեա: Վասն այնորիկ խաբեբայ մարդիկ որ կամենան զվատ գինին որպէս աղէկ վաճառել, նա ընկոյզ և աղի պանիր և կծուահամ կերակուրք շալակեն 'ի հետ իւրեանց, և գնողացն յառաջ ուտել տան և ապա համտեսել. նա զգինին որպէս անոյշ և աղէկ բերէ համտես առնողացն:

## ԴՈՒՌՆ ՃԼԸ·

*Վասն յառաջագոյն ճանաչելոյ զլաւ և զդիմացկոտ գինին:*

Եւ գիտելի է որ թէ ոք 'ի յայգեկթոց ժամն տեսանէ յայգետնկին որթ ուրուք օձ կտապեալ, ստուգապէս այն այգւոյն գինին' յայն տարին քացախի: Եւ գինիքն բնութեամբ յԵլաստեղքն, և յայգեաց 'ի պտկելն, և 'ի վարդին փթթելն' զիւրեանց բնութիւն փոփոխեն յայլ և այլ համս. և զայս ժամերս արժան է փորձել և համտեսել զգինին 'ի լաւն և 'ի վատթարն: Եւ արդ առաջին փորձելն այսպէս է. որ 'ի կթելն' օծանես զձեռքդ նոր մուստառով և ընդ իրեար շփես. Եւ տես, թէ մեղրի պէս փակչտուկ լինի, գիտացիր որ գինին աղէկ լինի և դիմացկոտ, և թէ նօսր լինի և ջրի պէս, նա շուտ աւերի: Եւ գիտելի է զի մուստառ որ փոթոթահամ լինի' նորա գինին անոյշ լինի. և որ քաղցրահամ միայն լինի' շատ չդիմանայ: Եւ տես զայն զուֆր' որ է զերդուածն' 'ի վերայ գինւոյն երեսացն կենայ. թէ դեղնագոյն լինի կամ սև' այնպիսին չլինի դիմացկոտ. և թէ սպիտակ կամ կարմրագոյն լինի' գիտացիր որ լաւ է և դիմացկոտ. և թէ զերդ-

*սարդի ոստայն տեսանես 'ի վերայ՝ ճշմարիտ քացախի
շուտով: Եւ այլ. տես ափովդ, թէ կարասն տաք լինի և
բերանն գէջ, գիտացիր որ շուտ աւերի. և թէ ամանն
հով լինի և բերանն ցամաք՝ գիտացիր որ դիմացկոտ
լինի և անուշահամ: Եւ թէ գարունն է նոյն նշանաւուդ-
ճանաչես զգինքն: Ապա թէ սիրքէնձիւլինի շարապի
համով տեսանես, այն 'ի կարասէն է, ճարտար փոխեա
յայլ աման: Եւ են ոմանք որք զձեռս իւրեանց լուա-
նան գինեաւ, և հոտովն և փակչըտելովն ճանաչեն ըզ-
գինւոյն որպիսութիւնն: Եւ այլք երկայն սիֆուն շի-
նեն և մինչև 'ի վայր 'ի յատակն 'ի մրուրն մխեն, և
յատակէն առնուն զըորդ համն, և ճանաչեն զլաւն և
զվատթարն: Եւ այլք առնուն նեղբերան փարչ մի
և լնուն 'ի գինւոյն, և խծկեն աղէկ, և մխեն 'ի հով
ջուրն մինչև 'ի բերանն, և թողուն երեք օր, և ապա
համտեսեն և անտից իմանան: Եւ այլք զգինին աւա-
զով պարզեն 'ի պարզուտն, և տեսանեն, թէ վատ լի-
նի՝ մենակ փոխի:*

## ԴՈՒՌՆ ՃԼԹ.

*Վասն գիտենալոյ եթէ որպէս են ժամքն 'ի տարին, որ զգինին
փոխեն յիւր որպիսութեանն:*

*Պարտ է գիտել զի չորս ժամք են 'ի տարին՝ որ փո-
խեն զգինին. առաջին ժամն երբ պտկին ծառքն. եր-
կրորդն՝ 'ի սկիզբն ամառան, և արեգակն 'ի չորրորդ
տէրէճէն լինի. երրորդն՝ երբ արեգակն 'ի հինգե-
րորդ տէրէճէն, 'ի յառաւել շողէն փոխի գինին. չոր-
րորդն՝ 'ի ժամն այգեկթոց: Եւ 'ի փոփոխմունս այս
չորս ժամանակացս պարտ է ումեք զիւր գինին իմա-
նալ և զվատն հանել:*

## ԴՈՒՌՆ ՃԽ.

*Վասն յայտացուցանելոյ զաւերեալ մուստանն:*

*Տես, զի մուստառին աւերելն վասն այնորիկ լինի, որ
խակ և աղոխախառն լինի կթած. ու անուշահամ*

ջուր և եփեա մինչև կէսն պակասի, և ապա լիտր մի 'ի ջրէդ 'ի տասն լիտր քաղցուն խառնեա և եռացո ընդ իրեար, մինչև 'ի տասն բաժնէն մէկն երթայ, լաւանայ. փորձով։

## ԴՈՒՌՆ ՃԽԱ.

*Դեղ ընտիր և փորձած յաղագս ամբողջ պահելոյ զգինին։*

Են ոմանք, առնուն մուստառ և եփեն մինչև կէսն մնայ, և յիւրմէ չափ մի 'ի հին գինին խառնեն, նա շատ դիմացուցանէ և անոյշ պահէ զգինին։ Եւ են ոմանք որ բուռ դնեն 'ի ներքը, նա դիմացուցանէ։ Բայց քան զամէնն լաւն և փորձովն այս է, որ առնուս 'ի ծովուն ջրէն և լնուս 'ի յաման, և դնես 'ի վայր որ յիստակի, և ապա փոխես յայլ աման. և...[1] ամիս ծառայես և շրջմրջես զայն ծովու ջուրն, որ ամէն տուրտին և թանձրութիւնն գնայ յիւրմէն. և ապա ա՛ռ 'ի ջրէդ մէկ լիտր, և բուռ՝ կէս լիտր, և խառնեա ընդ ութսուն լիտր մուստառ, և յամէն երեք օր փիճի թիով խառնեա զլինքն, մինչև ժա̃ օր լմըննայ. նա խիստ շէն և անոյշ մնայ գինին շատ ժամանակ։

## ԴՈՒՌՆ ՃԽԲ.

*Յաղագս ստածման այն գինւոյն, որ չդիմանայ 'ի տեղոյն վառոքենէն։*

Ա՛ռ ընտանի աղ կամ կողբացի, և ձգեա 'ի գինին. լաւ պահէ զգինին և անուշացուցանէ։ Եւ թէ առնուս պտղի ձիթի տուրտին և խիստ եփես, որ կէս մնայ, և յիւրմէ լիտր մի 'ի հարիւր լիտր քաղցու խառնես՝ լաւ պահէ և անարատ։ Եթէ ոք առնու քաղցր նուշ և ծեծեալ՝ 'ի մուստառն խառնէ, աղէկ է։ Եւ թէ ոք առնու զայն չամիչն որ ինք ընդ ինք 'ի տունկն լինի չորացեալ, և հանէ յիւրմէ զկուտն և քաղցր գինւով թրջէ

1. Պակասէ ինչ յՕր. իսկ միւսքն անընդհատ ունին այսպէս. «փոխես յայլ աման. և այսպէս յամանէ յաման փոխելով ամենայն տուրտին,» ևն։

և 'ի մուստառն ձգէ, նա պահէ զգինին և անուշացուցանէ։ Բայց քան զամենայն՝ բուռն մեզ լաւ թուեցաւ, և պահող և յիստակացուցանօղ գինւոյն. և իւր դնելն այսպէս է, 'ի հարիւր լիտր գինին՝ լիտր մի բուռդիր. Եւ այլ. առ փիճւոյ ոերև և հոռոմ ծիլթի մրուր՝ այսինքն տուրտին, և ծովու ջուր, և եռացո ընդ իրեար, և դիր յամէն կարաս մասն մի. նա լաւ պահէ։ Եւ եթէ առնուս հացհամեմ և կօստ և մուռն, և ընդ իրեար խառնեալ ծեծես և 'ի գինին խառնես, շատ դիմանայ գինին, և անուշահամ առնէ։ Եւ եթէ առնուս զանուշահամ գինւոյն մրուրն և չորացուցանես և պահես, և 'ի գինին խառնես՝ շինէ զգինին, և յիւր համն դարձուցանէ։ Նոյնպէս և սերկևիլն և խնծորն աղէկ պահեն զգինին և անուշահամ առնեն, երբ ջանջախեալ 'ի ներքս ձգուին։ Նոյնպէս և զպառպըոյ ծաղիկն չոր պահեա, և դիր 'ի կարասն չափ մի և 'ի քաղցուն, և եփեա որ կէսն մնայ, և ապա 'ի կարասն խառնեա. նա բնութեամբ ազգակից է գինւոյն և անուշահամ առնէ և լաւ պահէ։

## ԴՈՒՌՆ ՃԽԳ.

*Վասն ազգաց դեղոց, զոր 'ի գինին դնեն, և թէ որպէս դնեն։*

Բուռ նորայրեաց և սպրկիկ և սպիտակ պիտի և անուշահոտ։ Եւ համամայն աղուորագոյն և ծաղկած լինի և հեշտ լեսի, և շքաչոր և մգլահոտ չլինի։ Զաալըխայլին զբարակն զկակուղն և զանուշահոտն ընտրեա։ Արքա խոտ են և բժիշկքն ճանաչեն։ Մոմն յիստակ և սպիտակ պիտի, կամ քաֆուրի գունով։ Կօստն մաստղաշ պիտի և անուշահոտ։ Զաֆրանն թազէ պիտի և երկայնամազ՝ այնպէս որ սպիտակ մազ չկենայ 'ի յինքն։ Զիւթն՝ սպրկիկ և յիստակ և կակղագոյն պիտի, և որ յՌօտին[1] ձիւթէն կարէ ունենալ՝ նա լաւն այն է։ Կուպրն՝ յիստակ և սպրկիկ պիտի, որ չլինի խառնած և ծծմբահոտ, այլ զորդ իւր հոտն լինի։

1. Հռոդոս կղզւոյ։

## ԴՈՒՌՆ ՃԽԴ·

*Երբ զաղի ջուրն որպէս պարտ է չինել, և 'ի գինին յաղագս օգտութեան խառնել։*

Առ աղի ջուր ծովու մէկ լիտր, և քաղցր ջուր տասն լիտր, և խառնեալ եփեա, որ կէսն մնայ. նա պիտի որ ամենն աղէկ դառնայ, և ած 'ի գինին։ Եւ այս է յառաջ անուանեալ աղի ջրեղն որ 'ի գինին խառնուին, զոր գրեալ եմք։

## ԴՈՒՌՆ ՃԽԵ·

*Երբ որպէս չինէ ոք զաղն զոր 'ի գինին դնեն։*

Առ աղ սպիտակ, յիստակ և ցամաքն և հինաւուրց պահած, որ չլինի նոր. լուա և ցամաքեցո քսան օր, և ապա լեսեա և դիր 'ի գինին, որպէս գրեալ եմք։

## ԴՈՒՌՆ ՃԽԶ·

*Վասն հոտոյ ձիթին տուրտնին, երբ որպէս պարտ է 'ի բան դնել։*

Առ պտղի ձիթի մրուր, որ է տուրտին, քամեա և եփեա, և աղ ած յինքն չափ մի, որ կէսն մնայ. և որպէս գրեալ եմք՝ դիր 'ի գինին։

## ԴՈՒՌՆ ՃԽԷ·

*Վասն բռին, որ է աչչի։*

Առ բուռ յիստակ, նորայրեաց, որպէս գրեալ եմք. և արկ մուստառ 'ի վերայ, և հար որ միաւորի աղէկ նօսր. և զմրկ շատ, զերդ պղտոր ջուր, և ապա դիր 'ի վայր, և թող որ նստի յատակն և աղէկ յիստակի. և ապա զյիստակ մուստառն 'ի բանտար, որպէս գրեալ եմք. և լից 'ի կարասն. և զյատակած բուռն 'ի բան

ձգեա։ Զհօտին մոխիրն 'ի մուստառն լից, գինին քաղցր մնայ։

## ԴՈՒՌՆ ՃԽԸ.

*Վասն պառպառի ծաղկին, զոր յառաջն գրեալ եմք թէ որպէս առնեն։*

Առ զպառապուռին ծաղիկն, 'ի կուզէն թափեա և չորացո 'ի շուք տեղի, և լից զինքն 'ի քարեայ ըղուղ կամ 'ի ճառայ, և լից 'ի վերայ հին անուշահամ գինի և մունփախդէճ, ըստ որքանութեան ծաղկիդ. և թող որ թրջին և միաւորին ընդ իրեար. և ապա 'ի բաց աման լից, և աղէկ թրեա ձեռօքդ՝ որպէս հայս, և զքաղարջիկս արա, և չորացո 'ի շքի և պահեա. և երբ մուստառին ժամն գայ, թրջեա յիւրմէ գինեաւ, և 'ի մուստառով կարասն լից։

## ԴՈՒՌՆ ՃԽԹ.

*Յաղագս անոյշ գինեմրրին՝ զոր յառաջ գրեցաք, եթէ որպէս զինքն շինեն և 'ի նոր գինին խառնեն որ յիւր համն դարձուցանէ։*

Առ զանոյշ գինւոյ մրուրն և քամեա աղէկ, որ ընաւ 'ի գինւոյն չմնայ յինքն, և դիր 'ի սպրկիկ պուտուկ, և արկ ըստ որքանութեան մրրոյն անոյշ հոռոմ ձէթ 'ի վերայ. և ըստ չորս բաժնին միոյն որքանութեանն՝ մանր աղ և մունփախդէճ ըստ որքանութեան աղին, և այն թող աղնձած լինի, և սակաւ տաքացո և եռացո, և զարկ որ միաւորին աղէկ. և զքաղարջիկս արա, և չորացո. և յիւրմէ՝ երբ ուզենաս դու՝ թրջեա քաղցր և անոյշ գինեաւ, և տրորեա աղէկ. և 'ի յիստակած գինին խառնեա. և տես, որ զամէնն 'ի յիւր գինւոյն համն դարձուցանէ։

## ԴՈՒՌՆ ՃԾ·

*Վասն շինելոյ զջուրն ծովու որպէս յառաջ գրեցաք։*

*Ա՛ռ ծովու ջուր ժամանակօք յառաջ, և 'ի գիշերն առ՝ երբ ցամքուն հողմն[1] զծովն յիստակացուցեալ լինի յաւուրս աշնան, և որքան 'ի խորուէն կարես առնուլ զջուրն՝ նա լաւն այն է. լից 'ի յաման և դիր յարևն. և առ սպիտակ հող՝ գուղձ մի, և աղնձեա 'ի կրակն, որ խորովլի աղէկ. դիր 'ի ջուրն և ծածկեա 'ի գիշերն, և 'ի ցերեկն բաց, որ արևն մտանէ հինգ օր. և ապա պատրաստ կաց որ ատակն չշարժի և պղտորէ զինքն. և յայլ աման շրջեա զյիստակն, և զտիկն ձգեա. և այսպէս երկու ամիս արա զշրջելն երկու հետ. և ապա պահեա զջուրդ և ած 'ի գինին, յութսուն լիտրն մէկ կամ այլ պակաս, որպէս գրեալ եմք յառաջ։ Եւ են ոմանք՝ որ չափ մի յիստակ գետի ջուր առնուն, և չափ մի յայդ շինած ծովու ջրէդ, և կէս չափ անուշահամ գինի, և եռացուցանեն մինչև երեք բաժնէն մէկն երթայ, և հովացուցանեն և 'ի գինին ածեն. և այս ճշմարտապէս զամենայն այպ 'ի գինւոյն հանէ։ Եւ ով որ ոչ կարասցէ պարապիլ զջուրդ շինել՝ որպէս գրեալ եմք, նա՝ առ զյիստակած ծովու ջուրն, և լից 'ի թաղար, և առ փիճի կանաչ փայտ, որ զերդ ոսպան ճիւղք լինի յինքն, և տերտ ծեծեա նովաւ զջուրդ՝ որ փրփրայ. և զփրփուրն շերեփով ձգեա. և այսպէս այնչափ ծեծեա, որ այլ փրփուր չգայ, և 'ի բան տար. քան զվերոգրեալն պակաս արժէ, բայց աղէկ է. ած յութսուն լիտրն՝ լիտր մի։*

1. Ցամաքային հողմն։

## ԴՈՒՌՆ ՃԺԱ.

*Երբ որպէս եփէ ոք զմուշեփախղէճն։*

Որպէս բազում անգամ ասացաք, զի մուշփախողէճն է որ լաւ պահէ և շինէ զաւերեալ և զայլահամեալ գինիսն. և ս առաւել երբ իւր ամէն պիտոյիւքն լինի զուգած, այս օրինակաւս։ Առ սպիտակ խաղող քաջահաս և քաղցրահամ՝՝ ի հին այգւոյն, և ընտրեա, որ մէկ հատ ոչ ազոխ լինի 'ի ներքս և ոչ նեխ, և ցամաքեցո որ մի. ծիլ գիտէ գուցէ ջրի համ շաղի կամ անձրևոյ հիւթհասած լինի յինքն. և ապա լից 'ի սուրբ հնձան, և կոխեա տուր. և որքան կարես՝ սպրկիկ լինի 'ի յամենայն աղտեղութեանց. վասն զի իւր յատուկն 'ի սպրկիկն կայ հաստատած։ Եւ զիւր կթեղն՝ 'ի չիքն լուանի արա՝ պախրցուն, որ ոչքն յիստակ լինին 'ի յամպոց։ Եւ երբ կոխուի՝ զամբեղով և չուխայով քամեա, և թող որ յիստակի և ամենայն ախժինքն 'ի յատակն իջանէ. 'ի կաւէ աման թող, 'ի պղնձէ չլինի. և զպուտուկն ծեփեա 'ի դրուցէ՝ մազով շինած կաւով, որ մազ լինի կտրած 'ի կաւն, և կոխած միաւորած աղէկ. և երբ ծեփես՝ թող որ ցամաքի։ Բայց Ալիոն[1] վաստակաւորաց գլուխն և իմաստունն այնպէս է ասացեալ, թէ 'ի յամէն տասն լտեր այս մուստառիս, չարեէկ մի 'ի շինած ծովու ջրէդ ածես, և չարեէկ մի յիստակած ծովու ջուր, և հօտի մոխիր երկու նուկի ծրարած, և քսան ընկոյզ անարատ. և լից 'ի ծեփած ընտրով պտուկդ, որ գլ:եցաք։ Եւ յառաջին եփն թզենի փայտով խառնեա, որ տերևքն յինքն կենան, մեղմ սակաւ կրակով. և երբ սակաւ մի եփի, հանն քամեա և ցօղեա զպուտուկն աղջրով, թէ ծովու լինի՝ լաւն այն է, և դարձո յամանդ. և այլ աղէկ եփեա կամ թզենի փայտով կամ որթի հօտով. և թող կրակն հեռի լինի, և 'ի ներքեւն չլինի. և սերտ խառնեա փիճի փայտով,

1. Անծանօթ մեզ. թէ չիցէ Լևոնն Գրամատիկ 'ի Ջ դարու, որ յիշի ընդ գրողս զՎաստակոց։

և կապեա 'ի խառնիչն մրտենւոյ, կասլայի,[1] ըռա-
զիանի, անանուխի և հիլիօնի բազուկ՝ որ կանանչ լինի՝
կապեա 'ի խառնիչն չուանով՝ ամուր, և սերտ խառ-
նեա, և 'ի քամ՝[2] որ չայրի և խանձրեհամի. և սերկևիլ
և անուշահոտ տանձ՝ անհնար 'ի ներքի ձգեա յառա-
ջին եփդ, և թուղ չոր յամէն քամել զհինն ձգեա և
նոր դիր: Ընկոյզդ զօրութիւն ունի որ զխանձրեհամու-
թիւնդ 'ի յինքդ քարշէ, և թէ յամէն խանձրեհամած
ապուր ձգեն՝ օգտէ: Եւ այսպէս եփեա, մինչև կէսն
քաղցուիդ երթայ և կէսն մնայ: Եւ այս է մունփախ-
դէձն զոր գրեալ եմք. զայս ած 'ի յաւեր գինիսն՝ որ
լաւացուցանէ, որպէս գրած է:

## ԴՈՒՌՆ ՃԾԲ.

Վասն գինւոյ որ 'ի հնձանն անձրև լինի առեալ, որ լաւացու-
ցանես:

Յորժամ անձրև առնու և վատուժէ, դեղն այս է.
զամէն քաղցուն եփեա, որ 'ի քսան լտրէն մէկն եր-
թայ, և ած 'ի կարասն. և 'ի հարիւր լիտր գինին լիտր
մի բուռ դիր, որպէս յառաջ գրեցաք. և այլ ոմանք ե-
փեն մինչև 'ի հնգէն մէկն երթայ, և չորս տարւոյն
ապա խմեն:

## ԴՈՒՌՆ ՃԾԳ.

Վասն գինւոյ որ անուշահոտ առնես:

Ա՛ռ հապալաս վայրի և չորացո, և մանր լեսեա, և
լից 'ի լիտրն՝ նուկի մի. և սակաւ սակաւ խառնեա,
և կարասին բերանն ծեփեա. և յետ տասն աւուրն
բաց: Նոյնպէս և թէ զհապալասն 'ի պարզուտ ածես
և զգինին այնու պարզես՝ լաւացուցանէ զգինին: Եւ
թէ առնու ըք զչոր պառպռի ծաղիկն և լեսէ, և

1. Յօր. կասնայի. եգաք ըստ այլ օրինակաց. կասլա՝ դափնին է:
2. Ձեռ յայլ 00. ն 'ի քամ, և աստ պակաս թուի այլ բառ, կամ աւելորդ են:

նուկի մի 'ի վերայ երեք լոտերն ածէ և ծեփէ, և յետ եօթն աւուրն ապա բանայ, աղէկ խմանայ զօգուտն։

## ԴՈՒՌՆ ՃԾԴ·

*Վասն այլ ազգ անուշահոտ առնելոյն զգինին, որ յամէն աւուր լինի։*

Առ խնձոր զանարատն և զանուշահոտն և զաղէկ հասուննն, և արկ 'ի ջուրն 'ի թրջոցն, մինչև աղէկ թըրջին. և արկ 'ի ջրէն 'ի վերայ գինւոյն՝ անուշահոտէ զգինին։

## ԴՈՒՌՆ ՃԾԵ·

*Վասն որ զպինդ գինին անուշահամ առնես։*

Առ քուշնայի աղւոր երկու նուկի, և մեղր երկու նուկի, և խառնեա ընդ իրեար, և արկ 'ի յինքն անոյշ գինի և խառնեա, և արկ 'ի քսան լիտր գինւոյ վերայ, և երկու աւուր պարզի, և խմեա։ Եւ այլ ոմանք առնուն զչոր թուզն նուկի մի, և թրջեն զինքն 'ի մրուրն անուշ գինւոյ, և ձգեն 'ի գինին, նա զպինտ գինին անուշայուցանէ։ Եւ այլ ոմանք առնուն զընտանի աղն կամ զկողբացին չորս տրամ, և մուռ չորս կուտ, և հաւկթի սպիտակուց, 'ի մի խառնեն և գինեաւ եռացուցանեն, և 'ի չափ մի գինի խառնեն։ Եւ այլ ոմանք զմրտենի տակն 'ի հետ խառնեն։ Եւ են որք առնուն զանուշ սպիտակ գինւոյ մրուրն նուկւոյ չափ, և արկանեն 'ի վերայ տասն լիտր գինւոյ, նա յիւր համն դարձուցանէ։ Եւ այլք են որ վերոգրեալ մունֆախդէճն առնուն լիտր մի և արկանեն 'ի վերայ երկու կամ երեք լիտր գինւոյ, անուշացուցանէ յայտ։

## ԴՈՒՌՆ ՃԾԶ·

*Այլ, վասն անուշացուցանելոյ զգինին։*

Առ ըռազիան կամնաչ և ծամթրին, և կապեա՛ի փայտի ծայրն, և արա թնթոց. և այնչափ խառնեա զկարասն որ ամէն գինւոյն վերևն ՚ի ներքեն դառնայ. և ապա երկու կոնգոմ սոնոպրի՝ աղէկ խորոված կապեա ՚ի սպրկիկ կտաւ, և ՚ի ներք ձգեա. և զբերանն ծեփեա հինգ օր, և ապա բաց, և ՚ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՃԾԷ·

*Վասն որ զնոր գինին շինես, որ զերդ հին գինի շինի։*

Առ լեղի նուշ և օշինդր, և սոնոպրի մէջ, և հացհամեմ. և աղընձեա և այլ ծեծեա, և նուկի մի ՚ի վերայ երեք լիտր մուստաւի դիր, որոյ եռն դադարեալ իցէ. և զբերանն ծեփեա երկու երեք օր, և ՚ի բան տար, որպէս զհին։ Եւ թէ ուզես որ գինիդ յիստակ մնայ և չփոխի, զայս դեղս արա։ Առ սապա և օշինդր, և զաֆրան, յամէն մէկէ նուկի մի, և հայխաւնկ և շաքար՝ նուկի մի, մեղր՝ ութ նուկի. զծեծելոյն՝ ծեծեա, և խառնեա ՚ի մեղրն, և ած ՚ի վերայ լիտր մի անոյշ գինի, և լից ՚ի քսան լիտրն չարեէկ մի. օգտէ։

## ԴՈՒՌՆ ՃԾԸ·

*Վասն դեղոց զոր առնես, որ նոր գինին զերդ հին դառնայ անոյշ հոտով և համով։*

Առ կարաս կամ ձառաներ, յորոց՝ անոյշ հին գինի կեցեալ իցէ ՚ի մէջն. և կտորեա զբերանսն դիպան ՚ի վայր զամէննն, որ մինչև ՚ի մրուրն լինի կեցեալ, լեսեա և մաղեա մանր. և լից յիւրմէդ ՚ի կարասն ուր քաղցուն լցած լինի, ՚ի քսան լիտրն, մարզպան մէկ, և խառնեա աղէկ. ապա տես, որ թէ ՚ի լեսած ամանդ խիստ հին գինի կեցեալ իցէ, դու կէս մարզպան դիր։ Եւ

յորժամ ըմբռնի 'ի կարասն և խառնես՝ ծեփեա զբերանն, և թող ժէ օր, և բաց, գտանես զգինին երկու տարւոյ[1] մառօվ և հոտով։ Եւ երբ զգինիդ պարպես՝ սաղիր մրուրն և լից 'ի նոր պուտուկ, և ծեփեա զբերանն, և դիր 'ի կրակ՝ որ այրի. և հան լեսեա, և 'ի բան տար որպէս զառաջինն։

## ԴՈՒՌՆ ՃԾԹ.

Վասն որ զմէկ տարւոյ գինին զերդ ծն տարւոյ շինես:

Առ էքլիլ-իւլ-մէլիք՝ նուկի մի, և մաստուտակ երեք նուկի, սնփուլ չորս նուկի, սապռի-սկուտրի երկու նուկի, լեսեա և մաղեա. և ած 'ի քսան լիտրն վեց դրըգալ, և ծեփեա զբերանն, և 'ի ծխոտ տուն դիր. և բաց յետ աւուրց, 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՃԿ.

Վասն որ զվատոյժ գինին ուժաւոր առնես:

Առ զտուղտն գտակոճն և բարունակոճն, և եփեա ջրով, և ած 'ի գինին, 'ի տասն լիտրն երկու չարեէկ. և ձիփս և սիսեռն լեսած՝ երկու թուխթ, և կիպարւոյն պտուղ երկու երեք հատ, և քերեւսի հունտ, և հօտի մոխիր չափ մի, և հոռոմ ձիթի տուրտին, և ծովու ջուր, և սոնօպրի տերևի ջուր, յամէն մէկէ երկու նուկի. և յիրեար խառնեա զամէնդ, և զվերոյ գրեալ չափիդ զկէսն կամ այլ պակասն ած. օգտէ։

## ԴՈՒՌՆ ՃԿԱ.

Վասն որ զպիծու գինին կակղացուցանես:

Են ոմանք որ 'ի մուստառն ջուր խառնեն զերեքեակն և եփեն, որ ջուրն հատնի, և այնու կակղացուցանեն զայն գինին, որ այգին զինքն բնութեամբ պինտ առ-

1. Բնագիրն ասէ՝ տասն տարւոյ. այլ ոչ յիշէ զմառն և զհոտ։

նէ։ Եւ այլ ոմանք զջրիս կէսն ծովու ջուր խառնեն ստէպ, նա կակղանայ։

## ԴՈՒՌՆ ՃԿԲ.

*Դեղ ընդհանրական որ զգինին զուգես, որ հիւանդաց և առողջաց օգտակար լինի։*

Ա՛ռ զաֆրան մէկ նուկի, և հայխուռնկ մազած կէս նուկի, և հնդի ընկոյզ՝ մէկ. ծեծեա զամէնս և 'ի միասին խառնեա. և 'ի լիտր մի գինին դրգալ մի 'ի դեղերոյդ խառնեա 'ի մուստառն, երբ եռն դադարեալ լինի։ Եւ զամենայն ազգ դեղ զորս գրեալ եմք՝ չէ պատեհ 'ի գինին խառնելն՝ մինչև եռն դադարի։

## ԴՈՒՌՆ ՃԿԳ.

*Դեղ փորձով օգտակար, զոր Ամփիաւնոս[1] իմաստասէրն եգիտ։*

Ա՛ռ մաստուտակ, և խասսալ[2] և սալիխայ և էքլիլ-իւլ-մէլիք, յամէն մէկէ նուկի մի, ըռազիանի հունտ նուկի կէս, անիսոն դրամակչիռ ութ. և սապռ՝ ութ, մնփուլ կէս նուկի, այգւոյ-ծաղիկ կէս նուկի, քէրէֆսի հունտ նուկի ու կէս, ադխարի պալըւք նուկի ու կէս. ծեծեա և մաղեա և յիրեար խառնեա. և յետոյ զգրեալ մունֆախդէճն չարեէք մի, և մեղր ինն նուկի յիրեար խառնեա, և աղէկ եռացո. և ա՛ծ կէս թուխթ 'ի վերայ հարիւր լիտր գինւոյ. և տես զարմանալի իրք։

## ԴՈՒՌՆ ՃԿԴ.

*Յաղագս ճանաչելոյ զգինին որ ջուր լինի խառնած 'ի ներքս։*

Ա՛ռ մեղր կամ եփած գինի, և ձգեա 'ի գինւոյն ամանն, և ա՛ռ սպունգ և օ՛ծ հոռոմ ձիթով, և զբերան

1. Թերևս Ամֆիարոսս, որ 'ի բնագրին յիշի (Գիրք Բ. գլ. ԼԵ). և ասի նախ հրաժարեալ յուտելոյ բակլայ։
2. Միւս ՕՕ. անթերի եւ՝ խասսալպալիւք։ Տ. 'ի Բառս։

Ճառայթին այնու խծկեա պղինձ, և կեզնեա[1] զամանն 'ի մէկ դիհի վերայ. և տեսանես որ ամէն ջուրն քամի և 'ի դուրս ելանէ, որ մէկ կաթ չմնայ։

## ԴՈՒՌՆ ՃԿԵ·

*վասն որ 'ի գինին արտաքուստ ջուր խառնեն, որ բնաւ չկարէ ոք ճանաչել։*

Առ չոր տղտի տակ և եռացո 'ի ջուրն, և ած 'ի գինին որչափ կամիս[2], թէ ուկէս ածես՝ ոք ոչ ճանաչէ։

## ԴՈՒՌՆ ՃԿԶ·

*վասն որ զմոտատան յստակացուցանեն զերդ ակունեղ ակն, և որպէս զհին առնեն:*

Առ երեք ձուի սպիտակուց և դիր 'ի յաման, և հա՛ր աղէկ՝ որ փրփրայ. և դիր 'ի յինքն սպրկէկ մանր աղ, և 'ի նոյն մուստառէդ սակաւ մի, և այլ ծեծեա, և հա՛ր որ սպիտակի. և ած 'ի վերայ ութ լիտր մուստառի, կամ 'ի վերայ վեցի. այս չափովս արա, և այլ աւելին. և տես զարմացք։

## ԴՈՒՌՆ ՃԿԷ·

*վասն որ զկարմիր գինին սպիտակ առնեն:*

Յամէն երեք լիտր գինւոյ վերայ նուկի մի աղ ած. և թէ ոչ՝ յամէն լիտր ու կիսոյ վերայ թուխթ մի շըռատ ած՝ օգտէ։ Եւ թէ ոչ՝ ա՛ռ սպիտակ գինւոյ մրուր, և զինքն այնու պարզեա, նա օգտէ։

1. Միւս ՕՕ. կեղնէ։
2. Միւս ՕՕ. կամ թէ կիսակէս ածէս։

## ԴՈՒՌՆ ՃԿԸ.

*Այլ խրատ վասն զկարմիր գինին սպիտակ առնելոյ:*

Նոյնդ փորձով է. առ սպիտակ այգւոյ հօտ և այրեա, և առ զաղէկ մոխիրն չափ մի, և արկ 'ի կարասն, և հար լաւ մի. և թող ծեծած քառասուն օր, և բաց. գտանես զինքն որ սպիտակացեալ է:

## ԴՈՒՌՆ ՃԿԹ.

*Վասն որ զպղտոր գինին յստակես:*

Ցամէն յիսուն լիտր գինւոյ վերայ՝ մէկ թուխթ մի կամ սակաւ աղ ած, 'ի ներքս խառնեա, յստակ առնէ: Են ոմանք որ առնուն կէս թուխթ պտղի ձիթի տուրտին և եփեն, որ երեք բաժնէն մէկն երթայ, և 'ի տասն լիտր գինւոյ վերայ ձգեն, և թուխթ մի հօտի մոխիր 'ի հետ. և վաթսուն սպիտակ գինւոյ մրուր չորացուցած, և լեսած թուխթ մէկ. օգտէ: Եւ այլ ոմանք երեք ձուի սպիտակուց և սակաւ մի բուռ և հատ մի թրմուզ լեսած, և սակաւ մի մեղր ածեն. օգտէ: Եւ այլ ոմանք 'ի վերայ տասն լիտր գինւոյ մարզպան մի սիմինդր ածեն ջրով շաղած, և խառնեն և ապա պարզեն. օգտէ:

## ԴՈՒՌՆ ՃՀ.

*Վասն որ զանոյշ աւերած գինին այլվի յիւր աղէկութիւնն դարձուցանես:*

Երբ իմանաս որ գինին փոխի՝ պարզեա զինքն իւր մրրոշն, և դարձո յիւր կարասն. և առ հօտի մոխիր մաղած հինգ մարզպան, և լից 'ի հարիւր լիտր գինւոյ վերայ, և խառնեա և ծեփեա. և յետ հինգ աւուր բաց և 'ի բան տար, որպէս յառաջ գրեցաւ:

## ԴՈՒՌՆ ՃՀԱ·

*Վասն որ նոր սկսանի աւերիլ գինին և շատացուցանես որ չաւերի ։*

Առ թութթ մի այծու կաթն եռացուցած և պաղեցուցած, և ամէն սերն հանած յիւրմէ. և քամեա զինքն. և 'ի վերայ կարաս մի գինւոյ ած և հար աղէկ, և զփրփուրն առ 'ի բերանոյն, և ծեփեա. և յետ վեց աւուրն բաց, և գտանես անոյշ զերդ յառաջն. և 'ի բան տար ։

## ԴՈՒՌՆ ՃՀԲ·

*Վասն գինւոյ, նոյնպէս ։*

Առ մունֆախղէձ՝ինն լիտր և եփեա, որ երեք լիտրըն գնայ. և առ նուկի մի զմու[1] լեսած և մաղած, և 'ի մունֆախղէձդ խառնեա և այլ եփեա, որ կէսն գնայ. և 'ի վերայ հարիւր լիտր գինւոյ ած, որ 'ի մրրէն հանած լինի և յիստակած. և տես զարմանքը. ծեփեա, և յետ երեք աւուրն 'ի բան տար ։

## ԴՈՒՌՆ ՃՀԳ·

*Վասն գինւոյ որ չանայ աւերիլ :*

Առ հօտի մոխիր թութթ մի, և ած 'ի տասն լտեր վերայ. խառնեա և ծեփեա, և յետ հինգ աւուր 'ի բան տար, անոյշ ։

1. Այսպէս յամենայն ՕՕ․ եթէ չիցէ պակաս գրեալ (զմուռ). Մու խոտ է նման սամթի ։

## ԴՑԻՌՆ ՃՀԴ·

*Վասն նոյն իրիդ :*

Զգինին համր դմբչալութ օր. լաւանայ։ Եւ այլ. աղի փրփուր մանր աղա, առ մի 'ի վերայ տասն լտեր ած. օգտէ։ Ա՛ռ գարեփոխինդ՝ մանր աղացած, և հին գինեաւ շաղեա, և կէս լիտր ած 'ի վերայ հարիւր լիտր գինւոյն, որ կոտած լինի, նա լաւացուցանէ։ Ա՛ռ արծաթի ագլիմիա տասն լիտր և լեսեա կորկոտ. և ած 'ի դճ լիտր գինւոյ վերայ. նա լաւացուցանէ։ Եւ այլ. ա՛ռ մանր աղ հինգ նուկի, և այրած քար գինչ և լինի, նուկի հինգ ու կէս, և խափխափոն ձիւթ չորս լիտր, և այնու ձիւթեա զկարասն, և լեսած համհամեմ 'ի վերայ ձիւթին ցանեա 'ի կարասն. և յայն աւերած կարասէն հան զգինին և յիստակացո, և ապա յայդ կարասդ ած. և ա՛ռ չափ մի 'ի գինւոյդ, և այլ համհամեմ խառնեա 'ի ներքս, և 'ի վերայ գինւոյն լից. անուշանայ գինին։

## ԴՈՒՌՆ ՃՀԵ·

*Վասն որ զնոր կոտած գինին լաւացուցանես։*

Ա՛ռ կաղնի փայտի տղոցուք, կամ կաղնւոյ մոխիր. կամ սխտորան ալիւր լիտր մի, կամ քուշնայի ալիւր կէս լիտր. և ա՛ռ 'ի կոտած գինւոյդ տասն լիտր, և ած 'ի կարաս, և տաքացո ազէկ, և ած զորն կամիս 'ի դացանէ 'ի ներքս, և խառնեա ազէկ, և դարձո վերստին 'ի կարասն 'ի վերայ այլ գինւոյն. նա լաւացուցանէ։ Եւ թէ առնուս զմուռնփախտէճ շինած գինին լիտր մի, և կէս լիտր գետի սպրկիկ աւազ, և լիտր մի անոյշ հին գինի, և խառնես յիրեար և ածես 'ի գինին, լաւացուցանէ։

## ԴՈԽՈՒՆ ԾՀՁ·

*Վասն զոր գինին քացախն գինի շինես :*

Ա՛ռ աղ և աղնձեա կէս նուկի, և լից 'ի տասն լտեր կարասձագ մի. և ած զքացախ գինւոյդ 'ի պաքզղուտն, աւազով գետոյ լցեալ. և զինքն այն մաքուր աւազովն պարզեա և լից 'ի կարասձագն 'ի վերայ աղին՝ 'ի լի. և ձգեա 'ի ներքս կիպարւոյ պտուղ և գխթոր աղնձած քսան հատ, և հացհամեմ աղնձած լտր մի, և պտղի ձիթի տուրտին եփած կէս լտր, և կովուց կաթն կէս լտր, և մեղր երկու նուկի. ած զամենդ 'ի քացախած գինին, և հար աղէկ որ միաւորին. և թող որ յիստակի և լաւանայ. և 'ի բան տար: Եւ մեք զկշիռն իւր տասն լտր սահմանեցաք, բայց գինւոյդ շատութեամբն՝ զդեղերդ շատացո նոյն կշռովդ 'ի տասինոդ վերայ՝ քանի կամիս:

Այլ դեղ. պարզեա 'ի քացախեդ ձառայով մի և ած 'ի ներքս սպիտակ-դեղ կէս նուկի, և հար աղէկ. և դիր 'ի ներքս հացհամեմ և էքլիլ-մէլիք և սնֆուլ, և այգւոյ ծաղիկ յամէն մէկէ երեք դրամակշիռ. լաւացուցանէ. և նոյն չափով արա զայլ շատն:

Այլ դեղ. ա՛ռ հօտի մոխիր չորս նուկի, և ռազիանի հունտ լեսած՝ մէկ նուկի, և յիրեար խառնեա, և անոյշ գինւոյ մրրով շաղեա, և ած 'ի ձառայ մի. և պարզեա 'ի քացախած գինւոյդ. և լից 'ի ձառայն. և 'ի միւս օր անոյշ խմեա, և յաւելացո 'ի գինին զդեղերդ:

Գինին քացախի. առ զկարմիր կղմինտրն աղա, սև ձիւթ նոյն չափովն. Թօփալախ նոյնպէս, խնկի փոշի աղա և խառնեա, լից 'ի քացախած գինին. թող երեք օր կենայ, քաղցրանայ:

## ԴՈՒՌՆ ՃՀԷ·

*Վասն գինւոյ որ 'ի մառատանն սկսանի քացախիլ։*

Առ չամիչ և 'ի ջուր թրջոց դիր, մինչև ուռենայ. և քամեա զջուրն լիտր մի. և 'ի կարաս մի մուստառ խառնեա, և ապա գետոյ աւազով պարզեա. նա լաւանայ։

## ԴՈՒՌՆ ՃՀԸ·

*Վասն որ զբերեհամած[1] և զգիշահամ[2] գինին զուգես։*

Ի վերայ երկու հարիւր լիտր գինւոյն՝ վեց թուխթ մորէ լից, և տասն ընկոյզ անարատ, և սպրկիկ չորացուցած խոտ դիր. օգտէ։ Եւ թէ առնուս գետոյ խըճեր և թրջես[3], կակուղ ձիւթով 'ի ներքս ձգես՝ օգտէ։

Այլ դեղ. առ չոր եղրդի փայտ, ջանջախեա և 'ի գինին ձգեա, և ծեփեա. լաւացուցանէ. և յետ հինգ աւուր 'ի բան տար. սակայն 'ի բաց մի թողուր, երբ առնուս՝ շուտ կալ և ծեփեա զկարասին բերանն։

Եթէ բորբոսահամ և աղէհամ լինի գինին, առ փոխեա զամանն որ նոր լինի ձիւթած, և չոր պրտու դիր 'ի ներքս. և հալեա ձիւթ և 'ի ներքս լից։ Եւ այլ ոմանք առնուն չոր պրտու և խառնեն 'ի վեց լիտր կակուղ սև ձիւթ, և եռացուցանեն. և 'ի հարիւր լտեր կարաս ձգեն, նա լաւացուցանէ։ Եւ այլ. առ հին պանիր կծու վեց դրամակշիռ, և ձգեա 'ի վերայ հարիւր լիտր գինւոյ՝ լիտր մի, նա օգտէ։ Բայց երբ ածես՝ աղէկ խառնեա և 'ի մրրէն պարզեա, և յայլ աման ած։

1. Միւս ՕՕ. Թըչէհմած։
2. Միւս ՕՕ. Գէշահամ. որով փոխի սակաւ մի խմասոտն կամ որակ աւերեալ գինւոյն։
3. Յօր. պակասէր բայս, եգաք ըստ ասոռն։

## ԴՈՒՌՆ ՃՀԹ·

*Վասն որ պահես զգինին որ չքացախի:*

Յորժամ 'ի յեռալ դադարէ մուստան՝ ծեփեա զբե-րանն եօթն օր, և ապա բաց, և հան զամէն ծաղիկն [1], ձգեա 'ի բաց օր մի մինչև յարևմայրն, և ապա ծե-փեա. և այն նշանօքն արա երեք չորս հետ. և տես որ բնաւին ծաղիկ չթողուս 'ի կարասն. զի գինւոյն ամէն աւերիչն և թթուեցուցանօղն ծաղիկն է:

## ԴՈՒՌՆ ՃՁ·

*Վասն որ զկարկտահեծ գինին շինես որ չաւերի:*

Եւ իւր նշանն այս է, որ գինին փոթոթահամ լինի և կորուսանէ զիւր ամէն որպիսութիւնն. և դեղն այս է, որ առնուս 'ի մունֆախղէձ գինւոյն շինած՝ զոր յառաջ գրեցաք, և լից յիւրմէ սակաւ յառաջիկի հանապ, և դիր 'ի կարասն 'ի վերայ գինւոյն. այնպէս, որ զերդ նաւ վերագայ [2], և թող 'ի կարասն 'ի ներքը. և մռ 'ի նոյն մունֆախղէձէգ, և ծծ զկարասին շինելն 'ի ներքուստ մինչև 'ի բերանն. նա լաւացուցանէ և անուշահամ առնէ:

## ԴՈՒՌՆ ՃՁԱ·

*Վասն որ զհոտած գինին լաւացուցանես, որ 'ի պատճառ խմերք հոտեալ իցէ, կամ որ ինչ անկեալ լինի 'ի ներքս:*

Ա՛ռ սոնօպրի մէջ աղնձած, և դիր 'ի գինին. զհոտն լաւացուցանէ: Եւ թէ առնու ոք կաւէ աման մի, և թէ ճառայ լինի, որ յարակ [3] 'ի մէջն պտղի ձէթ կե-

1. Ծաղիկ ասա զբոլբոսն ինչ ձևացեալ յերեսս քաղցուխին՝ խմա-նալի է:
2. Վերագայիլ կամ վերաշրջիլ, որպէս նաւ 'ի վերայ ջրոյ:
3. Միւս ՕՕ. յէջոյ. իմաստն՝ յերկար ժամանակ:

ցեալ իցէ, և կոտորէ, և առնու զկէս դեհձն ուռիցն, և
ածէ յինքն ջուր, և դնէ 'ի կարասն 'ի գինւոյն՝ որ զերդ-
նաւ վերագայ, և կալնու և ծեփէ զկարասին բերանն
'ի վերայ, և թողու երեք չորս օր. և ապա բաց և տե-
սանես, նա խեցասն զամենայն գիշահոտութիւնն 'ի
գինւոյն քարշեալ է և 'ի ջուրն փոխարկեալ է։ Եւ
թէ ձմառայ առնուս ուր լնուս ջուր՝ և 'ի գինւոյն մխես
մինչև 'ի շլնլին, զնոյն բանդ առնէ։ Եւ թէ առնու ոք
սպրկիկ կարասի ուրից կոտր հասոտ և թանձր, կամ
կղմինտր, և տաքացուցանէ և զձիւթն 'ի վերայ ածէ,
եւ ընդ եռ զինքն 'ի կարասն ձգէ, լաւացուցանէ ըղ-
հոտն։

Եւ թէ առանց պատճառի իրիք զոր չգիտեմնաս՝ հո-
տի գինւոյն, ճավզպէք տասն կամ այլ աւելի ձգեա 'ի
կարասն և ծեփեա 'ի վերայ. լաւացուցանէ։ Եւ թէ
քաղցր խաղողի կամ չամչի կուտ առնուս և պահես, և
երբ մնկիս՝ դու մունփախդէճով թրջեա և 'ի գինւոյն
մրկ, զհոտն լաւացուցանէ. և թէ ոչ՝ առ նուկի մի
անոյշ գինի և նուկի մի մուռ, և երեք նուկի ձիւթ,
և յիրեար խառնեա հալած, և դիր 'ի նոր ձիւթած
կարաս մի այլ, և ապա զայն հոտած գինւոյն անդ լից,
լաւանայ և անուշանայ։

Եւ թէ 'ի պղնձի ամանէ կամ 'ի ժանկահոտութե-
նէ խմեքէ աւերեալ լինի գինւոյն, փոխեա յայլ աման,
և շող հաց մի և երկաթի օղ մի տաք 'ի ներքս ձգեա.
լաւանայ։ Եւ թէ 'ի ծխոյ կամ 'ի ճրագէ խանձրէհո-
տեալ լինի գինւոյն, առ ափ մի ձիթենի փայտի այրուք
գործելախառն, և սակաւ մի կիր անապակ և 'ի ներքս
'ի կարասն ձգեա, նա կիրն զձէթն քաղէ և գործե-
լին զծուխն։ Եւ թէ ձէթ իցէ վայթեալ 'ի գինւոյն,
առ մեծ սպունգ, և զգինւոյդ ընդ սպունգն անցո. նա
գինւոյն 'ի վայր անցանէ և ձէթն 'ի սպունգն մնայ։ Եւ
թէ առնուս ձիւթ և հակթի դեղնուց, և ծեծես և
ընդ իրեար խառնես, և 'ի ներքս 'ի կարասն ձգես, և
պինտ հարուս, և առնուս եռջուր, և 'ի դրուցէ զկա-
րասին ուրն ծեփես և լուանաս, զձէթն և զծխոյ համն
հանես։

## ԴՈՒՌՆ ՃՁԲ·

*Վասն գինւոյ որ աւերի և զերդ չուր կորի:*

Ա՛ռ սիսեռն և աղէկ աղնձեա կէս լիտր, և՛ի վերայ տասն լիտր գինւոյ արկ, և սերտ հար. և յետ երեք աւուրն լաւացած 'ի բան տար:

## ԴՈՒՌՆ ՃՁԳ·

*Վասն դեղոյ որ զգինին դիմացկուն առնէ 'ի ձանապարհի և 'ի վերայ ծովու որ չփոխի և ոչ աւերի:*

Ա՛ռ պտղի ձիթի տուրտին, և քամեա և եռացո աղէկ, և առ յիւրմէդ երկու նուկի ու կէս, և դիր յաման՝ որ առնու ժե լիտր, և ած զգինիդ 'ի վերայ. չթողու բնաւ որ աւերի:

## ԴՈՒՌՆ ՃՁԴ·

*Վասն գինւոյ զոր շինես դեղերով, որ փրկէ զմարդն յամենայն հով ցաւոց և յաւերմանէ ստամոքսին:*

Ա՛ռ զխոտն փարասիօն, որ իւրով Ասորիքն զկանթեղանին վառեն և ճանաչեն. և յորժամ զմուստառն 'ի կարասն կամենաս լնուլ, զխոտն յառաջ տուր 'ի ներքս ձգել, 'ի յիսուն լտեր ամանի վերայ երկու նուկի խոտ. և թէ աւելի՝ այլ աղէկ է:

## ԴՈՒՌՆ ՃՁԵ·

*Վասն գինւոյ զոր շինես, որ զոյժն և զառողջութիւնն պահէ զմարդոյն, և չտայ 'ի ծերութեանն փառուժել:*

Ա՛ռ աղէկ մաստուտակ կէս նուկի, և ըռազլիանի հունտ, և անիսոն, և սամիթի հունտ երեսնակեան դրամակշիռ յամէն մէկէ. պղպեղ դրամակշիռ ու կէս. մուռ երկու տրամ, քէրէֆսի հունտ երեք տրամ: Ծե-

ծեա և յիրեար խառնեա, և Թրեա զերդ հայս. և 'ի սպրկիկ աստառ ծրարեա. և 'ի հինգ վեց լորի ամանս ած նոր ծխած և ձիւթած, և 'ի վերայ զանոյշ գինին. և ծեփեա և թող չորս հինգ օր, և բաց. և յամէն օր անօթուց չափաւոր կթղա մի խմեա յիւրմէ. և երբ զայդ առնես սովորութեամբ, ամենևին պահէ զմարմինդ յամենայն ցաւոց, և զբնութիւնդ ուժովցընէ. և չտայ 'ի քեզ չար մերձենալ բնաւ:

## ԴՈՒՌՆ ՃՂԶ·

*Վասն որ օշնդրի գինի շինես:*

Ա՛ռ օշինդր լեռնային մէկ նուկի, և կապեա 'ի սպրկիկ աստառ, և դիր 'ի տասն լիտր գինի յանուշն կամ 'ի մուստառն, և 'ի մուստառն լաւ է. և մի խիստ ընուր որ չվայլթի, զի պիտի որ խիստ եռալ տայ. և թէ սալիխա խառնես 'ի ներքս՝ լաւ է. և յետ ժամանակի 'ի բան տար, թէ մուստառ լինի և թէ գինի լինի, յետ ութ աւուրն խմէ: Օգտէ քովուցն ցաւուն, և լերդի որ 'ի հովէ ցաւի, և թուխմայի և արծուեց, և քամւոյ, և ստամոքսացաւի, և զճիճին սպանանէ և հանէ 'ի փորոյն. ազնիւ է:

## ԴՈՒՌՆ ՃՂԷ·

*Վասն որ վարդի գինի շինես:*

Ա՛ռ չոր վարդ ծա̄ տրէմ, և հաստ ալիւր արա, և ծրարեա 'ի քթան քթէթ, և դիր 'ի տասն լիտր մուստառ, և թող որ եռայ. և այս կշռովս արա զայլ շատն. և յետ ամսոյ՝ երբ աղէկ գինենայ՝ 'ի բան տար. օգտէ ստամոքսին և ուժաւորացընէ, և բերէ կարօտ կերակրոյ. օգտէ և ջղերոյն և քովացաւութեան և որոց ընդ բերանն արիւն գայ:

## ԴՈՒՌՆ ՃՂԸ.

Վասն որ մկնատխի գինի շինես։

Առ մկնատխ 'ի լեռնէ, և թէ չգտանես՝ 'ի ծաղկեգերէ, լաւ է. 'ի թէմուզի[1] ժէ օրն թէ քաղես, պահեա 'ի շուք տեղ, և 'ի մուստառխն ժամն առ և հանն զդրուց կեղևն, և կտրեա զքիթն և զտակն, և խաչք ձեղքեա. և երկու նուկի 'ի տասն լտեր ամանն ձգեա, և այս կշռովս արա զայլ շատն։ Եւ երբ գինենայ՝ 'ի բանն տար. ստամոքսացն օգտէ. զի զպղլամն հալածէ և կտրէ զքամին յամէն մարմնոյն, յոսկերացն և 'ի ջլացն և յերակացն. և թոքացաւի օգտէ՝ որ հազայ, և սրբէ զխուչափողն, և զձայնն յիստակէ և ամենայն ցաւոց որ 'ի հաստ պալղամէ լինի՝ օգտէ. և փայծղան և նիքրիսին[2] օգտէ։ Եւ իւրեանց խմելն յառաւօտուն պիտի կթղայ մի. տաք ջրովն լաւ է քան հովովն. և աչաց լուսոյն օգտէ. և յետ հաց ուտելոյ հալ բերէ կերակրին։

## ԴՈՒՌՆ ՃՂԹ.

Վասն որ հապալասի գինի զուգես:

Առ հապալաս աղէկ հասուն, սպիտակ, և սրբեա 'ի կրտէն և 'ի տերևէն, և թող անուշ լինի որ կարէցէ ուտվիլ, չորացո 'ի շուքի. և առ ութ նուկի, ծեծեա և մաղեա և 'ի յաստառ դիր, և չուանով 'ի գինին 'ի կարասն 'ի կախ արա, որ տանի քսան լիտր, և զմուատառն 'ի վերայ ած և թող, մինչև յեռէ դադարէ աղէկ. և ապա հանն զծրարն ձգեա, և զգինին ծեփեա. և երբ գինենայ աղէկ՝ 'ի բանն տար։ Օգտէ ստամոքսացն վատուժութեան, և զփորն կապէ, և զարիւնն կտրէ, և զկերակուրն հալէ։ Եւ քանի գինին հնանայ՝ այլ աղէկանայ։

1. Յուլիս։
2. Յօդացաւ ոտից. Podagra.

## ԴՈՒՌՆ ՃՂ·

*Վասն որ այլ օգտակար և անուշահամ գինի շինես մեղրով։*

Առ անուշ գինի եօթանասուն մասն, և յիստակ մեղր հարիւր մասն, և մուշկփախղէճ քսան և հինգ մասն, յիրեար խառնեա, և ած մանր աղի կոճեր, և սակաւ մի սատէճ-հինտի ած յամէն ամանն սակաւ մի, և ծիւթեա զքերանն. և յետ աւուրց 'ի բան տար։ Այլ ազգ. առ յիստակ մեղր քառասուն բաժին, և եռացո, և զփրփուրն առ որ սրբի, և հովացո եղկ. և առ կոստ լեսած նուկի մի, չորս տարւոյ հին գինի կամ այլ աւելի՝ մի բաժին, և տերև մի սատէճ հինտի. թէ չգտանի՝ թմբուլ դիր աւելի, նա զայն կեցուցանէ [1]. և ծեփեա. և յետ ժե աւուրն 'ի բան տար. և քանի հնանայ՝ լաւանայ։ Այլ ազգ. առ մուռ երեք տրամ, հայեցի սնփուլ որ 'ի լեառն լինի՝ նուկի մի. պղպեղ կէս նուկի. կէս լիտր մեղր, և անոյշ գինի երկոտասան լիտր, յիրեար խառնեա 'ի թէմուզ ամառն, և ծեփեա, և յարեն դիր, որ արևն զինքն եփէ և շինէ։

## ԴՈՒՌՆ ՃՂԱ·

*Վասն որ գինի շինես, որ 'ի մէկ օրն խմուի։*

Առ չոր կօստի տակ, լեսեա և մաղեա, և չամիչ 'ի կտէն հանած, մեղր չորս նուկի, և հին անոյշ գինի չափ մի, զերդ վեց եօթն լիտր. յիրեար խառնեա և եփեա, որ յերեք բաժնէն մէկն երթայ. և պարզեա և 'ի բան տար։

1. Փոխանակ նորա լինի. հաւասարազօր լինի թմբուլն՝ սատէճին։ Տ. 'ի Բառս։

## ԴՈՒՌՆ ՃՂԲ.

*Վասն գինւոյ որ չինես խիստ օգտակար և պիտանի ստամոքսին, և փրկէ զմարդն յամենայն ցաւոց:*

Առ պղպեղ ժբ տրամ, և սատէՃ–հինտի կամ Թըմբուլ վաթսուն տրամ, Ճօզպէ տասն ընկոյզ, զաֆրան իդ տրամ. ծեծեա՛ ի սուրբ հաւան [1] և մաղեա. և առ մեղր եռացուցած և 'ի փրփրէն որբած՝ լիտր ու կէս, և լից զդեղսդ 'ի մեղրն և միաւորեա աղէկ. և հարտ աղէկ տասն լիտր գինեաւ, և դիր յապիկած ամանն. և հատ մի աղ անարատ և սատապ, արա կապոց, և 'ի ներքս ձգեա, և կալ զբերանն երեք օր. և 'ի բան տար. յամառն պաղ ջրով և ձիւնով խմեա, և 'ի ձմեռն տաք ջրով:

## ԴՈՒՌՆ ՃՂԳ.

*Վասն որ մեղրաչուր չինես:*

Յոյժ օգտակար է և պիտանի, զոր 'ի գինւոյ տեղն խմես, զոր գովեալ են իմաստունքն և բժշկապետքն, և իւրեանց համար են չինեալ: Առ հին անձրևի ջուր, և եփեա այնչափ որ յերեք բաժնէն մէկն երթայ. և առ սպիտակ մեղր 'ի փրփրէն որբած, և 'ի ներքս խառնեա, որ մայզես որ քաղցրութիւնն բաւական է. և լից յապիկած ամանն, և ծեփեա զբերանն, և փոքր ծմին [2] թող որ չունչն ելանէ. և թող տասն օր, և բաց և առ զպէտքն, 'ի բան տար. և քանի հնանայ՝ նաա գոված է:

Այլ. մեղրաջուր դամոնով յոյժ օգտակար ստամոքսին և պիտանի և գոված: Առ մեղր 'ի փրփրէն յիստակած լիտր մի, և սպիտակ դամոն Թազէ կամ չոր 'ի կտէն որբած նուկի չորս, և անձրևի ջուր լիտր քսան.

1. Մաքուր սանդ կամ անկան. Թ. հաւան.
2. Միւս ՕՕ. ծալ Փ:

յիրեար խառնեա, և եփեա որ յերեքէն մէկն գնայ. և պարզեա և պահեա. և յետ երեք աւուր 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՃՂԴ.

*Վասն սերկևիլի գինի շինելոյ, յոյժ օգտակար ստամոքսացն։*

Ա՛ռ սպրկիկ սերկեւիլ հասուն, սրբած 'ի բրդէն, և յամէն տասն լիտր գինի քսան սերկևիլ դիր 'ի մուսատառն. և թող որ եռն դադարէ. և յետ ամսոյ մի հան զսերկեւիլսն. և երբ գինենայ՝ 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՃՂԵ.

*Վասն դեղոյ որ գինեսէր մարդն զգինին ատէ:*

Ժողովեա 'ի հօտին ժամն զջուրն որ ելանէ 'ի տնկոյ այգւոյն, և տուր գաղտ որ խմէ, ատէ զգինին յաւիտեան։ Եւ թէ առնուս մրտենի չոր և սատապ և մուռ, և դնես 'ի թրջոց և տաս վաղվնէ յանօթուց որ խմէ՝ ատել տայ զգինին 'ի սպառ։

## ԴՈՒՌՆ ՃՂԶ.

*Վասն դեղոյ որ արբենալ չտայ:*

Ա՛ռ զխոտն որ կոչի քամափիթօս, և գտակ շինեա և 'ի գլուխդ դիր. այն օրն քանի խմես չարբենաս։ Եւ թէ առնուս երկու գլուխ ծիծռան, մէկն որձ մէկն մարի, և լեսես մանր և սակաւ մի մուռ ծրար առնես, և 'ի գինին ձգես, այլ չարբեցուցանէ՝ քանի շատ խմէ ոք։

## ԴՈՒՌՆ ՃՂԷ·

*Վասն քացախ շինելոյ:*

Աղէկ կտրած գինին լաւ քացախ լինի, զայն շինել չպիտի. ապա զվատն այսպէս շինեա. առ իրեք չորս լիտր 'ի քացախէն, և եռացո աղէկ, և եռ[1] 'ի յայլ քացախդ խառնեա, նա զայլն շինէ:

Եթէ առնուս սիզի տակ կանաչ և ձգես 'ի քացախն՝ չլինէ: Եւ թէ 'ի քացախն կէս ու կէս եռացուցած մուստառ խառնես՝ անոյշ լինի: Եւ թէ առնուս չամիչ և ծեծես 'ի տասն լիտր քացախն վեց նուկի, և խառնես՝ անոյշ լինի: Եւ թէ առնուս զՃփնւոյն[2] պտուղն, որ պատառի և իւր պտղոյն փետուրն երթայ, և ձգես 'ի կարասն՝ զքացախն անուշացուցանէ:

## ԴՈՒՌՆ ՃՂԸ·

*Վասն որ մկնտոխի քացախ շինես որ քան զիւր գինին այլ աղէկ օգտէ:*

Առ աղէկ անոյշ քացախ քսան լիտր, և առ մկնտոխ զաղէկն, և զմիջակն 'ի մեծ և 'ի փոքր. կեղևեա և թող յարևն որ չորանայ քառասուն օր կամ ամիս, և արկ 'ի քացախն 'ի թրջոց ժը օր, և ապա ընդ մաղ անցու կամ ընդ պարզատ, և հան զսոխն ձգեա, և զքացախն 'ի բան տար:

## ԴՈՒՌՆ ՃՂԹ·

*Վասն քացախի որ զհաշողութեան ուժով առնէ և զստամոքսն սրբէ և զանձն առողջ պահէ:*

Առ 'ի մկնտոխէդ ընտրած և ձեղքած մէկ նուկի և պղպեղ և կիպարւոյ պտուղ և անանուխ և սալխաայ.

1. Տար տաք, որպէս միւս OO գրէն:
2. Թութի սխալ, փոխանակ Ճփնի ծառոյն, որպէս գրէ միւս O:

յամէն մէկէ կէսկէս նուկի. լեսեա և մաղեա, և ած յաման, և 'ի վերայ անոյշ քացախ ժը լիտր, ծեփեա, և յետ ութ աւուր 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ Մ.

*Վասն որ պղպեղի քացախ շինես, որ օգտէ պլղամին։*

Ա'ռ պղպեղ նուկի մի, լեսած և ձարձատ, կապեա 'ի յաստառ և ձգեա 'ի չորս լիտր քացախ. եղև օգտակար։

## ԴՈՒՌՆ ՄԱ.

*Վասն որ գրարկ քացախն գինի շինես, և տաս գործաւորացն խմելոյ։*

Ա'ռ քացախ տասն լիտր, և տասն լիտր մունֆախտէճ, և յիսուն լիտր մուստառ, և ճծ լիտր ջուր. յիրեար խառնեա և հար դմիչով երեք հետ՝ ամէն հինգ օր. և ած լիտր մի ծովու ջուր 'ի ներքը, և ծեփեա և թող տասն օր, և բաց. և 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՄԲ.

*Վասն որ պահես զքացախն որ ոչ հատի և ոչ կտրի կամ որդնի։*

Ա'ռ այգւոյ տերև, կապոց արա, և կախեա 'ի կարասին բերանոյն 'ի վայր, այնպէս որ չհասանի 'ի քացախն. նա զինքն անփորձ պահէ։

## ԴՈՒՌՆ ՄԳ.

*Վասն որ առանց գինւոյ քացախ շինես։*

Ա'ռ դեղձն թաղէ, և աղնձած գարի և թրմնջի թթու. և դիր յաման, և ջրով տորորեա աղէկ՝ որ մխաւորի. և ապա զամանն ջրով լից և ծեփեա. և թող որ հնանայ և նեխի, նա լինի քաղ քացախ։

## ԴՈՒՌՆ ՄԴ.

*Վասն որ սերկևլի գինի շինես օգտակար ստամոքսին և ամենայն մարմնոյն:*

Առ նոր սերկևիլ զաղւորն և զխիստ հասուննն, և դիր 'ի տունն 'ի վայր, ժԴ օր, որ թօշնի[1]. և ապա սրբեա զինքն 'ի բրդէն չուխայ կտորով, և շինեա չոր պախրէի կող դանակը,[2] և այնու ճեղքեա 'ի չորս. և հան զսիրտն,[3] և զքթերն[4] կտրեա և դիր 'ի նոր ձիւթած կարաս. և լից զկարասին երկու բաժինն կամ այլ աւելի. և առ յիստակ անուշահամ մեղր՝ զուֆրին քաղած և քամած 'ի մաղ, և լից զամանն մինչ 'ի վեր, և ծեփեա զբերանն և թող մինչև 'ի թէմուզ ամիսն. և ապա բաց, և բեր թեղար մի սպրկիկ. և որքան 'ի մեղրէդ և 'ի սերկևիլէդ ածես 'ի թաղարդ, նա դու նոյն ամանովն երկու ու կէս ջուր ած աղբիւրի, որ զինքն սուրբ մարդ առնու յաղբերէն, որ ոչ արև տեսանէ և ոչ լուսին. վասն զի իւր յատուկն 'ի յայն է՝ որ աւերէ զինքն. ապա 'ի չիքն յառաւօտուն առ, և 'ի թեղարն սուրբ մարդ ած՝ լուացած ձեռօք, և զջուրն ընդ ինքեան տրորեա, որ ամէնն ջուր կորի. և ապա 'ի նոր ձիւթած մաղ առ, 'ի կոներ լից. և զբերանն ձիւթեա աղէկ, և կալ, և իա օրն յարևն դիր, որ արևն զինքն եփէ. և ապա խմեա պատուական և օգտակար, նոր իրք:

## ԴՈՒՌՆ ՄԵ.

*Վասն ճանաչելոյ զմուստատանն թէ ջուր խառնած է թէ ոչ:*

Առ կենդանի մարախ մի, և ձգեա 'ի մուստառն. թէ 'ի վերայ գայ՝ նա չկայ ջուր. և թէ 'ի վայր առնու՝ նա ջուր կայ:

1. Միւս ՕՕ. թառամի:
2. Միւս ՕՕ. ֆոլադէ դանակ ասեն. իսկ մերս ցուցանէ յոսկորոյ առջառոյ:
3. 4. Միջուկ սերկևլին և ծայրքն:

## ԴՈՒՌՆ ՄՁ·

*Վասն օգտակար և փորձով ազնիւ դեղոյ, որ զգինին անոյշ պահէ:*

Ա՛ռ աւթխարի պտուղ յիսուն տրամ, մուռ իը տրամ, սալիխա իը տրամ, սպիտակ խունկ իը տրամ, մաստաքէ ժը տրամ, մնֆուլ վեց տրամ. լեսեա և մաղեա և յիրեար խառնեա. և առ մուստառ և լից 'ի կարաս մինչև 'ի շինին. և յեռալն՝ առ զշիշն և զփրփուրն երեք կամ չորս, և ապա առ բուռ այրած, ծեծեա և մաղեա. և լից չափով յամէն լտեր վերայ թուխմ մի. կու գայ 'ի հարիւր գինին մարզպան մի բուռ. և առ հաստ կանաչ եղեգներ՝ ընդ իրեար կապեա, և սերտ զգինիդ ընդ բուռն հարուլ տուր յառաւօտէն մինչև ցկէս օր. և թող որ հանգչի մինչ 'ի մութն, և այլ ծեծել տուր և հարուլ մինչև 'ի գիշերն. և այսպէս արա երեք օր և երեք գիշեր, և ապա ջրով լնուլ տուր. զամէն կուտն և զփչոքն որ մնացեալ լինի՝ քաղեա և ձգեա: Եւ ապա զհաւիճանիդ[1] զոր գրեցաք՝ լից 'ի ներքս, յամէն լտեր գինի դրամակշիռ մի 'ի հաւիճանոյդ. և ապա այլ մուստառ ընդ ճիփս եռացուցած՝ 'ի վերայ ած, և զպակասն լից զկարասին. և կէս օր հա՛ր՝ որ միաւորի ընդ դեղորէիցդ. և ծեփեա և պահեա, և չնչահան թող:

## ԴՈՒՌՆ ՄԷ·

*Վասն որ Ջրապտուղ շինես:*

Ա՛ռ զպտուղն ձեռօք քաղած որ չգանի, և դիր յամանն. երես մի պտուղ, երես մի ըռազխան կամ սամիթ կամ մազտաքէի ցախ, և լից զամանն մինչ 'ի վեր, և 'ի վերայ աղջուր 'ի լի: Եւ այս նշանօքս ճանաչեա զաղջուրն 'ի յաղի և 'ի յանլի. տես, թէ պտուղն 'ի յաղջուրն 'ի վերայ գայ՝ նա շատ է աղն, ա՛յլ ջուր ած, և թէ յատակն նստի՝ անլի է, ա՛յլ աղ ձգեա. ապա թէ

1. Միւս 00. դեղորայքն:

'ի մէջ ջրին 'ի շուրջ գայ՝ աղէկ է, լիտր մի քացախ 'ի վերայ ած կամ այլ աւելի, և կալ ծեփով զբերանն և պահեա. և երբ հասանի՝ 'ի բան տար:

## ԴՈՒՌՆ ՄԸ·

Վասն որ զսև հասած պտուղն շինես:

Ա՛ռ զսև հասած պտուղն՝ զանարատն, և դի՛ր 'յաման, երես մի զստատապն կամ քերէֆս մինչև լցուի. և ապա առ անուշ քացախ և մեղր և աղ և չամանն միաչափ, և 'ի վերայ լից մինչև 'ի վեր. և առ անոյշ ձէթ, և ած 'ի վերայ չորս մատն, և ծեփեա զբերանն. լինի օգտակար և անոյշ:

## ԴՈՒՌՆ ՄԹ·

Վասն պատրուսելոյ զայգին:

Վասն երկու պատճառի պարտ է պատրուսել զայգին. մէկ՝ թէ բեր չառնէ, և երկրորդ՝ թէ կամիս այլ ազգ փոխել զպտուղն: Պարտ է թողուլ որ հաստանայ մայրանն, զի կարացէ զպատրոյսն շալակել, և ապա զպատրոյսն դնել: Են ոմանք որ 'ի վերայ հողոյն պատրուսեն. փորեն և բանան զտունկն թզաչափ, և 'ի վերայ պատրուսեն, և հողովն ծածկեն. և այս ազգս բուն և աղէկն է. վասն զի հողն ամուր պահէ զպատրոյսն. բայց այս մէկ խասլէթս[1] կայ յայդ ազգդ, որ սակաւ մի այլ անագան սկսանի 'ի բեր տալն. և իւրեանս ակնուռին արի կացիր որ չթողուս որ ելանէ: Եւ այլ ոմանք 'ի վերայ գետնին երեսացն պատրուսեն զնոյն. և այս աղէկ: Եւ այնոքիկ որ բարձր պատրուսեն՝ այն դժուար է. զի այլ անագան դառնանէ զկնքն գետնին զօրութիւնն, զի հեռի է. Նոյնպէս և հողմունքն խիստ շարժեն և վիրաւորեն, և հաւքն՝ 'ի նստելն: Բայց անպատճառ հաստոցք պիտի դնել և ամրութիւն՝ որ չվնասի: Եւ զհնացեալ այ-

1. Ցանկութիւն, որպխութիւն:

գիսն՝ որ կոճերն շատանայ և բարձրանայ, սղոցով կտրեա և ցածացո որ երկու թիզ միայն կամ այլ պակաս հանապազ՝ 'ի գետնէն. և թէ պատրուսել կամենաս՝ զողոցին կտրածսն սուր դանակով մն, և ապա ճեղքեա և դիր զպատրոյսն, որպէս արժան է, և հողով և փշով ծածկեա. և ապա 'ի շաբաթն երկու հետ ջուր տուր, որ աղէկ թանուի։

Այլ ազգ պատրուսեն. որ ծակեն և պատրուսեն. և այս է աղէկն, որ իսկի կապել չպիտի։ Եւ այլ, որ ուտես զքո բերն մինչև պատրոյսն զարգանայ. ակնբցեա զտունկն, և գայլիկոնով ծակեա խաչք՝ զտնկին աւագ բազուկն՝ ցած, և զպատրուսին որթն քանի 'ի տնկին ներքսէ կամենայ կենալ՝ սակաւ գանեա, և զվերի կեղևն հան, և ապա խաչք ընդ ծակն անցո։ և զակն և զերկու դիհն՝ ձիւթով և մոմով խծկեա, որ զջուրն արգիլէ, և մրջիմն 'ի ներքս չմտանէ. և հողովն ծածկեա և երկու ծայրին պատրուսին սնարք դիր, և զծայրսն ընդ հողն 'ի դուրս հան. և կէր զքո տնկին բերն մինչև պատրոյսն զարգանայ. և ապա զպատրուսին վերևն սղոցով կտրեա, և զպատրոյսն տունկ արա որպէս կամիս։

Այլ ազգ պատրոյս դարձեալ, որ ազգի ազգի պտուղ բերէ սպիտակ, սև, կարմիր։ Արժան է 'ի հոտելոյն ժամն որ շարժի տունկն, առ երեք ազգ տնկէն և կոփեա սուր դանակով զմէկ երեսն, և զերեք վարոցն այնպէս ած յիրար՝ որ մազմզուտ չկենայ, և երեք ուռին ակներն այնպէս ած յիրար, որ ղորդ ընդդէմ իրերաց գան. և հալֆայով կամ խշրով պինտ փաթաթեա զմիջոցն, և ամուր կապեա ընդ իրեար. և տես որ ուռերդ հինայով լինի զերդ տնկելոյ համար. և թէ պանդըրած լինի և մազմզկով՝ լաւն այն է։ Եւ ապա թաղեա զլինքն, և տնկեա յաղէկ կակղած և 'ի հեռի գետին. և թող որ բռնէ և մորչէ. և 'ի հոտելոյն ժամն սղոցով զլինքն վերև ակինն կտրեա. նա երբ բեր տայ՝ զբերն ազգի ազգի տեսանես. և թէ ուզես որ հանես և այլ ուրեք տնկես՝ կարող ես։

Այլ ազգ առնես որ կուզերն ազգի ազգի լինին, և պտուղն և յամէն պտղմէջ տերևիկ մի փոքր։ Տե՛ս ընտնկերն յայգին, որ շատ ազգեր կենայ յինքն, որ

զերթ կենայ 'ի տունկն՝ կարենաս առանց կտրելոյ 'ի մէկ տեղ բերել. և ապա ա՛ռ գումշոյ կամ ըղտու խալամ մի, և սղոցով կտրեա զվերի ծունկն և զներքինն, և ապա բե՛ր զուռերն աստից և անտից որքան ուզես՝ ազգեր. և զամէն բերոց ա՛ռ ընտրեա, որ շուտ տայ պտուղ. և զամէնն ընդ ոսկրն անցո վառով. և ապա գոմշի կողեր ընդ խալամն 'ի վեր դի՛ր, և պինդ կապեա, որ երբ ուռն հաստանայ՝ նա զխալամն չկոտորէ. և զուռերն որ ընդ ոսկերն 'ի վեր լինին անցուցած ընդ իրեար՝ ոլորեա, և կապեա պինդ, և աղէկ թաղեա զոսկորդ և զամէն ուռերդ՝ մինչև 'ի տնկերն, որ զերդ ծիլթնաց՝ [1] որ քաշկու առնեն. և յոսկրէն վերև զերդ չորս մատն կտրեա զուռերուն ծայրն, և թաղեա որ ծայրքն կենան 'ի բաց. և այնպէս ջանայ, որ 'ի միաբանէն [2] հանէ զուռն. և երբ բեր առնէ, տե՛ս, արմացք իր։ Եւ անտի տունկ որոշակի և զատ տնկես՝ նոյն է։ Եւ թէ կամիս որ կոյզն տերևով լինի 'ի պըտղըմիջերն, դու զկէսն պառպուռ արա [3], և զկէսն տանու. և որպէս վերոյ գրեալ եմք՝ ընդ ոսկորդ անցո և արա, այնպէս լինի։ Եւ թէ առնուս զխաղողի որթն և 'ի հապալոյ մրտենւոյ տակ պատրուսես ցած 'ի հողն և թաղես, կէս կուզին խաղող լինի և կէսն հապալաս։ Եւ թէ զնռնենւոյն և զկեռասենւոյն միջոյն բուրդն՝ այդ օրինակաւդ հանես, բերն կուտ չունենայ։ Եւ թէ ուզես խաղողն իսկ կուտ չունենայ, ա՛ռ զորթոյն բերոցն ուժովն, զոր գիտենաս թէ շատ բեր տայ, և 'ի յերկու ծնկին մէջն ճեղքեա զորթն [4], զորդ 'ի մէջն, և ապա երկաթ կալ կեռ՝ ականջկըրկտի կերպ, և այն երկաթովն զայն սրտուկ բուրդն որ 'ի մէջ որթոյն լինի, 'ի մէկ ոստոյն մինչև 'ի մէկ այլն քերեա, և զամէնն հան, և դարձեալ զճեղքուկն յիրեար ա՛ծ, և խշրով [5] կապեա. և ա՛ռ մկնոտխ մի և 'ի կապածդ հագո. և զայնչափ տեղն թէ թաղես՝ ա-

1. Անծանօթ է մեզ բառս, այլ թուի նշանակել աճումն, երկարումն, որպէս զի կարելի լիցի քաշկու առնել, այսինքն քաշ կամ աղուրայնի։
2. Ի տեղւոյն՝ ուր ուռքն կցեալ էին յիրար։
3. Տես 'ի Բառս։ Թուի ասել, զկէս ուռոցն առնուլ 'ի վայրենի որթոյ (Պառպուռ) և զկէս յընտանի։
4. Միւս ՕՕ. զորթն։
5. Միւս ՕՕ. խշրով։

ղէկ է, և թէ ոչ՝ լուր [1] զինքն թաղեա։ Նա զինչ այն որթն բեր առնէ՝ կուտ չունենայ բնաւ։

Կտրեա զկոճն 'ի հողդ՝ բարձր պուրղուով [2], վերան ծակեա աղէկ, պորթուն ջուրն լից, և մոմով փակեա։

## ԴՈՒՌՆ ՄԺ.

### Վասն որ զայն ազգ այգին շինես որ զբրակես գինին շինէ:

Եւ մեք զթրեակեսիդ օգտութիւնսն յառաջ գրեալ եմք [3], անդ ուսիր։ Ընտրեա զաղէկ և զանոյշ գինեխաղողին ազգն, և դիր որ պանդրէ և աղէկ մազմզուկ առնու, և ապա ճեղքեա, և զերդ զմէկայլդ որ գրեալ եմք՝ զմէջն աղէկ թրեակեսիով լից և կապեա. և մկնաոխ մի ընդ այն խաչք անցո, և հագո, և թաղեա աղէկ 'ի հիւթ տեղ, և թող որ բռնէ. և այս է։ Եւ թէ յիւրմէ այլ ուրեք տնկես՝ չունենայ զօրութիւն. բայց միայն ինքն առ ինքն։

## ԴՈՒՌՆ ՄԺԱ.

### Վասն որ տանես որ խաղողն մշկահամ լինի։

Առ յամէն ազգ անուշահոտ հաւիճանւոյ, լեսեա և արկ 'ի թուրջ. և պտուղն և զպատրոյսն 'ի յայն ջուրն 'ի թուրջ արկ օր մի, և ապա տնկեա. և յամիսն երկու երեք հետ զտնկին տակն բաց, և 'ի նոյն ջրէ ջրեա զինքն. նա բերն նոյն համովն լինի։ Եւ զպատրոյսն 'ի քթէթ թաց և փաթաթեա, նա նոյն է։

Եւ թէ ուզես որ ամէն ազգ տնկի բարունակ շուտ երկայնանայ, նադրուն առ և աղնձեա, և մանր աղա և թրջեա. նա պիտի որ թանձրացուցանէ զերդ մեղր, և 'ի հօտեղն զակներն ած յութ օրն հետ մի. և տես արմացք։

1. Միայն։
2. Ծակելու գործին՝ (Թուրք բառ), զոր վերագոյն գայլիկոն կոչեաց։
3. Տես Դուռն ՃԷ և ՃԹ։

## ԴՈՒՌՆ ՄԺԲ·

*վասն դեղոյ զոր առնեն՝ որ թէ ուզես խաղողն շուտ հասանի, և թէ չուզես՝ անագան։*

Երբ տնկես զայգին՝ դու 'ի տակըն քաղցր խաղողի կուտ լից և սակաւ մի աղի ջուր. նա շուտ հասուցանէ զբերն։ Եւ թէ յամէն տարի ընուս՝ նոյն է։ Եւ թէ ուզես որ անագան հասանի, զառաջին բերցոյն ընկեա, նա մէկայլն որ ելանէ՝ անագանի։

## ԴՈՒՌՆ ՄԺԳ·

*վասն պահելոյ զխաղող, և այլ ազգ միրգ, որ չաւերի մինչև 'ի գարունն։*

Տես 'ի յայգւոյն զտեղի շուք և շատաբեր 'ի մէջ տնկոց, և փորեա հոր արձակ գիրկ մի կամ երկու, և աւազ արկ 'ի ներքս. և բե՛ր զբարունակն նոյն բերովն և խշլկերով, կախեա 'ի հորն, և զբերանն տախտակեա և հողով և շաքլով ծածկեա։

Եւ այլ որ 'ի տան պահես. շինեա մեծ աղկըեր. և առ ձիւթ և կվենի կամ մարխի փայտի սղոցուք, և խառնեա զսղոցուքն 'ի ձիւթն, և կորեկի յարդ. և այնու ծեփեա զաղկըն 'ի ներքուստ և 'ի դըրուց, որ բնաւ օդ չմտանէ 'ի ներքս. և 'ի յատակն ցամաք սղոցուք լից. և զսերկևիլն, զտանձն, զխնձորն 'ի սղոցուքն թաղեա։ Եւ թառեր դիր, և զխաղողն ընտրով զառողջ կուզերն 'ի թառերն կախեա, և 'ի վերայ փակեա, և զփակս ձիւթեա և թող. և քանի բանաս և առնուս՝ շուտ փակեա և ծեփեա, որ օդ չմտանէ. զի իւր գրողն օդն է։

Եւ են այլք՝ որ զխաղողն 'ի գինեկարասն 'ի կախ առնեն, որ մրուրն դեռ յատակն կենայ, նա խիստ պահէ. և թէ մրուր չկենայ՝ աւազ լից, նա աղէկ է։ Եւ այլ ոմանք՝ զծովուն ջուր եռացուցանեն և զկուզերն 'ի ներքս մխեն, և ապա հանեն կախեն. աղէկ է։ Եւ այլք զկոյզն 'ի ջրած գինին թանան, և հանեն 'ի դա-

րէծեղն և 'ի յարդն Թաղեն, շատ մնայ։ Եւ այլք առնուն զԹզենի փայտի մոխիրն կամ զհօտին՝ և մոխրաջուր առնեն և անդ Թանան և կախեն. մնայ շատ։ Եւ այլք ընտրեն զկուզերն 'ի շրմէ և յաղոխէ և յամենայն նեխէ, և զկոյզկապերն ծիւԹեն, և զկոյզն ու 'ի յեց կախեն աղէկ է։ Եւ այլք առնուն կաւ, և լիճ առնեն, և զկուզերն 'ի ներքս Թաթախեն, և պահեն. և յորժամ ուզեն՝ լուանան և ուտեն։ Եւ այլք առնուն զանմեռկի ջուրն և անդ Թանան և պահեն։ Եւ այլք զանձրևաջուրն առնուն եփեն, որ կէսն մնայ, և զխաղողն 'ի ներքս եռայուցանեն աղէկ, և պահեն. շատ մնայ, և ուտելոյ օգտակար է, ևս առաւել գլխոյ։

## ԴՈՒՌՆ ՄԺԴ.

*Վասն որ պիծակ զմիրգն չուտէ:*

Ա՛ռ հոռոմ ձէթ 'ի կուժքդ, և 'ի կոյզն փչեա. և այլ չմերձենայ։

## ԴՈՒՌՆ ՄԺԵ.

*Վասն որ Զամիչ շինես:*

Բազում և ազգի ազգի է չամչին շինելն. բայց լաւն այս է։ Ա՛ռ զաղէկ խաղողն, սփռեա մինչև Թառամի. և ապա հանն կախեա 'ի շուքն, մինչև անդ չորանայ. և ապա վարոցօք շինած՝ մղլուն այգւոյ շաքիլ դիր, և զինքն 'ի վերայ շաքլին. և աղէկ սեղմեա որ տափականայ սերտ. և 'ի վերայ շաքլով ծածկեա, և յանծուխ պաղ տուն կախեա. և այս է լաւն և դիմացկուն։

## ԴՈՒՌՆ ՄԺՋ·

*Վասն խնձորի պահելոյ :*

*Քաղեա ձեռօքդ, և 'ի տուն ուր ծուխ չհասանի՝ գարէ յարդ լից. և ինքն 'ի վերայ ամբողջ մնայ. քանի տունն հով լինի՝ լաւն այն է: Եւ թէ առնու ոք ընկուզի սղոցուք կամ կվենւոյ կամ գէր մարխի, և լնու 'ի կարաս անձիւթ, և զխնծորն 'ի ներքս թաղէ՝ ամբողջ մնայ. բայց զբերանն ամուր ծեփեա որ օդ չմտանէ: Եւ թէ՝ որպէս յառաջ գրեցաք, աղկր առնես և գարէ յարդ և կամ զսղոցուքն լնուս, և անդ դնես՝ աղէկ է: Սակայն այս է լաւն քան զամենայն. առ խնծոր ամբողջ 'ի ծառէն, և 'ի վերայ փայտին խամ կապեա, և առ ընկուզի ցախ, և 'ի վերայ խնձորին փաթաթեա, որ աղէկ ծածկէ ցախն զխնծորն. և այնու կախեա յանծուխ և 'ի հով տունն. ամբողջ պահէ: Տանձ, խնձոր, սերկևիլ, կտրատեա և 'ի բարկ փուռն չորացո: Այլ. աղկր չինել տուր բրտին, մէջն իբր կարաս, և դիր յուքն անկղ, որ զինքն կարենաս գլխիվայր կախել 'ի ծառ կամ 'ի տեղ, որ բուքն և անձրևն չծեծէ զինքն. և տեղի արա յինքն, և թաւեր դիր վարոցս՝ 'ի ներքուստ, և զխնձորն կցխանի արա և զսերկևիլն, և 'ի ներք կախեա և թող. գտանես ամբողջ: Եւ թէ ուզես որ պահես զխնձորն, 'ի բարակ հողն թաղեա, շատ դիմանայ: Եւ թէ կամիս որ կանանչ մնայ, երբ կտրես՝ ձիւթեա զկոթերն, և ապա՝ որպէս վերոյ գրեալ եմք, կախեա, շատ դիմանայ: Եւ թէ 'ի մուստառ դնես՝ անուշանայ ինքն և անուշացուցանէ զգինին, և չէն մնայ. բայց զմիրգն այլահամ ուտես:*

*Եւ տանձի՝ վերոյգրեալ դեղերս օգտակար է զերդ խնձորի:*

## ԴՈՒՌՆ ՄԺԷ·

Վասն Նռան պահելոյ:

Եթէ ուզես որ 'ի ծառն պահես զնուռն, պտուտուկներ առ և 'ի ծառն կախեա. և զնուռն ձղերով 'ի ներքս դիր, և զբերանսն բռով ծեփեա. մնայ ողջ 'ի տարին: Եւ թէ ոք պրտուով քթացի նման ղլէֆ շինէ նռան՝ զերդ կենայ 'ի ծառն, և բռով ծեփէ, մնայ աղէկ: Եւ ոմանք երկայն հոր փորեն, և զնուռն և զայլ մրգանին թառերով կախեն, և 'ի վերայ ծածկեն 'ի տեղ՝ որ ոչ գիջութիւն մտանէ և ոչ օդ: Եւ այլ. թանձր աղջուր արա, և զնուռն 'ի ներս մղեա, և դիր որ ցամքի աղէկ 'ի յարևն, և կախեա. աղէկ մնայ. բայց խիստ սմքեցուցանէ զտերևն. երբ կամենաս ուտել, եղկ ջուր արա, և 'ի ներքս պահ մի թրջոյ դիր, դալարանայ և զերդ նոր դառնայ:

Եւ թէ ոք առնու կաղնի փայտի սղոցուք և քացախով աղէկ մնչէ և ցամաքեցուցանէ, և զնուռն անդ թաղէ, աղէկ պահէ:

## ԴՈՒՌՆ ՄԺԸ·

Վասն որ զդամոնն պահես:

Առ զդդամոնն և դիր 'ի կարաս և յիստակած քաղցր գինի լից 'ի վերայ. և երբ ուզես՝ կեր, անուշ լինի: Այլ ազգ. քաղեա զաղուոր հասած դամոնն ձեռօքդ, որ չհարուի, և լից 'ի նոր կաւէ ամանն, և զբերանն ծեփեա և պահեա. շատ դիմանայ:

Առ զխակ դամոնն, կիսաեփ արա և չորացո 'ի փուռն[1]:

1. Այս տող յՕր. 'ի Նախորդ Դրան եդեալ էր:

## ԴՈՒՌՆ ՄԺԹ·

Վասն ամենայն չորային և խեձեպային իրաց պահելոյ. Նշոյ, Ֆստոյխի, Ընկուզի, և այլ այսպիսեացս:

Պարտ է որ երբ փրաթափես զայսպիսիս ազէկ՝ և աղջըրով լուանաս և ցամաքեցուցանես, և ապա պահես. և թէ չլինի 'ի տալ զփուրն՝ [1] 'ի յարդ թաղեա, նա մենակ տայ զփուրն։

## ԴՈՒՌՆ ՄԻ·

Վասն որ զկաստանեայն պահես :

Դիր զկնքն 'ի կաւեայ անձիւթ աման. և պըսմով կամ այլազգ չոր փշով զբերանն կալ. և խեցատ մի ներքև դիր, և զկնքն 'ի վերայ բերանոյն շրջեա, և գլխիվայր կանգնեցո. շատ պահուի։ Եւ թէ փորես հոր 'ի բաց տեղի, որ ծածք 'ի վերայ չլինի, և լնուս ցամաք աւազ յատակն, և ապա դնես զկաստանայն և զեղի նուշն [2] կամ զայդպիսի խեձեպային իրաց, թեղար մի 'ի վերայ բերանոյն կործես, և զշուրջն խէնտէկես որ ջուր չմտանէ, շատ դիմանայ. երբ ուզենաս՝ ուտես։

## ԴՈՒՌՆ ՄԻԱ·

Վասն Հապալասի պահելոյ ։

Ա՛ռ զհապալասն նոյն իւր տերևովն, և լից 'ի յանձիւթ ճառաներ. և նոյն ճղերովն կտրեա և դիր այլ ազէկ, և զբերանսն ծեփեա և պահեա. շատ դիմանայ։ Եւ թէ զվարդն այդպէս պահես՝ շատ դիմանայ։

1. Եթէ դժուարին լիցի հանել զփուրն, այսինքն զարտաքին կեղևն։
2. Միւս 00. չեղի նուշ։

## ԴՈՒՌՆ ՄԻԲ·

### Վասն պահելոյ զթուզ ։

Երբ կամենաս զմուստառին բերանն ծեփել, դու առ նոր պուտուկ և լից զկանաչ թուզն 'ի ներքս. այնպէս մինչև զպուտուկն 'ի մուստառն՝ որ պուտկին բերանն և կարասին՝ հաւասար գան իրերաց. և խփեա զերկոսեանն, և ծեփեա և թող. յորժամ ուզենաս՝ զթուզն թազէ գտանես և անուշ ։ Եւ թէ յապրկեայ բղուղ դնես և մոմով զբերանն կալնուս ամուր, նոյն է ։

## ԴՈՒՌՆ ՄԻԳ·

### Վասն չոր թզոյ ։

Զչորացուցանելի թուզն ընտրել պիտի 'ի խակէ և յաւերածէ. և զկոթերն հան և դիր 'ի կթոց, և 'ի ծովու ջուր մխեա որ թացուի, և 'ի վեր կալ որ քամի ջուրն. և ապա 'ի վերայ խսրի փռեա և չորացո. և երբ աղէկ չորանայ՝ 'ի յանձիւթ ամանն դիր և զբերանն ծեփեա. և յաստեղք դիր գիշեր մի և պահեա ։ Եւ այլք ճառայոյն բերանն ծեփած 'ի թոնիրն կամ 'ի փուռն դնեն, և անդ չորացուցանեն և պահեն ։ Եւ այլք առնուն զաղէկ հասուն թուզն զանարատն և չորացուցանեն 'ի վերայ խսրի. և երբ աղէկ հաւասար չորանայ՝ ապա զխնքն 'ի շուք փռեա, և անտի յարև փոխարկեա քանի մի օրեր. և առ կապայի տերև, և զխնքն տերևովդ 'ի ճառայ ամանեա, և 'ի բան տար ։

## ԴՈԽՈՒՆ ՄԻԴ·

*Յաղագս պատրուսելոյ զհատատակեղն ծառոցն:*

Զկեղևն առանց ձեղքելոյ պարտ է պատրուսել, այսպէս. որ շինես 'ի պինտ չոր փայտէ բարակ դուր՝ պատրուսմն չաքօք, և այնու ծակես և փրցընես պատրաստ[1] զկեղևն 'ի փայտէն, որ չձեղքի կեղևն. և ապա զպատրոյսն դնես, զփայտն 'ի փայտին դեհն և զկեղևն 'ի կեղևին: Եւ թէ տափակ փայտիւ կապես յառաջ և ապա զկեղևն դրօշն փրցընես, այն է լաւ, որ չպայթի կեղևն և ապա արձակեա զփոկն և դիր զպատրոյսն:

Եւ այն ծառքն որոց կեղևն նօսր լինի՝ այնք զջուրն խորտ տանին. զայնպիսիսն ձեղքել պարտ է, և ապա զպատրոյսն դնել:

Եւ երբ կտրէ ոք զբազուկն՝ նա չէ պարտ յամեցուցանել, մանաւանդ ձարտար դիր զպատրոյսն և՛ աղէկ հագո, և պակցո[2] 'ի մայրամնն, որ օդն չսմքեցուցանէ զլինքն և սխալեցուցանէ: Եւ զպատրոյսն պարտ է յլնտիր և 'ի թերուսիկ ծառէ առնուլ, և զթերոյ ձիւղն և զայն՝ դնել. և որ պտկընկերն յիրերաց մօտ ունենան՝ այն է լաւ, և 'ի մէջ ծառոյն առ այն է լաւ պատրուսելն: Եւ թէ կամենաս յարակ պահել, կաւ և կու և մարդոյ մազ լաւ է, յիրեար խառնեա, և կոխել տուր աղէկ, և զպատրուսացուն 'ի յինքն դիր. շատ դալար մնայ. և քանի կարես՝ 'ի շիտակ և 'ի կոկկեղև ձիւղ պատրուսեա, մի 'ի գչխայն: Եւ քանի ցած կարես պատրուսել՝ այն է լաւն: Եւ սղոցովն կտրելն լաւ է, և ապա սուր դանակով սրբել և դնել զպատրոյսն: Թէ հաստ լինի՝ 'ի մայրամնն երկու երեք կամ չորս դիր, և 'ի բարակն և 'ի վատուժն երկու մէն: Եւ պարտ է որ յառաջ մոմ ընդ ձիւթ խառնեալ կաճուս, և ապա 'ի վերայ խշով[3]

1. Զգուշութեամբ:
2. Միւս ՕՕ. հոգցօ:
3. Ըստ Նախ գրեցելոյն (ՄԹ.) պարտ էր գրել սաս և 'ի սաորև խշրով. բայց միւս ՕՕ. ունին՝ կշով:

կամ կանաչով պինտ կապես, և տապա աղէկ կաղձնով շաղախես 'ի վերայ, և քթեթով պնտես: Եւ պարտ է յամէն շաբաթ երկու հետ թանալ զկաւդ աղէկ, որ ջուր առնու պատրոյսն և թաղէնայ, մինչև 'ի թեմուզ ամիսն. զի պատրուսին գարունն թեմուզն է:

## ԴՈՒՌՆ ՄԻԽ·

*Յաղագս տերևպատրոյս առնելոյ:*

Արժան է զթզենին, զթթենին, զեղջիւրենին, զֆստուխենին և զձիթենին, տերևպատրոյս առնել, 'ի թեմուզն ԺԵ օրն է իւր յուլն, [1] զարդել 'ի ձիթենւոյնն, որ զայն յապրիլ ամսոյն ԺԵ պարտ է առնել: Եւ այսպէս արա. կնդեա զծառն, և մի՛ բնաւ տերև թողուր, և մի՛ ձիւղ քան [2] զպատրուսելոյն միայն՝ զմէկ տարւոյ հինաձիւղն. և անդ որպէս արժան է ձեղքեա 'ի վերայ ակինն, և զտերևան ակնոցն հանն, որպէս արժան է: Բայց պատրաստ՝ որ 'ի հանելն ակին՝ սրտուկն չկտրի. և դի՛ր 'ի ձեղքածն, և այնպէս նստոր, որ ղորդ զերդ իւր բնական կեղևն նստի, և խշով կապեա. և և յետ ԺԵ աւուրն կտրեա զկապերն սուր դանակով, և 'ի տեղն թող: Եւ այս է տերևպատրուսին նշանն: Բայց երբ հոտես զծառսն՝ շողակիզ կալ կամ խարիչ, և զաւելի ակներն և զհոտած տեղիսն խարեա, որ այլ ակն չհանէ, և զամէն ուժն 'ի պատրոյսն տայ. և թէ 'ի վերայ կապին շաղախ ածես՝ աղէկ է. բայց պատրաստ կաց որ զակն չծածկես: Եւ թէ ուզես առնել՝ որ մէկ թուզն երկու ազգ լինի, սև 'ի տնկելոյն ժամն 'ի սև թզենւոյ տունկ, որպէս արժան է, զմատղաշ ծիլն հինայոցն, նոյնպէս և 'ի սպիտակ թզենւոյ, և զերկուսն յիրեար ած ագուր, և պինտ կապեա, և

1. Միւս ՕՕ. «թամուզ ամիսն ԺԵ օրն. որ յուլն, զարդել»: Եւ մարթ է կարծել թէ զթամուզ ամիս ասիցէ լինել յուլիս. այլ ընտիր օրինակն թուի զԺԵ թեմուզի նշանակել իբր պատշաճ օր պատրուսելոյ, կամ վերջին ժամանակ, յող., ըստ որում ասէ և 'ի ՄԻԷ Դրան:
2. Բաց 'ի:

ունկեա յաղէկհիւթ տեղի, և ծառայեա որ բռնէ և ուռ հանէ. յայնժամ զուռերն յիրեար ած, և կապեա պինտ, և միացո ընդ իրեար՝ որ մէկ դառնան. և երբ աղէկ միանան և բռնեն, դու հան և յաղէկ տեղ ունկեա, և աղբով և ջրով ծառայեա, մինչև 'ի բեր հասանի. և տեսանես զԹուզն՝ արմացք իր: Եւ Թէ առնուս ազգի ազգի Թզի կուտ, և 'ի մէկ տեղ ծրա-րեա 'ի կտաւ և Թաղեա, ծլէ. դու միաւորեցո և ծառ արա, նա 'ի յամէն ազգացն գտանես 'ի յինքն:

Այլ ազգ. եԹէ կամիս որ մէկ Թզի ծառն այլ և այլ ազգ Թուզ բերէ, դու զայդ 'ի պատրոյմն կարես առնել, որ քանի ուզես տերևպատրոյս առնես 'ի Թէ-մուզ ամսոյն ժԷ. և գրած է Թզենւոյն Ճղապատրոյմն. բայց քան զամէնն լաւն այն է որ տերևպատրոյս լինի:

## ԴՈԽՈՆ ՄԻՋ·

### Վասն Նռնենաց:

Գիտելի է որ նռնենւոյն պատրուսելն կարէ յամէն ազգ պատրուսելոյ. և է այսպէս: Գիտ 'ի ծառն զեր-կայն զերկայն բարունակսն և զուժովսն՝ որ իջանել կարեն 'ի գետին, և զայլսն կտրեա և ձգեա. և զայն Ճիւղսն պատրուսեա մօտ 'ի ծայրն, որպէս արժան է, Ճղապատրոյս 'ի յամէն Ճղերուն ծայրսն. և ապա զա-մէն Ճիւղ յիւր դեհին վերայ պատրաստ իջո, և 'ի գե-տինն Թաղեա. և զպատրուսանւոյն ծայրսն 'ի դուրս Թող 'ի հողոյն, սակաւ մի. և զինքն յայն տարին աղէկ ծառայեա, փորելով և ջրով, մինչև աղէկ բռնէ. և յոր-ժամ բռնէ՝ բաց զՃիւղն և կանգնեցո, և զպատրոյսն 'ի ծայրն բռնած սար ծառ[1]: Բայց գիտել պարտ է, զի զնռնեննին որ աղէկ պլպլկէ ու ծիլ հանէ, ապա պատրուսեա, որ բռնէ այս արուեստովս. նոյնպէս և զամենայն նոսր և վատոյժ կեղև ծառ: Զի պատրու-սին գոյացուցիչն մայրանին կեղեն է. երբ կեղեն վա-

1. Շփոթ կամ պակաս ինչ Թուի 'ի բանիդ, կամ աւելորդ. զի 'միւս 00. աւեն համառօտիւ. « Յորժամ բռնէ՝ հան զպատրուսանսերն ի գետնէն և կանգնեցո. բայց գիտել պարտ է », և այլն:

տուժ լինի, նա ճարն այն է, որ հողոյն մարդն զպատրոյն պահէ և գոյացուցանէ՝ որ լինի։

## ԴՈՒՌՆ ՄԻԷ·

*Վասն Ձիթենեաց։*

Գիտելի է, զի ձիթենիքն շատ ցեղք են. զի կայ ձիթենի որ հաստակեղև է, և է որ նօսր, և է որ կանուխ շարժի, և է որ անագան։ Պարտ է զայն ձիթենին որ հաստակեղև լինի, զճղապատրոյն ընդ կեղևն ընդ փայտն 'ի մէջ դնել, առանց ճեղքելոյ. բայց զնօսրակեղևն պարտ է ճեղքել, և զփայտն օգնական առնուլ, զի պահեսցէ։ Եւ մեզ այն որ ճեղքելով պատրուսի՝ լաւ է թուեցեալ, և աւելի քան զայն զոր առանց ճեղքելոյ դնեն։ Նա ևս առաւել պարտ է որ պատրուստղն գիտենայ և ճանաչէ զտարին, անագան է թէ կանուխ. և զտեղին, և թէ ջերմային է թէ ցրտային. և զայս ամենայն 'ի շարժիլն ծառոց կարէ ճանաչել և ապա պատրուսել։ Եւ զորդ ակիզբն պատրուսելոյն այս է, 'ի մարտ ամսոյ ժդ աւուրն 'ի վեր, մինչև 'ի թէմուզ ամսոյն ժե օրն է, որ յայս միջոցս լինի ճղապատրոյն և տերևն և ամենայն ազգ, զոր գրեցաք և զոր գրել կամիմք։ Պարտ է պատրուսողին զժամն ընտրել, և ճանաչել զժամն և զշարժն, և այնու արուեստիւ առնել. և թէ ոչ՝ սխալումն ինչ որ գայ՝ 'ի հակառակացն լինի. այլ դուք գիտէք։ Եւ զվայրի պիղծ պտուղն պատրուսել պարտ է. և երբ 'ի վայրապար տեղ լինի ծառն, և կամենաս 'ի շահ ածել, այսպէս արա. զինքն 'ի տեղն՝ ցած պատրուսեա, և թող յայն տարին. և ապա 'ի մէկայլ տարին հան և քաժանեա, և արա տունկս, որպէս արժան է. և տար ուր կամիս և դիր, որպէս յայլ տեղի տուեալ եմք զնշանսն։

## ԴՈՒՌՆ ՄԻՐ·

*Յաղագս ածու շինելոյ ։*

Արժան է զածուսն 'ի ջրաւէտ վայրս շինել. և թէ հնար ինչ լինի՝ որ մօտ 'ի տուն շինես, լաւն այն է. զի տան հոտն և աղբն և ջերմութիւնն օգուտ է ածուացն, նոյնպէս և գոզ, առնէ տունն[1] և ջեռուցանէ զածուսն։ Եւ չէ պարտ զամենայն տունկսն խառնակ դնել, զի ուժովն յաղթահարէ զվատուժն. այլ զամէն ազգ հետ իւր ազգակցին։ Նոյնպէս և զարձակութիւն տնկոցն ըստ ուժոյ գետնոյն պարտ է առնել, և շուրջանակի պատին արժան է կիպարիք կամ բարտիք տնկել, և 'ի վերայ պատին տոլիք ազգի ազգի տարածել, և 'ի միջոցս ծառոցն երակ երակ անուշահոտ ծաղկունս սերմանել, վարդենի, մանուշակ, զաֆրան, մնփուր,[2] ասպուզան, նոճէս և այլ այսպիսիք. զի տեսութիւնքն և հոտն՝ օգտակարութիւն առնեն տեսողացն. եւ առաւել թէ մեղուք լինին 'ի դրախտին։ Եւ զտունկն ընտրով պարտ է առնուլ 'ի լաւ ազգէ և 'ի բերուիկ տոհմէ, շիտակ և ողորկ։ Եւ արժան է գիտել որ կտաբոյսքն վատուժ են քան զայն որ 'ի ծառոցն խլած լինին, և պատրուսածն՝ քան զամենայն. վասն զի գեղեցկատեսիլ և բազմաբուղխ տայ զպտուղն։

Եւ աստի յառաջ ցուցանելոց եմք թէ զո՛ր ծառ պատեհ է ցանելով առնել, և զո՛ր 'ի ծառոյ, և զո՛ր 'ի պատրուսէ, և ո՛ր չաչ առանց մազմզկի տնկուի։ Եւ տունկքն ազգի ազգի են և հակառակք, որպէս յառաջ ասացաք։ Եւ ոմանք զբիձ մորձերն 'ի տակուցն մազմըզ-

1. Պակասէ և աստ բան. իսկ 'ի միւս 00. չիք այս տող։

2. Միւս 00. մնփուր, անծանօթ 'ի մէնջ, որպէս և այլք ոմանք 'ի յետագայից. բնագիրն չորս միայն յիշէ ծաղկունս, վարդ, շուշան, մանուշակ և քրքում, որ է զաֆրանն։ — Ասպուզանն 'ի հին բժշկարանի արաբերէն Աւշապեոյ կոչի. ոմանց թուեցաւ լինել Լուախոտն, Psyllium. — Նոճէս՝ թէպէտ և յամենայն 00. այսպէս գրի, բայց յայլ գիրս նոյն թուի կոչեցեալն Նոճէս, և է յազգէ Նարգոսից, Սմբուլ-րում ըստ Տաճկաց. որպէս և Հայեցի Սմբուլ (ՃՂ)։

կոճս առնուն և տնկեն. և են ոմանք որ ոստաքանց առնեն զճիւղսն և տնկեն, այս օրինակաւ. որք տնկեն զամենն կուռ 'ի մէկ մաշարայ, և թողուն տարի մի որ աղէկ մագմզուկ առնու. և ապա հանեն տնկեն, այս օրինակաւ. չինեն զփոսն 'ի պարան ըստ տնկոյն չաքուցն, և աղէկաղբ հողով հողցայթեն զփոսն, և ջրով լնուն, և ապա դորդ 'ի յոտն տնկեն. և անպատճառ քար դնեն, և անդ հաստացուցանեն զտունկն, և զհողն կակղած 'ի վերայ բերեն. և չլնուն 'ի լման զփոսն, այլ սակաւ մի թողուն, որ ջուրն անդ ժողովի, և յամէ և զօրացուցանէ զտունկն: Եւ այսմ պարտ է արհական կենալ և հանել. և սուսրով կամ այլ իրօքնշանեա զտունկն թէ յարևելից կողմն յոր դէհ լինի կեցեալ տունկն, կրկին այնպէս դիր. և թէ ոչ՝ նա մեծ սխալումն է: Եւ պարտ է զտնկին զամէն ճիւղսն կտրել և կնդել, բաց 'ի բնածլէն միայն: Բայց լաւն այս է, զոր ոմանք առնեն, որ 'ի բերին ժամն երթան 'ի ծառն և նշանեն զբերուիկ ճիւղն և զդորդն յամէն ծառն, և երբ ժամն գայ՝ զայն կտրեն և տանին, որպէս գրեցաք. ած դնեն տարի մի որ մագմզկէ, և ապա տնկեն, նա շատ պտուղ բերէ:

Եւ որպէս յառաջն խոստացաք ցուցանել զարժանաւորն 'ի տնկոցն, հրնդի [1] և չաչի և մագմզկի, ցուցանեմք: Հրնդի այսոքիկ են լաւ, ընկուզենի, նշենի, կաստանի, դեղձի, դամոնի, սոնոպրի, արմաւենի, կիպարի, կասլայի, և այլ այսպիսիք: Եւ այնոքիկ որ 'ի չաչի ջանջխէ լինին՝ այսոքիկ են. խնձորենի, կեռասենի, մազտաքի, մրտենի, արքայկաղնի, մնձնի, նռանենի, և այլ այսպիսիքս: Բայց լաւն այն է, որ զճիւղն աղուրայ իջուցանես որ մագմզուկ առնու, և ապա կտրես և այսոքիկ մագմզկողքն են: Եւ այնոքիկ որ չաչի չդնուլին՝ այսոքիկ են. թրջնի, նուշայի, թթենի, սերկևիլի, ծիրենի, և այլ այսպիսիքս: Բայց ամենևին լաւն և աղէկն այն է՝ որ յառաջ ած դնես՝ որ պանդրէ և մագմզկէ, և ապա տնկես ուր կամիս:

1. Հունտ, սերմն:

## ԴՈՒՌՆ ՄԻԹ·

*Երբ և որպէս պարտ է դնել զտնկացուն ած՝ ուր պտուղքն:*

Ընդհանրի ժամն՝ լաւն աշունն է, որ այսպէս առնես. շինեա խորու զփոսերն յիրերաց հեռի 'ի զատ կանգ-նաչափ մի, և արա զխորութիւնն կանգուն մի. և դիր զտնկացուսն չոշ 'ի ձղէ բոլոր շուրջանակի փոսոյն, և ած աղէկ աղբախառն կակուղ հող 'ի վերայ, և մի 'ի լման լնուր զփոսն. թող սակաւ մի, որ զջուրն արգե-լու 'ի ներքս: Եւ այս նշանօքս ջրեա և ծառայեա փո-րելոյ մինչև 'ի մէկայլ տարին, և տես աղէկ՝ որ մազմրզ-կէ. ապա հանես որ ոչ հողն յուրմէ թափի և ոչ տակ-ուիձքն կտրին. այնպէս նշանելով զարևելեան կոյսն, որպէս յառաջն ասացաք: Եւ տնկեա 'ի պարտէն որպէս կամիս նոյն հողովն, և սակաւացո զճիւղսն և զտերևսն հան:

## ԴՈՒՌՆ ՄԼ·

*Երբ և որպէս զմեծ ծառսն տարափոխես և տնկես 'ի տեղւոյ տեղիս:*

Կնդեա զծառն 'ի ձղոցն, և արա փոս ուր կամիս զինքն տնկել՝ տակուշին չափօքն, 'ի խորութիւն այն չափովն՝ որպէս յիւր տեղին լինի կացեալ. և նշանեա զարևելեան կոյսն, որպէս գրեալ եմք, և ապա հան աղջ մազմզկովն: Եւ երբ հանես՝ ջուր սար կալ, և ցանելով թաց զտակուիշսն, և տար այն կերպիւ տնկեա ղորդ 'ի փոսն, և ղորդեա զարևելեան կոյսն յարևելս. և զա-րևմտեանն յարևմուտս, և զհարաւայինն և զհիւսիսա-յինն, որպէս յիւր տեղւոջն մնեալ է. և աղէկ աղբա-խառն հողով ծածկեա և ջրեա և ծառայեա, որպէս արժան է: Եւ այսպէս ջրեա. ա՛ռ երկայն փողրակ կամ երկայն ձառայ, այնպէս որ տակուցն հաւասար լինի խորութիւնն. և զմէկն 'ի մէկ դիհն թաղեա, և զմիւսն 'ի մէկայլն. և ընդ այն 'ի վայր ջրեա, որ ներքսագոյն մազմզկացն ծառայէ ջուրն, և չծառայէ երեսաց գետ-

նոյն. և ստէպ ընդ այն 'ի վայր լից զջուրն, և ապա զգերանն պինտ խծկեա քթեթով, որ առ 'ի վայր չնա-նի: Եւ թէ այն որ ջրելն երաշտ. լինի և երեսքն, զտակմն ևս ջրեա, և սակաւ մի փոս թժղ որ ջուրն հանգչի, մինչև գոյանայ ծառն: Եւ այս է սահմանն և զորդ տնկելն մեծ ծառոցդ, 'ի ձմեռնամտէն մինչև Ցինունքն, որ Բազմաստղն անկանի, 'ի դեկտեմբերի ժա̄ օրն: Եւ այս այսքան:

## ԴՈՒՌՆ ՄԼԱ.

*Երէ որդեա տանի որք զտունկսն և զսերմն 'ի հեռագոյն տեղաց բերեն, որ դիմանայ և չառերի:*

Առ զտունկն նոյն հողովն, և դիր յաման 'ի քուրձ, և աղէկ ջրեա որ թանուի. և ապա առ հոռոմ ձիթի տուրտին, և ջրխառնեա ջրով. և այնպէս արա որ յամէն տնկի մազմզուկ մթխալ մի հասանի, նա այլ չթողու որ ուերի: Եւ թէ կամիս որ որդն կամ այլ կերիչ չմերձենայ 'ի պտուղն, կամ զծառին տակմն ուտէ և չորացուցանէ, դու փորեա զտակմն և սրբեա, և գիտ զորդնհարն 'ի մէջ տակուցն. և առ խոխպիտն կակուղ ձիւթ, և օծ. և առ աղէկ գէր մարխ և շինեա ցից, և օծ ձիւթովդ, և զարկ 'ի յորդնծակերն պինտ քարով. և առ աղ..... [1] տերև և նռան կեղև չոր, և խառնեա 'ի ջուր, և այնու աղէկ ջրեա զտակմն որ խմէ և ապա ծածկեա: Եւ այս է դեղն ամէն որդնհարի ամենայն ազգ տնկոցն, նոյնպէս և այգեաց՝ որ այսպէս առնես: Եւ են ոմանք որք երբ կամենան զտունկն տնկել, նա զմազմզկին ծայրմն որ կտրած լինին՝ պախրէի լեղեաւ օծանեն. այլ որդն զայն ծառն չուտէ: Եւ են որք փորեն և բանան զծառին տակմն. և գտանեն զձիձուոյ ծակտին, և ապա առնուն պղնձեայ հերուն, և այնու փորտըկեն և սպանանեն զձիձիւն. և առնուն կու պախրէի և պտղի ձիթի տուրտին և մարդոյ հին գօղ, և օծանեն զկերած տեղին և զտակմն, նա ողջանայ:

1. Դատարկ թողեալ է տեղիդ. բայց յայլ ՕՕ. չիք և փէշի բառն, որով միաձև գրի, «աղ և նռան կեղև». և այլն:

Եւ ծառ՝ որ 'ի գոյութիւն չբերէ զպտուղն՝ դեղն այս է. բաց զտակսն և սրբեա, և զմանր մազմզուկսն որ թնջկռեալ լինին 'ի տակսն, հան ձգեա. և զհաստերն թող, և առ դուր և ձեղքեա զհաստ մազմըզուկսն, և քար մի 'ի ձեղքածն դիր, և 'ի տեղն թող զքարն. և դարձեալ ծածկեա. և թէ քար չգտնես՝ կաղնի կամ ընկուզի երեթ շինեա և քշտեա, այլ աղէկ, այլ ևս չծորեցուցանէ զպտուղն, որքան խլիմ տայ և 'ի շահ ածէ զբերն աղէկ՝ որպէս և կամիս:

Եւ ծառ՝ որ զճիւղն չարձակէ ուժով՝ ոչ է առողջ, վասն իրեք պատճառի, դեղն այս է. առ իշոյ աղբ, և գետի ջրով հարեա զինքն աղէկ. և թող որ թրջի աղբն, և աղէկ միաւորի և տրորի ընդ ջրոյն. և բաց զտակսն սակաւ մի խորու, և շուրջանակի լից 'ի վաղվըննէ առաւօտուն. և թէ ամառն լինի և տօթ, զհողն 'ի վերայ ած ըստ չափուն, և որթոտով ծածկեա զտակսըն, որ արևն զոյժն չառնու. և թէ զոչխարաց աղբ ևս առնես՝ լինի:

## ԴՈՒՌՆ ՄԼԲ·

*Վասն ծառոյ՝ որ պատճառաւ իւիք կեղևն գանի:*

Դեղն այս է. առ ձիւթ և խայզան, և այծու ճծ, եռացո ընդ իրեար. մրջիմն այլ չմերձենայ և փրկի:

## ԴՈՒՌՆ ՄԼԳ·

*Վասն ծառոց որ հոսեն ցանես:*

Առ զմիրգն և 'ի շըքի չորացո. և երբ չորանայ՝ կըրակաց մոխրով մնշեա. և ապա փորեա զտեղին մաշարայ մի աղէկ և կուռ 'ի փորուն՝ թիզ մի, և թէ թրջես երկու օր պաղ ջրով և ապա ցանես՝ լաւն այն է: Եւ թէ ընկուզ լինի կամ նուշ՝ յիրերաց արձակ դիր քիչ մի, կամ այլ պակաս. և թէ մանր իրք լինի զերդ սոնոպար կամ կեռասի կուտ՝ կուռ և թանձր ցանեա. զի քանի թանձր ցանես, այքենի լինի և աղուոր ելանէ: Ցանեա և ծառայեա երկու երեք տարի. և ապա հա՛ն տնկեա

ուր կամիս. որպէս զնշանն տուաք. և ընացրցեա՝ որ հաստատի ծառն։ Եւ զայս գիտել պարտ է, որ ամենայն ծառ պտղաբեր 'ի սերմանէ՝ զիւր նմանն բերէ, բայց միայն 'ի ձիթենի ծառէն. որ երբ 'ի կտէ բուսանի, նա անհնար վայրի բուսանի. և զայն պատրուսել պարտ է։

## ԴՈՒՌՆ ՄԼԴ·

*Վասն թէ յորժամ պարտ է հոտել և սրբել զծառսն։*

Պարտ է հանապազ սուր հօտոցով կտրել զմատղաշ տնկին զգօս և զհին ճղերն. և զտարւոյն մէկ ուռն միայն թողուլ, և զայն ստածել և ծառայել, մինչև բարձրանայ երկչափ մի. և ապա զճիւղսն թող որ 'ի չորեք կողմանց արձակէ, և զճիւղսն բոլոր ձգէ. և յայնժամ բոլորութեամբն [1] պարտ է որ արիական կենաս, զի ծառն 'ի մատղաշուց 'ի վեր բոլոր գայցէ։ Եւ այդ այդքան։

## ԴՈՒՌՆ ՄԼԵ·

*Վասն դեղոյ ամենայն ազգ ծառոց և տնկոց որ պահէ զինքն յամենայն պատահարաց և առանել որ 'ի տակոյցն գայ:*

Ա՛ռ մարդկան գօղ և հնացո, և բաց զտակն ծառին և լից յիւրմէ, որ աղէկ թայուրին տակքն. և կրկին ծածկեա հողով։

## ԴՈՒՌՆ ՄԼԶ·

*Վասն դեղոյ Նռնենեաց որ լաւ պտղաբերեն։*

Եւ թէ ուզես որ նուռն կուտ չունենայ և կարմիր լինի, և չպատառի, և դիմացուցանէ, և կանաչ պահէ մինչև 'ի գարունն. և թէ վատ է ծառն՝ որպէս լաւացուցանես. թէ կամիս զթթուն քաղցր առնես։ Մեք

1. Ի ժամանակի բոլորութեանն։ Բայց 'ի միւս ՕՕ չէք բառս այս։

գրեցաք զտնկոց որպիսութիւնսն. բայց պարտ է գիտել, զի նռնենւոյն պատուականագոյն է և արհեստիւ քան զամենայն ցեղիցդ։ Եւ գիտելի է, զի նռնենին զսպիտակ հողն և զանջրդին ընդունի։ Եւ թէ ուզես որ նուռն 'ի մէջ հատոյն կուտ չունենայ, դու այնպէս արա որպէս զխաղողին նշանսն տուաք։ Ճեղքեա, և զսրտուկն հանն 'ի վայր մօտ 'ի հողն, և կրկին կապեա, և մկնտոխ մի 'ի յինքն հագի, և հողով ծածկեա. նա բեր զոր առնու՝ անկուտ լինի։ Եւ երբ տեսանես որ ճեղքածին ներքև աղէկ մազմզուկ առնու, դու փորեա և բաց. և ճեղքածին և մազմզկին ներքև կտրեա, և տար այլ ուրեք տնկեա ուր կամիս։ Եւ կարես այսու զամենայն դրախտս այնպէս առնել՝ որ կուտ չլինի. բայց երբ տնկես՝ խոզերու աղբ ած 'ի տակն, և ութ օր զինքն աղէկ ջրեա, և երեք տարի այս աղբովըս և ջրովս ծառայեա նմա. և տեսանես արմացք։ Եւ զայս զոր գրեցաք՝ յամառն պարտ է առնել։ Եւ թէ ուզես որ հատն կարմիր լինի, դու բաղամնեաց կրակի մոխիր բաց, և ած 'ի տակն, կարմիր լինի։ Եւ թէ ուզես որ ծառն բերրուիկ լինի, գլխիվայր տնկեա ըղտունկն։ Եւ թէ ուզես որ նուռն չպատառի, բաց ըղտակն, և ծովու խիճ լից 'ի վերայ տակուցն, և հողով ծածկեա զնոր տունկն 'ի տնկելն. այսպէս արա, երբ 'ի բեր գայ, ոչ ճեղքէ զբերն։ Եւ թէ առհասարակ զամէն տունկն յառաջ 'ի մկնտոխն ցրցես և այնու տնկես՝ խիստ արքենի լինի, և չտայ բերին պատառել։ Եւ թէ ուզես որ նուռն 'ի ծառն մնայ մինչև 'ի գարունն, նա ճիւղ մի 'ի ծառէն՝ յորում կայցեն նռունքն առողջ և հասուն, և բռնեա երկու ձեռօքդ և բերին վերև պինտ ոլորեա զճիւղն, այնպէս՝ որ ճըլխմի և աղէկ ոլորն 'ի վերայ անցանէ, և այդպէս թող, որ ոլորն 'ի տեղն մնայ. և ծածք կամ հնար արա՝ որ անձրևն չհասանի յինքն, և թող. մինչև 'ի գարունն ամբողջ մնայ։ Եւ թէ նռան կեղևն հաստ լինի, առ զայն խոտն զոր ծովն 'ի դուրս ձգէ, և բաց զտակն և 'ի յաղքի տեղ զհողն 'ի վերայ բեր, զկեղևն նօսրացուցանէ. բայց ժե օր ջրելոյ արխական կայց։ Եւ թէ զծաղիկն աւելի թափէ, արճըճի աղտ ած 'ի տակն, արգելու։ Եւ թէ զտերևն թափեսցէ, բաց զտակն և

դիտ զանօտակուրիճն, որ քան զամենայն հաստ լինի, և հաստ գայլրկոնով խաչք անցո և ծակեա. և չոր ձիթենւոյ ցից շինեա և 'ի ներքս անցո, և պինտ զարկ վըռով 'ի ներքս. դեղն այս է. և զհողն 'ի վերայ տար։

Եւ թէ ուզես որ թթուն քաղցր լինի, բեր հեռ դետնին ծածկեա, նոյնպէս որպէս զվերինն. և զցիցն դեր մարխ արա, սոնոպրի, և պինտ զարկ 'ի ծակն. քաղցրանայ։ Ախլօթօրխոս [1] իմաստասէրն ասաց, թէ բնաւին լաւ դեղն այս է քաղցրացուցանելոյն զթթուն, որ բանան զտակսն և խոզից աղբով ծածկեն. այդ է դեղն։

Եւ թէ ուզես որ բնաւ մրջիմն 'ի քո ծառն չելանէ, առ սուստ և պտղի ձէթ յիրեար խառնեա, և զծառին բազուկն բոլոր օծ, որպէս ապրանջան. այլ չելանէ մրջիմն։

Եւ թէ ուզես որ աղէկ բեր առնու և 'ի շահ ածէ, 'ի ծաղիկն և 'ի բերառքն՝ բաց զտակն, և յարդի մըռեղ լից 'ի տակն, յառաջ ընդ հողոյն խառնեա, որ միաւորին մռեղն և հողն, և այնու ծածկեա, օգտէ. նոյնպէս և բակլայի և ոսպան. և ամենայն յարդ օգտակար է ծառոցն, փորձով, որ յաղբի տեղ լնուս 'ի տակսն։ Եւ թէ 'ի ցուրտ տեղի լինի, և առնուս զձիթենն տուրտինն և յաղբն խառնես, և բանաս զտակսն և 'ի վերայ ածես և հողով ծածկես, արքինի լինի ծառն, և աղէկ պահուի 'ի պատահարաց։

Եւ թէ ուզես որ շատ պտուղ առնեն ծառքն, առ զգառնադմակիկն, ծեծեա, և բաց զտակսն, և այնու աղէկ օծ զծառին տակն և լից. նա շատ բեր առնէ։ Եւ այլ. խոտ մի կայ որ հոռմերէն Ալօսխօմօս ասեն, որ թարգմանի շատահնդիկ [2], թրջեա այդ խոտիդ ջրովն զծառոցն կուտսն, և ապա ցանեա. նա ծառ որ 'ի բեր գայ՝ շատ բեր առնէ։ Եւ ծառ որ աստղահար լինէ, բաց զտակսն, և իշոյ գող ած 'ի վերայ, և ծած-

1. Անծանօթ է այդպիսի անհեթեթ անուն։

2. Իմա շատահնդիկ, որպէս գրեն միւս 00. իսկ յունականին ընթեռնլի է Ὁλόσχοινος (Օլոսխինոս), որ թարգմանի՝ շատակնեան կամ ամենակնեան, զի է յօդուէ կնիւնոյ և պրտուէ։

կեա․ ողջանայ։ Նոյնպէս և թէ այգւոյ առնես՝ որ աստղահար եղեալ իցէ, օգտէ։ Եւ թէ զծովուն խոտն առնուս և խառնես ընդ խոզից աղբին, և ընուս 'ի մագմրզուկսն, օգտէ։ Եւ զհնացեալ մարդոյ գոզն՝ զոր յառաջ գրեցաք, մի մոռանար՝ զի յամէն ծառի տակ, մանաւանդ 'ի նռնենւոյն, ընդ խոզից աղբին կամ ընդ մարդոյ խառնեալ՝ աճցես։ Եւ հինքն ճշմարտեալ են, որ երբ զայս առնեն՝ նա զամէն ժժմանց պատահարս անցուցանէ, և այլ չտայ մերձենալ 'ի ծառս։

## ԴՈՒՌՆ ՄԼԷ․

*վասն որ զլեղի Նշենին քաղցրացուցանես։*

Գիտելի է որ նշենին զփաղ և զնօսր գետինն ընդունի․ զծառին բազուկն ցած ծակեա չորեքկոյս, յերկայն զերդ թիզ մի, և թձղ․ նա պիտի որ լեղուութեան ջուրն ընդ այն ծակն 'ի վայր քամի 'ի սրտէն, և ծառն քաղցրանայ և նուշն։ Ձծիրանն ևս այսպէս արա, որ կուտն քաղցրանայ։ Եւ այլք զտակն բանան մինչև 'ի վայր շուրջանակի, և մարդոյ գոզ և խոզից աղբ յիրեար խառնեալ՝ 'ի տակսն լնուն, և զհողն 'ի վերայ բերեն․ քաղցրանայ նուշն։ Եւ գիտելի է որ նշենի ծառին բնութիւնն այս է․ զինքն 'ի վերայ տակին կտրես և նոր ուռ բողբոջէ և ծառ շինես, պիտի որ զիւր բնութիւնն փոխէ և զբերն․ և լինի որ լեղին քաղցր դառնայ։ Տես թէ ծառքն գոսացեալ լինին և հնացեալ․ կտրեա և նորեա, նա լաւանայ․ և թէ ոչ՝ նա ճար պատրուս[1] է։ Եւ տես, թէ կեղևն նշին հաստ լինի, և ուզես որ նօսրանայ, դու բաց զտակսն 'ի ծաղկին ժամն, և անոյշ տաք ջրով ջրեա 'ի շաբաթն երկու երեք հետ, մինչև ծաղկաթափի․ նօսրանայ կեղևն և լաւանայ։ Եւ թէ բեր չառնէ, որպէս յառաջ եմք գրեալ, զընահաստ տակն ծակեա գայլիկոնով, և 'ի սոնոպրի մարխէ ցից զարկ վառով 'ի ներքս, և մարդոյ գոզ ած 'ի վերայ, և ծածկեա, նա արքենի առնէ ըզբերն։ Եւ գիտելի է որ զնշենւոյն պատրոյսն երբ առ-

1․ Յոր․ պատրուակն է։

նուլ կամենաս, 'ի ծայրիցն մի առնուր, 'ի ծագոյն առ և 'ի միջէն. և իւր պատուաստելոյն ժամն՝ աշնան վերջին ամիսն է փորձով։ Եւ թէ ուզես շինել աղուոր իր որ երբ զնուշն կտորես, նա 'ի վերայ միջին զերդ գրեր լինի, կտորեա զնուշն պատրաստ, և առ զմիջուկն անարատ. և գրեա 'ի վերայ միջին զոր ինչ կամիս, և զինքն պինտ կաւով պատեա յիւր կեղևին տեղն, և թաղեա յաղէկ տեղի. և սակաւ մի խոզի աղբ ած 'ի վերայ, և ծածկեա, և թող որ բուսանի և ծառ լինի. նա զիւր նոր նուշն որ առնէ՝ նոյն գրովն լինի։

## ԴՈՒՌՆ ՄԼԸ·

*Վասն Արքակաղնեաց:*

Ո՛ւր ցանեն՝ զերդ այլոցդ է. բայց ինքն զապխտակ հողն և զկակուղն և զշատ ջուրն սիրէ։ Եւ իւր տնկելոյն նշանն է՝ որ արձակ փոս առնես և պարան. և ըզբերուիկ ձիւղն չաչեր առնես, և շուրջանակի փոսերոյն շարես. և ապա զհողն 'ի վերայ ածես, և փոս թող, որ ջուրն 'ի ներքս հանգչի. և այսպէս արա զամէն դրախտն 'ի պարան. զի ինքն ծառ չսիրէ լինել՝ քան թուփ բազմաձիւղ։

## ԴՈՒՌՆ ՄԼԹ·

*Վասն Սոնոպրի։*

Զցանեալն՝ տեսս որ խանձած [1] չլինի հանած, որպէս գրեալ եմք. կոյս տղայոց գոզով թրջեա հինգ օր, և ցանեա յաշնան յետի ամիսն, յաւազուտ գետինն։

1. Թուի ծիլ կամ ընձիւղ իմանալ աստ զխանձածն։

## ԴՈՒՌՆ ՄԽ·

*վասն կաստանայի:*

*Զկաստանային ցանեն զերդ այլոցդ ալրա, որպէս գրեալ եմք. և ինքն զնօսր գետինն սիրէ և զբարձրաւանդակն. և թէ ուրուք տեղին ցած լինի, նա զգետեզերսն ախորժէ և զաւազուտն, զհովային և զձիւնամեծ լերինսն: Եւ իւր տունկն մազմզկով սիրէ տընկել. և ինքն շուտ գայ 'ի բեր քան զայլ ծառերդ. և 'ի գարնան դուռն երբ շարժի, ախորժայ տնկել: Եւ ինքդ տունկ առանց մազմզկի բնաւ չբռնէ, ցանելով է իւր ճարն, այս խրատովս: Ա՛ռ զկաստանայն իւր դրուցի բուճուճովն, որ զերդ ողնի է, և լից զինքն 'ի մութն տուն, և ներքև և վերև՝ գետի աւազ լից. և զինքն յաւազն թաղեա. և յամէն ամիս հետ մի զաւազդ փոխեա մինչև 'ի գարունն. և ապա հա՛ն և լից 'ի ջուր. և տե՛ս. այնոքիկ որք 'ի վերայ գան՝ նա աւեր են նոքա, ձգեա. և որք յատակն իջանեն՝ աղէկ են, զայնոսիկ դի՛ր. և այսպէս դի՛ր 'ի տուն որ ցամաքի 'ի ջուրքն. և փոսեր արա 'ի մաշարայ, խորու թիզ մի. և մի՛ զծայրն ծլին սուր դիպան 'ի վեր դներ, որպէս նուշ կամ ընկոյզ, այլ զծլին սուր ծայրն 'ի վայր արա, և զոռքն 'ի վեր. և գետի աւազ չափ մի 'ի վերայ և ապա զհողն: Եւ թո՛ղ որ բուսանի և մեծանայ երկու երեք տարի. և ապա 'ի շարժն հա՛ն և տնկեա, ուր կամիս: Բայց քիչ ուրդի որ բռնէ՝ թէ հանես. ապա իւր սահմանն այն է, որ զինքն 'ի տեղին ստածես և հօտես և մեծացուցանես:*

## ԴՈՒՌՆ ՄԽԱ·

*վասն Փստուխաց:*

*Ա՛ռ Փստուխ իւր դրուցի կեղևովն, որ չլինի հանած, զանարատսն և զամբողջսն. և տնկեա զինքն որպէս զայլ խեճեպային հնտանքն սահմանեալ և գրեալ եմք. և սորա սահմանն այս է:*

## ԴՈՒՌՆ ՄԽԲ.

*Ցաղագս Տանձի։*

*Տանձն...[1] և զգիշերային վայրսն ընդունի և խոնչ ցեղ. որ ինքն շատ ազգեր է՝ և իւր տնկելն և սերմանելն բազում ազգ են։ Եւ իւր տնկելն պիտի յառաջ քան զձմռան միջին ամիսն յայնպիսի տեղիս՝ ուր արևելցի հողմն և հարաւոյն՝ հանապազ որքան շարժին՝ դիպին յինքն և մնուցանեն։ Եւ թէ երկու տարւոյ հինայով ձիւղ տնկես, լինի որ բռնէ։ Եւ երբ տնկես՝ աղբախառն հող ած 'ի վերայ. բայց լաւն մազմզկոտն է, թէ գտանես։ Նոյնպէս և պատրոյսն անսղալ է և բերուիկ և շոյտ։ Եւ թէ ուզես որ տանձն քաղցր գայ և շատ, նա դու որպէս գրեալ եմք, ծակեա զծառին բազուկն վերև կողմն. և կաղնի ցից զարկ խաչք պինտ վռով, որքան կարես, և թող 'ի տեղն. դեղն այդ է։ Եւ թէ յիմեքէ պատճառէ թափէ զծաղիկն կամ զբերն, առ զինեմրուր, և փորեա զտակսն ծառին, և լից 'ի վերայ տակուցն ճե գիշեր զհետ իրերաց. և այդ է դեղն։ Եւ զինչ ցեղ և իցէ ծառն՝ և զմրուրդ ընուս, զտանձն քաղցրացուցանէ։ Եւ թէ առնուս զպախրէի լեղին, և բոլոր զծառին հաստ տակռիճն բանաս և օծանես, այլ ճիճի չմնակի, և ողջանայ ծառն։ Եւ թէ փորես, զքարինսն 'ի ծառին տակուցն հանես, և մաղած աղբահող ածես 'ի տակսն, և ծածկես, տանձն քար չունենայ, և ջրով լինի և անոյշ. բայց 'ի վերայ այլէկ ջրեա։*

## ԴՈՒՌՆ ՄԽԳ.

*Վասն Թրնչնաց :*

*ԶԹրնջին յաշնանէն 'ի վեր մինչև 'ի գարնանամուտն կարես, երբ քեզ պիտի, տնկել. և իւրեանս մնուցիչն և գոյացուցիչն պարխրցի հողմն է, և այտով կու տիրէ*

1. Այլ ՕՕ. *անընդմէջ գրեն. Տանձն՝ զգիշերայինն, և այլն։*

այլ ծառոց. զի այլ ծառքդ զհարաւն սիրեն։ Եւ ոմանք որ կամենան զթրնջանին մեծ առնել, նա դեղն այս է. որ թեթեւացուցանեն զճիւղսն, և զաւելի պտուղսն 'ի վայր տան և զարքինի թրջանին մէն թողուն, նոյնպէս և զաւելի տերևսն. նա մեծ լինին և աղէկ։ Եւ զդեղձին ևս այսպէս պարտ է առնել։ Եւ զթրնջին չէ պարտ տնկել, եթէ ոչ մօտ 'ի պատ և 'ի պարիսպ. և 'ի ձմեռն ծածկել պարտ է այս օրինակաւս. Հա՛ն զդդմոցն[1] տակօքն, և 'ի թրնջի ծառն փաթաթեա նոյն տերևօքն, նա պահէ զինքն 'ի ցրտոյն. նոյնպէս և զլիմոնին. և թէ խսիրով պատես՝ լինի. բայց դդմենին ստոյգ պահէ 'ի ցրտոյն զծառն։ Եւ թէ այրէ ոք զդդմենւոյն փայտն, և զտակն և զմոխիրն 'ի տակն լնու, եղեման վնաս չտայ առնել, և յամենայն կողմանց օգտէ ծառին և հաստացուցանէ և թորթոշեցուցանէ զինքն։ Եւ թրնջիդ չընդունի զօտար պատրոյս քան թուրինջ միայն. և իւր պատրուսեն զերդ այգւոյ է։ Եւ թէ ուզես որ թուրինջն ամբողջ մնայ 'ի ծառն, բռով շաղախ արա և զթուրինջին բոլորն պատէ[2], և թող որ չորանայ 'ի վերայն. ամբողջ մնայ որքան կամիս։

## ԴՈՒՌՆ ՄԽԴ.

### Վասն խնձորի։

Զխնձորին տնկելն և զպատրուսելն՝ իբրև զտանձին արա և ինքն զհովայինն և զսևակ գետինն ընդունի։ Եւ թէ ոք զմկնսուխն շուրջանակի տակուցն տնկէ, ճիճեկեր բնաւ չտայ լինել, և ոչ թողու որ բնակի յինքն. նոյնպէս և զխոզից աղբն՝ մարդոյ կողով թրջեա, և 'ի վերայ ճիճեհար ծառին տակուցն բաց և ած. զինչ և իցէ ծառ՝ զճիճին սպանանէ և չտայ այլ մերձենալ։ Եւ գողդ երբ 'ի տակն ածես, ամենևին օգտակար է, և արքինացուցանէ զամէն ազգ ծառ և զպր֊

1. Միւս ՕՕ. ըըռոյ։
2. Յօր. պակաս էր և գրեալ այսպէս. « զթուրինջն .... օրեր ». եդաք ըստ միւսոյն։

տուղ, եւ առաւել խնձորին բերկրի քան զամէն ծառ 'ի գողէն։ Են ոմանք որ ոչխարաց աղբ խառնեն 'ի գողն և ածեն, բայց խողիցն լաւ է։

Եւ թէ ուզես որ խնձորն քաղցր լինի, քաղցր գինւոյ մրուր ած 'ի տակսն՝ 'ի շարժն, երբ կամենայ ծաղկել, նա զծաղիկն արգիլէ և քաղցր առնէ զխնձորն։ Եւ թէ ուզես որ կարմիր լինի, ցրցեր զմրկ շուրջանակի ծառին՝ արձակ, և զճիւղսն նոյն խնձորոյն իջո և 'ի ճիւղն կապեա, որ 'ի վերայ գետնին ցածանայ, և ներքև փոսեր արա. և երբ 'ի խայծ լինի խնձորն՝ ջուր լից 'ի փոսերն. նա դիպի արևն 'ի ջուր, և ծուխ հանէ, և այն ծուխն որ 'ի խնձորն հասանի՝ կարմրացուցանէ զխնձորն։ Եւ թէ բնութեամբ ուզես որ կարմիր լինի, 'ի մաթզի ծառի տակն պատրուսեա զխնձորենին, նա լինի խնձորն կարմիր և քաղցր։ Եւ խնձորենի որ պատճառանօք իմն թառամի, դեղն այս է. որ ոչխարի աղբ թրջես ջրով և յարևմարքն զտակսն աղէկ խմեցուցանես, և խունկ ծխես վեց օր զհետ իրերաց։ Եւ թէ արճճեայ գոտի չինես և ծառին կապես, զերդ երկու թիզ հողոյն վերև, շատ խնձոր տայ առնել և 'ի պինդ ունենալ։ Եւ երբ խնձորն 'ի հաստ գայ [1], հան և պահեա զգօտին մինչև 'ի մէկայլ տարին, և 'ի ծաղկին ժամն կրկին դիր. դեղն այդ է։ Եւ թէ ուզես որ խնձորն չնեխի և թրթուր յինքն չմերձենայ, էրէ մի կայ՝ որ իւր անունն սարու [2] ասեն, զտակաւիճն՝ նորա լեղեաւն օծ։

## ԴՈՒՌՆ ՄԽԵ.

վասն Սերկևիլի, Դամոնի, Կեռասի և Սնձնաց, որ է ալոճն։

Այսուքիկ առ հասարակ զտնկումն միապէս զերդ տանձն և խնձորն ունին, զի համաձայնք են միմեանց։ Բայց միայն 'ի սերկևիլէն, որ այլ աղէկ տեղի ախոր-

1. Բնագիրն ասէ, յորժամ ծաղկի խնձորին։ — Միւս 00. 'ի հաս գայ։
2. Յոյնն Σαύρος χλωρός որ է մողէզ կանաչ, կամ կովադիայ։

ժայ։ Եւ կեռասենին բնաւին զգէջ և զհով տեղիսն ընդունի։ Եւ թէ ուզես 'ի սոցանէ որ լաւ պտուղ առնուս, նա դեղն այն է, որ զիւրեանքն անհնար աղէկ պատրուսես։ Եւ թէ առնուս սև խաղողի պատրոյս, և պատրուսես 'ի սև կեռասենւոյն բազուկն, նա բերէ խաղող, և այնպէս կանուխ հասուցանէ՝ զերդ զկեռասն։ Եւ թէ առնուս կաւ և շինես երկու փերթ, և նկարես որ[1] փորելով 'ի ներքուստ յերկու դիհաց, և առնուս զթուրինջն՝ երբ դեռ փոքր է, և 'ի մէջն դընես և կապես, նա պտուղն մեծանայ. և զմատնեհար նկարումն[2] 'ի յինքն առնու զինչ ի կաւն նկարեալ իցէ. և ով տեսանէ՝ զարմանայ։

Զկեռասն 'ի մէջ փարչին լնուս 'ի վերայն զմեղր լընուս, դիմանայ մինչև յերեսուն օր. թէ ուզես ա՛ռ, յոտար երկիր տա՛ր։

## ԴՈՒՌՆ ՄԽՁ։

*Վասն Դեղձենեաց, թէ ո՛րպէս առնես որ մեծ լինի և ջրով և անկուրդ՝ Դեղձն:*

Զգիջային տեղ սիրէ դեղձենին, և սակաւ ջրել ուզէ։ Են ոմանք որ սակաւացուցանեն զճիւղսն և զբերն, նա սակաւն մեծ լինի։ Եւ իւր կուտն այսպէս ցանուի. որ 'ի դեղձէն սակաւ մի 'ի վերայ կլտին թողուս։ Եւ թէ ներքև դեղձենւոյն և խնձորենւոյն կարմիր վարդենիք տնկեն, նա դեղձն և խնձորն կարմիր լինին։ Եւ դեղձենին բնութեամբ վատուժ է և անցուկ. բայց որ զինքն 'ի դամոնի կամ 'ի նշենի պատրուսէ, նա խիստ աղէկ է, և մնացական լինի ծառն, և անոյշ պտուղն։ Եւ փորձած է, որ երբ պտուղ ունենայ, նա 'ի կլտին տեղն դամոն ընծայի, և 'ի դրուցէ դեղձ։ Եւ թէ ուզես որ դեղձն 'ի յիւր ծառն առանց կլտի լինի, դու ա՛ռ 'ի յամուր փայտէ և սրեա երիթ և 'ի բունն զա՛րկ, որ զորտուկն ձեղքէ և հանէ. և զե-

1. Աւելորդ է որ, կամ պակասի ինչ. միւս 00. չունին բնաւ։
2. Մատամբ իբրև կնքով դրոշմեալ և նկարեալ։

բիԹն 'ի տեղն Թմղ, և հողով աղբախառն ծածկեա և Թմղ. նա դեղձն անկուտ լինի ։

## ԴՈՒՌՆ ՄԽԷ.

### Վասն Արմաւենեաց :

Փոս արա խորու կանգուն ու կէս, և 'ի լայնուԹիւն նոյնպէս. և աղբախառն հող լից 'ի ներքս, որ ընուի կէսն փոսոյն. և առ կուտ արմաւի, և զոտքն 'ի վայր արա և զծայրն 'ի վեր. և յամէն փոսոյն յատակն ցըր-ցեա մէկ զհետ մէկի, խիստ մօտ 'ի յիրեար, որ ընուի փոսդ. և ապա առ աղ և խառնեա 'ի հողն աւ մի մանր, որ շաղղի յիրեար, զի արմաւենին զաղտաղ-տուկ հողն սիրէ և 'ի վերայ ած, և զփոսն լից, և այ-գւոյ հօտով ծածկեա, մինչև բուսանի որ ծլէ. և ապա զհօտն 'ի հետ ձգեա և ծառայեա, որ ծիլն չկոտրի, և ստէպ ջրեա ։ Եւ են ոմանք որք հանեն անտի և տա-նին յաղտաղտուկ տեղի տնկեն. և Թէ աղտաղտուկ չլինի՝ անպատճառ աղ պարտ է խառնել 'ի հողն. զի ինքն զայն ախորժայ ։ Եւ պարտ է յամէն տարի զտա-կըն փորել և աղ ցանել 'ի վերայ, նա արքինացուցա-նէ զինքն և շիտ պտղաբեր առնէ ։ Եւ Թէ անոյշ գի-նեմրուր ածես 'ի տակն՝ շատ օգտէ. և պատրաստ կա՛ց որ քացախ չլինի, Թէ ոչ՝ աւերէ ։ Եւ Թէ առնու-ոք զիւր ծլին կեղևն, որ մօտ 'ի ծաղիկն լինի կեցեալ՝ զործուն, և 'ի յէգ արմաւենի ծառն կախէ, նա լաւ և քաղցրահամ պտուղ առնէ և չտայ Թափել. նոյն-պէս և Թէ յաղէկ Թզենւոյն կտրես ճիւղ և 'ի յայն Թզենին կախես որ զպտուղն Թափէ՝ օգտէ ։

## ԴՈՒՌՆ ՄԽԸ.

### Վասն Հաւպալասեաց ։

Մրտենին փորձով օգտակարուԹիւն ունի շինու-Թեան. զի հոտն և փոԹոԹուԹիւնն՝ զհաւասն առ-նու, և բերէ 'ի շինուԹիւն. օգտակար է բնակչացն. վասն այսորիկ պարտ է զմրտենին 'ի շուրջ շինու-

Թեանցն տնկել. և ուր տնկելն՝ Խոյն, Խեցգետինն, Կշիռն, Այծեղջիւրն, որք շարժականք են. Ցուլն, Առիւծն, Կարիճն, Ջրհոսն անշարժք են. Երկաւորն, Կոյսն, Աղեղնաւորն, Ձուկն՝ երկու կերպ են, կէսն անշարժ, կէսն շարժուն. Երբ կամենաս հաստատուն բան առնել, գլուսինն 'ի յանշարժ կենդանակերպսն գտ, և 'ի վատ աստեղ հայեցից 'ի զատ, որ է չորք հինգ, որ զինչ առնես մնացական լինի։ Ապա երբ լուսինն 'ի շարժուն կենդանակերպ լինի, որ հիւանդնայ՝ ապրի, եթէ հայեցքն լաւ լինի։ Դարձեալ ճանապարհի և դատաստանի և սերմանելոյ՝ շարժունն լաւ է։

## ԴՈՒՌՆ ՄԽԹ.

Վասն փայտից կտրելոյ խրատ։

.........[1] Նոյնպէս և զկաղնի փայտն առաւել երբ քաղուի կաղինն, յաշնան պարտ է կտրել մօտ 'ի ձմեռն. և զփիճին և զկվենին և զայսպիսիքս՝ 'ի գարնան կտրեա։ Բայց շատք են որք 'ի մնդութեան ժամն զինչ ուրդի[2] կտրեն. նա այն վնաս է և չդիմանայ։ Եւ աղէկն 'ի ծառոց այնոքիկ են, որք 'ի հիւսիսոյ դեհէն են աճեցեալ. և վատքն 'ի ծառոց այնոքիկ են, որք 'ի ջուր կենան և 'ի ծմակ տեղի և 'ի բալուտ։ Եւ զանտառն ընտրել պարտ է, զի այն է ամուր։ Եւ հին իմաստունքն և բանիս ճշգրտօղքն ասացեալ են, թէ 'ի փուլն լուսնին 'ի կիսոյն 'ի վայր մինչև 'ի չիքն, և այն լինի մնացական և ցեց չուտէ զփայտն։ Եւ զկտրելոյն գրեալ եմք 'ի յերրորդ գլուխն[3]։

1. Որպէս սկիզբն Դրանս պակաս է, նոյնպէս և վերնագիրն պակասէր, և փոխանակ սորին այլ ինչ գրեալ է 'ի ցանկին. « Վասն ածուոց և այգեաց պատ շինելոյն ». եդաք ըստ միւս օրինակաց, որք այսպէս սկսանին և կարգեն. « Ասացին գիտնականքն, թէ պարտ է կտրել 'ի ձմերան 'ի մօտ զփիճին », և այլն։
2. ՑՕ. չինչ որ կփրէն։
3. Վերջին տողդ չիք 'ի միւս ՕՕ. և եկամուտ թուի բանդ. զի ոչ այլ ուրեք յիշի խրատ փայտ կտրելոյ, որպէս և ոչ գլուխ՝ բաժանուածս գրուածոյս։ Իսկ 'ի բնագրին ոչ գտանեմք առանձինն խրատ փայտ կտրելոյ. այլ ուրեք ուրեք յիշի 'ի վաստակս իւրաքանչիւր ամսոյ՝ յ'Գ գիրս։

## ԴՈՒՌՆ ՄԾ.

*Յաղագս ճանաչելոյ զգետինն բանջարաց և խոտեղինաց թէ որն է լաւն ։*

Գիտելի է որ սպիտակ հողն և ոչ մքռայն և ոչ որ աղուոր երեսք ունենայ, աղէկ է. զի սպիտակ հողն ձմեռն պաղքաշ առնէ և աւերէ, և յամառն խիստ չորանայ, զի նօսր է, և այսու պիղծ է. և շատ աշխատանօք կարէ զինքն մարդ 'ի շահ ածել։ Եւ մքռայն ամենևին վատ է և պիղծ. զի կով գետինն ոչ խմէ ըզջուրն, այլ սահեցուցանէ. և այնու է վատ։ Իսկ գետին՝ որ սև լինի և ծայր մի աւազուտ, և երբ խորու փորես՝ գէշ շաղախի հոտ գայ, և սև շաղախ լինի ներքևատակն, այն է լաւ գետինն, յայն աշխատես որ օգտէ 'ի բանջար և 'ի խոտեր։ Եւ այսու ճանաչես. առ 'ի հողէն և ցօղեա[1] ջրով, և տես թէ աւազն շատ է քան զսև հողն, վատ է. և թէ հողն շատ է՝ աղէկ է։ Եւ առ 'ի հողէն շաղախ արա, և ընդ ափդ զարկ. թէ կաղձին է և փակչըտուկ որպէս կաւ՝ պիղծ է. և թէ փաղ լինի և փխրտուկ շաղախն, աղէկ է։

## ԴՈՒՌՆ ՄԾԱ.

*Թէ որպէս պարտ է ջրել և արբուցանել զածուն ։*

Արժան է յառաջ զջրագնացն ղորդել և բարձր առնել, որ յամէնն հասանի ջուրն, և չէ պարտ խիստ բարձրացուցանել որ աւելի յորձանացուցանէ զջուրն, որ զհողն տանի. այլ այնպէս ու 'ի հանդխտ տանի և հանգչի 'ի մաշարայսն։ Եւ աղէկ ջրելն այսպէս է. փոսեր առնեն մօտ 'ի մաշարայսն, և զջուրն ծովռեցուցանեն, և ամանով 'ի վերայ կանաչին ցանեն, նա խիստ արքինի լինի և աղէկ։ Եւ 'ի մէջ ջրոց՝ անձրևաջուրն և քաղցրահամ գետոցն և աղբիւրականցն՝ լաւ

1. Միւս 00. ցողեա ։

է. և որքան պարզ լինի և անոյշ՝ լաւն այն է. բայց աղէհամ ջուրն ամենևին վատ է, զի որդն և կերիչ խիստ ընծայէ 'ի կանաչ։

## ԴՈՒՌՆ ՄԾԲ·

*Թէ որպէս պարտ է լնուլ զաղբն 'ի յածուն։*

Ճշմարտած է որ կանաչն զաղբն բնութեամբ սիրէ և զջուրն. և առաւել զկրակաց մոխիրն՝ քան զինչ աղբ կայ. զի տաք է և եռացուցանող քան զայլ աղբ, և կորող է կերչացն և ամէն ազգ որդանցն. և յետ այդորիկ աղաւնոյ ծիրտն է լաւ ամէն բուսոց. և զկնի աղաւնոյ ծրտին՝ ոչխարաց աղբն այլ պակաս է, և քան զայլսն լաւ է. բայց ոմանք զխշուն կամ թէ ցուցեալ են զայծուն, զի քաղցրացուցանէ զկանաչն և աղէկ հունտ ընծայէ։ Բայց զսոսա յառաջ թրջել պարտ է և ապա 'ի բան տանել 'ի յածուսն. և զայլ աղբսն ցանեն 'ի վերայ այդոցիկ, բանջարի համար։ Բայց թէ առանց նեխեցուցանելոյ ածես՝ որդունք և կերիչք ընծային։ Ապա տարւոյ մի կամ երկու տարւոյ նեխեցուցածն լաւ է. և 'ի հարկէ ինչ թէ կամիս ածել, որ հին չունենաս, դու 'ի ձմեռն ած. թէ ոչ՝ 'ի գարնան ածես՝ շահն զվնասն չարժէ։

## ԴՈՒՌՆ ՄԾԳ·

*Վասն քաղելոյ զխաւ կանաչն։*

Գիտացիր որ հայել պիտի 'ի բանջարն, և զայն քաղել՝ որ 'ի վերայ արևելից դեհին լինի կեղնեալ, զի աղէկն և մարսականն այն է։ Եւ տես որ մօտ 'ի յածուս և 'ի կանաչ՝ կալ չշինես. թէ ոչ՝ մռեղն ուր հասանի՝ աւերէ զամէնն. և քանի ոք փոփոխէ զբանջարն սատրելով 'ի տեղւոջէն յայլ տեղի, լաւանայ և քաղցրանայ։

## ԴՈՒՌՆ ՄԾԴ·

*Վասն ստակելոյ զբրբուրն և զամէն ազգ կերիչս :*

Որ թէ լինին՝ դեղն այս է, որ առնուս զթզենւոյն կրակաց մոխիրն, և մանր 'ի վերայ ցանես, սատակէ զամէնն։ Եւ թէ վասն շատութեանն չկարես յաղթել, առ պախրէից գօղ, և ձիթի տուրտին, և եռացո ընդ իրեար և հովացո, և 'ի վերայ ցանեա. զամէնն սատակէ։ Եւ թէ առնու ոք յայլ ածուոց թրթրէ և ռամիթ, և 'ի մէջ պղնձի խարշէ, և զջուրն 'ի վերայ ցանէ, ուր հասանի՝ զայն սատակէ. բայց հովացո և ապա ցանեա։ Եւ այլք զայս գտին դեղ թրթրին և կերչաց բազմութեանն. զի առին կին մի ցաւոտ տեռատեսութեանն ախտին, և քրքրեցին զմազն, և գօտելարձակ և բոկիկ՝ շուրջանակի ածուոցն անցուցին. Նոյնպէս և 'ի վերայ տեղւոյն և բանջարացն երեք օր զհետ իրերաց, կամ 'ի մէկ օրն երեք հետ. նա զամէնն սատակէ, որ մէկ չմնայ։ Եւ թէ առնուս զընկուզի ծառի սունկն և ծխես, ծուխն ուր հասանի՝ զամէնն սատակէ։

Եւ թէ առնու ոք ցանել, որ չկուտէ հողմն զհունտըն, և 'ի մեղմ ստէպ ջրեա մինչև բուսանի. և 'ի գիշերն սակաւ սակաւ աղբեա, նա շուտ մեծանայ և պարարտ լինի [1]:

## ԴՈՒՌՆ ՄԾԵ·

*Յաղագս սատրեյոյ :*

Խիստ արքինացուցանէ փորէն և սատրէն զբանջարն՝ 'ի տեղւոյ 'ի տեղ։ Բայց տեղն յորդել թէ կամենաս, լաւ աղբած և շինած պիտի. և թէ 'ի տակեղէն բանջարաց սատրին, տակն՝ այսինքն բողկին, շող-

1. Թերի կամ խառնակ է յետին հատուածդ, որ պակասէ գլխովին յայլ 00. որպէս և յետագայ Դուռնդ :

զամին և կաղամբին, լեսած նադրուն հաւուցանես, նա խիստ աղէկ է և եփուն լինին, և առանց փայտի տակքն։ Եւ զսատիրն չպիտի թօշմեցուցանել. զտերղն սարեա մենակ՝ որ շուտ թունէ, և ընդ երեկս սատրեա, որ գիշերային հողմն 'ի վերայ գայ և զարգացուցանէ զինքն։

## ԴՈՒՌՆ ՄԾՋ·

*վասն կաղամբի։*

Զոր յառաջ ասացաք բազում անգամ յաղագս թրթրին, գիտել պարտ է, որ կաղամբն ևս առաւել վասնի 'ի թրթրէն՝ քան զայլ բանջար. և 'ի վերայ ամենի իւր դեղն այս է. որ թզենի կրակաց մոխրաջուր առնես, և զունդն 'ի ներքս պահ մի 'ի թրջոց արկանես և ապա ցանես. այլ թրթուր չմերձենայ անդ։ Եւ թէ այդ չլինի արած և թրթուր կենայ, զմոխիրն մանր մաղած 'ի վերայ ցանեա, ողջանայ կաղամբն և զամէնն սատակէ։ Եւ կաղամբդ զաղէհամ հողն ախորժէ. և վասն այնորիկ պարտ է որ երբ կաղամբն չորստերևան լինի [1], նա առնուս լեսած նադրուն կամ աղի հող, և 'ի մէջ տերևոցն լնուս պտղամբդ. նա խիստ արքինացուցանէ, և փայտ չտայ առնել տակլին, և փուխ լինի։ Եւ երբ կամենաս սատրել, զտերղն աղէկ աղքեա. և խցցելոյն [2] տեղն նադրուն ած կամ աղտաղտ հող, զնոյնդ առնէ։ Եւ զինքն արձակ և յետ 'ի յետ ցանես՝ որ հանել չպիտենայ, նա արքինի լինի։ Բայց զտակսն փորեա և պախրէի կուով օծեա. և երբ չորստերևան լինի, զնադրունն ցանեա մանր զերդ փոշի 'ի վերայն. նա աղէկանայ։ Եւ կատղածի խածածի դեղ է, որ ոք զտերևն 'ի քացախն թանայ և 'ի վերայ խոցին դնէ. նոյնպէս և թէ եփես և զջուրն խմել տաս, չտայ կատղենալ։ Եւ կաղամբդ թօքացաւի և ամենայն ցաւոց որ 'ի խասսայն լինի ընծայեալ՝ օգտէ. և

1. Բնագիրն երեքտերևան ասէ։
2. Թուի խանգարեալ բառդ, որ չէք 'ի միւս 00։

զխուչափողն սրբէ, և զձայնն յորդորէ. և չտայ արբենալ։ Եւ որ ծեծէ զինքն 'ի վերայ փայծաղանն դնէ՝ զայտուցն նստուցանէ։

## ԴՈՒՌՆ ՄԾԷ·

### Վասն Հազարի:

Թէ կամիս որ հազարն բոլոր գայ և մեծ տակ առնու, աղբեա աղէկ, և ստէպ ջրեա յառաւօտուն. և երբ թիզ մի լինի՝ զիւր տակն քաղհանիչով բաց, և թաղէ պախրէի կուով օծ, և զիւր հողն 'ի վերայ բեր և ծածկեա, և մենակ ջրեա. և երբ աղէկ մեծանայ՝ ճեղքեա զմիջնածիլ սրտուկն սուր դանակով, և տափակ քարուկ մի կամ կղմինդր 'ի վերայ դիր, և թող որ տափակեցուցանէ զինքն։ Եւ թէ ճեղքես և զքարն դնես, քանի մեծանայ՝ զքարն 'ի հետ մեծացո, նա խիստ գեղեցիկ լինի և աղուոր. բայց 'ի սատրելն պարտ է 'ի միմեանց հեռի դնել և զտակմն աղբել աղէկ։ Եւ թէ ուզես որ 'ի մէջ հազարին այլ ազգ խոտեր բուսուցանես, դու առ այծու սպտուր մի, և պատրաստ զերդ գղթորի ծակ արա ասղամբ, և զմէջն 'ի դուրս տուր որ փորոգի. և դիր յինքն անարատ հազարի հունտ, և յայլ խոտից հնտանաց, զորն և կամեսցիս. և արա աղէկ տեղի փոսիկ զերդ թիզ մի, և լեց յինքն փտեցուցած աղբահող՝ որ կէսն լցուի, և սպտուրդ հանդերձ հնտերովն 'ի ներքս դիր, և սակաւ հողով ծածկեա, և 'ի մեղմն ջրեա 'ի վերայ երեսաց հողոյն, մինչև հնտանքն բուսանին. և երբ բուսանին՝ ցանեա զջուր 'ի վերայ անձրևօրէն, և այնպէս տուր զիւր ջուրն նոյնպէս և զաղբն, մինչև մեծանայ և 'ի կատարելութիւն գայ։ Եւ տեսանի արմացք իր, 'ի մէկ տակէ այլևայլ խոտեր. և ինքդ հանել և սատրել չախորժայ. քանի կամենաս առնել, այնչափ սպտուր յիւր տակին վերայ արա։ Եւ են ոմանք որք զսպտուրն լեսեն, և 'ի քթէթ ծրարեն ընկուզաչափ մի, և զհնտանքըն 'ի մէջն, և տնկեն, որպէս վերոյ գրեալ եմք. նա զնոյնդ առնէ։ Եւ թէ ուզես հազար չլինել, որ թըրնջի համ գայ յիւրմէ, առ թրնջի կուտ ճեղքեա, և

զհազարի հունտն 'ի մէջն դիր և յիրեար բեր. և մուշախայով[1] փաթաթեա, և տնկեա նոյն օրինակաւ. նա բուսանի և համն թրնջի լինի։

Այսուհետև պարտ է մեզ զհազարին բնութիւնն և զօգտակարութիւնն գրել: Ինքդ հով է և գէջ յոյժ. և առաւել զինքն յամառնային և 'ի գարնանային ժամն պարտ է ուտել. և ինքն ուտելոյ կարօտ բերէ. եւս առաւել մունֆախդէձի քացախով ուտելն՝ զդեղին մաղձն կտրէ և հանէ, և իւր հովութեամբն առաք այտուցացն օգտէ, և զծարաւն կտրէ և քուն խիստ բերէ յատկապէս: Որ թէ ատնուս փարթ յիւր տերևէն, 'ի հնդէն մինչև 'ի մէկն, և հնդանի՝ այսինքն մեղմով՝ մնարուց ներքև դնես՝ այնպէս որ ինքն չգիտենայ, քուն բերէ.... բայց զաչաց լոյսն պակասեցուցանէ և բալ տայ աչացն տեսանել. և առաւել երբ քաղցրահամ լինի: Եւ թէ ով զինքն շատ ուտէ՝ լոյծ տանէ. և թէ սակաւ՝ կապէ: Եւ ռամատես[2] ցաւոյն օգտէ, առաւել երբ մինսախած քացախով ուտես: Եւ որ զիւր ջուրն 'ի վերայ կարմիր ելընդի դնէ կամ կարմրած աչաց, շատ օգտէ: Եւ մարդ որ 'ի շուրջ գայ և 'ի ջրոց փոխմանն ահոկութենէն[3] վախէ, հազար թող ուտէ այլ չվախէ. և 'ի գինւոյն արբենալ չտայ: Եւ հազարին՝ գիտնականքն՝ մեռելոտեաց մահիճք[4] են անուանեալ:...

Եւ որպէս վերոյ գրեալ եմք, թէ պակասեցուցանող և բալեցուցանող է աչացն, բայց զդեղն գրեցուք աստ: Ա'ռ զվայրի հազարին ջուրն և զաղջկանմեր կաթըն, յիրեար խառնեա և դեղդրով յաչսն դիր, ըղլոյսն բերէ: Եւ վայրի հազարն այն մանրատերև տափտակգոյն, երկայնաձև և լեղի հազարն է, և ինքն բնու-

1. Միւս ՕՕ. մոմլամայով: Բնագիրն՝ պապլրմով տալ փաթաթել:
2. Կամ աչացաւութիւն է, ըեմէփ, ըստ Արաբաց, և կամ քոստութիւն:
3. Միւս ՕՕ. 'Ի ջրերոյն փոփոխմանէ վախէ:
4. Չիք 'ի բնագրի այս բան. այլ յիշէ ծանօթարարն զասացուած Եւքուլեսի կատակերգուի, որ կոչեաց զհազար νεκύων βρῶμα, մեռելոց կամ մեռելոտեաց կերակուր, որպէս ընթեռնու զգրածն. զոր մեր թարգմանիչ Արաբացի կամ Հայ՝ թուի ընթերցեալ στρῶμα որ է մահիճք, (սպրամ փոխանակ կրամայ):

թեամբ և կերպիւ նման է՛ հոտոյ խաշխաշի, ուստի աֆիօնն կու լինի։ Եւ են ոմանք, որք յայս ջրէս խառնեն 'ի խաշխաշի ջուրն և զաֆիօնն 'ի յերկուցն շինեն. և որ 'ի վայրի հաշարիս ջրէն ջրխառնած քացախով տայ մարդոյ՝ որ մաղձի տաքութիւն ունենայ, ողջացուցանէ։ Եւ կորահարի և մորահարի օգտէ։ Եւ զխւրեանս ջուրն պարտ է հանել և շիշերով պահել՝ վասն ամենայն օգտութեան։ Նւս որ 'ի տաք ցաւերն լինի, և թէ 'ի վերայ տաքցած լերդի դնես՝ զտաքութիւնն կտրէ։

## ԴՈՒՌՆ ՄԾՂ·

### Վասն Բոռռաբին։

Կամենաս զինքն սատրել, պարտ է ներքև կղմինտր կամ տալ դնել, որ գլուխն տափականայ և չթողու որ երկայնանայ ընդ գետինն 'ի վայր, և հողով ծածկեա, որպէս սատրելոյն արժան է։ Եւ թէ ուզես որ մեծ գլուխ առնու, ճեղքեա զգլուխն՝ փայտեղէն սրով, և շողգամի մէկ հունտ 'ի ներքս ձգեա, և դարձեալ ծածկեա. նա մեծ առնէ զգլուխն։ Եւ թէ այլ մեծ ուզես; երբ ճեղքես՝ շատ քուռաթի հունտ լից 'ի ներքս և ծածկեա, այլ մեծ լինի. և քանի շատ անգամ առնես, նա խիստ մեծանայ։ Եւ երբ նոր սատրես՝ երեք օր մի ջրեր. և զիւր փոսն քան զութ մատն խորու չէ պարտ առնել։ Եւ ոմանք աւազ խառնեն 'ի հողն 'ի սատրելոյն տեղն, նա զգլուխն մեծ և պարարտ առնէ։ Եւ այս այլ լաւ նշան. առ զհունտն և դրգալ դրգալ ծրարանի արա 'ի հին քթէթ, և սատրելոյն չաքօքն տնկեա. լինի ամէն գլուխ քան զշողգամ մի։

## ԴՈՒՌՆ ՄԾԹ·

### Վասն Շողգամի և Բողկի։

Թէ կամիս որ քաղցր և անոյշ լինի շողգամն, ըզ-հունտն 'ի մունֆախղէձ գինին 'ի թուրջ դիր երեք օր, և ապա ցանեա, նա զերդ շաքար լինի։ Եւ զլինքն երկու հետ ցանեն 'ի տարին, մէկ յաշունն և մէկ 'ի գարունն. և 'ի փորելն զգետինն՝ կամ աղբ խառնեա կամ յարդ, և ապա ցանեա։

Եւ եթէ կամիս որ բողկն մեծ լինի և գեղեցիկ, երկու թիզ փոս՝ արա վարսամով, և յարդ և հող լից սակաւ մի, և սատրեա, կամ զհունտն անդ դիր. նա բողկն ցըցին օրինակաւն լինի։ Եւ որ զբողկին հունտն ծեծած և ջրխառնած խմէ, զփայծաղն հալէ. և ըզկեղևն տիմետ 'ի վերայ փայծղանն դնել՝ զփայծաղն հալէ։ Եւ ինքն զստամոքսն սրբէ, զսէվտայն խաղաղեցուցանէ, զգօղն յորդորէ, և զպլղամն նօսրացուցանէ, զմաղձն վարէ, և 'ի վերայ աղէկ բերէ. և զկանացիքն արձակէ. և որ 'ի սէվտայէ նեղհօգուկ և թալուկ ունենայ, խաղաղեցուցանէ, զբնական ցանկութիւնն յորդորէ. և յիւր ջրէն ի̅ տրամ խմելոյ տայ, թօքացաւի օգտէ. զթուխմայն հաշէ։ Եւ ո՞րչափ գովեմ երբ գովելի է. զի ով առնու զջուրն նորին և զձեռսն օծանէ, և զօձն բռնէ և զկորն, նա չկարէ խայթել. և թէ ոք զբողկն 'ի վերայ կորի դնէ՝ սատակի։ Եւ իւրն ահոկն այս է, որ զակռայքն և զձայնն աւերէ։

## ԴՈՒՌՆ ՄԿ·

### Վասն Քէրէֆսին։

Մի մաշարայ ցաներ զսատիրն, ապա փոս արա, և զհունտն ափկից 'ի ներքս լից, և ծածկեա. նա գընդղուկ արքինի ելանէ. յայնժամ զամէնն գընդղուկ հան հողովն, և տակ տակ բաշխատեա և սատրեա. նա այն խիստ արքինի և մեծտակ և քաղցրահամ լինի։ Եւ թէ զհունտն ծրար առնես և թաղես՝ որ 'ի վերայ իւր

տակին բուսանի, մեծ լինի։ Եւ զիւր սատրեըն այսպէս արա. Հաստ ցից արա ըստ չափոյն որ ուզես որ տակն լինի, և աղբ լից յատակն, և սատրեա. Նա տակն նոյնիւն լինի։ Եւ երբ մեծանայ՝ զտակմն փորել պխտին և բանալ, և զակնուան սուր դանակով կտրել. Նա տակքն մեծ և Թորթոշ լինին։ Եւ այսպէս երկու հետ պարտ է առնել. և երբ այս նշանքս առնես զքէրէֆսն, նա խիստ աղէկնի լինի։ Եւ ինքնս զգօղն յորդորէ. և զբերանն անաւշացուցանէ, և զերակմն բանայ, զմաղձն վարէ, և հանէ զաւելուածն յերակացն։ Բայց կոտորածի[1] ահուկէ. և ծծացաւ կինն Թող չուտէ, զի զտղայն զերդ երկիւղած առնէ. զբնական ցանկութիւնն արանց և կանանց յորդորէ։ Եւ ասեն ոմանք եթէ ող ընդ քէրէֆսն տուր և առ առնեն՝ տղայ չծնանի։

## ԴՈՒՌՆ ՄԿԱ·

### Վասն ճակնդեղի, որ է Բազուկն։

Թէ ուզես որ ճակնդեղն սպիտակ լինի և աղուոր, պախրէից աղբ ած 'ի վերայ։ Նոյնպէս և զկարմիրն 'ի յիւր ոՃ՞ն[2] չինէ պախրէից աղբն։ Եւ աղբեըն այսպէս լինի. փորեա զտակմն բոլոր, և զաղբն բոլոր ած 'ի տակմն։ Եւ իւր օգտութիւնն լուծ է և քաշօղ. և աղեացն օգտակար. և ջուրն զգօղն յորդորէ։ Բայց աղիութիւն ունի սակաւ մի։

## ԴՈՒՌՆ ՄԿԲ·

### Վասն Խիարի։

Խիարին տնկեըն և սատրեըն, նոյնպէս է որպէս այլոցդ։ Եւ Թէ ող զիւր տերևն ծեծէ և զեղըրդոյն ընդ իրեար, և 'ի վերայ նոր կտրածի դնէ, զարիւնն կապէ և զխոցն կնքէ, և ուռեց չտայ առնել։ Եւ Թէ զիւր

1. Այսա իմն հիւանդութեան Թուի։
2. Ըստ իւրում որակի կամ կերպի։

տերևն ծեծես և ընդ անլի հին խոզտի խառնես, և 'ի վերայ փշի կամ խոչի դնես՝ որ 'ի մարդն կենայ, հանէ. և Թէ ճխմած կամ տրորած կենայ 'ի մարմինն՝ սրբէ և լաւացուցանէ: Եւ Թէ զվայրի խիարկին ջուրն ոք առնու և օծանի, և երԹայ մեղր կԹէ, մեղու զինքն չկարէ խայԹել: Եւ զնոյն խիարկիդ ջուրն և հում ձէԹ ընդ իրեար խառնեն՝ զկտրած ուրտուք օծանես, յառաջ որ այլ իրք լինի օծած, զկտրածն կպէ: Եւ Թէ զնոյն խիարուկն ծեծես և 'ի վերայ խայԹածի դնես՝ զինչ և իցէ, ամենին օգտէ փորձով:

## ԳՈՒՌՆ ՄԿԳ·

### Վասն Սատապի:

Սատապն զածպատերն ու զքարուտ և զջերմային վայրսն սիրէ բնուԹեամբ և զարեգիւնն. և յիւր տակն կրակաց մոխիր խիստ ընդունի ածել, որ ջերմուԹիւն պահէ զինքն. և բնաւ աղբ չընդունի, բայց միայն անապակ հող: Եւ ճշմարտած է, որ... իւր ուտելն և խմելն, զաչաց լուսն յորդորէ: Եւ ականջացաւի օգտէ, երբ ծիլ մի 'ի ներքս յականջն դնէ, երբ 'ի հովէ ցաւի: Ճանճին ծիրտն 'ի հողն Թաղես, անանուխ լինի: Ջուհոտն իւզերլիկի [1] 'ի բողկին մէջն դիր. խարտաշն այլ պապես է: Ձկտաւատին հունտն 'ի բողկն կամ 'ի Թուրինջն խոԹեն 'ի հողն Թաղեն, Թարխուն լինի: Զսոխին, և զխստորին ծայրսն խանձես, որչափ պահես՝ չկանաչի:

## ԴՈՒՌՆ ՄԿԴ·

### Վասն Ըսանխոյ և Մարուֆի [2]:

Մարուֆն ոչ ունի օգտուԹիւն ինչ, և Թէ ոք առնու յիւրմէ ծամէ՝ և յարեւն դնէ, նա կորեր ելանէ յիւրմէ. և Թէ կին ապուր եփել կամիցի, և զաղտ 'ի

1. Այս և որ զհետ սորին առասպելախառն՝ եկամուտք Թուին:
2. Ի Բնագրին միայն անանուխն յիշի: Տ. 'ի Բառս:

նմանէ՝ տակզըն մօտ 'ի պուտուկն դնես, չիշխէ կինն 'ի պուտուկն մերձենալ։ Այդ խոտիդ արապկերէն ասեն պատրուճ, և մեք չկարացաք ճշմարտել 'ի թարգմանեէն. և որք ճշմարտեն՝ թող գրեն։ Եւ դարձցուք յանսանուխն. իւր օգուտն է որ կերակրոց կարօտ բերէ, և զործն կտրէ. և իւր պիղծն այն է՝ որ կտրէ. և թէ 'ի վերայ խոցոյ դնես՝ յաւիտեան այլ չպաշօղանար բնաւ։

## ԴՈՒՌՆ ՄԿԵ·

### Վասն Սխտորի։

Սխտորն զսպիտակ և զփաղ գետինն սիրէ, որ չլինի կաղձին. և 'ի դեկտեմբերի ժա օրն է իւր դնելն մինչև 'ի փետրվարի եօթն օրն. և որ զինքն 'ի փուլն դնէ և կրկին 'ի փուլն ժողովէ, նա ով ուտէ՝ հոտ չգայ 'ի բերանոյն։ Եւ ինքն տաք է և չորային. զքամին վարէ, զպղղամն կտրէ, զգօղն վարէ, զճիճին 'ի փորն սպանանէ. և օձահարի և կորահարի և կատաղի խածածի օգտէ։ Եւ թէ այրես և 'ի մեղըն խառնես և օծանես, աղուեսացաւի օգտէ։ Եւ աչացաւի՝ որ յաղբիւրն նասուր լինի, հոռմերէն Անոպիա[1] ասեն, թէ օծանես օգտէ. և ակռացաւի օգտէ. զմասատի, արծուեաց օգտէ։ Ծեծեալ և 'ի հոռոմ ձէթ խառնեալ և 'ի մեղր խառնեալ, կողացաւի օգտէ։ Եւ վայրի սխտոր որ է սկորդօն, շատ ուժով է քան զտանուդ. և 'ի Թրակիսյն և 'ի մեծ մաձունն խիստ մտանէ. և զվերի օգտակարութիւնսն ունի, և այլ աւելի։

1. Իպոպիա, ὑπώπια է յունարէնն. և է ըստ բացատրութեան մերայս՝ այնդուլթիւն կամ ոեռ ինն գոյացեալ 'ի յատակ (աղբիւր) աչացն, զոր Թուրքք թառիւ նասուր (նասըր) կոչէ։

## ԴՈՒՌՆ ՄԿԶ·

### Վասն Սոխի:

Սոխն զկարմրակ հողն սիրէ. և երբ կամենաս դը-նել՝ զտերևսն հան յիւրմէ, և 'ի սխտորխտ ժամն է իւրդ. և զգետինն տասն օր յառաջ կասկղեա, և ըղ-խոտն և զտակն հան. և զերդ մաղած արա զգետինն և դիր, նա մեծ գլուխ առնու և աղէկ։ Եւ թէ քըր-խայն շատ մազմզուկ ունենայ դու կտրեա որ մեծ լի-նի։ Եւ որպէս զխստորն գրեալ եմք՝ 'ի փուլն դնես և 'ի փուլն հանես և ժողովես՝ ով ուտէ հոտ չգայ, և քաղցր լինի։ Եւ թէ ուզես որ շատ դիմանայ՝ 'ի յեւ-ջուրն մխեա և հան, յարևն չորացո աղէկ, և 'ի գա-րէ յարդն թաղեա և պահեա։ Եւ թէ զսոխն ծեծես և 'ի մեղր խառնես, և 'ի վերայ կողացաւի դնես՝ օգ-տէ։ Եւ թէ ընտրէ ոք զկակուղ սոխն և յամէն վաղ-վընէ մեղրով ուտէ, զմարմինն առողջ պահէ. և սպե-ղանիք երնդոց և խոցից շատ օգտէ։ Եւ խստորն պիղծ է, զի զողջացեալն կըկին խոց առնէ։ Եւ թէ ծեծես զսոխն և քացախով 'ի վերայ պիսակի ածես, և յա-րեն ունենաս, օգտէ։ Նոյնպէս թէ 'ի վերայ աղուե-սացաւի օծանես՝ զմազն բերէ։ Եւ թէ զսոխին ջուրն 'ի թարախոտ ականջ ածես՝ օգուտ է։

## ԴՈՒՌՆ ՄԿԷ·

### Վասն Հիլիւնի, որ է Ծնեբեկն.

Հիլիւնդ զպարարտ գետինդ ախորժայ և զարեգակն հակոտն, զի հանապազ ջեռուցէ զինքն, և զտիկն և զանտառախիտ վայրսն։ Եւ իւր ցանելն այսպէս է. փո-րել տուր զգետինն խորու, 'ի մարտին կամ յապրիլին, և փոսեր արա խորու երեք մատն, և յամէն փոս 'ի հիլիւնին հնտէն եօթն հատ. և ծածկեա նոյն հո-ղովն. տասն մի մօտիր, բայց միայն քաղհան արա զպիղծ խոտն. զի ծնեբեկդ վայրի խոտ է, և չախոր-ժէ զվատատակն. և յետ երկու տարւոյն 'ի գարնանային

ժամն փորեա զտակսն՛ և տակաւ մի աղբ ած, որ հերիք լինի. և որքան այսպէս առնես՝ շուտ կերակրիս և քաղցր լինի. և 'ի յերրորդ տարին կանուխ յառաջ որ ծլէ՝ փորեա, և քաղհան արա զտակսն, և աղբ մի լուր. տեսանես յետ ամսոյ մի որ ծլէ և ուրախացուցանէ զքեզ։ Եւ յորժամ քաղես՝ մի կոտորեր զծիլն, որ մնացորդն ցօղուն հանէ, և տակն այնու իւր հերիք առնէ. այլ տար զձեռնդ, և գետնախառն բռնեա և քարշեա, որ ծիլն 'ի տակն կտրի և ելանէ. նա պիտի որ անձարակ 'ի տակն և այլ ծլեր հանէ. և այսպէս յամէն տարի նոր հիլոմն ունենաս։ Եւ յամէն քաղել՝ փորեա զտակսն. և թէ 'ի փորելն մազմզուկ վերանայ, քարշեա և կտրեա. նա քանի բնատակն խոցնայ՝ այլ շատ հանէ զծլերն։ Եւ թէ կամիս ցօղուն և հունտ առնուլ, զանազան և զյետին ծիլսն թող և առ։ Եւ ինքնդ զերաշտն սիրէ և ոչ զջրայինն, մի ջրեր. և թէ ջրես՝ 'ի յելն աշնան ջրեա, նա աղէկ է, և շատ պտղաբերէ և թազէ լինի։ Եւ ինքնդ արձակ լինել սիրէ յիրերաց. զի թէ տակուիձքն յիրեար շնկըլկին՝ չտան պտուղ։ Եւ յորժամ ուժաւորի՝ հան տընկեա. և աճեցո թէ կամիս դաշտ մի, այս օրինակաւ։ Եւ օգտութիւն մի կայ 'ի սա, զոր արժան համարեցաք գրել, թէ և դժուարաւ հաւատայք զարմանալի բանիս. զի թէ չէաք փորձիւ հաստատեալ՝ ոչ էաք ընդ գրով արկեալ։ Ա՛ռ խոյի եղջիւրք մեծ և անարատ. և արա յիւրեան փոքր ծակ մի, թէ զինքն որպէս նշան տուաք՝ դատարկ առանց հնտի[1], նա յիւրմէ բնութեամբ հիլոմն ծլէ անհնար։

## ԴՈՒՌՆ ՄԿԲ·

### Վասն Դդմի, կօդայի և Պատիխի ։

Դդումն և կօդայն և սեխն, զաղբին և զաղէկ փոռ րած գետինն սիրէ, առաւել ևս յորժամ չորատե-

1. Այսպէս յամենայն ՕՕ. Թուի պակասել բառս բայի, կամ Ե՞ղ ընթեռնուլ զգրեալն ԲԷ։ Բնագիրն ասէ, եթէ ծակեայն և փոկեր-ոյն կամ ջրջեոյն եղջերին։

րևան լինի. զտակմն փորեա և քաղհան արա, և ընդ տակմն 'ի վեր կուտեա. և քանի այլ մեծանայ և տակէ՝ այլ փորեա և զհողն ած: Եւ ջրելն զդդումն՝ մատղաշցընէ և քաղցրացուցանէ և գձցընէ. և թէ եղի լինի՝ առ փուշ մի և զծիլն ծեծեա, նա ջուրն քամի և դդումն քաղցրանայ, և այլ շատ բեր առնէ: Եւ երբ փորես՝ երնեա զփոշին 'ի վերայ պարտիզին. զի որքան փոշեթաթախ լինի՝ այլ լաւ է բերին և օգուտ: Եւ թէ ուզես որ դդումն երկայնանայ, առ ջուր ամանով, և ներքև դդմին ուիցն թերիկախեա[1], այնպէս որ չհասանի յինքն, զերդ չորս մատ 'ի յետ կենայ դդումն. պիտի որ բնութեամբ 'ի ջուրն հրասանայ. և դու յամէն օր տես, քանի ցածանայ՝ զջուրն ցածացո. և այդու երկայնացո որչափ և կամիս: Եւ թէ կամիս որ դդումն բոլոր լինի, զկուտն ընդ քոմն ծակեա և հան, և դիր մի ընդ բերանքն. նա դդումն բոլոր լինի:

Եւ թէ ուզես որ դդումն և սեխն և կաւադայն քաղցըր լինին, առ կաթն և մեղր, յիրեար խառնեա, և զհունտն 'ի ներք 'ի թրջոց դիր երեք օր, և ապա ցանեա. բերն քաղցր լինի և լաւ: Եւ թէ ուզես որ կուտըն փոքր լինի, առ շուշմայ, ծեծեա, և պտղի ձիթով շաղախեա որպէս մնշած. և ապա զձէթն հանն, և ըզհընդանքն 'ի ներք 'ի յօծ դիր երեք օր. և ապա դիր, կուտն փոքր լինի: Եւ թէ ուզես որ շուտ պտղաբերին, զբնատակն հատ յաշունն և աղբեա, և հացի գուռն կամ ձառայի ոռք 'ի վերայ կործեա. և երբ ժամ լինի՝ բաց, և ծլեցո. և կանուխ պտուղ առ: Այլ ազգ. առ զամբիւղանի, և լից աղբահողով. և զհնդանքդ 'ի ներք դիր մենակ, և կանուխ կոտորած ջրով[2] ջրեա հետէն, և ծլեցո. և 'ի ցերեկն յարևջեռն հան և 'ի գիշերն և 'ի ցուրտն՝ 'ի տունն պահեա. և այս օրինակաւս տար մինչև 'ի կանուխ դնելոյն ժամն. և ապա տար բուսած հան, սատրեա. նա այն որ չոր կուտ դընուի՝ երբ ժամանէ այնմ. զի այն սուր ժամանեցուցա-

1. Միւս ՕՕ. դէր և չախէս:

2. Բնագիրն աստ մոլեալ հող աղբախառն խանաւացուցեալ. Թերևս նկրտորած գրելի էր, զի կոլատոր է աղբ անասնոյ:

նէ և մենակ բեր տայ։ Եւ թէ ուզես լվլիճ կամ այլ կերիչք չմերձենայ 'ի պարտէզդ, 'ի մօտն ծոթրին ցանեա, փրկի։

Եւ հինքն փորձեալ են վասն կօղային, գրել չէ պարտ. զի փորձով է որ թէ փոքր տղայ տաքանայ, իւր չափով երկայն կօղայ մի հետ փոքերն[1] յօրոցքն պառակեցո՝ 'ի լերդին դեհն, նա տաքութիւնն անդփոխի և տղայն լաւանայ. և թէ 'ի տղային յամէն ձեռն մէկ մի դնես, նոյնպէս արժէ ջերմանն։ Եւ կօղային ուտելն՝ 'ի վերայ կերակրին քան յանօթեաց։

Եւ թէ ուզես որ յամէն ձմեռն ունենաս զինքն, 'ի կարաս ուր սպիտակ գինի լինի կամ անոյշ քացախ, կախեա զինքն, այնպէս որ 'ի գինին չհասանի, և 'ի վերայ ծեփեա. երբ ուզես՝ բաց, թազէ գտանես։

Եւ թէ զմատղաշ դդումն 'ի յարդն թաղես, շատ դիմանայ։ Եւ ոմանք առնուն զմատղաշ դդումն և 'ի չորս ճեղքեն, և զկուտն հանեն, և եաջուր ածեն 'ի վերայ, և 'ի գիշերն յաստեղսն պաղեցուցանեն. և 'ի քաղն՝ 'ի գազան աղջուր դնեն, և հանեն և պահեն, նա շատ դիմանայ։ Եւ թէ ուզես որ դդումն լուծումն առնէ, առ սակամոնի, թրջեա ջրով, և զկուտն երեք չորս 'ի ներքը թրջեա և ցանեա. ով զդդումն ուտէ՝ մաղձադեղ է։ Եւ թէ զսակամոնւոյն կանաչ ցօղունն ոք եփէ այնչափ, որ 'ի տասնէն մէկն մնայ, և ապա զբանջարն քամէ և յայն ջուրն թրջէ, զնոյնն առնէ։

## ԴՈՒՌՆ ՄԿԹ.

### Վասն վարդենեաց։

Եթէ ուզես որ կանուխ վարդ առնես, փորեա ըղշուրջն տակուցն արմատ՝ թիզ մի, և եղկ ջրով արբո յօրն երկու հետ. մենակ վարդ տայ։ Եւ թէ ուզես որ շատացուցանես, պառակեցո 'ի ճղերոյն և հող արկ 'ի վերայ. ծլէ և շատանայ, եթէ յամէն տարի զաճն պառակեցընես։ Եւ այլ ազգ. 'ի շարժն՝ կտրեա 'ի ճղե-

1. Այսինքն, հետ փոքրիկ տղային։

քուն և սատրեա, որ մազմզուկ առնու, և ապա հան տնկեա ուր կամիս. և այսու շատացո քանի կամիս։ Բայց զգետինն աղէկ պարտ է չինել. և այս օրինակաւ չինած վարդն անուշահոտ լինի։ Ի Թեֆնէն վարդ պատրուսեա, տերևականաչ վարդ լինի։

## ԴՈՒՌՆ ՄՀ.

*Վասն կանկառի, որ զինքն անուշահամ և անփուշ շինես։*

Ա՛ռ զխուր հունդն և 'ի վարդի ջուրն, կամ 'ի կասալայի ջուրն կամ 'ի նոնոֆարին, կամ 'ի յեղրդոյն, այսինքն 'ի խլէֆին, երեք օր յաշուննն՝ 'ի Թրջոց դիր. և ապա հան յաղէկ աղբոտ կակղած գետինն ցանեա նոսր. և տես Թէ ինչ լինի։ Եւ Թէ 'ի հնտէն զփշերն սուր դանակով կտրեա և ցանես, երբ բուսանի՝ անփուշ լինի։

## ԴՈՒՌՆ ՄՀԱ.

*Երբ որք 'ի բանջարացն զծառոյս ածուան ախորժան,*
*և որք զանծառան։*

Քէրէֆսն, ստեպղինն, անանուխն, սամիԹն, ճակընդեղն, հազարն, կոտեմն, քուռաԹն, բողկն և շողգամն։ Եւ որք զցանցառ ծառուտն ախորժան, կաղամբն, կօդայն, դդումն, սոխն, խստորն, չամանն։ Եւ 'ի Հռոմայ գաւառն ցանեն յայսպիսի տեղս՝ մանանեխ, աֆիօն և չաման։ Եւ որք զանծառն և զարևն սիրեն. կանկառն և ծնեբեկն, և ցորեանն և գարին, և այլք բազումք, զորս մտօք գտանէք։

## ԴՈՒՌՆ ՄՀԲ.

*Վասն Սուսնի բուսուցանելոյ։*

Ա՛ռ խմորջուր արա, և տար զընկուզի կամ զկաղնի Թօրխն կամ զչոր կնճակն, ջրեա. նա մենակ սունկ հանէ։ Եւ Թէ ուզես առնել որ 'ի գետնէն ելանէ, գիտ

կակուղ գետին, որ իւր թոյլքն փշուտ և կառնուտ լենի. ՚ի յամպ և ՚ի պղտոր օր այրեա զինքն. Նա զերդ անձրև գայ՝ լինի սունկ։ Բայց զխանձդ՝ այնպէս ձգեա, որ անձրեն անցանէ. և թէ յամէ՝ ջրել պիտի. Նա լինի. բայց ՚ի ջրելոյն չլինի այնպէս պարարտ՝ զերդ անձրևին. անձրևին շնորհքն ՚ի հետէ։

## ԴՈՒՌՆ ՄՀԳ·

### Վասն Ջիթենեաց։

Նախ արժան է զօգտակար և զամենընդունելի և զվայելուչ և զօրհնեալ զձիթենւոյս զդրութիւնն և զսահմանն ընդ գրով արկանել. և ապա զբարեբուղխ պտղոյն զպարարտ և զօգտակար իւղոյն, վասն զբօսանաց մարդկան. որպէս աւանդեցաւ մեզ ՚ի հնարագէտ իմաստնոցն, որք կամեցան յիւրեանց վաստակոցն վայելել զկենցաղս, և յայլոցն հրաժարել։ Ուստի արժան համարեցաք նախ առաջին այն ծառոյն թէտպիր[1] դնել՝ որք թափեն զծաղիկն և ապականեն ըզպտուղն. և ապա զտնկելն և զսերմանելն, զտածելն և զշլինելն։ Եւ նախ առաջին սահման է, որ մարդ թէ սուրբ չլինի յախտից և ՚ի մարմնական աղտեղութեանց, չմերձենայ ՚ի ծառն, ոչ ՚ի հօտել և ոչ ՚ի տնկել և ոչ ՚ի քաղել զօրհնութեան պտուղս։ Այլ արժան է որ գործեն զսա մաքուր և սուրբ յամենայն աղտեղութեանց լինիլ, մանաւանդ այնոքիկ որ են...[2] զպտուղն՝ պարտ է որ ամենևին կոյսք լինին ՚ի կանանց խառնակութենէ. և թէ ոչ՝ վնաս է։ Եւ հինքն այնպէս են ճշմարտեալ, որ Կիլիկիոյ երկիրն Ես առաւել Անարզաբոյ թեմն՝ լաւ և գովելի պտուղ և անուշահամ ձէթ ունի քան զայլ երկիր. և կայսերացն և մեծամեծաց անտի բերէին՝ վասն մարմնաւոր պիտոյից իւրեանց. Ես առաւել Կիւլիկեցիք և Ադէխացիք այսպէս առնէին սրբութեամբ զգործն, և այնու ա-

1. Կարգ, կանոն, խրատ։
2. Այսպէս դատարկ յամենայն 00. գուցէ կինն պիտէր։

ռաւելուլին՝ի գործն ազնուաբար [1] քան զայլ գաւառսն։ Եւ զայս Յուլիանոս իմաստունն և բնութեանց գիտօղն եգիտ և ուսոյց մարդկան։

## ԴՈՒՌՆ ՄՀԴ.

*Թէ ո՛ր ազգ գետին կամ որպիսի վայրք պատշաճի ձիթենւոյն։*

Նօսր և փաղ գետինն և տաքն պատշաճի ձիթենւոյն, և վասն այսորիկ՝ի Կիլիկիայ և յԱնարզաբայ առաւել աճէ և զարգանայ քան յայլ գաւառ. զի հողն և օդն այսպիսի է, նոյնպէս և սպիտակ է և գիջային. և այսպէս տայ բազում և շատ ձէթ պարարտահամ։ Եւ սև գետինն թէ քարուտ և կոկնուտ լինի՝ աղէկ է, բայց ոչ զերդ սպիտակն. և աւազն աղէկ է թէ աղի չլինի։ Բայց՝ի խորու և՝ի հաստ գետինն՝ որ մքայ ունենայ, ամենևին չէ պարտ տնկել ձիթենի. զայնպիսին սերմանց և ոռնենեաց համար թող. բայց թէ ՝ի հարկէ իմեքէ տնկես եղենի, այսինքն ձիթենի, սակաւ պտուղ առնու, և վատձէթ է, և տուրտին ձիթին աւելի լինի քան զձէթն։ Եւ հաստ և կաղճին գետինն ամենևին վատ է, զի պինդ է, և զերդ լերդ, և մասունքն ըմբռնեալ զիրարօք, և չտայ մտանել արեգական ջերմութեանն՝ի խորուն։ Եւ կարմիրն քան զամէն վատ է. զի շատ ջերմանայ և խիստ պատառոտի, և աւերէ զծառն և զբերն։

## ԴՈՒՌՆ ՄՀԵ.

*Վասն թէ ո՛ր օդ լաւ է եղենեացն:*

Տաք և չոր, և տաք և գէջ օդն յոյժ օգտակար է, որպէս Կիլիկեցւոցն և Լիպիացւոցն օդքն՝ գովելի և

2. Մի Օ. Սադէխացիք. Թերևս Անդէխացիք էր յառաջին օրինակին, փոխան գրելոյ Անտիոքացիք։ Իսկ՝ի բնագրին բանս այս սրբութեամբ գործելոյ՝ ասի վասն Անարզաբոյ բնակչացն, և մի անգամ միայն յիշի Կիւլիկիա. իսկ իմաստունդ Յուլիանոս՝ ոչ յիշէ և ոչ Ճնունչի։

օգտակար են եղեւնեացն: Զի հանապազ յամարանոջն՝ պարտիզին և հարաւայինն հանդերձ արևելեան հողմոյն փչէն և զարգացուցանեն զամենեսեան. և այսպէս առաւել պտղաբերի և արդիւնանայ: Եւ բարձրագոյն կողերն և մատներն և տափերն՝ ևս առաւել լաւ են. զի օդն անդ լաւ բանի. և այս տեղեաց եղն առաւել ազնիւ լինի և պարարտ. և դաշտային և ցած տեղեացն հակառակ են սոցա. և ձէթն թանձր և մրրոտ լինի և վատթար: Եւ այսու ստուգեալ եմք որ լաւագոյն օդքն ապրեցուցիչ են տնկոցն. և որպէս հաստ օդքն վատթար են տնկոցն, նոյնպէս և նօսրագոյն և միջասահմանն՝ օգտակար է և լաւ յամենայն կողմանց: Եւ վասն այնորիկ արձակ պարտ է տնկել զծառսն, որ օդն բանի 'ի միջոցն և գոյացուցանէ զպտուղն:

## ԴՈՒՌՆ ՄՀՁ·

*Վասն թէ յոր աւուրս և 'ի ժամս պարտ է տնկել զեղեւնեին, այսինքն ձիթենին:*

Բազում անգամ ասացաք վասն ձիթենւոյդ, թէ 'ի տաք և 'ի գէջ տեղի և 'ի գաւառ պարտ է զնա տըն-կել. և թէ յայսպիսի հաւայէս խռովլի և խոռի աճումն տնկոյդ, և գոյացութիւնն խոռի. և վասն այսորիկ պարտ է զձիթենին կամ յաշունն տնկել կամ 'ի գարունն: Զի երբ յաշունն տնկես՝ նա ունենայ 'ի ջեռութենէ արեգականն, և գան անձրևքն, և տաս զջուրն՝ որպէս տնկին արժան է, և շահի տունկն զերեքն, և արքինանայ: Եւ 'ի գարնանայինն երբ տնկես՝ նա խըմորեալ է ձմեռնային անձրևն զգետինն և կշտացուցեալ, և գայ նոյն ջերմութիւն արեգականն, և շահի զնոր տունկն. նոյնպէս է երեքն՝ և գոյանայ. բայց ճըշմարտած է որ աշունն լաւ է քան զամէն ժամ: Բայց թէ 'ի գարնանային ժամն կամենաս տնկել, երբ Բազմաստղն անկանի և ԺԵ օր անցանէ՝ տնկեա. որ է յունվար ամսոյ 'ի Ը օրն, և 'ի քաղցրաշունչ օդոյն շարժին:

տերևն ծեծես և ընդ անլի հին խոզտի խառնես, և 'ի վերայ փշի կամ խոշի դնես՝ որ 'ի մարդն կենայ, հանէ. և թէ ձիման կամ տորոած կենայ 'ի մարմինն՝ սրբէ և լաւացուցանէ։ Եւ թէ զվայրի խիարկին ջուրն ոք առնու և օծանի, և երթայ մեղր կթէ, մեղու զինքն չկարէ խայթել։ Եւ զնոյն խիարկիդ ջուրն և հոտոմ ձէթ ընդ իրեար խառնեն՝ զկտրած ուրուք օծանես, յառաջ որ այլ իրք լինի օծած, զկտրածն կպէ։ Եւ թէ զնոյն խիարուկն ծեծես և 'ի վերայ խայթածի դնես՝ զինչ և իցէ, ամէնին օգտէ փորձով։

## ԳՈՒՌՆ ՄԿԳ.

### Վասն Սատապի։

Սատապն զածպատերն ու գքարուտ և գջերմային վայրոն սիրէ բնութեամբ և զարեգինն. և յիւր տակն կրակաց մոխիր խիստ ընդունի աճել, որ ջերմութիւն պահէ զինքն. և բնաւ աղբ չընդունի, բայց միայն անապակ հող։ Եւ ճշմարտած է, որ... իւր ուտելն և խմելն, զաչաց լոյսն յորդորէ։ Եւ ականջացաւի օգտէ, երբ ծիլ մի 'ի ներքս յականջն դնէ, երբ 'ի հովէ ցաւի։ Ճանճին ծիրան 'ի հողն թաղես, անաանուխ լինի։ Զունտն իւզերլիկի [1] 'ի բողկին մէջն դիր. խարտաքն այլ պտղէս է։ Զկտաւատին հունտն 'ի բողկն կամ 'ի թուրինջն խոթեն 'ի հողն թաղեն, թարխուն լինի։ Զօխին, և զխստորին ծայրոն խառնես, որչափ պահես՝ չկանաչի։

## ԴՈՒՌՆ ՄԿԴ.

### Վասն Ալևանխոյ և Մարուֆի [2]։

Մարուֆն ոչ ունի օգտութիւն ինչ, և թէ ոք առնու յիւրմէ ծամէ՝ և յաքեն դնէ, նա կորեր ելանէ յիւրմէ. և թէ կին ապուր եփել կամիցի, և գաղտ 'ի

1. Այս և որ զհետ սորին առասպելախառն՝ եկամուտք Թուխին։
2. Ի Բնագրին միայն անանունին յիշի ։ Տ. 'ի Բառս։

նմանէ՝ տակօքն մօտ 'ի պուտուկն դնես, չիշխէ կենն 'ի պուտուկն մերձենալ։ Այդ խոտիդ արապկերէն ա-սեն պատրուճ, և մեք չկարացաք ճշմարտել 'ի թարգ-մանէն. և ոյք ճշմարտեն՝ թող գրեն։ Եւ դարձցուք յանսանուխն. իւր օգուտն է որ կերակրոց կարօտ բե-րէ, և զործն կտրէ. և իւր պիղծն այն է՝ որ կտրէ. և թէ 'ի վերայ խոցոյ դնես՝ յաւիտեան այլ չպաղօղա-նար բնաւ։

## ԴՈՒՌՆ ՄԿԵ.

Վասն Սխտորի։

Սխտորն զպիտակ և զփաղ գետինն սիրէ, որ չկի-նի կաղձին. և 'ի դեկտեմբերի ժԶ օրն է իւր դնելն մինչև 'ի փետրվարի եօթն օրն. և որ զինքն 'ի փուլն դնէ և կրկին 'ի փուլն ժողովէ, նա ով ուտէ՝ հոտ չգայ 'ի բերանոյն։ Եւ ինքնդ տաք է և չորային. զքամին վարէ, զպղղամն կտրէ, զգոզն վարէ, զճիճին 'ի փորն սպանանէ. և օձահարի և կորահարի և կատաղի խա-ծածի օգտէ։ Եւ թէ այրես և 'ի մեղրն խառնես և օծանես, աղուեսացաւի օգտէ։ Եւ աչացաւի՝ որ յաղ-բիւրն նասուր լինի, հոռմերէն Անոպիա [1] ասեն, թէ օծանես օգտէ. և ակռացաւի օգտէ. զմաստի, արծու-նաց օգտէ։ Ծեծեալ և 'ի հուռմ ձէթ խառնեալ և 'ի մեղր խառնեալ, կողացաւի օգտէ։ Եւ վայրի սխտոր որ է սկորդօն, շատ ուժով է քան զտանուդ. և 'ի Թրակխսին և 'ի մեծ մաձունն խիստ մտանէ. և զվերի օգտակարութիւնսն ունի, և այլ աւելի։

1. Իւպօպիա, ὑπώπια է յունարէնն. և է ըստ բացատրութեան մե-րոյս՝ անգութիւն կամ սեռ ինն գոյացեալ 'ի յատակ (աղբեւր) աչացն, զոր Թուրքք բառիւ նասուր (նասըր) կոչէ։

## ԴՈՒՌՆ ՄԿԶ.

### Վասն Սոխի:

Սոխն զկարմրակ հողն սիրէ. և երբ կամենաս դընել՝ զտերևսն հան յիւրմէ, և 'ի սխտորին ժամն է իւրդ. և զգետինն տասն օր յառաջ կակղեա, և ըղխոտն և զտակն հան. և զերդ մաղած արա զգետինն և դիր, նա մեծ գլուխ առնու և աղէկ: Եւ թէ քըրխայն շատ մազմզուկ ունենայ դու կտրեա որ մեծ լինի: Եւ որպէս զխստորն գրեալ եմք՝ 'ի փուշն դնես և 'ի փուշն հանես և ժողովես՝ ով ուտէ հոտ չգայ, և քաղցր լինի: Եւ թէ ուզես որ շատ դիմանայ՝ 'ի յեռջուրն մխեա և հան, յարևն չորացո աղէկ, և 'ի դարէ յարդն թաղեա և պահեա: Եւ թէ զսոխն ծեծես և 'ի մեղր խառնես, և 'ի վերայ կողացաւի դնես՝ օգտէ: Եւ թէ ընտրէ ոք զկակուղ սոխն և յամէն վաղվընէ մեղրով ուտէ, զմարմինն առողջ պահէ. և սպեղանիք ելնդոց և խոցից շատ օգտէ: Եւ խստորն պնդած է, զի զողջացեալն կրկին խոց առնէ: Եւ թէ ծեծես զսոխն և քացախով 'ի վերայ պիսակի ածես, և յարևն ունենաս, օգտէ: Նոյնպէս թէ 'ի վերայ աղուէսացաւի օծանես՝ զմազն բերէ: Եւ թէ զսոխին ջուրն 'ի թարախոտ ականջ ածես՝ օգուտ է:

## ԴՈՒՌՆ ՄԿԷ.

### Վասն Հիլխնի, որ է Ծնեբեկն:

Հիլլոնդ զպարարտ գետինդ ախորժայ և զարեգակնակողմն, զի հանապազ ջեռուցէ զինքն, և զսիկն և զանտառախիտ վայրսն: Եւ իւր ցանելն այսպէս է. փորել տուր զգետինն խորու, 'ի մարտին կամ յապրիլին, և փոսեր արա խորու երեք մատն, և յամէն փոս 'ի հիլլոնին հնտէն եօթն հունտ. և ծածկեա նոյն հողովն. տատին մի մօտիր, բայց միայն քաղհան արա զպիղծ խոտն. զի ծնեբեկդ վայրի խոտ է, և չախորժէ զվատակն. և յետ երկու տարւոյն 'ի գարնանայինն

ժամն փորեա զտակսն, և տակաւ մի աղբ ած, որ հե-
րիք լինի. և որքան այսպէս առնես՝ շուտ կերակրիս և
քաղցր լինի. և 'ի յերրորդ տարին կանուխ յառաջ
որ ծլէ՝ փորեա, և քաղհան արա զտակսն, և աղբ մի
նուբր. տեսանես յետ ամսոյ մի որ ծլէ և ուրախացու-
ցանէ զքեզ։ Եւ յորժամ քաղես՝ մի կոտորեր զծիլն,
որ մնացորդն ցօղուն հանէ, և տակն այնու իւր հերիք
առնէ. այլ տար զձեռնդ, և գետնախառն բռնեա և
քարշեա, որ ծիլն 'ի տակն կտրի և ելանէ. նա պիտի
որ անձարակ 'ի տակն և այլ ծլեր հանէ. և այսպէս
յամէն տարի նոր հիլոն ունենաս։ Եւ յամէն քա-
ղել՝ փորեա զտակսն. և թէ 'ի փորելն մազմզուկ վե-
րանայ, քարշեա և կտրեա. նա քանի բնատակն խոց-
նայ՝ այլ շատ հանէ զծլերն։ Եւ թէ կամիս ցօղուն և
հունտ առնուլ, զանազան և զյետին ծիլսն թող և
առ։ Եւ ինքն զերաշտն սիրէ և ոչ զջրայինն, մի
ջրեր. և թէ ջրես՝ 'ի յեղն աշնան ջրեա, նա աղէկ է, և
շատ պտղաբերէ և թազէ լինի։ Եւ ինքն արձակ լի-
նել սիրէ յիրերաց. զի թէ տակուիճքն յիրեար չնկղը-
կին՝ չտան պտուղ։ Եւ յորժամ ուժաւորի՝ հան տըն-
կեա. և աճեցո թէ կամիս դաշտ մի, այս օրինակաւս։
Եւ օգտութիւն մի կայ 'ի սա, զոր արժան համարե-
ցաք գրել, թէ և դժուարաւ հաւատայք զարմանալի
բանիս. զի թէ չէաք փորձիւ հաստատեալ՝ ոչ էաք
ընդ գրով արկեալ։ Ա'ռ խոյի եղջիւրք մեծ և անա-
րատ. և արա յիւրեան փոքր ծակ մի, թէ զինքն որ-
պէս նշան տուաք՝ դատարկ առանց հնտի[1], նա յիւր-
մէ բնութեամբ հիլոն ծլէ անհնար։

## ԴՈՒՌՆ ՄԿԸ.

### Վասն Դդմի, կօղայի և Պատիխի։

Դդումն և կօղայն և սեխն, զաղբն և զաղէկ փու-
րած գետինն սիրէ, առաւել ևս յորժամ չորատե-

1. Այսպէս յամենայն ՕՕ. Թուի պակասել [illegible] բայի. կամ [illegible] ընթեռնուլ զգրեալն [illegible]։ Բնագիրն ասէ, [illegible]։

րեան լինի․ զտակսն փորեա և քաղհան արա, և ընդ-տակսն 'ի վեր կուտեա․ և քանի այլ մեծանայ և տա-կաւ՝ այլ փորեա և զհողն ած։ Եւ ջրելն զդդումն՝ մատղաշցընէ և քաղցրացուցանէ և գձցընէ․ և թէ լեղի լինի՝ առ փուշ մի և զծիլն ծեծեա, նա ջուրն քամի և դդումն քաղցրանայ, և այլ շատ բեր առնէ։ Եւ երբ փորես՝ երնեա զփուշն 'ի վերայ պարտիզին․ զի որքան փուշէթաթախ լինի՝ այլ լաւ է բերին և օ-գուտ։ Եւ թէ ուզես որ դդումն երկայնանայ, առ ջուր ամանով, և ներքև դդմին ոտիցն թերիկախեա [1], այնպէս որ չհասանի յինքն, զերդ չորս մատ 'ի յետ կենայ դդումն․ պիտի որ բնութեամբ 'ի ջուրն հրասա-նայ․ և դու յամէն օր տես, քանի ցածանայ՝ զջուրն ցածացո․ և այդու երկայնացո որչափ և կամիս։ Եւ թէ կամիս որ դդումն բոլոր լինի, զկուտն ընդ քօշն ծակեա և հան, և դիր մի ընդ բերանքն․ նա դդումն բոլոր լինի։

Եւ թէ ուզես որ դդումն և սեխն և կաւդայն քաղ-ցըր լինին, առ կաթն և մեղր, յիրեար խառնեա, և զհունդն 'ի ներքս 'ի թըջոց դիր երեք օր, և ապա ցա-նեա․ բերն քաղցր լինի և լաւ։ Եւ թէ ուզես որ կու-տըն փոքր լինի, առ շուշմայ, ծեծեա, և պտղի ձիթով շաղախեա որպէս մնչած․ և ապա զձէթն հան, և ըզ-հընդանքն 'ի ներքս 'ի յօծ դիր երեք օր․ և ապա դիր, կուտն փոքր լինի։ Եւ թէ ուզես որ շուտ պտղաբերին, զընատակն հատ յաշունն և աղբեա, և հացի գուռն կամ ճառայի ոտք 'ի վերայ կործեա․ և երբ ժամ լի-նի՝ բաց, և ծլեցո․ և կանուխ պտուղ առ։ Այլ ազգ․ առ զամբիւղանի, և լից աղբահողով․ և զհնդանքդ 'ի ներքս դիր մենակ, և կանուխ կոտորած ջրով [2] ջրեա հետէն, և ծլեցո․ և 'ի ցերեկն յարևջեռն հան և 'ի գիշերն և 'ի ցուրտն՝ 'ի տունն պահեա․ և այս օրինա-կաւս տար մինչև 'ի կանուխ դնելոյն ժամն․ և ապա սար բուսած հան, սատրեա․ նա այն որ չոր կուտ դը-նուի՝ երբ ժամանէ այնմ․ զի այն սուր ժամանեցուցան

1․ Միւս 00․ դէր և չախէա։

2․ Բնագիրն ասէ մաղեալ հող աղբախառն խոնաւացուցեալ․ Թերևս նշղորած գրելի էր, զի կոլատր է աղբ անասնոց։

նէ և մենակ բեր տայ։ Եւ թէ ուզես լվիճ կամ այլ կերիչք չմերձենայ 'ի պարտէզդ, 'ի մօտն ծոթրին ցանեա, փրկի։

Եւ հինքն փորձեալ են վասն կոդայլին, գրել չէ պարտ. զի փորձով է որ թէ փոքր տղայ տաքանայ, իւր չափով երկայն կոդայ մի հետ փոքերին[1] յօրոցքն պառակեցո՝ 'ի լերդին դեհն, նա տաքութիւնն անդ փոխի և տղայն լաւանայ. և թէ 'ի տղային յամէն ձեռն մէկ մի դնես, նոյնպէս արժէ ջերմանն։ Եւ կոդային ուտելն՝ 'ի վերայ կերակրին քան յանօթեաց։

Եւ թէ ուզես որ յամէն ձմեռն ունենաս զինքն, 'ի կարաս ուր սպիտակ գինի լինի կամ անոյշ քացախ, կախեա զինքն, այնպէս որ 'ի գինին չհասանի, և 'ի վերայ ծեփեա. երբ ուզես՝ բաց, թազէ գտանես։

Եւ թէ զմատղաշ դդումն 'ի յարդն թաղես, շատ դիմանայ։ Եւ ոմանք առնուն զմատղաշ դդումն և 'ի չորս ճեղքեն, և զկուտն հանեն, և եղջուր ածեն 'ի վերայ, և 'ի գիշերն յաստեղմն պաղեցուցանեն. և 'ի քաղն՝ 'ի գազան աղջուր դնեն, և հանեն և պահեն, նա շատ դիմանայ։ Եւ թէ ուզես որ դդումն լուծումն առնէ, առ սակամոնի, թրջեա ջրով, և զկուտն երեք չորս 'ի ներքս թրջեա և ցանեա. ով զդդումն ուտէ՝ մաղձադեղ է։ Եւ թէ զսակամոնուոյն կանաչ ցօղունն ոք եփէ այնչափ, որ 'ի տասնէն մէկն մնայ, և տապա զբանջարն քամէ և յայն ջուրն թրջէ, զնոյնն առնէ։

## ԴՈՒՌՆ ՄԿԹ.

### Վասն վարդենեաց ։

Եթէ ուզես որ կանուխ վարդ առնես, փորեա ըղշուրջն տակուցն արձակ՝ թիզ մի, և եղկ ջրով արբո յօրն երկու հետ. մենակ վարդ տայ։ Եւ թէ ուզես որ շատացուցանես, պառակեցո 'ի ձղերոյն և հող արկ 'ի վերայ. ծլէ և շատանայ, եթէ յամէն տարի զաճն պառակեցընես։ Եւ այլ ազգ. 'ի շարժն՝ կտրեա 'ի ձղե-

1. Այսինքն, հետ փոքրիկ տղային։

քուն և սատրեա, որ մազմզուկ առնու, և ապա հան ծնկեա ուր կամիս. և այսու շատացո քանի կամիս: Բայց զգետինն աղէկ պարտ է շինել. և այս օրինակաւ շինած վարդն անուշահոտ լինի: Ի Թէֆնէն վարդ պատրուսեա, տերևականաչ վարդ լինի:

## ԴՈՒՌՆ ՄՀ.

*Վասն կանկառի, որ զինքն անուշահամ և անփուշ շինես:*

Առ զխուր հունդն և 'ի վարդի ջուրն, կամ 'ի կաս-լայի ջուրն կամ 'ի նռնոփարին, կամ 'ի յեղըրդըն, այս-ինքն 'ի խլէֆին, երեք օր յաշուննն՝ 'ի թրջոց դիր. և ապա հան յաղէկ աղըոտ կակղած գետինն ցանեա նոսր. և տես թէ ինչ լինի: Եւ թէ 'ի հնտէն զփշերն սուր դանակով կտրես և ցանես, երբ բուսանի՝ ան-փուշ լինի:

## ԴՈՒՌՆ ՄՀԱ.

*Երբ որք 'ի բանջարացն զծառուց ածուն ախորժան,*
*և որք զանձաւան:*

Քէրէֆսն, ստեպղինն, անանուխն, սամիթն, ճա-կընդեղն, հազարն, կոտեմն, քուռաթն, բողկն և շող-գամն: Եւ որք զցանցառ ծառուտն ախորժան, կա-ղամբն, կօդայն, դդումն, սոխն, խստորն, չամանն: Եւ 'ի Հռոմայ գաւառն ցանեն յայսպիսի տեղս՝ մա-նանեխ, աֆիոն և չաման: Եւ որք զանծառն և զարևն սիրեն. կանկառն և ծնեբեկն, և ցորեանն և գարին, և այլք բազումք, զորս մոօք գտանէք:

## ԴՈՒՌՆ ՄՀԲ.

*Վասն Սունկ բուսուցանելոյ:*

Առ խմորջուր արա, և տար զընկուզի կամ զկաղնի թօրխն կամ զչոր կնձակն, ջրեա. նա մենակ սունկ հանէ: Եւ թէ ուզես առնել որ 'ի գետնէն ելանէ, զիտ

կակուղ գետին, որ իւր բոյսքն փշուտ և կառնուտ լինի. 'ի յամպ և 'ի պղտոր օր այրեա զխնքն. Նա զերդ անձրեւ գայ՝ լինի սունկ: Բայց զխամնձդ՝ այնպէս ձգեա, որ անձրեւն անցանէ. և թէ յամէ՝ ջրել պիտի. Նա լինի. բայց 'ի ջրելոյն չլինի այնպէս պարարտ՝ զերդ անձրեւին. անձրեւին շնորհքն 'ի հետէ:

## ԴՈՒՌՆ ՄՀԳ.

*Վասն Ձիթենեաց:*

Նախ արժան է զօգտակար և զամենընդունելի և զվայելուչ և զօրհնեալ զձիթենւոյս զդրութիւնն և զսահմանն ընդ գրով արկանել. և ապա զբարեբուղխ պտղոյն զպարարտ և զօգտակար իւղոյն, վասն զբօսանաց մարդկան. որպէս աւանդեցաւ մեզ 'ի հնարագէտ իմաստնոցն, որք կամեցան յիւրեանց վաստակոցն վայելել զկենցաղս, և յայլոցն հրաժարել: Ուստի արժան համարեցաք նախ առաջին այն ծառոյն թէտպիր[1] դնել՝ որք թափեն զծաղիկն և ապականեն ըզպտուղն. և ապա զտնկելն և զսերմանելն, զտածելն և զշինելն: Եւ նախ առաջին սահմանն է, որ մարդ թէ սուրբ չլինի յախտից և 'ի մարմնական աղտեղութեանց, չմերձենայ 'ի ծառն, ոչ 'ի հօտել և ոչ 'ի տնկել և ոչ 'ի քաղել զօրհնութեան պտուղս: Այլ արժան է որ գործեն զսա մաքուր և սուրբ յամենայն աղտեղութեանց լինիլ, մանաւանդ այնոքիկ որ են...[2] զպտուղն՝ պարտ է որ ամենեւին կոյսք լինին 'ի կանանց խառնակութենէ. և թէ ոչ՝ վնաս է: Եւ հինքն այնպէս են ճշմարտեալ, որ Կիլիկիոյ երկիրն եւս առաւել Անարզաբոյ թեմն՝ լաւ և գովելի պտուղ և անուշահամ ձէթ ունի քան զայլ երկիր. և կայսերացն և մեծամեծաց անտի բերէին՝ վասն մարմնաւոր պիտոյից իւրեանց. եւս առաւել Կիւլիկեցիք և Աղէխացիք այսպէս առնէին սրբութեամբ զգործն, և այնու ա-

1. Կարգ, կանոն, խրատ:
2. Այսպէս դատարկ յամենայն ՕՕ. գուցէ ԿՈՒՆ պիտէր:

ռաւելուլին 'ի գործն ազնուաբար[1] քան զայլ գաւառսն։ Եւ զայս Յուլիանոս իմաստունն և բնութեանց գի- տօղն եգիտ և ուսոյց մարդկան։

## ԴՈՒՌՆ ՄՀԴ.

*Թէ ո՛ր ազգ գետին կամ որպիսի վայրք պատշաճի ձիթենւոյն։*

Նօսր և փաղ գետինն և տաքն պատշաճի ձիթե- նւոյն, և վասն այսորիկ 'ի Կիլիկիայ և յԱնարզաբայ ա- ռաւել աճէ և զարգանայ քան յայլ գաւառ. զի հողն և օդն այսպիսի է, նոյնպէս և սպիտակ է և գիջայրն. և այսպէս տայ բազում և շատ ձէթ պարարտահամ։ Եւ սև գետինն թէ քարուտ և կոկնուտ լինի՝ աղէկ է, բայց ոչ զերդ սպիտակն. և աւազն աղէկ է թէ ա- ղի չլինի։ Բայց 'ի խորու և 'ի հաստ գետինն՝ որ մքռայ ունենայ, ամենևին չէ պարտ տնկել ձիթենի. զայն- պիսին սերմանց և նռնենեաց համար թող. բայց թէ 'ի հարկէ իմեքէ տնկես եղենի, այսինքն ձիթենի, սա- կաւ պտուղ առնու, և փտձէթ է, և տուրտինն ձի- թին աւելի լինի քան զձէթն։ Եւ հաստ և կաղձին գետինն ամենևին վատ է, զի պինտ է, և զերդ լերդ, և մասունքն ըմբռնեալ զիրարօք, և չտայ մտանել ա- րեգական ջերմութեանն 'ի խորուն։ Եւ կարմիրն քան զամէն վատ է. զի շատ ջերմանայ և խիստ պատառո- տի, և աւերէ զծառն և զբերն։

## ԴՈՒՌՆ ՄՀԵ.

*Վասն թէ ո՛ր օդ լաւ է ձիթենեացն:*

Տաք և չոր, և տաք և գէջ օդն յոյժ օգտակար է, որպէս Կիլիկեցւոցն և Լիպիացւոցն օդքն՝ զովելի և

2. Մի Օ. Սադէխացիք. Թերևս Անդէխացիք էր յառաջին օրի- նակին, փոխան գրելոյ Անտիոքացիք։ Իսկ 'ի բնագրին բանս այս սրբութեամբ գործելոյ՝ ասի վասն Անարզաբոյ բնակչացն, և մի անգամ միայն յիշի Կիւլիկիա. իսկ իմաստունդ Յուլիանոս՝ ոչ յիշէ և ոչ Ճանիայի։

օգտակար են եղենեացն։ Զի հանապազ յամարանոյն՝ պարխորցին և հարաւայինն հանդերձ արևելեան հողմովն փչեն և զարգացուցանեն զամենեսեան. և այսպէս առաւել պտղաբերի և արդիւնանայ։ Եւ բարձրագոյն կողերն և մատներն և տափերն՝ ես առաւել լաւ են. զի օդն անդ լաւ բանի. և այս տեղեաց եղն առաւել ազնիւ լինի և պարարտ. և դաշտային և ցած տեղեացն հակառակ են սոցա. և ձէթն թանձր և մրրոտ լինի և վատթար։ Եւ այսու ստուգեալ եմք որ լաւագոյն օդքն ապրեցուցիչ են տնկոցն. և որպէս հաստ օդքն վատթար են տնկոցն, նոյնպէս և նօսրագոյն և միջասահմանն՝ օգտակար է և լաւ յամենայն կողմանց։ Եւ վասն այնորիկ արձակ պարտ է տնկել զծառսն, որ օդն բանի 'ի միջոցն և գոյացուցանէ զպտուղն։

## ԴՈՒՌՆ ՄՀՁ·

*Վասն թէ յոր աւուրս և 'ի ժամս պարտ է տնկել զեղենենին, այսինքն ձիթենին։*

Բազում անգամ ասացաք վասն ձիթենւոյդ, թէ 'ի տաք և 'ի դէջ տեղի և 'ի գաւառ պարտ է զնա տընկել. և թէ յայսպիսի հաւայէս խուռլի և խոռի աճումն տնկոյդ, և գոյացութիւնն խոռի. և վասն այսորիկ պարտ է զձիթենին կամ յաշունն տնկել կամ 'ի գարուն։ Զի երբ յաշունն տնկես՝ նա ունենայ 'ի ջեռութենէ արեգականն, և գան անձրևքն, և տաս զջուրն՝ որպէս տնկին արժան է, և շահի տունկն զերեքն, և արքինանայ։ Եւ 'ի գարնանայինն երբ տնկես՝ նա խըմորեալ է ձմեռնային անձրևն զգետինն և կշտացուցեալ, և գայ նոյն ջերմութիւն արեգականն, և շահի զնոր տունկն. նոյնպէս է երեքն՝ և գոյանայ. բայց ճըշմարտած է որ աշունն լաւ է քան զամէն ժամ։ Բայց թէ 'ի գարնանային ժամն կամենաս տնկել, երբ Բազմաստղն անկանի և ԺԵ օր անցանէ՝ տնկեա. որ է յունվար ամսոյ 'ի Լ օրն, և 'ի քաղցրաշունչ օդոյն շարժին։

## ԴՈՒՌՆ ՄՀԷ·

*Յաղագս փոսերոյն, եթէ որպէս պարտ է առնել զտնկին ։*

Եւ քան զամէն տնկել՝ փոսերոցն է լաւ. և թէ տարւոյ մի յառաջ տաս առնել՝ լաւն և պատշաճաւորն այն է, որ արեգական ջերմութիւնն եփէ զնոքն, և անձրևաց ջուրքն ժողովին և արբուցանեն զնոքն ։ Եւ ցամաքային օդքն և ձմեռնային սառուցմունքն քրքրեն զնոքն. և մեռուցանեն զմազմզուկն յայլ ազգ բուսոցն՝ զինչ անդ կենայ. երբ դնես զտունկն՝ նա կակուղ գտանէ զհողն, և զմազմզուկն հեշտ արձակէ ։ Եւ թէ յաղագս տնկութեանն լինի [1], նա 'ի պակասն երկու ամսոյ պիտի, կամ խիստ պակասն՝ ամսոյ մի անհնար ։ Եւ բազում անգամ լից զփոսերդ խոտմշով [2], և բռընցո, որ աղէկ այրի. և թէ յամէն օր կարես առնել, խիստ լաւն այն է ։ Եւ զխորութիւն տնկին ըստ գետնոյն որպիսութեանն առնեն. տես զտունկն թէ յիւր տեղն որպէս կեցեալ է, թէ դուր լինի տեղն՝ թիզ մի այլ խոր առա և տնկեա, և թէ դար՝ երկու թիզ. և այսպէս է տնկին փոսոյն սահմանն ։

## ԴՈՒՌՆ ՄՀԸ·

*Վասն տնկելոյ ազգի ազգի կերպիւ ։*

Են ոմանք որ 'յանճարակութենէ՝ զճիւղն ոստաքանց առնեն և սմքակած տնկեն. և այլք պանդղրած և մազմզկած տնկեն. և են որք տակցի տունկ հանեն և տնկեն ։ Բայց գիտունքն 'ի վաստակաւորսն՝ զայս փորձեալ և գովեալ են, որ առնուն զուռն 'ի տակուցըն՝ հանդերձ հենայովն, և տանին 'ի մաշարայ մի, կուռ հետ իրերաց տնկեն, և անդ բռնեցնեն և տակռեցընեն, և ապա հանեն և տանին տնկեն ուր կամին ։

1. Այսինքն. իսկ յաղագս տնկելի ձիթենեացն՝ գիտելի է, զի, և այլն ։
2. Տ. 'ի Բառս. բնագիրն ասէ ուռերով և եղեգամբք ։

Եւ տունկքն 'ի յաղէկ ազգէ պիտին ընտրած, լայնատերև, կակուղ և շիտակ, և զինչ իւր սովորական հողի նման դիր, որ անդ պանդրի. և երբ հանել կամենաս, դու սուսրով կամ այլ իրօք նշանեա զարևելից կոյսն. և երբ տնկես՝ դու այնպէս դիր, զերդ որ այլ տնկոցն գրեալ եմք զսահմանն: Եւ որքան ստէպ ջրես՝ լաւ է: Եւ երբ զփոսերն շինես՝ կանգուն մի յիրերաց հեռ շինեա. և 'ի յատակն օտար աղբ լից հող. և ըղտընկին զանկերն կուռով օծ և ապա դիր. նա անսղալ բռնէ: Եւ թէ վարսամով տնկես, զցիցն այնչափ մի հաստ արա, որ մտանէ տնկին կոճակն. և յերկայն այնքան՝ որ խորութիւնն[1] հերիք լինի: Եւ երբ քշտես և հանես զվարսամն և դնես զտունկն, խճեր ձգեա 'ի ներքս, որ զջրին ճանապարհն 'ի բաց պահէ. և քանի խճերով լնուս զծակն՝ լաւն այն է. և զինքն լաւ փորած և կակղած, որ ջուր մտանէ. զի ինչ արժէ որ զգետնին երեսքն ջրես. ջանա որ զգետնին տակն ջրես. և երբ այսպէս առնես՝ նա տունկքն շուտ աճին և ճարտար մազմզկին, և զքեզ արդիւնացուցանեն, որ տնկես ուր կամիս:

Եւ թէ ոք 'ի տեղ ուր ջուր հասանի՝ տնկէ զձիթենիսն, որ երբ ուզենաս ջրել կարես, նա լաւն այն է քան զամէնն. բայց խիստ շատ ջրելն՝ դեղնեցուցանէ զծառսն. բայց երբ 'ի չափն տաս զջուրն, նա պըտուղն աղէկ միս առնու, և կուտն փոքր լինի և ձէթ տայ: Եւ լաւ տունկն 'ի մեծութիւն և 'ի հարստութիւն առնէ, որ զերդ աւն մի[2] չափ լինի. և այլ պակասն քանի այլ լինի՝ յամէ 'ի պտղաբերելն. և երկայնքն գիրկ մի[3]: Բայց թէ 'ի բարձր գետին լինի՝ այլ կարճ արա. և թէ 'ի տակն խիճ և քար լնուս՝ աղէկ է, որ հով պահէ: Եւ են որ տափակ սալ դնեն ներքև յատակն, և զտունկն 'ի վերայ. նաև այդ աղէկ է. բայց շաղախ արա յարդլի, և զսալդ ծեփեա, ուր տունկն նստել կամենայ: Եւ նասքն զոր շինես 'ի պա-

1. Յոր. խորու. խն. եղաւ ըստ միւս ՕՕ:
2. Աւն կամ Օն՝ թուի չափ հաստութեանն՝ որով արժան համարի լինել տնկացու ձիթենւոյն:
3. Միւս ՕՕ. երկու մարդագիրկ:

րան՝ պիտի յարևելս, յարևմուտս, 'ի հիւսիս և 'ի հարաւ. և արձակութիւն յիրերաց 'ի յետ ութ գիրկ: Եւ զտակերն փոս թող սակաւ մի, որ ջուրն արգիլի և հանգչի 'ի ներքս, և բերկրեցուցանէ զտունկն:

Բայց պարտ է գիտել որ պատրուսեն լաւ է քան զայլպիսի տունկ. և քաջ կնդել պիտին և ապա պատրուսել: Եւ պտուղքն ազգի ազգի են, մէկ՝ հապալուէ պտուղ, և ինքն մանր լինի, և վասն այնր իւրն հապալ[1] ասեն. և մէկայլն՝ կաղապտուղ ասեն, և այն կաղնայի պտղոյն է նման, և յայն ձևն է. և մէկայլն երկայն պտուղն է, և ինքն է քան զամէնն լաւ և գէր, և անսղալ յամէն տարի պտուղ տայ. բայց կայ որ տարեբերք են:

Եւ գիտելի է որ ամենայն ծառ ձիթենի որ կտաբոյս լինի՝ նա վայրի է, և ոչինչ. անհնար պատրուսել պարտ է. զի թէ պատրուսես՝ այլ արքինի լինի: Եւ ոմանք զփոսն արձակ առնեն, և չորս տունկ 'ի մէկ փոսն դնեն, որ թէ մէկն սղալէ՝ նա մէկայլն անսղալ մնայ. և թէ չորս հետ իրերաց բռնեն և զչորսն թողուս՝ խիստ աղէկ է, և ուժով ծառ լինի. և թէ ոչ՝ որ հանես և տանիս, քանի կամիս լինի:

## ԴՈՒՌՆ ՄՀԹ.

*Ներբէ որպէս պարտ է տածել և ծառայել:*

Զտունկն զոր յաշունն տնկես՝ անշարժ թող մինչև 'ի գարունն, և 'ի գարնան զինքն չորս հետ պատրաստութեամբ փորեա, որ յինքն չդիպեցուցանես. և փոսեր և առուներ պարտ է շինել, որ երբ անձրև գայ, նա ամէն ջուրն 'ի տակն ժողովի և հանգչի. և յառաջին ամառն որ գայ, անհնար ամէն ամիս ջրով կըշտացնել պիտի: Եւ թէ անպատեհ ուրուք ակնուռ լինի՝ կտրեա. տես որ երկաթ չհասուցանես յառաջին տարին, զի ահոկէ. և լաւ է որ ընաւ չմօտիս, քան թէ երկաթով կտրես. ձեռամբդ քաշեա, և հաստոցք

1. Համեմատէ արաբացի հալպ բառի, որ է հաստ, հաստագեղ:

տարընայ դիր։ Եւ զկնի մեկայլ տարւոյն՝ յաշունն փո-
րեա զտակն, և արձակ յիւրմէ փտած աղբ ա՛ն. և
թէ կանուխ անձրև գայ յաշունն՝ փորեա, և զամէն
ջրագնացսն և զփոսերն ողրդած կա՛լ 'ի տակսն։ Նոյն-
պէս և 'ի յերրորդ տարին արա յաշունն. և սուր հօ-
տոցով հօտեա. և տես որ չթողուս, բայց միայն հինգ
ձիւղ 'ի ծայրքն. և զծառն այնու բոլորեցո. և նոյն
օրինակաւ ա՛ն զաղբն։ Նոյնպէս արա և 'ի չորրորդ տա-
րին, մինչև 'ի տասն, որպէս գրեալ եմք. բայց երբ
զիւր չափ պտղիկն քաղես, 'ի հօտելն և 'ի բանելն
ձեռնարկեա, և յետ տասն տարւոյն ծառայեա, կթեա
և կե՛ր։

## ԴՈՒՌՆ ՄՁ.

Վասն զմեծ ծառսն տածելոյ և ծառայելոյ:

Բազում անգամ զձիթենեացդ որպիսութիւնն
պատմեցաք. և արդ արժան է զմեծ ծառոցն պատ-
մել. և առաւել զտակուց փորելն պնդեմք[1] յաշունն
և 'ի գարունն, նոյնպէս և զաղբելն։ Բայց նոր տնկին
ասացաք բաց թողուլ. և աստ՝ երբ ծառն մեծանայ՝
զհողն ընդ տակն 'ի վեր կուտել. բայց 'ի գիջային
վայրսն զաղբն պակաս ա՛ն, և 'ի չորայինն՝ սակաւ մի
աւելի. բայց արձակ ա՛ն և հեռի 'ի տակուցն, որ չը-
հասանի, թէ ոչ՝ չորացուցանէ զծառն։ Եւ աղէկ
ծածկեա, և զխոտսն հատ 'ի տակուցն. և երբ հօ-
տես՝ աղբեա և փորեա, թէ ոչ՝ ահօկէ ծառին։ Եւ
մի՛ թողուր որ ծառն շատ բարձրանայ, զի չէ աղէկ,
և պտղին պակասութիւն առնէ. և իմաստունքն երեք
գիրկ են սահմանեալ զբուն բարձրն. և զայլ աճն՝ 'ի
լայնքն տուր իւր. և այսր աղագաւ զճիւղսն 'ի վայր
քարշեն, և քարեր կախեն որ ցածանայ։ Եւ զհօտելն
յամէն երեք տարի հետ մի պարտ է առնել. և զակն-
ռուսն յամէն տարի պարտ է քարշել և տանել տըն-
կել և շատացուցանել զնասըն։ Եւ ոչխարաց աղբն
լաւ է քան զայլ աղբ, և յետ այնր գրաստուց աղբն։

1. Փռ. Insister.

Բայց շատ գրեցաք և պնտեցաք, 'ի ծառէն կանգնաչափ մի՝ երեսք մի հող ած և երեսք մի աղբ, և ապա հողով ծածկեա. և երբ զբերն առնուս և հօտես, և զակնուռսն քարշես՝ յայն ժամն արա։

## ԴՈՒՐՆ ՄԶԱ.

*Այլ խրատք ձիրեմեաց, որ չրափէ զպտուղն և ոչ զծաղիկն. և թէ պատահարի ուրուք ծառն՝ դեղ որ բժշկի։*

Եթէ առնես զխուր ձիթինն տուրտինն և խառնես 'ի ջուր, և թանաս զտակն և արբուցանես, շատ օգտէ. և թակլայի աղբն օգտէ. և թէ սպիտակ հող և կուշաղախ առնես, և գետի խօզ[1] չոր 'ի ներքս խառնես և 'ի տակսն ածես, օգտէ. և թէ մարդոյ հնացեալ գոզ ածես՝ զամէն աժենայ։ Եւ զորն ածես 'ի սոցանէ՝ մնակ զտակսն ծածկեա, և զհողն ընդ թազուկն 'ի վեր ած և կուտեա, և զջրելն մի մոռանար, քանի կարես ջրեա։ Եւ թէ ուզես որ շատ բեր առնէ, զայս դեղս արա. չափեա 'ի տակէն 'ի վեր զբազուկն երկու թիզ, և գայլիկոնով կամ դրով ծակեա՝ 'ի հիւսիսոյ դեհէն 'ի հարաւ թափնթափ. և առ 'ի լաւ և 'ի բերուիկ ծառոց՝ որ իւր պտուղն 'ի նման լինի՝ երկու վարոց. և զմէկն 'ի ծակուն մէկ դեհն ած, և զմէկայլն 'ի միւս դեհն, զերդ կօշկարի չուան. և այնպէս քարշեա, որ այն անտի գայ և այն անկից, և զծակն վառով պխնտ լնուս, և ապա խծուծ յերկու դեհէն կըռերեա, և սպիտակ յարդալի շաղախով ծեփեա զծակտին. և զվարոցիդ զերկուսն ևս 'ի մէկ ծառէ առ, ըզմէկ վարոցն 'ի հիւսիսոյ դեհէն, և զմիւսն 'ի հարաւոյ։

Եւ ծառ որ շատ տերև բերէ և քչիկ պտուղ, 'ի բնատակն՝ որպէս յառաջն գրեցաք՝ ցից զարկ, կամ

1. Միւս ՕՕ. Գէտի աստղ չէր. Խոյլ բնագիրն յայտնապէս ցուցանէ ջրային խոտ կամ մուռ լինել, φυκία, alga. եւս հայերէն բառդ յընտիր օրինակիս գրեալ էր խաւղ. բայց 'ի բժշկարանս նշանակի՝ խաւղան՝ գործածութիւն. կամ խօղ՝ ջրի մամռ, գորգախոտ. և 'ի Ղազար փարպեցի ընթեռնումք, խօղանէր մամռախնդիր հաւս։ Զսոյն Թուլի մերս ասորև ջրախոտ ասել։

Ճեղքեա և վար դիր։ Եւ թէ զծաղիկն թափէ, կամ շատ բեր առնու և չհասուցանէ, դեղն այս է. փորեա բոլոր՝ որ տակն բացվի. և 'ի վերայ բուն հաստ տակին երկու քթոց ջրախոտ և խոզի աղբ ած, և 'ի մանր տակսրն այլ պակաս. և զիւր ձիթի տուրտինն՝ ջրխառնած 'ի տակսն ած, և արբո. և թէ ջրի աղբն չլինի և ըղտուրտինդ ածես՝ հերիք է։ Եւ այն պատահարին որ 'ի հողմոյ գայ, կամ ճիճւոյ՝ որ զտակսն ուտէ և վատուժացուցանէ, զդեղերն և զամենայն խրատսն զոր վասն այգեաց գրեալ եմք, զայն արա, նա օգտէ։ Եւ քան զամենն լաւ փորձով մկնասոխն է, որ զտակքն բանաս և 'ի շուրջն շարես և ծածկես։

## ԴՈՒՌՆ ՄՋԲ.

*Երբ ո՛րպէս քաղէ ոք զպտուղն։*

Են ոմանք որ ձողեր թափիչք առնեն և թափեն. և այն վնաս է, աւերէ զծառսն, և զձէթն. զի հողոտի պտուղն և աւերէ զձէթն։ Պարտ է երեքուանի բարձր սանդուղք շինել, և տոպրակ կախեն քաղողքն 'ի վզերն. և զծայրից ճիւղսն պատրաստ իջուցանեն և քաղեն, և տոպրակովն 'ի վայր բերեն. և քան զամէն լաւն և գովածն՝ սանդղովս է։ Բայց թէ 'ի հարկէ թափես թափչով, 'ի ներքեւն իրք փռեա, որ պտուղն 'ի գետին չանկանի. բայց այնպէս ած զվարոցն, որ զճիւղսն չկոտորէ. թէ ոչ՝ ծառն սղալի և տարեքեր լինի. և ընկուզիքն այս պատճառաւս են տարեբերք։ Զձիթին մասարայսն և զջաղացանին և զամանսն՝ սպրկիկ և անուշահոտ պարտ է առնել. և հինքն ասացեալ են՝ լուանալ զամէնն շող ջրով և ցամաքեցուցանել, և եռացուցած գինեմրրով շփել, և ապա հով ջրով. և թող որ ցամաքի, և 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՄՁԳ·

*Յաղագս ձէթ հանելոյ : վասն ձիթի նշանք ազգաց երէ որպէս հանեն :*

Տես, երբ սևանայ և հասանի պտուղն կամ կարմրի, և գիտենաս որ հասեալ է և քաղցրացեալ, քաղել տուր որպէս նշանք տուաք. և մի այլ աւելի քաղեր, քան զայն չափն մէն՝ որ գիտենաս թէ ձէթ կարենաս հանել. և լից 'ի վերայ խսրի յարեն, որ թառամի. և յամէն տերևէ և 'ի փայտէ և 'ի կոթերոյ սըրբեա զինքն և յիստակեա, որ չլեղեցուցանէ զձէթն. և յիրիկուն դէմքն աղ ցանեա 'ի վերայ, և աճռեա, որ միաւորի ընդ ինքն. և վաղն զինքն 'ի մասարաքարն 'ի թեթևն այնպէս աղա, որ զկուտն 'ի յառաջին բերանն չլեսէ. զի այն է աղէկ ձէթն որ 'ի մէջն լինի, չլինի 'ի կըտէն: Եւ զաղացածդ 'ի տաշտեր հան, և ճխմեա 'ի քթոցանի, և այնու 'ի տրօսանքն քամեա մեղմի՝ քչիկ քչիկ, որ յիստակ ելանէ: Եւ յառաջին բերանն որ ելանէ՝ այն է լաւն. զայն յետ ա՛ռ, և որ այլ 'ի յետ պզտոր ելանէ՝ այն այլ պակաս է, և զայն 'ի յետ ա՛ռ: Եւ երբ զայս երկու բերանս առնուս, աղ մանր կամ նադրուն 'ի ձէթն ած, զերդ կենայ յամանն, և ձիթենի դալար վարոցկաւ մի խառնեա զինքըն. նա պիտի որ առնու զձիթին զամէն աղտն, ու 'ի յատակն նստի: Դու 'ի մէկ այլ օրն զինքն յապիկած ամանս շըջեա 'ի կամկէկ, այնպէս որ ատակն 'ի տեղըն մնայ. և այս է պատուականն և լաւն: Եւ զինքն 'ի հով և 'ի ցամաք տեղի պահեա, որ չկծուընայ. զի իւր ահոկն տաք և դէջ տեղին է, որ աւերէ զինքն և ապականէ: Եւ ապա երրորդ բերան ձէթն որ առնուս, է յուղին և վատթարն, և է այսպէս. դարձո զչէչն հանդերձ կտոփն 'ի ջրաղացն, և այլ նստո զքարն որ լեսէ զամէն կուտն որպէս ալիւր, և ապա ցանեա 'ի վերայ տաք ջուր, և դիր 'ի քթոցանին, և կրկին 'ի տրօսանքն դարձո, և պինտ քամեա, այնպէս իբր վերոյ գրեալ եմք: Աղ դիր կամ նադրուն և պահեա և 'ի բան տար: Եւ թէ կամիս որ հանած ձիթերդ զոր

գրեցաք՝ շատ ամբողջ մնայ և անոյշ, մա. անոյշ տաք ջուր ըստ ողքանութեան ձիթոյդ երեք հետ [1], և լից 'ի սուրբ տաշտ կամ 'ի թեղար. և լից զձէթդ յետ 'ի յետ, որպէս գրեցաք, զամէն մէկ 'ի յիւր աշտիճանն. և ձիթենի դմբշով շատ (հար լաւ մի, և թող որ պարզի. և մա. յերեսէն զձէթն և լից յամաներն, և պահէ [2]):

## ԴՈՒՌՆ ՄՁԴ.

.......... ձէթն, նա շատ ելանէ, բայց չլինի այնպէս պատուական, և ոչ պատուական պարարտ զերդ առաջինն:

Եւ թէ ուզես որ զթանձրացեալ ձէթն նօսրացընես և զպղտորն յիստակեցընես, քամեա զձէթդ 'ի թեղար, և դիր 'ի շող արեգական, և աղնձեա աղ մանր և ցանեա 'ի վերայ. նա առնու և յատակն նստի զտուրտինն. և թող որ աղէկ յիստակի, և ապա պատրաստ 'ի յայլ ամանս քամեա:

Եւ թէ ձէթ որ հոտն աւերեալ լինի և կամենաս անուշահոտել, մա. կանաչ պտուղ այնպէս որ կուտն չկոտորի, և տասն լտերն 'ի վերայ ան ափկից մի, զհոտն լաւացուցանէ. և թէ պտուկ չգտանես՝ մատղաշ ճղեր արա 'ի ծառէն, նոյն է: Եւ են ոմանք որ ծեծեն զճիւղսն և զպտուղն, և 'ի կտաւ ծրարեն, և չուանով 'ի ներք կախեն, մինչև յաջողանայ. և երբ անուշանայ՝ հանեն ձգեն: Եւ այլ ոմանք կտոր մի երկաթ կամ խե-

1. Միւս ՕՕ. ջան ձէթն երեք բաժին. խմա եռապատիկ քան զձէթն:

2. Փակագծեալդ եղաւ ըստ միւս ՕՕ. զի պակասէ յօրինակին իբր երկու էջ բան, որպէս ծանուցանէ ընդօրինակողն (Գէորգ). պակասէ և սկիզբն յաջորդ դրանն, որոյ չիք վերնագիր և 'ի ցանկին, այլ դատարկ թողեալ էր և անդ տեղին և թիւ դրանն: Իսկ միւս ՕՕ. յետ բանին որով աւարտեցաք զդուռն ՄՁԴ, անընդհատ յարեն. «Եւ թէ ուզես որ զթանձրացեալ ձէթն », և այլն, ոչ ունելով զերկտող նախակարգեալ բան յաջորդ դրանն:

ցատ շանթացուցանեն և 'ի ներքս ձգեն, նա լաւանայ. և այլ ոմանք գարի ծրարեն և կախեն քանի մի օր, և ապա հանեն և կոշկոռն աղ 'ի ներքս ձգեն, և ապա յայլ աման շրջեն և պահեն: Եւ այլ ոմանք աղնձեն զխոշոր աղն և շանթ 'ի ներքս ձգեն՝ նա յիստակէ:

Եւ թէ ուզես որ զկծուած ձէթն շինես, ա՛ռ անոյշ ձէթ յիստակ, և եռացո զինքն, և ձգեա 'ի ներքս սպիտակ մոմ. և երբ եռանէ և միաւորեն զերդ մոմ ու ձէթ՝ դու 'ի վերայ ձիթիդ լից և կալ. տա՛ր կոշկոռ աղնձած և շող շող 'ի ներքս ձգեա, որ յատակն իջանէ. և մենակ խծկեա զբերանն. և յետ վեց աւուրն բա՛ց, և անոյշ 'ի բան տար:

## ԴՈԽՈՆ ՄՁԵ.

*Վասն պիտոյից ամենայն ցեղից, որ պտղի համար 'ի բան երթայ և 'ի գործ:*

Իւր գլխաւոր պէտքն աղն է և ջուրն. և ջուրն կամ աղբիւրի պիտի կամ ջրհորի: Ա՛ռ զջուրդ 'ի նոր անձիւթ աման և դիր յարևն, կալած զբերանն, և թո՛ղ 'ի դուրս օր մի և գիշեր մի. և հա՛ն զջուրդ և ցամաքեցո զամանդ երկու օր յարևն, և կրկին լուա աղէկ և պահեա, և ապա շինեա աղջուր: Թէ ուզես որ գազան առնես, դու չորս չափ ջուր դիր, և երեք չափ աղ. և այլ պականն լինի հինգ ջուր և երկու աղ: Եւ ջուրդ զոր անուանեցաք յառաջ՝ եփած պիտի և սնուցած, և ապա աղած. և զաղն խոշոր կոտրտած պարտ է ածել. և ամանն անուշահոտ, որ այլ իրք չլինի 'ի ներքս կեցեալ, քաւէլ դինի կամ մեղր, կամ հոռոմ ձէթ. և զինքն մոխրաջրով կամ աղջրով պարտ է լուանալ. և թէ ծովու լինի՝ լաւ է: Եւ թէ ուզես որ զկոտորած պտուղն այսպէս առնես, ա՛ռ զպտուղն ընտրած, և կոտորեա 'ի վերայ տախտակի փայտով, և դիր յաման, և ա՛ծ ջուր 'ի վերայ. և յետ երեք աւուրն ձգեա զջուրդ, և մանր աղ ցանեա 'ի վերայ, և յարևն թող ամանով օր մի և գիշեր մի, որ թօշնի. և ապա դիր զինքն 'ի սարած ամանսն, և ափկից մի ըռազիանի հունդ 'ի վերայ լից անարատ, և ա՛ծ զվերոյ գրեալ շինած աղջուրն. և զբե-

րանն ծեփեա: Եւ են ոմանք որ երբ կոտորեն՝ նա զկուտն հանեն ձգեն. դու զորն կամիս արա. և թող որ հասանի, և լեղուութիւնն երթայ. և ապա հան 'ի ջրէդ և ցանեա մանր աղ 'ի վերայ, և լեսած չաման և ըռազիանի ծլեր. և առ անոյշ մուստառ և լից 'ի վերայ, և ծեփեա զբերանն և պահեա. և երբ կամենաս՝ յետ տասն աւուր 'ի բան տար:

Եթէ ուզես որ աղով և ջրով մէն դնես և անարատ, առ ընտրելով զանարատ և զծանր պտուղն, որ խայծած լինի 'ի սևութիւնն. և զլինքն մանր ձղերովն քաղեա, վասն այնր որ անարատ մնայ, նոյնպէս կոթերովն կցղաք դիր 'ի յաման և թող. նա պիտի որ ինքն ընդ ինքն տաքանայ 'ի կարասն. և ապա հան և լուա 'ի կըթոց՝ հով ջրով՝ աղէկ, և թող որ պաղի ամանովն 'ի կանսկեր՝[1] օր մի և գիշեր մի. և ապա փռեա 'ի վերայ խասրնոյն, որ չորանայ շուք ընդ արև. և երբ չամչռէ աղէկ, առ աղնձած աղ ափկլոց մի և ցանեա 'ի վերայ, և դիր 'ի կարասն, երեսք մի զպտուղն և երեսք մի աղ, մինչև լցուի. և ապա առ 'ի վերոյ գրեալ եփած և շինած աղջրէն, և լից զամանն քանի տանիլ կարէ, և ած 'ի վերայ բերանոյն ըռազիանի ցախ, ծաղկովն և հնդովն, և ծեփեա: Եւ են ոմանք որ առնուն զպտուղն կոթերովն և մատղաշ ձղերովն, և դնեն յաման, և ածեն 'ի ծովուն ջրէն 'ի վերայ, և թողուն հինգ վեց օր, և ապա փոխեն յայլ աման. և ածեն 'ի վերայ զվերոյգրեալ շինած աղջուրն և ծեփեն զբերանն. և զայսպիսի գիրքս՝ 'ի յեղն աշնան արա:

1. Անծանօթ բառ, եթէ ուղիղ իցէ գրածն, չիք 'ի միւս ՕՕ:

## ԴՈՒՌՆ ՄՁԶ·

*Յաղագս պտղի զոր քացախիւ ներկես :*

(Ա՛ռ) զմիջակահատ պտուղն 'ի մեծ և 'ի փոքր, հատած և չորացուցած, և դիր 'ի յաամանն երկու ափկից աղնձած աղ, և ապա զպտուղն. և առ մրրգոյն [1] սպիտակ քացախ, և լից 'ի վերայ երկու ափկից աղ 'ի քացախն. և տես որ քացախն գաղան [2] չլինի։

## ԴՈՒՌՆ ՄՁԷ·

*Որ սիրքէնձիւպինով ներկես զպտուղն :*

Ա՛ռ զերկայն պտուղն՝ նոյն կոթերովն, ընտրած և աղէկ հասած և սև անարատ, և լուա հով ջրով և դիր որ չորանայ 'ի վերայ խասրնուն. և դիր 'ի տաշտն, և լից 'ի վերայ անոյշ պտղի ձէթ, և մանր աղ չափով. և մինչեա սերտ ձեռօքդ այնպէս որ չպտռի կամ գանի. և ապա զչամանն, և 'ի վերայ զքացախն մեղրախառնած և սիրքէնձիւպին շինած. այնպէս՝ որ ծածկէ զամէն պտուղն աւելեօք, զի թերէնայ [3]. և ապա բռազխանի ցախով կալ զբերանն, և տախտակեա և ծեփեա. և յետ տասն աւուրն կեր։ Եւ թէ ուզես այլազգ, մուստառով դնես պտուղ. առ զսպիտակ ազգ պտուղն զընտիրն և զանարատն. և արկ 'ի ծովուն ջուրն 'ի թուրջ՝ վեց օր, և ապա դիր 'ի շինած ամանն, և ած մուստառ 'ի վերայ. և մի շատ լնուր, որ չեռայ և 'ի դուրս ձգէ. և զբերանն ծեփեա մենակ և պահեա։ Եւ են ոմանք որ ափ մի աղ ածեն, և ապա զմուստառն, և թողուն որ դադարէ եռն, և ապա ծեփեն զբերանն։

1. Միւս ՕՕ. մրգոյն։
2. Միւս ՕՕ. աւելի։
3. Այսինքն պակասի, կամ ջուրն քաշուի։

## ԴՈՒՌՆ ՄՁԸ·

*Այլ ազգ. որ զպտուղն խաղողով դնեն։*

Ա՛ռ հասած խաղող, և դի՛ր երեսք մի զխաղողն և երեսք մի զպտուղն մինչև լնուլ. և ծեփեա և 'ի վայր դի՛ր ։

## ԴՈՒՌՆ ՄՁԹ·

*Վասն որ զհասած չոր պտուղն պահեն և անուշացանեն։*

Ա՛ռ զաղէկ հասած պտուղն, որ 'ի ծառն հասեալ լինի, թէ ուզես սև և թէ սպիտակ, զմեծամեծն և զգոլորն. և լուա պաղ ջրով աղէկ, և դիր 'ի շքի չորանայ. և ապա դիր 'ի շինած ամանն չափով. 'ի տասն չափ պտուղն՝ չափ մի աղ. և դիր երեսք երեսք մինչ 'ի վեր. և կալ զբերանն սեկով, կամ քաղրդով. և յամէն օր երեք հետ զամանն զերդ լող 'ի միջգետինն գլորեա, որ շրջի պտուղն 'ի ներքս. և յամէն շարժել՝ տասն թապալ անցո, տասն օր հետ իրերաց. մինչև դեղնի և թուլանայ. և ապա ժա̄ օրն բաց, և տես թէ թուլացեա՛լ է աղէկ և թոշմեալ, նա եղաւ. և թէ ոչ՝ այլ լողեա, որ աղէկ հասանի։ Երբ հասանի՝ հան և լուա, որ ելանէ աղծրութիւնն, և չորացո 'ի շուքն. և երբ չորանայ աղէկ՝ առ զանարատ հատերն և սրբբեա աղէկ, և մանր աղ ցանեա 'ի վերայ, և հար ափովդ որ միանայ ընդ ինքն. և յամանն լից և պահեա, և 'ի բան տար։

## ԴՈՒՌՆ ՄՂ·

*Վասն Մեղուաց։*

Պարտ է գիտել, և զմեղուաց տուննն այնպէս շինել, որ 'ի գարունն մինչև արևն ցայթէ՝ նա յինքն դիպի զորդ ընդդէմ. և այս վասն այնր է լաւ, որ 'ի ձմեռն ջեր լինի և յամառն հով։ Եւ խուր ջուրն այն է լաւ՝ որ

առու լինի կարկաչան 'ի վերայ խճերոյ, և յիստակ. զի մեղուաց կեանքն յիստակ ջուրն է, և զմեղրն այլ յիստակ առնէ: Եւ պատեհ է որ աղուոր սալեր ընտրես և 'ի ջուրն դնես. այնպէս որ երբ դնես՝ նա ջրին երեսացն հաւասար լինի. որ անդ նստի մեղուն և ըմպէ ջուրն առնու: Եւ թէ 'ի գնաց ջուր[1] չլինի, 'ի ջրհորէ գաներ դիր, և ծովեր արա, և քանի մօտ լինի՝ այն է լաւ, որ չհալածին 'ի հեռուն: Եւ խոտ մի կայ զոր աւրապերէն հաշա ասեն, որ մեղուն զինքն խիստ սիրէ, և երբ զինքն ուտէ՝ շատ մեղր շինէ, և պարս աղէկ տայ: Պարտ է յառաջևնին գարի ցանել, զի և զայն ևս սիրէ: Եւ բուն ու աղէկ կոճակ որ իսկի կենայ՝ տախտակով շինածն է, փիճի, կամ կաղնի. կանգուն ու կէս յերկայն, և երկու թիզ 'ի լայնքն: Եւ առ կու և կրակաց մոխիր, թրեա ընդ իրեար, և այնու ծեփեա, և բաց 'ի յիւր ծակէն որ ելումուտ թողուս, 'ի կոճակին քովքն հինգ վեց ծակ այլ թող, որ հով մտանէ, և զգորբոսն ցամաքեցուցանէ, և զսարդի ոստայնն աւերէ: Եւ մեղուն զմինութիւնն սիրէ և զանմարդաձայնն. վասն այսորիկ ընդ մարդակեաց տեղին և ընդ մեղուանոցն 'ի մէջ՝ պարտ է շինել ցամաք քարով պատ: Նոյնպէս և զյառաջքն և զպատն և զամէնն զերդ մուշապաք ծակտի առնել, որ ընդ ծակտին մտանեն և ելանեն, և տունն խալվէթ մնայ, և յաւելի հողմոց պահէ զինքն: Եւ գիտացիր որ մեղուն զիւր բնական արօտ տեղն բնութեամբ սիրէ, և չկամենայ յայլ օտար տեղի գնալ քան յիւրն:

Եւ թէ մեղուք կամենաս գնել կամ յիւր տեղոյն փոխել, 'ի գիշերն հան, և փաթաթեա իրջք զկոճակըն, մինչ 'ի յիւր տեղն տանիս դնես. և թէ ոչ՝ ամէնն յիւրեանց սովորական տեղն երթան: Եւ թէ 'ի հանդիպմանէ մեղուքն պիղծ խոտ ուտեն և ահոկէ իւրեանց, դու զայս դեղս արա. և ինքն տապախ է որ դիպի մեղուին՝ զերդ այլ անասնոց. նա իւր դեղն այս է. Ա՛ռ նռան կեղև կամ գղթոր, և աղա մանր, և մաղեա բարակ կտաւով. և լից 'ի կաւէ ընձանակ կամ 'ի տաշտ. և ած ջուր 'ի վերայ և խառնեա, նա պիտի որ

1. Գնայուն, վազուկ ջուր:

փոթթէ զջուրն, և դիր առաջև մեղուացն. նա մեղու որ գայ ըմպէ 'ի յայն ջրէն, նա փոթոթութիւննն զնապախն ողջացուցանէ: Բայց թէ 'ի մուստառ կամ 'ի մեղրաջուր որ քաղցր լինի՝ դնես, նա ևս առաւել աղեկն այն է. և թէ մեղրով և փոթոթ գինեաւ առնես՝ այլ աղէկ է:

Եւ տես թէ աչքն ցաւի մեղուին՝ քարամնուխ[1] ծխեա: Եւ թէ ոջլոտի մեղուն, բայց դժուար ճանաչի, աղէկ ճանաչօղ պիտի լինի. առ թաւպ թզենւոյ, և խնձորոյ ծիլք կանաչ, և ծխեա. նա ծուխն զոջիլն և զցեցն սպանանէ:

Եւ վստահած է, մեղուքն իւրեանց թագաւոր ունին. Հայերս[2] պարսմայր ասեմք. և երբ մեղու կամենաս տնկել, դու յամէն կոճակ թագ[3] մի դիր, նա այն զամէն մեղուքն ժողով պահէ: Եւ տես որ քան զմէկն այլ չդնես, թէ ոչ՝ ամենամէկ[4] իւրն ջանայ չինել, և զկոճակն քակեն: Եւ թագիտ նշանք այս է. խարտեշ լինի, և մէկուկէս մեծ քան զայլ մեղու. և որ զայս նշանքս ունենայ, լաւն այն է. և վատ թագ՝ այլագոյնք լինի և սևագոյն, և մեծութիւն երկու հետ մեծ քան զայլ մեղու:

Եւ հատ 'ի սահմանացն զօշինդրն, զճփնին, և ըղխիարուկն, և զլեղեհամ ծաղիկն[5]. և խանձուած դեղըն ամենևին վատ է: Եւ զպատահարան[6] տպան և հատ. զերդ զամբուռ, մուկն, ցեց, և զայլ այսպիսիքըս: Եւ թէ տեսանես, որ քո մեղուքն գազան լինին, և շայտ 'ի կախւ գան, նա դու գիտացիր որ աղէկ է և

1. Բնագիրն ունի 'Ορίγανον, Oryganum, որ է զուխրակ կամ կորնգան:
2. Միւս ՕՕ. հայէխօս:
3. Այսպէս յամենայն ՕՕ. իմա թագաւոր կամ թագուհի. բայց 'ի լուսանցս օրինակիս մերոյ նշանակի պարսն:
4. Ամէն մէկ, որպէս գնեն այլ ՕՕ:
5. Ի բնագրին վեց ազգք բուսոց նշանակին, յորոց երկուքն օշինդրըն և խիարուկ, և միւս՝ թաւպ թզենին՝ է (Caprificum) որ ոչ յիշի 'ի մերումս. իսկ միւս երեքին են Tithymalus, զոր գիտեմք կաղնջան. Veratrum, որ է ելեբորոս, և Thapsia, պրիսկ ըստ մեզ. միոյ 'ի յետնոցս պատշաճի ընդհէկոմ ծաղիկն, գուցէ միւսում և ճփնին, զոր Տ. և 'ի Բառս:
6. Նշանակէ ասա զվնասակար ճճիս և կենդանիս:

ուժով։ Եւ թէ անուշակ մոմի հոտ առնուս՝ աղէկ է։......

Եւ երբ կամենաս մեղուք տնկել, առ անուշահոտ սպիտակ ծաղկունք [1], և սերտ շփեա զկոճակն 'ի ներքուստ. և առ հոռոմ սնփուլ, լեսեա, և մեղրով շաղղեա և զկոճակն 'ի ներքուստ օծ, այլ բնաւ մեղուն չանջատի 'ի կոճակէն։ Եւ երբ տեսանես որ միամտէ [2] մեղուն, զթագաւորն բռնեա և մկրատով զթևսն հատ, որ այլ չթռչի. նա ինքն յաւիտեան զմեղուն 'ի կոճակըն պահէ։

Եւ զձագն այսպէս արածեա. դի՛ր 'ի տաշտ գինի և մեղր, խառնեա ընդ իրեար յառաջիկնին, և լաւահոտ ճիւղք հանդերձ ծաղկովն 'ի վերայ շարեա. որ երբ ձագն 'ի կեր գայ, 'ի վերայ նստի և հանգիստ խմէ։ Եւ են ոմանք որ այլ աղէկ առնեն, ծեծեն զչամիչն և 'ի մուստառն խառնեն, և բաղարջիկս առնեն, և 'ի ներքս կոճակին դնեն, ձմեռն ցրտոյն և ամառն խիստ շոգոյն. զի 'ի ցրտոյն և 'ի տօթոյն վախէ և չելանէ 'ի դուրս մեղուն։ Եւ երբ զինքն 'ի ներքս յիւր տունն դարմանես, և երբ գարնան առաջին ամսոյն տասն օրն ելանէ, նա պատեհ է որ մուխ անես գշկրով, և զխուրեանք յարոտ հանես. և երբ ելանեն մեղուքն 'ի կոճակէն յարօտ՝ և դատարկի կոճակն, նա դու ճարտար զկոճակն սրբէ 'ի ցեցէ և 'ի սարդխոստայնէ և յաղբէ և յամէն աղտէ. և ճարտար դարձեալ 'ի տեղն դիր. որ երբ դառնան՝ նա ուր գտանեն զկոճակն, որ 'ի ներքս մտանեն. և աղէկ մխռեցո, զի իւր կեանքն այն է։

Եւ 'ի կոճակն թէ շատ պան կենայ՝ դու թերեցո, և զչափն թող, զի շատ պանն հիւանդացուցանէ զմեղուն։ Եւ ջանք դիր որ զամէն որձ մեղուն սպանանեն այս խորատովս. 'ի յարևմարքն առ պաղ ջուր և ցանեա 'ի կոճակին դուռն, զբերանն 'ի յետ առ, և այնպէս արա, որ երբ զջուրն ցանես՝ նա 'ի ներքս երթան 'ի կոճակն. և վերատին զխուփն ընդդէմ դիր. և յառաւօտուն որ

1. Բնագիրն ասէ զամբուռ (Thymus) և սպիտակ կաղամախի ծաղկունս։

2. Ընտանենայ տեղւոյն։

լուսանայ՝ դու գտանես զինչ որձ մեղու կենայ, ամենն 'ի դուռն եկեալ 'ի ջուրն. դու զամենն սպան: Եւ այսորիկ ապացոյցն այս է, որ որձ մեղուն բնաւ յարօտ չելանէ, ամենն 'ի կոճակն հանգիստ կու կենան. և զինչ մարխն կու գործէ՝ զայն կ'ուտեն, և ամենեքին վզենկարար են, և 'ի մեղեր ուտելոյն կու ծարաւին. և մենակ յայն ցանած ջուրն դիմեն, դու սպան. զի թէ ոչ՝ զամէն մեղրն այնպէս սպառեն, և դու և այլ մեղուքն ունայն և դատարկ մնայք. և նոցա ուտելն է պատճառ, որ ոչ մնայ մեղր. և անգէտքն զտարին ապիգովեն: Եւ զորդ կթելոյն ժամն՝ մայիս ամսոյ սկիզբըն է, երբ նոր Բազմաստղն ելանէ. և զմիւս կթելն յաշնան սկիզբն պարտ է առնել 'ի Խաչին մուտն [1]. և զերրորդ կիթն 'ի դեկտեմբերին [2]: Եւ զորդն է որ երեք հետ 'ի տարին կթեն զկոճակն: Եւ տես զամէն, երբ պանն կատարած լինի 'ի կոճակն՝ կթեա. ապա թէ յառաջ որ պաներոյն բաղարջն որ խուփն է՝ ամենեքին զկոճակն կթես, նա բարկանան և խռովին մեղուքն, և այլ գործ չտան: Նոյնպէս և թէ զամէն գործն առնուս և զկոճակն դատարկ թողուս՝ խռովին: Ապա առնլոյն սահմանն այս է, որ 'ի գարունն և յամառն զգործոյն տասնեակն 'ի տեղն թողուս, այսինքն 'ի տասն պանէն մէկ մի իւրեանց. և 'ի ձմեռն երկուբաժին առնես, և զմէկն առնուս և զմէկն թողուս. թէ ոչ՝ խռովին և յանկերակրութենէն մեռանին. և 'ի կթելն գշկուրմուխ պարտ է առնել: Կթօղն թող առնու տղտի ջուր և կաւ, և ընդ իրեար շաղախէ և օծանի. այլ բնաւ զինքն մեղու չկարէ խայթել: Եւ թէ ոք առնու զադկարին պղլուկն, և բրտի կաւ, և յիրեար խառնէ և շաղախ առնէ և ծեփուի, այլ բնաւ չկարէ խայթել: Եւ զայս Պոնտսկոսին Թագաւորն [3] է ասացեալ. թէ մեղուքն 'ի ներքին մնդուկան կարեն զիւրեանց ծնունդն առնել և սնանիլ: Եւ Գէմոկրա-

1. Զմեծ տօն Ս. Խաչին իմանայ, որ յամսեան սեպտեմբերի:

2. Բնագիրն հոկտեմբեր ասէ. և այլք զմի յաւուրց կաղանդաց նոյեմբերի, որ է դարձեալ յետ կիսոյ հոկտեմբերի:

3. Ցոբաս Թագաւոր Լիբիացւոց, ըստ բնագրին, որ է Նումիդացւոց՝ յԱփրիկէ:

տես իմաստունն և Ցատէնօննէս [1] ասացեալ են, թէ 'ի ներքս տան կարեն բնակել մեղուքն այս խորատովս, և ինքնս լաւ է քան զայլ ազգ մեղու՝ որ 'ի ներքս տան բնակի։ Շինեա տուն մեղուաց վեց կանգուն բարձրութիւնն, և լայնութիւնն նոյնպէս, և զորմունքն նոյնպէս սրբաշէն և ծեփած. և լինի դուռն մէկ և պատուհան չորս. և զդրան բարձրութիւնն այնչափ արա՝ որ երեսուն ամսոյ ընձիւղ մի կարես 'ի ներք ածել 'ի տունն. և ընձիւղն գեր և աղուոր պիտի, որ միս ունենայ. և ուժով կտրիճք [2] գաշեն և բերեն ծանր պլատկերով, և ածեն 'ի տունն. և ընդ առաջին մեղմն ծեծեն զընջուղն, և 'ի հետ սերտեն զզարկերն այնչափ, որ միան մէն մանրի, և 'ի զարկուցն մեռանի, և մանրին ոսկերքն և միսն 'ի ներքս մորթոյն. բայց այնպէս ջանա, որ բնաւ արիւն չելանէ, և ոչ մորթին ծակոտի 'ի զարկերոյն. և զքո ծեծլին սարւածն՝ այսինքն զըթերն, յայս վերայ սահմանեա։ Եւ երբ մեռանի՝ նոր քլթեթանի կալ սար, և ձիւթ եռացուցած, և զինչ ծակ կայ 'ի յինքն՝ զամէնն պինտ խծկեա, զբերանն, զքիթըն, զաչքն, զականջքն, զոռն, և զգօզբերանն. և ապա մէռ զխոտն որ կոչի արապերէն հաշա, և փռեա 'ի ներքեն թանձր, և զինքն՝ զերդ կենայ անարատ 'ի մէջ տանն՝ 'ի վերայ խոտիդ դիր, բերանն 'ի վայր, որ փորն դէպ յառաստաղն լինի. և հաւասար [3] ելէք 'ի տանէն. և փակեա զդուռն և զպատուհանսն աղէկ և բևեռ [4], և զինչ իսկի 'ի տունն ծերպ կենայ՝ որ իսկի օդ չկարէ մտանել 'ի տունն, զամէնն ծեփեա, և աղէկ կալ, այն որ բնաւ օդ չմտանէ։ Եւ այսպէս թող երեք շաբաթ. և ապա բաց զպատուհանքն և զդուռն՝ որ հաւայն մտանէ 'ի ներքս. և կրկին խծկեա և թող տասն օր. և բաց և տես, գտանես զամէնն մեղուք կոյղ յիրերաց վերայ զերդ խաղող. և յընջղոյն զայլ իրք չգտանես, քան զեղջիւրսն և զոսկերսն և զմազն. այլ ամէն միան մեղու լինի դարձեալ։ Եւ ոմանք ասեն

1. Դեմոկրիտոս և Վարրոն, ըստ բնագրին։
2. Պատանիք, երիտասարդք։
3. Ամենեքին առ հասարակ։
4. Այսինքն՝ պինդ ամրափակէ զդուռն, որպէս թէ բևեռելով։

թէ թագաւորքն մեղուաց 'ի յընջղոյն ուղեղէն ելա-
նեն. և այնք որ 'ի գլխոյն ուղեղէն ելանեն՝ լաւ են
քան զայնս որ յոսկերաց ուղեղէն ելանեն։ Եւ այն է
լաւ որ յետևէն ծայր մի [1] ստէպ բանաս զպատուհան-
սըն 'ի յետին աւուրսն, ուր օդն մտանէ, և զմեղուն 'ի
ձագուցթեանն մնուցանէ և գոյացուցանէ, և կրկին
կալ։ Եւ տես որ բնաւ ոչ 'ի մօտ երթաս և ոչ հայիս
մինչև 'ի պայմանդ, կամ այլ աւելի, նա որպէս և
գրեալ եմք, 'ի ներքս մորթոյն ամէնն մեղու լինի միսն։
Եւ այնպէս սահմանէ որ մեղուատունն ուր բնակեցու-
ցանել կամենաս զմեղուսն, 'ի յայն տուն մօտ լինի։
Եւ երբ տեսանես որ մեղուքդ թևս առնուն և թռչիլ
կարեն, դու բաց զխծկած ընջղոյն բերանն, և զաչքն
և զամէն ծակտին, նոյնպէս և զտան պատուհանսն. և
թող որ թռչին. և սար կալ զհաշա խոտդ, և խոտ մի
այլ կայ որ ասեն արապերէն չէրմ. և ծխեա և մուխ
արա յորտեղ կամենաս տնկել 'ի մէկ այլ տունն. զի
խիստ գայ անուշահոտդ և մեղուաց կեանքն ինքն է.
նոյնպէս և անուշահոտ խնկօք և ազգի ազգի ծաղկօք։
Եւ դու որպէս արժան է՝ արա զկոճակսն, և դիր և
բնակեցո, որպէս օրէն է այլ մեղուաց։

Եթէ կամիս 'ի լեառն մեղր գտանես, մուխ դիր հօ-
վուն դիհն, որ մուխն 'ի լեռներն սփռի. 'ի հոտն կու-
գան. զհետն նայէ, և գնա մինչ որ գտանես. 'ի մխին
քօշն ամանն մի մեղր դիր, որ ուտեն երթան։ Խոտ մի՝
զոր Թուրքն օղուլ-օթի [2] ասէ, հոտն թուրինճի է,
մեղուն որ կոչէ, ճիւղ մի ձգես, սիրեն, միաբանին
'ի վերայ։

Մեղուն զսատակածս իւր 'ի դուրս ընու 'ի փեթա-
կէն [3]։

1. Սակաւ մի կամ կիսաբաց։
2. Melissa կամ Mellisophyllum. հայերէն Թրնջխոփ, ըստ հօ-
տոյն. Արբ. Պատրէնկպու կամ Պատրանճպու է։
3. Միւս 00. փոխանակ այսր տողի՝ առանձին գլուխ կարգեն ա-
ռանց վերնագրի զայս բան. « Դարձեալ, մեղուքն ձմեռն կ'ելնեն
կու ծրտեն ձընի երեսն գեղին գեղին. զսատկածնին 'իդուրս ընուն,
այնով գտնուն զմեղուն՝ երբ արեգակն որ ցայթէ »։ Եւ յետ այսր
կարգեն զբանն. « Ձխոտն՝ որ թուրքն օղուլ օթի ասէ », և այլն։

## ԴՈՒՌՆ ՄՂԱ·

*Վասն Մեղրի ։*

Գիտացիր որ խիստ աղէկ մեղրն այն է որ յԱդենոյ[1] երկրէն գայ և յիւր կղզեացն. նոյնպէս և 'ի Սիկիլիոյ, և 'ի Կրիտէն և 'ի Ֆուկ[2] կղզւոյն։ Եւ աղէկ մեղրին նշանն այս է, որ յիստակ և խարտեշ լինի, և այնպէս լինի որ յիստակութենէն թափ ընդ թափն տեսանես զինքն. և երբ մօտիս՝ պտղանդ կոկ թուենայ. և երբ մեկնես՝ մեկնի և դերձանի, քիլդ որ լարես՝ չկտրի. և երբ 'ի բարձրէ վայլթես, 'ի քամ և 'ի յուշ իջանէ, չկտրատի. և 'ի վերայ ամենից[3] անուշահոտ լինի և անուշահամ լինի։ Եւ զայս իմանաս որ շատ դիմանայ. և նշանն այն է՝ որ քանի երթայ պնդի, և հոտն և համն, և յիստակութիւնն միապէս մնայ։ Բայց կայ որ միապէս սեւանայ. և զայս ազգ և զայլ վատ մեղրերն՝ պարտ է եփել և զրՓրքաղել և պահել։ Եւ ճշմարիտ է որ ոք զաղէկ մեղր ստէպ ուտէ, երկայրի կեանքն. ևս առաւել ծերքն՝ որք սովորութեամբ առնուն և հացով ուտեն յամէն կերակրոց վերայ։ Եւ հարցած է ընդ Դիմոկրատէս իմաստասէրն վասն ապրելոյ. նա ետ պատասխանի, եթէ մարդ որ զիւր մարմնոյն դուրսն անուշահոտ եղօք օծանէ և զներսն անոյշ մեղրով, նա շատ ապրի և անցաւ մնայ։

## ԴՈՒՌՆ ՄՂԲ·

*Երբ որպէս դեղ առնէ մարդ որ ամենևին ոչ մեղու և ոչ պիծակ 'ի կիրքն չկարէ զինքն խայթել։*

Առ հացհամեմի ունդ, աղնձեա և ալիւր արա, և զինքն տղի ջրով և հոռոմ ձիթով շաղեա որպէս մեղրի թանձրութիւն. և զինչ 'ի քեզ բաց տեղ կայ

1. Ատտիկէ Յունաց, ըստ բնագրին, և մայր քաղաքացն Աթէնք։
2. Կով կղզի, որ կոչի այժմ Սդանքոյ։
3. Այսինքն, 'ի վեր քան զամենայն։

ծծ. այլ չկարէ խայթել։ Եւ թէ 'ի կուրծքդ առնուս, և 'ի ծոցն՝ կամ ուր լինին՝ փչես, ամէնն փախչին 'ի տեղւոյն. և ապա մուխ արա և կթեա, նա իսկի մեղու չկարենայ առնել։ Եւ այս փորձով է յիմաստնոցն, և այսու շպիծակն սպանեն։

## ԴՈՒՌՆ ՄՂԳ.

*Վասն դեղերոյ ցասմանց և հարի որ դիպի մեղուացն, և տանց և արտորէից և ոչխարացն և խաշանց:*

Ա՛ռ որձ աքիս, և իշոյ զաջ սմբակն, և ռատինէճ որ է սոճուպրի ծառին խիժն, այնց բնաւ 'ի կրակ չլինի հասեալ, և լից 'ի սմբակդ և թաղեա 'ի յերքն որ կապիս [1] 'ի ճանապարհին վերայ։ Ռատինէճն 'ի Ռուսածովեզերեան [2] ելանէ, զերդ խայծղան է։ Եւ առ աղ և դաղձ և հալհալիճէ, և չամիչ և կօկ մի հաց, և մկնստիս մի. և երեք նարօտով և սպիտակ բրդով ընդ իրեար ոլոր ած և գլխոյդ չափ սպասկէ գտակ շինածէ. և Փէհամքուշտ և ծծումբ և սոճուպրի մէջ, և տաշխ կմրմիր. և տար 'ի ճանապարհն թաղեա, որ մուտ և ելն 'ի վերայ լինի. նա ոչինչ հարուածք անտ բնակի։

## ԴՈՒՌՆ ՄՂԴ.

*Վասն Ջիոց ազգաց և ցեղից Մատակաց, Յովատակաց և Քուռակաց, խրատք և բժշկութիւնք:*

Պարտ է զձին երկու իրօք փորձել. մէկ՝ տեսակաւ, և մէկ՝ ներգործութեամբ. զմղածսն՝ ներգործութեամբ և հեծնելով պարտ է իմանալ. զգործքն՝ թէ ժրարար է, ամուր է, 'ի կամք է, որպէս է։ Եւ զարմուհին՝ տեսակաւ միայն. և այս դժուարին է և արհեստիւ՝ քան զներգործութեամբ և զհեծնելով ճանաչելն. վասն զի զօրութեամբ է. և ամենայն ոք զօ-

1. Միւս 00. չափ։
2. Բնագիրն ասէ Ջակիւնթոս կղզի։

բուԹեամբ իմաստասէր է և սուրբ և արուեստաւոր, բայց 'ի ներգործուԹենէ կու լինի սղալումն։

Սոյնպէս և աստանօր զներգործուԹեամբ ճանաչելս պարտ է մեզ ցուցանել, և հաւաստել ընԹերցողացդ և հետևողացդ պիտանի արուեստիցս։ Նախ զգրաստն 'ի խրտչիլն պիտի ճանաչել, Թէ խրչան է՝ վատասիրտ է և պիղծ։ Եւ այլ նշան. Թէ տեսանես յօժարգնայ է, և համապազ ցանկայ յառաջ գնալ քան զայլս 'ի ճանապարհին՝ լաւ է և աղէկ. գնեա համարձակ։ Հայեաց 'ի քուռակսն և տես. քուռակ որ երբ ընդ մօրն 'ի ջուրն գնալոց լինի, և չհայի մօրն, յառաջ երԹայ և ջուր առնու, խիստ աղէկ է. բայց որ կանգնի 'ի շքի կամ 'ի տեղւոջ, և մօրն կամ ընկերայն մնայ՝ վատ է, մի՛ տիրանար. և այս՝ զօրուԹեամբ է ճանաչել։

Զհաստատած տաճիկ ձին այսպէս ճանաչես. յառաջ պարտ է մեզ զգլխոյն նշանսն գրել և ապա զայլսն. զգլուխն չափաւոր տես 'ի մեծ և 'ի փոքր. հայեաց 'ի յանձին մեծուԹիւնն, և զգլուխն ըստ անձինն մեծուԹեան հակակայ արա, որ 'ի փոքր լինի և ոչ 'ի մեծ։ Եւ ճակատն լայն. աչքն մեծ և Թուխ, և 'ի դուրս, զերդ նապաստակի. և կապիճք աչացն ոսկրն 'ի լի և չոր ոսկր 'ի դուրս։ ՔԹափողքն արձակ և 'ի բաց. այնպէս որ մաշկերն չլինի Թոշմած, 'ի ցից լինի և 'ի բաց։ Բերանն մեծ, և ճեղքածն շատ՝ դիպան 'ի վեր, և լեզուն փոքր և նօսր. և կնճուտն յերկայն և վռզքիԹ 'ի չափն. և շլնին բարձրահայեաց, երկայն և բոլոր. և ճիտն բարակ, այնպէս որ փողերակքն յերևան և 'ի ցից. և շնետակքն բարակ, և մէջն լայն և ծայրքն սուր, և 'ի ցից. և երեսն չոր. բաշն 'ի չափն, և ձաղկ. կուրծքն լայն և տափակ. նոյնպէս և երբուծն ցած, [1] որ չլինի բարձն զերդ այծու և զքաշիկն յետս ընկենուն։ Բեճլին ոսկրն լայն և մեծ, և 'ի վերայ մարմնոյն զուսպ. և ծունկքն ուժով բոլոր 'ի չափն և զորդ. սրունքն ցամաք անմիս, դրուցահայեաց և հեռի յիրերաց. և ջղերն հաստ և ուժով. և սմբակն ոչ շատ տափակ, 'ի չաքն, և մէջն խորու. և գորտն փոս և անարատ

1. Յօր. ցախ. 'ի միւս ՕՕ. ցած։

և ամուր. և ջիլքն 'ի ցից և յերևան։ Ողնն դուր և ղորդ. և կուշտքն ցամաք. և կողքն 'ի դուրս, ըստ չափուցն. և փորն ըստ կողիցն, որ չլինի զերդ պախրէի. յայդ տեղդ 'ի յայծեմանն հայեաց։ Գաւակն[1] բոլոր. և խնձորք անդամին 'ի դուրս. պոչունկն հաստ, և երբ բռնես պինտ 'ի լար. և ագին երկայն և հաստ և ձաղկ։ Անդամունքն մեծ և մսալի, բոլոր՝ զերդ այծեման, որ չլինի տափակ զերդ եզին կամ խողի։ Կայթքն լայն ըստ չափուն. և կարթուցն ըռունգն դուր, որ չլինի անգոյն,[2] թէ ոչ պիղծ է։ Ջեղքն երկայն 'ի վերայ անդամոյն. և կոճքն 'ի ցից որ էջ չլինի։ Եւ սմբակն լայն քան զառաջինսն և դրուցահայեաց. որ երբ քայլէ 'ի դուրս ոլորի անդամն և ոչ 'ի ներքս, ու զիրեար ծեփէ[3] կոճքն։ Եւ ձուքն սոթոթ, և հաւկիթն մեծ և սլինդ, և հաւկրթին բնաջեղքն հաստ և ուժով. և տոշն 'ի չափն 'ի մեծն և 'ի փոքրն, և վազան, որ չլինի բոլոճ. և թէ ոչ՝ սիրուն զերդ բոլոճի լինի։

## ԴՈՒՌՆ ՄՂԵ.

### Յաղագս գունոց։

Գոմելլիքն 'ի գոյնս՝ երեք են։ Պղատոն իմաստունն զպօզն գոմեաց[4], և 'ի հետ՝ զճնդիկ սևն. և ապա զքումայթն։ Բայց գիտել պարտ է, զի որպէս աղաւնիքն կամ հաւքն կամ ոչխարքն, կամ այսպիսիքս, որ ամենայն գունոց մսին համն միապէս է 'ի ճաշակումն, նոյնպէս և երիվարացն. թէպէտև գոյնքն այլևայլ են տեսակաւն, բայց ներգործութիւնք և շնորհքն 'ի պարգևողէն է. և չէ պարտ ամենևին 'ի գոյնն հայել, այլ 'ի ներգործութիւնն, որպէս ասացաք։ Բայց 'ի

1. Յօր. «յայդ տեղիդ 'ի յայծեման գաւակն հայեաց. բոլոր, և խնձորքն» ևն։ Միւս ՕՕ. «յայդ 'ի յայծեամնն հայեաց. քովակն բոլոր», և այլն։
2. Անկիւն. թուի ասել, ըռունգն՝ որ է ցցուեալ մասն կարթուց (սրունից) լիցի դուր, տափակ, և մի անկիւնաւոր։ Միւս ՕՕ. «Կարթուցն ըռոյքն դուր, որ չլինի անգոյն կամ ըռունգն»։
3. Միւս ՕՕ. ծեծէ։
4. Ոչ զպօզն՝ այլ զճերմակն գոմէ, նոյնպէս և ճնդիկին ունի։

վերայ ամենայն զայս նշանս 'ի պինդ կալ. զի ձի որ մնգի 'ի պառակիլ և 'ի հանգչիլ և յուշ պառակի՝ լաւն և աղէկն այն է։

## ԴՈՒՌՆ ՄՂՁ.

### վասն Ցովտակաց և վազցընելոյ:

Ցովտակն սկիզբն է լինելութեան, նոյնպէս և մատակն. արդ՝ եթէ սերմանց զլաւագոյն և գլխտակն քան զամենն ընտրել պիտի, նոյնպէս և զգետնոյն. նա որչափ ևս առաւել զկենդանեաց լաւագոյնն և զփորձածն յամենայն կողմանց, 'ի սրութիւն և 'ի յամրութիւն, 'ի ղորդութիւն և 'ի հաւանութիւն. և թէ հնար ինչ իցէ՝ վերոյգրեալ բարւոք նշանքս. մանաւանդ զի նոր աթոռ է թագաւորայ, և պարիսպ ամրութեան հեծելաւորաց, յաղթահարող թշնամեաց, և նաւահանգիստ ճանապարհորդաց, հալածիչ գաւառաց և դղրդեցուցիչ քաղաքաց և լայնացուցիչ սինոռաց [1]։ Եւ արդ զո՞րս պատմեցից զանյաղթ քաջութիւն երիվարաց. և համառօտիւ գրեցաք վասն լսողացդ՝ զզօրութիւն ձիոցն։

Ձյովտակն՝ տասն տարի պարտ է 'ի բան տանել, 'ի հինգ տարւոյն 'ի վեր մինչև 'ի ԺԵ լրանայ. և անտի յառաջ դահ է սերմն և չէ աղէկ, նոյնպէս և մատակքն։ Ի վերայ այսորիկ՝ և ճանաչելն երեք օրպիսութեամբ լինի. մինն, որ 'ի բնէ զծնունդն և զհասակն գիտենան. և մէկն՝ 'ի յակռայքն, 'ի կաթինքն, և 'ի շնորհքն. և այս երկու ճանաչելս՝ բազմաց գիտելի է և սովորական և հեշտ։ Բայց զմէկ այլ ազգս՝ պարտ է ուսանել որ դժուարին է. որ երբ ընդ եօթն կամ ընդ ութն տարին անցանէ՝ որպէս ճանաչես. և է այսպէս։ Զներքին շուրթն կալ և ձիգ 'ի դուրս քարշեա, և պահ մի 'ի պինտ կալ և փրթո [2]. եթէ շուտ քարշէ 'ի վեր զշուրթն և սոթթէ յիւր տեղն՝ կայ 'ի յինքն մատղաշութեան շնորհք. և թէ յուշ քարշէ 'ի վեր և շատ 'ի կախ թողու՝ դահ

1. Սահմանք աշխարհաց։
2. Թըլ տուր։

է. և թէ քիչ քիչ՝ ըստ կախ թողլոյն է դաշնութիւնն, Ճշմարտապէս։

## ԴՈԽՈՆ ՄՂԷ·

### Վասն վազցընելոյն։

Ղորդ ժամն 'ի մարտ ամսոյ հինգ աւուրն 'ի վեր է, մինչև 'ի յունիս ամսոյ մուտն. և յառաջ քան զմարտն երկու ամսով՝ զմատակսն բաժանես 'ի յորձիցն, և արածես 'ի զատ. և զորձան կապես և գարի տաս, և խառնես 'ի գարին երկու ափկից ցորեան, և ափկից մի քունջոյ. նոյնպէս և մատակացն՝ որ խաս լինի։ Եւ թրջեա սիմինդր ջրով և տուր որ ուտեն, որ եռացուցանէ զմիսն և յորդորէ զսերմն, և առաւելու զցանկութիւնք զիգացն և զորձիցն։ Եւ մատակն երբ 'ի ծննդեանն արիւնաթաթախ լինի և աղտոտ, յայնժամ խիստ ընդունի զորձն, և որձն զմատակն։ Եւ երբ վազցընել կամենաս՝ զագետակին մազն մկրատով 'ի վայր տուր, որ զտոշն չգանէ։ Եւ տես աղէկ թէ որձն սիրէ զմատակդ՝ 'ի յինն օրն վազեցո յետ ծննդեանն. և չէ փոյթ զագետակն սրբել, այլ սանտրել և պռախցընել. և երկուքն զգան և զայն ընդունին։ Եւ թէ չսիրէ՝ նա երեք օրն վազեցո, որ աղտիցն բան [1], և սիրէ և 'ի ցանկութիւն շարժի, և վազէ. և թէ դեռ չսիրէ և չվազէ, զմատակն 'ի վերայ վազեցո, եւս զինքն 'ի ցանկութիւն շարժէ։ Եւ թէ վազէ յովատակն և տոշն թուլանայ և 'ի բան չգայ՝ զայս դեղս արա։ Ա՛ռ եղն եղջերուի պոչ, այրեա և աղա մանր, և անապակ գինեաւ զերդ մերհեմ արա և օծ զտոշն և զձուքն, նա յորդորէ 'ի վազելն.....։ Եւ թէ աւելի ուզես որ յորդորի՝ ա՛ռ զայն խոտն որ արապերէն խւրն հովուի բիր ասեն, և ա՛րկ 'ի շիշ, և հոտոմ-ձէթ 'ի վերայ. և որպէս այլ ձիթի ռէսմ [2] է, ձէթ զուգեա և օծ, օգտէ։ Եւ թէ տեսանես որ մատակն չկամենայ որ վազէ որձն, տաք ջրով լուա զամօթքն, և ձեռամբդ

1. Այսպէս յամենայն ՕՕ. պակասէ բայն։
2. Օրէն, սովորութիւն, եղանակ։

սերտ շփեա, և առ նաղըրուն աղ և ճնճղկի ծիրտ, և բևեկնի խէժ. լեսեա և յիրեար խառնեա, և այնու թող աղէկ զամօթքն շփեն որ շողանայ, և 'ի կամք գայ: Եւ թէ առնուս մկնասոխի միջուկ, ծեծես և երբ լուանաս՝ այնու շփեա՝ օգտէ:

Եւ այսու ճանաչեա յետ վազելոյն՝ թէ պտղացու մատակն թէ ոչ. թէ այրել[1] առնես զգեղերդ, և հետ մի տայ վազել՝ չէ փոյթ վասն դեղին տաքութեան. բայց զյովտակն 'ի յետ պահեա տասն օր, և ապա երևեցո մատակին. թէ ընդունի՝ չէ պահ, և թէ ոչ՝ պահ է: Եւ նայեաց յամօթքն. թէ 'ի խուփ է, և շըրթանցն մանր մազերն յիրեար անցեալ լինի և կնքեալ զամօթքն, և զպրճուկն զուսպ 'ի վերայ ամօթուցն ունենայ և պահէ զամօթքն. ապա թէ ամօթքն թոյլ լինի և 'ի բաց, և զպրճուկն թոյլ և բարձր պահէ, և ջուր երթայ ընդ ամօթքն, չէ պահ. այլ դեղ արա և վազեցո: Եւ է սրբելն և դեղն այսպէս. Առ նապաստակի խախաց և մուշկ, և հնդիկ լեղակ, և չոր քիմէ. լեսեա մանր, և յիրար խառնեա, և տաք ջրով ծեփեա զամօթքն և զձեռնդ օծ հոռմ ձիթով, ած և գիտ զարգանդն. և տես թէ նեղացեալ է և յիրեար եկեալ. դու պատրաստութեամբ մատամբդ 'ի մեղմ արձակ արա, և լայնացո, այնչափ որ չորս մատնդ 'ի ներքս մտանէ. և ապա զայս դեղերս զոր գրեցաք՝ բարակ կտաւով կամ աղեղնած բամպակի մէջն դիր, և տար ձեռամբդ 'ի յարգանդին բերանն դիր և շփեա. և 'ի յետ մենակ վազեցո. նա սերմանն բռնել տայ և պահնայ: Ապա 'ի վերայ տեղիս երեք օր զհետ իրերաց վազեցո: Եւ թէ այլևայլ որձեր ունենաս, լաւն այն է, որ յամէն օր մէկ մի վազցնես. և թէ ոչ՝ զմէկն երկու օր հետ իրերաց, և զայլն՝ օր ընդ մէջ. նա բռնէ զսերմն և պահնայ:

Եւ երբ պահնայ՝ յաւելլի աշխատանաց պահեա. և թեթև և նոսր դարման տուր, և 'ի խոտէ մի զատեր. զի մտացն ասէ և ձգէ զքուռակն: Եւ զգարին ջրով լուա ցախ,[2] և փոշին հանած տուր. և յօրն երկու ե-

1. Այրելոյ չափ տաք:
2. Միւս 00. լուացած:

րեք հետ ջուր տուր. և զախոռն այնպէս շինեա, որ 'ի ձմեռն ջեր և յամառն հով լինի. և զմսուրսն տախտակ, վասն փոշւոյն, և բարձր՝ որ զշնեստանն երկայնացուցանէ, առաւել զքուռակայն. և 'ի միջգետինքն աւազ լից, որ ցամաք և կակուղ լինի նստելոյն:

Եւ երբ ծնանի՝ յայնժամ պարտ է արիական կենալ, և մի այլ զգարլին թանար, ցամաք տուր: Եւ երբ քուռակն պնդի՝ հեծնուլ պիտի 'ի մայրն. զի հեծնուլն զկաթն յորդորէ, և քուռակին օգտէ, որ զոսկերսն և զմբակն և զջիլն պնդէ: Պարտ է մատղաշին ոտիցն ներքև ուր կանգնի՝ խճեր լնուլ 'ի յաւազն: Եւ թէ սակաւի կաթն՝ հացհամեմի ունդ 'ի սիսեռն թրջեա, և տուր որ ուտէ, կաթն բղխէ. և առ խոզտի, և քօշի ճրագու, և դեղին ծծումբ և սխտոր. ընդ իրեար ծեծեա և միաւորեա, և զմբակքն և զպորտն մատղաշին օծ. շատ օգտէ և ամրացուցանէ:

## ԴՈՒՌՆ ՄՂՐ·

վասն սնուցանելոյ զքուռակն, խրատ:

Ի ծնունդքն զաղտքն մի քարշեր կամ սրբեր, որպէս զայլ կենդանւոյ. և մի 'ի քուռակն մօտիր, զի այլ անբան կենդանի չկայ որ զիւր բերքն սիրէ՝ զերդ զձին. և երբ մօտի ոք՝ մայրն աղէկտուր լինի. ապա յինքն թող, և զքիթն միայն սրբեա յաղտիցն: Եւ յետ ժե աւուրն հետ մօրն յարօտ արա և 'ի կեր՝ զքուռակն: Եւ երբ վեց ամիս լրացուցանէ քուռակն՝ գարեձաւար տուր, և 'ի մօրն ծծէն մի կտրեր՝ մինչև երկու տարին լրացուցանէ: Եւ թէ զորդ իրաւունք ուզես, և զխաս տաճիկ ձիոցն սահմանն, նա այս է. որ քանի քուռակն 'ի ծիծն կենայ՝ զլինքն չվազցնես. զի վնաս է քուռակայն. և լաւ՝ մէկ աղէկ ունենաս, քան երկու վատ: Եւ թէ արտօրաս՝ նա տարի ընդ մէջ վազեցո: Եւ զքո քուռակին ծառայութիւնն սրբելով և դարմանելով և արութեամբ, իբր քոյ տղային ծառայեա, զի զայն ախորժայ. և ստէպ 'ի ծովու ջուր, և թէ ոչ՝ 'ի տաք ջուր լուանալ պիտի, և սրբել 'ի յոջնէ և 'ի տզէ, և յայլ կերչաց: Եւ առ փոթոթ գինի, և

հոռոմ ձէթ. և երբ լուանաս՝ ձձ զագետակն և զբաշն. և յամէն աշուն և ՚ի գարունն, յայս վէց ամիսս սիսռան և քուշնայի ալիւրով լուա՛ զքուռակն, և յամառն՝ գարէ ալիւրով և տղտի ջրով և մածնով, և վարդեղով, և մանուշակի և դդմի ձիթով ձձ զագին և զբաշն։ Եւ երբ տարուդ լինի՝ յաչն սրբեա անհնար։

## ԴՈՒՌՆ ՄՂԹ.

Վասն իշոյ ջորի ծնուցանելոյ, խրատք:

Ա՛ռ աղէկ ազգ յիշոյ քուռակացն, զոր խսկի կարես, նործին մատղաշ, և կտրեա ՚ի մօրէն. և սիրցո աղէկ և ՚ի գործուն նործին մատակ ձի. և այնպէս արա որ իշքուռակն որձ լինի, և ձիոյն նմանութեամբն սնանի և վարժի զերդ ձի։ Նա պիտի որ ամէն ձիոյ որակութիւնան և զգործիմն յինքն տպաւորէ. և զքուռակդ լաւագոյն և էնտամով[1], և նշանքն զոր գրեցաք ՚ի մօտ, քանի և կարես ընտրես և սիրցընես։ Եւ երբ ՚ի հասակ գայ՝ վազեցո յաղէկ ընտրով մատակի. թէ կամիս ռահվար ընտրել՝ ՚ի յայնց, և թէ շալականն։ Եւ հասակ վազցընելոյն յերեք տարւոյն մինչև ՚ի տասն. և անտի յառաջ դահ է և աւեր։ Եւ ոմանք փորձեալ են, որ երբ զէշն վազցընել կամենան՝ նա զմատակն ծածկեն գեղեցիկ և գոյնեւան իրօք, ՚ի սպիտակ և թուխ և կարմիր և ՚ի խայտ գունոց. և վազեցո զորձն, նա քուռակն յայն գոյնն նման լինի։

## ԴՈՒՌՆ Ց.

Վասն դեղերոյ և ցաւոց որ ընծայի ՚ի Գրաստ:

Երբ զգրաստն տխուր տեսանես, գարի ծեծեա և զփշրածն հա՛ն, և ցորեան աղնձեա. երկու զգարին և մէկ զցորեանն. և յիրեար խառնեա և տուր որ ուտէ. օգտէ. և ստէպ ջրեա։ Եւ թէ այլ յերկարի, թեփ

1. Վայելչապէս։

խառնեա և տուր, և ջրով թաց. և ամանք քուշնայ խառնեն։

## ԴՈՒՌՆ ՑԱ.

*Յաղագս տաքութեան գրաստու։*

Թէ 'ի ձմեռն լինի՝ լուա զինքն շող ջրով և աղէկ ծածկեա որ չհովանայ, և ջեր կալ. և քուշնայ ընդ ցորենոյ խառնեա և տուր որ ուտէ, և եղկ ջուր տուր, և հոռոմ ձէթ և գինի խառնեա, և ժծ զմնձն. և զփորն լուծեա դեղով, և 'ի ջղացն և 'ի բազկացն արիւն հան. և զծունկմն և զոտմն քաջ քացախով լուա պինտ, և տես թէ օգտէ։ Այլ. լուա շող ջրով, ողջանայ։ Բայց թէ տաքութիւնդ 'ի շատ աշխատանաց գայ ձիոյն, առ այծուց կաթն փարչ մի և հաւու կիթ՝ չորս, և հոռոմ ձէթ՝ որ կծու չլինի, և նշոյ՝ ափ մի. յիրեար խառնեա, և անմեռկի ջուր՝ ըստ չափու կաթին, և ընդ բերանն 'ի վայր ած երեք օր. օգտէ։ Եւ թէ տաքութեանդ իջուածք այլ հանդխալի, որ իջանէ 'ի փողքն, և 'ի տաքութենէ լինի, առ դաղձի ջուր և մանր աղ, և հոռոմ ձէթ, և ժծ զխամծէքն և զփողքն, և շող ջրով զոլոքմն ծփեա աղէկ. և առ չնխաղող և անոյշ գինեմրուր, և զլեզուաթոռքն շփեա, և զթուշքն. և թէ ընդ բերանն 'ի վայր երթայ՝ աղէկ է։ Եւ թէ ընդ քիթն արիւն գայ, կանաչ գնձի ջուր արկ ընդ քիթն 'ի վայր։

## ԴՈՒՌՆ ՑԲ.

*Յաղագս աչացն թէ ցաւի կամ սպիտակի։*

Ա՛ռ հայխնկի փոշի և նշայ, և գառին գլխոյ ուղեղ, յամէն մէկէ վեց տրամ. զաֆրան և ծովու փրփուր, երկու տրամ յամէն մէկէ. վարդէ ձէթ, ժԵ. տրամ, և չորս ձուի սպիտակուց. և յիրեար խառնեա լեսած մանր, և 'ի դեղդիր[1] և յաչքն քարշեա, օգտէ։ Եւ

1. Իմա՛, դիր 'ի դեղդիր։

Թէ սպիտակ կենայ՝ առ անդրամնի աղ լեսած և մանր մաղած, և յիստակ մեղր, խառնեա և յաչքն դիր. և թէ կարագ այլ խառնես՝ աղէկ է։ Եւ թէ առնուս ծովու փրփուր և անդրամնի աղ, բորակ մաղած միաչափ, և մասուրայով 'ի յաչքն փչես՝ օգտէ։

ԴՈՒՌՆ ՑԳ·

*Յաղագս ջղերոյն թէ ցաւի կամ ուռենայ։*

Լուա շող ջրով. և առ պախրէի ճրագու, և մուռ և դեղլին ծծումբ, և արկ 'ի կճիճ մի, և դիր կրակ և թանցօ, և զմուխն ընդ քիթն 'ի վայր աղէկ խմցո, և ջեր կալ. և 'ի շնուոյն երակացն արիւն հան. և եղկ ջուր և գարւոյ ալիւր պղտոր արա, և խմելոյ տուր. և 'ի քիթն ած հոռոմ-ձէթ. և ամբրաւ և դմակ ծեծեա որ միանան, և զջիլսն օծ. և զթեղխտակն, և զբադկենոյ հերն և զգիշախոտին տակն՝ եփեա քաջ, և այնու ծփեա զջեղն. և զեփածն ծեծեա և խգախռնտատի տակ և դմակով օծանելիք. և օծ զջեղն. օգտէ։

ԴՈՒՌՆ ՑԴ·

*Վասն խոցտուկի.*

Ծփեա զձին տաք ջրով. և թէ բաղանիք ուրդի՝ այլ աղէկ. և առ մուռ հինգ տրամ, և հին անոյշ գինի կէս կուժ, և հոռոմ ձէթ կէս նուկի, և արա երեք բաժին. և զամէնն բաժինն ընդ բերանն կամ ընդ քըթափողքն խմցո։ Եւ տաք ջրով, և թէ ծովու լինի լաւն այն է, ծփեա զփոլն աղէկ. և թէ հապալաս դնես և դաղձն 'ի ջուրն, և եփես և ծփես՝ օգտէ։ Եւ թէ զլեղլին մանր ծեծես և ճատէ, և խառնես 'ի գինին. և տաս որ խմէ՝ օգտէ։ Եւ թէ նուան կեղև լեսած 'ի ջուրն խառնես տաք և տաք՝ օգտէ։ Եւ քէրէֆսի ունդն և կոճայքն՝ լեսած՝ և գինեաւ և մեղրով տաս, օգտէ։ Եւ թէ հալհամիճէ լեսես և գինեաւ տաս, օգտէ։ Եւ թէ ոլորտի ձին, հոռոմ ձէթ

արա որպէս մարդոյ, նոյն դեղերովն՝ օգտէ։ Բայց 'ի վեր քան զամէնն, այս է. տես որ յաչքն չուռենեայ, և թէ լինի հան[1]. և երբ հանես՝ դեռ նեղէ զինքն, առ անոյշ գինի կէս լիտր, և արկ 'ի ներքս սև քաղցր չամիչ, և եփեա որ տրորի, և մազով քամեա և առ ըզջուրն և արկ 'ի ջուրդ կղմուխ լեսած երկու դրգալ. և ընդ բերանն 'ի վայր ած տաք, այնպէս որ չայրէ. և զպորտն տապակ[2] խարեա. և զհոռոմ դեղն[3] անհնար առաջնատուր արա, և յօծ թող. զի այսր վերև[4] այլ դեղ չկայ ընաւ։

## ԴՈՒՌՆ ՑԵ·

*Յաղագս բոքրացաւի ։*

Զմարդոյ գոզն եռացո և խոզտի, երեսուն տրամ յամէն մէկէ, և ընդ բերանն 'ի վայր ած։ Եւ թէ փաքայ, բակլայի և քուշնայի և գարւոյ ալիւր ընդ իւրեար խառնեա, և լօշտակ լեսած. օգտէ։ Ա՛ռ մեղր թուխթ մի, և ձիւթ, և խռեպիտոն կակուղ, և հոռոմ ձէթ միաչափ, և կարագ քսան տրամ, և խոզտի. յիրեար խառնեա և հալեա, և ողօթ արա, և ընդ բերանն 'ի վայր ած։ Ա՛յլ դեղ. առ 'ի ճարասխոն խոտէ, և լեսեա սակաւ մի աղ, և հոռոմ ձէթ և քաղցր գինի, և քուռաթի և սատապի ջուր, և հայխունկ, և 'ի բերանն դիր. և քան զամէն լաւ՝ կարագ, և լօշտակ, և մեղր՝ յիրեար խառնեա և տուր. և զգարին ճաւար արա, և կարագով մնշեա, և լօշ ած 'ի ներք, և տուր. և սէզ տուր 'ի գարւոյ տեղ։

1. Միւս ՕՕ. «... ոլորտի ձին՝ նա 'ի յաչքն նայէ. և թէ աչք լինի՝ հան»։ — Ասա աչք կամ յաչքն՝ երևի ախտ կամ նիւթ ինչ, յորմէ պատճառի խոցատուկ կամ փորացաւ ձիոյն։
2. Միւս ՕՕ. փոփոկ։ — Նշանակէ իբրև տապկելով այրել։
3. Այն է՝ գրեխ։
4. Վերագոյն կամ հզօրագոյն քան զայս դեղ՝ չկայ։

## ԴՈՒՌՆ ՑԶ·

*Վասն այն ցաւերուն, որք չլինին յերեւան ։*

Զայնպիսին յականջացն արիւն հան. և դեղ զայս արա. առ սատապ և Թթուկչի տակ, ընդ իրեար ծեծեա մանր, և ջրով հար. և առ ձուաշիր՝ վեց դրամ, լեսեա, և յամէն օր չափ մի ընդ բերանն ած, կամ ընդ քիթն՝ օգտէ։ Եւ 'ի ջուրն ցորենի ալիւր ած և փոշեջուր արա, և զայն տուր որ խմէ. օգտէ։

## ԴՈՒՌՆ ՑԷ·

*Յաղագս գոզարգելի:*

Առ սոխ մի, կեղեւեա և ձեղքեա, և 'ի վերայ պորտոյն դիր, խեչ տոշբերանին, օգտէ։ Եւ թէ առնուս քէրէֆսի ունդ և աղաւնոյ ծիրտ, և ձատէի տերև և ծորենւոյ կեղև, և եօթն դրամ նադրուն, և գլուխ մի խստոր ծեծած, լեսեա զամէնդ, կամ զորն և գտանես յայդցանէ, և թուխ անոյշ դինեաւ հարթ, և ընդ բերանն 'ի վայր ած տաք. օգտէ։

## ԴՈՒՌՆ ՑԸ·

*Յաղագս արիւն գոզելոյ ձիոյ ։*

Առ աղացած բակլայ աղէկ սպրկիկ, եփեա քաջ, և եղին ձրագու և անոյշ գինի յիրեար խառնեա, և աղէկ միաւորեա. և երեք օր ընդ բերանն 'ի վայր ած. օգտէ։ Եւ թէ առնուս այծուց կաթն փարչ մի և նշայ նուկի մի, և երեք չորս հաւու կիթ, և հոռոմ ձէթ նուկի մի, և յիրեար խառնեա և միաւորեա աղէկ. և ընդ բերանն 'ի վայր ած կոտոշով. օգտէ։

## ԴՈՒՌՆ ՑԹ·

*Վասն ձիոյ որ ողն տանի ։*

Ա՛ռ մրտի տակ, որ է վրացի կոճն, այրեա և լեծեա, և 'ի վերայ ցանեա ։ Եւ թէ առնուս կանեփի հունտ և աղաս և ցանես, օգտէ ։ Եւ գօգով լուանաս, և կաղնի մոխիր և մեղր յիրեար խառնես և 'ի վերայ դնես՝ օգտէ ։ Եւ թէ երդոյց լինի՝ աղ և հոռոմ ձէթ 'ի յիրեար խառնեա, և 'ի վերայ դիր, և պինտ կապեա, օգտէ ։ Եւ թէ ճատէի տերև այրես և գինեաւ 'ի վերայ դնես՝ օգտէ ։ Եւ թէ առնուս կլունուս և եփես գինեաւ և յերուցին վերայ դնես՝ օգտէ ։ Եւ թէ նշտրակով ծեծես զերդոյցքն և մաղտես 'ի շատ տեղիս, և արիւն հանես, և ձիթով օծանես, և մանր աղ 'ի վերայ ցանես և պինտ քաշես փորով ։

## ԴՈՒՌՆ ՑԺ·

*Վասն դեղոյ՝ որ զջէղն կակղացուցանէ ։*

..... [1] առիլին մուտն է. և թէ չշողանան կովերն, զմկնաստին ծեծեա և զամօթքն ծծ, և սերտ շփեա ափօքդ, նա շողանայ. և այն խոտին որում ասայի ռայի ասեն յարապ լեզուն, որ է հովուի բիր, 'ի ձէթ դրած և մնուցած, և այն ձիթովն ծծ, շողանան և վազուին անսղալ ։

1. Յայտնապէս պակասէ աստ. և որ գտեան գայ բան՝ անկ է ՄՂԷ դրան, ըստ իմաստին ։ Միւս ՕՕ. պարզապէս խոստովանին զպակասն, այսպէս գրելով. « Այլ և դեղորայք որ զջէղն կակղացընէ. ըստ կարգին պակաս էր, չգրեցաք » ։

## ԴՈՒՌՆ ՑԺԱ·

*Յաղագս ճանաչելոյ զյղին, թէ որձ ունի 'ի փորն թէ էգ ։*

Տես՝ երբ վազէ որձն. թէ յաջ դեհին վերայ իջանէ՝ նա որձ է, և թէ 'ի ձախն՝ էգ է։ Եւ թէ ուզես որ որձ սերմանի՝ զորձին ձախ ձուն փոկով կապեա, և վազեցո, որձ սերմանէ. և թէ զաջն՝ էգ։ Եւ զէգն դէմ արևելից կանգնեցո և վազեցո. թէ այնպէս որ պարխըցի հողմոյն վազեցընես՝ որձ սերմանի, և թէ հարաւոյն՝ էգ։

## ԴՈՒՌՆ ՑԺԲ·

*Վասն քոսոյ դեղ, և կնոյի ։*

Առ կասլայի պտուղ, ծեծեա և եփեա ջրով և ցանեա զջուրն. նա յանդաստանն չանցանէ և որ անցանէ՝ սատակի։ Եւ թէ զանասուն օծանես՝ օգտէ։ Եւ թէ խայթած լինի՝ սպիտակ դեղ ջրով հարո, և օծ. ողջանայ։ Եւ օշնդրի ջուրն օգտէ խայթածի։ Եւ թէ կասլային ձիթոյն օծանես զձին, քոռն մօտ 'ի նա չերթայ։

## ԴՈՒՌՆ ՑԺԳ·

*Յաղագս զմատղաշն սնուցանելոյ :*

Պարտ է ծնած կովուցն ժիլաւպ կամ այլ ազգ հընդանք տալ, և լաւ դարմանել, որ զկաթն շատացուցանէ. և 'ի ձմեռն ջերուկ պահել, և 'ի ջեր աւուրն արածել 'ի խոտ. և 'ի յերկու տարեկան՝ կտրել. զի թէ այլ տականայ՝ չէ աղէկ. և երբ կտրես՝ 'ի խոցն կրակի մոխիր և մուրտէսէնն մաղած լից. և յետ երեք աւուրն խայծղան և կրակաց մոխիր, կամ խուխպիտն ձիւթ խառնեա յիրեար, և օծ զխոցն։

Եւ թէ կամենաս որ գիրանան պախրէքն, յառա-

Ջրին օրն կաղամբի տերև կտրատեա և քացախ ցանեա 'ի վերայ, և տուր որ ուտեն. և 'ի յետ՝ աղեկ մաղած յարդ տուր հինգ օր. և այլ, յետ վեց աւուր ձաւար գարի տուր: Ի ձմեռան գիշերն՝ զառաջին ակին յերեկոյէն տուր, և զմէկայլն 'ի կէս գիշերին, և ըզմիւսն՝ յառաւօտուն տուր.՝ և յամառան՝ զառաջինն՝ յառաւօտուն տուր և զմէկայլն 'ի կէս օր, և զմիւսն յերեկոյին. և 'ի ձմեռն՝ մէկ հետ տուր ջուր, և յամառն երեք հետ: Եւ զեզինսն լուանալ պարտ է յամառն եղկ ջրով, և 'ի ձմեռն շող ջրով. և թէ զբերանն և զլեզուն գոգով մարդոյ լուանաս, զշողիքն կտրէ և շատ ուտել տայ. և զճիճին որ 'ի լեզուն և 'ի բերանն ընծայի, և շողիք շատ վասն այնր գայ՝ սպանանէ զօզն, երբ աղէկ լուանաս մարդոյ գոգով և ազով շփես: Եւ զմուրն 'ի կուոյ սրբած կալ, և տեղպ աւել ած: Եւ թէ կամիս զքոյ անասնոց զինչ և իցէ զկեանքն և զառողջ կենալն, տես որ ամենևին մօտ 'ի յիւր մսուրն ոչ խոզ երթայ և ոչ հաւ, և ոչ այլ ինչ ազգ. զի հաւուցդ փետուրն և ծիրտն ահօկէ, և խոզին աղբն՝ սպանանօղք են անհնար: Նոյնպէս և յուկրէ պատրաստ լեր, զի կլանէ և փխաչէ: Եւ թէ գայլու ագի կախես վերև մսրին՝ դեղն այն է, որ ընաւ զոսկրըն չտայ 'ի վայր տանել:

## ԴՈՒՌՆ ՑԺԴ.

*Վասն ամենայն ցեղ ցաւոց, զոր ձիանց լինի. զի անասունք են և ոչ կարեն լեզուաւ պատմել զտեղն կամ զորպիսութիւն ցաւոյն:*

Վասն այսորիկ չփոթութիւն գայ ձիանաչողացն, զի դեռ 'ի մարդկային բժշկութիւնսն որ բաւականք են, և լեզուով պատմեն զցաւսն, և չփոթութիւն և սղալութիւն գայ բժշկացն, որչափ ևս առաւել այնոցիկ՝ որք անասունք են 'ի բժշկել: Եւ վասն այսորիկ հարկ և պատշաճ եղև մեզ բնութեանս հարկաւորել յաղագս անծանօթ ցաւոցն գրել աստ: Աղ մհրուգ [1] տրորեա

1. Մխւս 00. «Նախ ազմհրութ որ է ..... տրորէ», և այլն:

անապակ գինեաւ և ընդ քիթն խմցո. ամէն անծանօթ ցաւոց օգտէ: Եւ Դիմոկրատէս գրեալ է, թէ ով 'ի գարնան սկիզբն առնու մկնատխ և մորենւոյ տակ՝ ծեծէ և 'ի ջուրն դնէ, և տայ գրաստուն տամն օր զհետ իրերաց որ խմէ, նա փրկէ զանասունն յամենայն անծանօթ և 'ի ծանօթ ցաւոց: Եւ թէ ցաւն 'ի ծանօթութիւն գայ, առ լեռնային Փարասիոն, և քուռաւթ և դիր 'ի ջուրն և տուր որ խմէ. օգտէ: Եւ թէ աղ խառնես 'ի դարմանն և տաս՝ օգտէ. և թէ հոռոմ ձէթ, կամ զիւր տուրտինն խառնես՝ և տաս ջերով, օգտէ: Եւ թէ գլխացաւութիւն դիպի անասնոցըն, նշանն այս է. զականջն թուլացուցանէ, և ըզգլուխն կախէ, և զարօտն պակասեցուցանէ: Ա՛ռ խստոր և աղ, և 'ի հաշայ խոտէ լեսեա, և գինեաւ շաղեա, և զբերանն և զլեզուն շփեա. և զգարէալիւրն գինեաւ շաղեա և շփեա. օգտէ: Եւ թէ կասլայի տերև և նուան կեղև լեսես և այնու շփես, օգտէ: Եւ թէ առնուս մուռ՝ բակլայի չափ, և լեսած 'ի քիթըն փչես՝ օգտէ:

Եւ թէ տապախ դիպի, առ ժողվենւոյ տերև, ծեծեա, և 'ի գարէփոխինդ խառնեա և տուր որ ուտէ. և գարէփոխինդ առ չափուկես, և կէս չափ ցորենոյ, յիրեար խառնեա, և ջրով ընդ բերանն 'ի վայր ած. օգտէ:

Եւ թէ թուխմայութիւն դիպի՝ նշանն այս է, որ զդարմանն կտրէ, և ձապկտի և շնչատէ. շող ջուր տուր խմելոյ, և սակաւ կաղամբի տերև տուր քացախով, որ օգտէ: Եւ թէ եփես զկաղամբն որ տրորի, և զեփածդ ծեծես և ջուր առնես և քամես, և ընդ բերանն 'ի վայր ածես կոտոշով, օգտէ. և ջեր ծածկել պիտի և 'ի շուրջ ածել: Եւ թէ ձիթենւոյ տերև ծեծես և ջրով պարզես, և 'ի բերանն 'ի վայր ածես երեք օր զհետ իրերաց, լաւ է:

Եւ թէ ուռենայ փորն՝ հոռոմ ձէթ տաքացո, և ընդ քթափողքն արբո, և թաւպ թուզ ծեծեա և ջրով հարօ, և 'ի բերանն 'ի վայր լից, օգտէ: Եւ թէ խոցտուկ ունենայ, նշանն այս է, որ ձապկտի և հառաչէ, և բնաւ չուտէ՝ ամենևին մի տար ուտել, արիւն հան 'ի կճղակացն և յագետակէն. և առ սոխ,

կեղեւա եւ յաղն թաթախեա, եւ յոռն փրթո, եւ ծիլ մի 'ի շռծակն։ Եւ թէ նաղրուն ածես քացախով ընդ բերանն՝ օգտէ։

Եւ թէ տաքութիւն դիպի պախրէին, նշանն է՝ որ աչքն խորունայ, եւ շատ օր ցաւի, եւ ընդ քիթքն ջուր գայ, եւ իրք չուտէ, եւ զգլուխն 'ի կախ ունենայ։ Դեղըն այս է. 'ի շքի եւ 'ի հով տեղ պահեա, եւ լուա եղկ, եւ տոլդ տերև տուր արածել, եւ պաղ ջուր՝ որ խմէ, եւ 'ի շողէն յետ պահեա. թաց քթէթ 'ի ջուրն, եւ զականջքն եւ զքիթն ստէպ սրբեա. յաչացն ներքև եւ 'ի ճակատն խարանք դիր, որպէս արժանն է, եւ ծծ. եւ զականջքն շառտեա, եւ արիւն հան. եւ փոխինդ հարո պաղ ջրով եւ խմցո. օգտէ։

Եւ թէ փաքայ, գարէձաւար թրջեա եւ չոր թուզ, եւ քուշնայ, յիրեար խառնեա թրջած, եւ տուր երեք օր զհետ իրերաց. օգտէ։

Եւ թէ թարախած խոց կենայ, լուա պախրէի գոզով տաք, սպրկկցո աղէկ. եւ թմղ որ ցամաքի. եւ սև ձիւթ լեսած եւ մանր աղ՝ յիրեար խառնեա եւ 'ի վերայ ցանեա, ողջանայ։

## ԴՈՒՌՆ ՑԺԵ·

*վասն պախրէի որ կաղայ։*

Եթէ 'ի պաղէ լինի՝ լուա զկճղակոն տաք ջրով. եւ գմտ զգանն, եւ ապա հին տաք մարդոյ գօզով լուա եւ սրբեա աղէկ. եւ մանր աղ ցանեա 'ի վերայ. եւ ակիշ մի տաքացո եւ պախրէի ճրագու կաթեցո 'ի վերայ։ Եւ թէ խոշառ լինի, ձէթ եւ մոմ եւ մեղր հալեա, եւ քուշնայի ալիւր խառնեա, եւ 'ի վերայ դիր. օգտէ։ Եւ առ լեսած եւ մաղած կղմինտր, եւ չոր թուզ, ընդ իրեար ծեծեա, եւ նուան կեղև. եւ կտաւով 'ի վերայ դիր. օգտէ. եւ 'ի թանուելոյ պատրաստ կալ, եւ երեք օրն փոխեա. ողջանայ։

Եւ թէ յիջուածոց կաղայ, գարէ ալիւր եւ մուստառ եւ հոռոմ ձէթ խաւիծ արա. եւ 'ի վերայ դիր. օգտէ, եւ կակղացուցանէ. դու պատառեա եւ զագոն հան. եւ կաղամբի տերև կամ մկնաոխ աղով 'ի վերայ

դմր, և հովուի բիր խոտ, և վարասիոն ծեծես և 'ի վերայ դնես, օգտէ։

Եւ թէ բորոտի, ուռնդինէճ՝ որ է սարին խնձն, նաւալ և ծիւթ և ծծումբ, ծեծեա և յիրեար խառնեա մաղած, և լուա զբորն՝ պախրէի հին գօգով, և աղէկ շփեա. հալեա եղ, և օծ զբորն. և զայդ դեղերդ ցամաք 'ի վերայ ցանեա. օգտէ։

Եւ թէ պախրէն չերթայ աղէկ, ծփեա շող ջրով զծունկոն քանի մի օր, և զդարմանն կտրեա։

Եւ թէ 'ի ցրտոյ հովանայ, էնկխուժէտ տրորեա 'ի թուխ գինին, և ընդ քիթն խմցո. օգտէ։

Եւ թէ յուն ձիձի բնակի, պաղ ջրով լուա. օգտէ։

Եւ թէ աղէկ չուտէ զդարմանն, հոտոմ ծիթով կամ իւր տուրախնովն օծ զդարմանն. և թէ չուտէ՝ 'ի վայր ձգեա, և փնդռեա զբերանն և զլեզուն, թէ ուռեց կենայ՝ շանթով խարեա, և ծիթենի տերև ծեծեա և շփեա զտեղն. օգտէ։ Եւ թէ ձէթ և աղ մէն խառնես, կամ եղ և աղ՝ վասն անձարկութեան, լինի։ Եւ թէ վայրի խիարկի տակ չոր՝ մանրես և յարդ խառնես և տաս, օգտէ։ Եւ թէ գարւոյ և ցորենոյ փոխինդ միաչափ խառնես և տաս՝ թրջած գինեաւ, օգտէ։

## ԴՈՒՌՆ ՑԺԶ.

*Վասն Ոչխարաց ազգաց և ցեղից բնութեան և ճանաչելոյ և ամենայն ցեղ ախտից:*

Ճանաչել զմեծն և զբրդերն, որ երբ զձեռնդ քըրշտես 'ի բուրդն՝ կակուղ լինի և ոլորքն հաստ. նոյն է և խոյն. բայց քանի եղջիւրքն հաստ լինին և ոլորքն, և ճակատն լայն՝ այն է լաւ. և ձաղկ լինի բուրդն. և գդակաբուրդն ապիրգոված է։

## ԴՈՒՌՆ ՑԺԷ·

*Վասն ուռածման:*

Արժան է զնիստ և զմանդղրան . . . իւր քարանց կամ . . .[1] և զամէն ցամաք ունենալ. և ոչ 'ի դուր տեղի, որ աղբն և գոլն 'ի տեղն դադարէ. այլ 'ի կեցն տեղի, որ ամէնն սահի և քամի։ Եւ 'ի մէջ մանրայլին մուրս պարտ է չինել ծնած ոչխարացն, և 'ի տեղն կերակրել, մինչև զարգանայ պառն. և յերբ մեծանան՝ 'ի ցերեկն արածել պիտի, և 'ի գիշերն 'ի մուրս՝ սեզ և մաղած յարդ տալ, աղջրով շողրեցուցած. և հացհամեմ և Թըմուզ Թըջած զկունդն, որ զկաԹն չինէ. որ բերկրիս դու և գառն. և գարուոյ և ոսքան, և սխաուան յարդ տաս աղջրով, աղէկ է. և Թէ չոր տերև Թզենւոյ և չոր Թօպ Թուզ տաս՝ շատ կաԹն բղխէ։

Եւ պարտ է հովուին կանուխ 'ի վերայ շաղին զոչխարսն արածել զամէն ամառն, զի այն է իւր կեանքն. բայց 'ի ձմեռն պիղծ է այսպէս արածելն. և չէ պարտ յեղեամն արածել, զի սպանող է եղեամն. և յղեացն անցուցանել տայ և ձգել։ Պարտ է հովուին զգեհն 'ի համարն փարտ ունենալ և ոչ լուծ, զի շնորհաւոր է փարթն քան զլուծն, և ածել տայ։ Եւ զմուրքն՝ ձմեռան մեծ գիշերոյն սահմանեցաք. բայց յամառն պատեհ է զչասն 'ի գիշերն արածել, և 'ի գուրս 'ի շաղն պառակեցընել. և 'ի կէս աւուր շողոյն՝ 'ի շուք ածե և և հանգո անհնար։ Եւ զնստերն ճարտար փոխեա, որ աղբն չնենգէ իւրեանց և ցեխն։ Եւ 'ի ժամու իւրեանց հովոց արա և ջերոցք։ Եւ ծխեա իւրեանց զայս երկուազգ խոտս. Ճնդպատաստ և . . . .[2] արա այլ ազգ ծանրահոտ խոտեր, նա օգտէ։

1. Միւս ՕՕ. իբրև անԹերի գրեն. Արժան է զնստած տեղերն ցամաք պահել։

2. Պակասէ յամենայն ՕՕ. երկրորդ անունն. այլ և առաջինն ոչ է խոտ, այլ կղբու ձու, որ կոչի արաբ. ճէնտպ-պէտէտէր. Թ. գոնդպաղ հայաւէ. Castoreum. 'ի բնագրեն յիշին և այլ բազում նիւԹք. ծխելիք ծանրահոտք, որպէս. մազ, եղջիւր, կճղակ, կուպր, և այլն։

## ԴՈՒՌՆ ՑԺԲ.

*Վասն վազեցնելոյ և 'ի փուղ գալոյ, խրատ։*

Արժան է զորձն երկու ամսով յառաջ զատեալ յայլ գեհէն, և աղէկ ածել 'ի խոտաւէտ սահման, որ ուժաւորին և գիրանան, և ապա թողուն։ Եւ իւր զօրդ աւուրքն վազելոյն՝ երբ որձն երկու տարեկան լինի, մինչև ութն, և անտից 'ի վեր դահ է, չէ 'ի բան։ Եւ մաքիքն բնութեամբ զդահ էգն սիրեն, և աղէկ է. թողուլ պարտ է։ Եւ թէ ուզենաս որ յամէն տարի մատղաշ քուռն և կիթ ունենաս, դու զորձուն թողուն յայլևայլ ժամս տարւոյն պրա. և յարդ ուռ և գարի խառնեա 'ի ներքս, և սոխեր կտրատեա 'ի հետ, և տուր որ ուտեն. նա խիստ շարժէ զիւրեանքն։ Եւ թէ զխոտն՝ զոր հովուի բիր կոչեն՝ խառնես և տաս, շատ աքաղ տայ առնել որձայն և իգացն. և քօշին և մաքւոյն միապէս է։ Եւ թէ կամիս որ ամէն գառինք որձ լինին, 'ի պարզ աւուր որ պարխրցի հողմն շարժի, զմատակին վերջքն 'ի հիւսիս արա, և վազեցո, նա որձ լինին. և թէ ուզես 'ի հարաւային կողմն արա, նա էգ տայ ծնանել. և այլ, ոչ թէ ոչխարաց մէն է փորձով, այլ և մարդոյ և ամենայն կենդանեաց։ Եւ թէ զաջ ձուն կապես փոկով, էգ սերմանէ, և թէ զձախն՝ նա որձ։ Եւ գառն է [1] կշտածծելովն բաժանեա առ ժամայն 'ի մօրէն, և 'ի յարգելք արա, որ այլ գեհն ընդ ստնաքն չտանին. բայց զի ծծցընելոյն ժամն ստէպ բեր զծնածսն և խառնեա, որ միշտ կուշտ կենան և ճարտար զարգանան։ Եւ երբ երկու ամսոյ լինի՝ բաժանեա 'ի մօրէն, և զայլ ոչխարս յարօտ արա. և թէ այլ յերկար թողուս որ ծծեն, նա այլ գէր լինին։ Եւ զկանխածինսն շուտ բաժանեա և մեծացո և գիրացո, և կեր. զի ոչ լինին դիմացկոտք և ոչ յերկարապրեցք։

1. Պակասէ բան, որ չիք և յայլ ՕՕ։ Բնագիրն ասէ, զնորածին գառինան յետ կշտածծելոյն՝ բաժանեա, և այլն։

## ԴՈՒՌՆ ՑԺԹ·

Վասն քրդին և մազին կորեկոյն խրատք:

Զէ պարտ զոչխարն կամ՝ ի խիստ ցուրտն կորել՝ կամ 'ի խիստ շոգն, այլ 'ի միջասահմանն: Եւ թէ կորես, և կամ խոց կենայ, խուխլիտն, ձիւթ կակուղ և խայծղան յինքն խառնած շփեա. օգտէ: Եւ առ թըրմուզ, աղա և ջրով եփեա, և այն ջրովն ծծ զոչխարն. և թէ թըրմուզ չլինի՝ առ պտղի ձիթի տուրտին և յանապակ գինի խառնեա միաչափ, և ծծ: Եւ թէ զայս չառնես, առ գինի և ձէթ պտղի, և ձրագու և մոմ միաչափ, եփեա, խառնեա և ծծ. նա սպանանէ զգարաւն, և պահէ զոչխարն 'ի քորէ, և յամենայն ելընդաց: Եւ զբուրդն որ նոր կամենայ գալ՝ նա կակուղ և աղուոր բերէ: Եւ զբրդիդ կորելն՝ մի 'ի վաղուըննէ առներ. յետ ճաշուին արա, որ շաղն վերացեալ լինի 'ի յարեգակն. զի արեգակն օգտէ ոչխարին և բրդին:

Նոյնպէս և այծեացն միապէս է խրատս:

## ԴՈՒՌՆ ՑԻ·

Վասն ցաւոց և հարուածոց:

Ի գարնան սկիզբն զայս երկու խոտս, փարասիոն [1] մանր ծեծեա, և 'ի ջուրն լից, և գեհին խմելոյ տուր՝ ժդ յերեկոյին, [2] զհետ իրերաց. նոյնպէս արա և 'ի յաշնան մուտն. որ լինի 'ի տարին երկու հետ. նա պահէ զգեհն [3] որ բնաւ ոչինչ ցաւք և հարուածք 'ի գեհն չբնակի, և առողջ մնան: Եւ թէ ոչ իցես արարեալ զդեղս, և ցաւ դիպի կամ հար, և առնես՝ օգտէ: Եւ

1. Ուշ յիշի և յայլ ՕՕ. երկրորդ խոտն, որ է՝ ըստ բնագրին՝ լեռնային Salvia. Թ. փէլ օթու, կամ ատէշ օթու. և հայերէն՝ ըստ ոմանց յարդեացս Եղեսպակ և ըստ այլոց Քարացուիչ:
2. Այսինքն աւուրս ԺԴ ընդ երեկս:
3. Միւս ՕՕ. գոմ աւելն փոխանակ գեհի:

թէ տաս որ ուտեն զխոտն որ անուանեալ կոչի ֆօդիսօս՝ [1] օգտէ։ Եւ թէ առնուս զմատղաշ եղեգան տակն, ծեծես և դնես 'ի ջուրն և տաս որ ուտեն և խմեն զջուրն, օգտէ։

Պարտ է զխօթ ոչխարն բաժանել 'ի յառողջէն, և յայլ սահմանս ունենալ. զերդ հիւանդաց ծառայութիւն առնել և զդեղերս տալ առողջին՝ զերդ առողջի, և թէ ոչ, փոխի և մեռանի, և հիւանդն հանգչի և լաւանայ. և թէ ոչ՝ հետ առողջացն վաստակի, և այլ շուտ մեռանի։ Եւ թէ բորոտին՝ զմեղրոյ գրեալ օծանելոյ դեղն առնես՝ յառաջինդ ուր դրեցաք, բնաւ չտայ բորոտիլ։ Բայց թէ 'ի ծուլութեան սակս մնայ, և զայս բարն, զայս դեղս արա. առ հոտոմ ձիթի տուրբտին, և մանր աղ, ծեծեա ընդ իրեար, և սպիտակ գինեմրուր և թրմուզի ջուր որ թրջած լինի, և զթրմուզն 'ի ներքս միաչափ արա. և տաքացո և զբորոտն օծ երկու օր զհետ իրերաց. և երրորդ օրն տաք ջուր արա աղի. և թէ զծովու ջուրն տաքցընես՝ լաւն այն է. և մենակ 'ի յետ քաղցր ջրով. և թէ կիպարի ծառի պտուղ 'ի ջուրդ ձգես՝ աղէկ է, ողջանան։ Եւ թէ առնուս ծըծումբ և կիպեռսի տակ և սպիտակ դեղ, խառնես յիբեար՝ միաչափ, և եղով խառնես՝ օգտէ։ Բայց մաքուրն բուրդն յառաջ կտրած պիտի և գողով լուացած կամ՝ աղջրով, և ցամաքեցուցած, և ապա օծած. նա մենակ ողջանայ։ Բայց 'ի Պլակիոյ երկիրն [2] խայծղանով մենակ օծանեն, նա հերիք կու լինի։

Գարաւի և այլ ազգ ոջլի դեղ զայս արա. կիպեռսի տակ ծեծեա, և ջրով եփեա աղէկ ուժով. և այն ջրովն թաց և լուա զոչխարն, նա զգարաւն և զոջիլն և զտիզն սպանանէ։ Եւ թէ զխոտն որ ասեն սֆիտամճն՝ եփես զտակն, զոր և առնես, սպանանէ զգարաւն։ Բայց տես որ յոչխարին բերանն չմտանէ, թէ ոչ՝ սպանանէ։

Ա՛յլ դեղ շատ ազգ ցաւոց օգտէ. թէ շողհար լինի ոչխարն և ստէպ նստի և աղէկ արօտ չուտէ, նշանն այս է. վայրի ճակնեղուկ, և թէ ոչ՝ ընտանի, ծեծեա, և զջուրն ընդ բերանն խմցո, օգտէ. և թէ

1. Սխալ ընթերցեալ է և սա Արաբացին զ κύτισος, Cytisus.
2. Բնագիրն Արաբիա ասէ։

զճանկնդեղդ ես տաս՝ օգտէ ։ — Եւ թէ 'ի շնչատել և արգելաշունչ լինի, զականջսն ճեղքեա դանակով, և փոխեա զտեղն ։ — Եւ թէ 'ի փայքաղ լինին՝ առ ամէն ոչխարի տասն նաւշ սպիտակացուցած, և անոյշ քաղցր գինւով շաղեա, և ընդ ոչխարացն ամէն մէկի զտասին չափն ընդ քիթն և ընդ բերանն խմցո. օգտէ ։

Եւ թէ յարօտէ ուռեց հանդիպի ոչխարին, 'ի շըրթունքն և զմանկին ներքևէն երակ առ և արիւն հան, քանի կարես, և մարդոյ գող խմցո. օգտէ ։ — Եւ թէ հեւս արօտին գործն կամ ճիճի առեալ լինի, զի շատ ուրդի, և ուռենայ, և այդմ ես օգտէ ։ — Եւ թէ տըղբուկ փակչի 'ի փողքն՝ առ ձէթ և քացախ, շողացո, և 'ի բերանն 'ի վայր ած. օգտէ ։ — Եւ թէ 'ի դըրուցէ եղունդն եղանէ, ճեղքեա և մանր աղ և ձիւթ և խայծղանած. օգտէ ։ — Եւ թէ ճիճին հարկանէ զոք՝ անխը տըրորեա 'ի գինին, և 'ի բերանն 'ի վայր ած ։ Եւ թէ զայլ գեղերն՝ զոր յառաջ գրեցաք՝ առնես, օգտէ ։

## ԴՈՒՌՆ ՑԻԱ.

### Վասն Այծեաց ։

Նոյն է սնածումն. արօտն և ամէն գնացքն և կերպն, որպէս մաքեացն զոր գրեցաք ։ Բայց առաւելութիւնս ունին այծքն, զի շատաշուրջ են, և այլ արձակ և դժուարին տեղ ուզեն քան զմաքիքն. և ցախով և առատ կերակրօք շատանան քան զմաքիտն. և իւրեանց շատ շփոթումն գայ ։ Ազգ մի խոտ կայ, զոր այծն ուտէ, բալկոյն է, և կուրացուցանէ զաչսն. նա և զդեղն այլ գիտէ. ազգ մի խոտ այլ կայ՝ երթայ զայն ուտէ, և շփէ զաչսն 'ի նա, նա լուանայ և 'ի լոյս գայ. զոր թէ մարդ ոք ուսանի յայծեացն՝ նաև մարդոյն օգուտ է ։

## ԴՈՒՌՆ ՃԻԲ·

*Վասն Պանրի:*

Բազումք զպանիրն 'ի յայլ և այլ խախացաց շինեն, բայց ուլոյ խախացն լաւ է քան զայլոցն. և թէ անդրանի աղ դնես՝ խախացէ զկաթն և պանիր առնէ։ Եւ թզենի կաթն խախացէ, երբ ածես կամ 'ի ձղէն կամ 'ի տերևէն, և պղպեղն։ Եւ թէ ոք առնու զհաւուն քարձին միզն, զայն որ կերևեն, և չորացուցանէ և լեսէ և դնէ 'ի կաթն, խախացի բան առնէ։ Եւ ոչխար՝ որ 'ի մազտաքէի ծառին ցախն արածի, աղէկ կիթ առնէ, և օգտակար և մարսական։

Եւ եթէ ուզես որ պանիրն ամբողջ կենայ, լուա զամանմնին, և 'ի նորոյ ցամքեցո. և հան 'ի կարասով լցած գարի [1] թաղեա, և ծածկեա զամէնն։ Եւ թէ ծովու ջրով լուանաս աղէկ է քան զայլ ջուր. և թէ 'ի յաղն թողես՝ շատ դիմանայ. բայց սպիտակէ մէջն։ Եւ թէ 'ի մուխն դնես՝ շատ դիմանայ, բայց խիստ կըծուընայ. բայց թէ 'ի քուշնայ կամ 'ի կորեակ թաղես, աղէկ է։

Եւ թէ հնանայ պանիրն և լեղենայ՝ դեղն այս է. Առ գարեջուր. ջրով լիծ արա և լից յաման. և զպանիրն 'ի ներքս դիր քանի մի օր, մինչև թրջէ. նա լաւացընէ։ Եւ թէ կամիս իմանալ թէ կաթն համրած է և ջուր ածած թէ ոչ, առ շիւղ մի և հար 'ի կաթն, և 'ի վերայ եղնգանդ իջո. թէ ջուր կենայ՝ նա չպատարէ կաթն 'ի վերայ եղնգանդ. և թէ չկենայ ջուր՝ նա կաթն կուտի, և յոտն մնայ յեղնգանդ վերայ։ Եւ թէ զվանձնատն ուզես որ աղէկ շինես, այսպէս արա. — և ամենք ազգի ազգի հնարիւք գտին կերպեր վանձնատին շինմանն, բայց քան զամէն լաւն այս է. — առ կաւէ պուտուկ, և լից 'ի ներքս բարկ քացախ, և դիր 'ի մեղմն կրակ կայծեր՝ որ սակաւ մի եռայ, և ապա յետ առ. և զկաթն 'ի վերայ լից և յետ դիր անշարժ տեղի, որ մարդ չմտի, և թող մինչև վաղն. և գտանես զինքն

1. Ցոր. Գիւրէ. եգաք ըստ միւս ՕՕ:

վանձնատ, այլ ա՛ղէկ քան զայլ շինած վանձնատուն։ Բայց երբ երկուերեք հետ շինես՝ զպտուտուկն փոխել պիտի, և այլ պտուտուկ առնուլ։ Եւ այս է վանձնատին գիւտն, որ Ճշգրտիւ ընտրած է, լաւ քան զամենայն։

## ԴՈՒՌՆ ՅԺԳ.

*Վասն Շանց, թէ որպէս ստանաս բնտրես և պահես զնոսա պահելոյ ամենայն իրաց:*

Զգազան և զուժով ազգ շունն, և զբարոյն և զչղորդահաճն ընտրեա, որ չլինի թափխալիր և ոտնաշարժ[1] և զաֆառաշ[2] քան դեժպուհի. և երբ հաջէ՝ վստահ լինիս թէ իրք եկն և պէտ առնես։ Զի այլպիսին զոր գրեցաք 'ի կախրահան[3] ձանձրացուցանէ զմարդն, որ 'ի ձեռն սուտ և ընդ վայր հաջելոյն աւերեալ լինի, որ երբ իրաւ հաջէ՝ դու չտաս։ Եւ այնպիսի ըղորդ և աղէկ շանն շնհարք պարտ է շինել վզին հաստ կաշեաւ, և խոցերն երկաթ 'ի յինքն թեւեռած։ Եւ որձն և քէնթն 'ի մէկ ազգէ պիտին։ Եւ չէ պարտ որ զլակոտն մօրն փակցընել ոք, այսինքն շաղաշարէ[4]։ Եւ երբ պահ լինի, զարեհաց առնել տալ. և եփած ոսկորն աղէկ է. և 'ի խաշմնի ջուրն հաց թաց, աղէկ է։ Եւ երբ ցկնի՝ զարեալիւր կաթաւմ՝ աղէկ է. նոյնպէս և լակոտանուոյն։

1. Միւս ՕՕ. ոտքաշարժ։
2. Միւս ՕՕ. շաֆառաշ. Թերևս 'ի չէֆէր պարսիկ բառէ, որ է կզակ, բերան։
3. Այլ Օ. 'ի կահրա խանկարուացընէ զմարդն։ Միւս Օ. 'ի կահրախան խանկարուացընէ։ Ի կահրա՝ նշանակէ բանի, ընդ վայր։ Տ. և 'ի Բառս։
4. Բնագիրն զգուշացուցանէ 'ի զուգելոյ ընդ միմեանս զլակոտս նոյն մօր։

## ԴՈՒՌՆ ՑԻԴ·

### Յաղագս փերծեայ:

Զքրծէլին այնպէս ընտրեա. զվերջքն բարձր քան զառաջքն. ձվերն երկայն, և 'ի վիզացն 'ի վայր հաստ և կարճ. և ագլին երկայն. տափողն, լայն ողն, և մնանցքն տափակ զերդ նապաստակի. շլնին երկայն և բոլոր, կնճռւթն երկայն, և բերանն մեծ. աչքն ցից. կուրծքն և երբուծն շատ[1] և ցածահայեաց, կողքն և թզքտուննն լայն և արձակ. մազն 'ի չափն թանձր և ողորկ: Այսպիսիս ընտիր է թէ գտանես: —

Ծուննն հովով շատանայ: [2] — Ծուննն կամ գայլն որ զմարդն 'ի փախ դնէ, մարդն չուան կամ զխուր գօտին զինչ և իցէ՝ 'ի քարշ ձգէ, շուն թէ գայլ զչուանն ոչ անցանէ և գայ առ մարդն:

## ԴՈՒՌՆ ՑԻԵ·

### Յաղագս Ջաղացաց:

Զզազաւին քիթքն արձակ և մեծ ընտրեա, և զմեղն[3] թանձր. և մնղակեն և սուդութիւնն՝ շնորհք է: Բայց երբ լակոտ կամենաս ընտրել՝ զծանրն առ, և այն որոյ քիթքն թաց լինի աւելի քան զընկերացն, այն է լաւ:

## ԴՈՒՌՆ ՑԻԶ·

### Յաղագս կատուղի շան:

Ի յարգելք դիր. և խարբախ խառնեա 'ի ջուրն և տուր որ խմէ. թէ խմէ և փորն լուծի, ապրեցաւ. յետև գարեհաց թրջեա և տուր:

1. Այսպէս յամենայն ՕՕ. թուի ղափ պիտել:
2. Այս բան երկբայ և որ չկնի՝ պակասէ 'ի միւս ՕՕ:
3. Զիք 'ի միւս ՕՕ. թուի անդ ամե մալելի, յորմէ առի թալամեղ:

## ԴՈՒՌՆ ՑԻԷ·

*Յաղագս թէ շուն կենայ 'ի շունն :*

Ծովու ջրով կամ աղջրով լուա զշունն աղէկ. և ապա առ հինայ և խարբախի տակ լեսած, և չամամն 'ի ջուրն թրջած, որ չամամնջուր լինի, և ազոխջուր. յիրեար խառնեա և աղէկ միաւորեա. և յետ լուանալոյդ օծ զշունն. խիստ օգտէ: Եւ թէ պտղի ձիթի տուրանով օծանես, շատ օգտէ. և զլուն և զոջիլն սպանանէ. և թէ բոր կամ քածպոր կամ երքոյն կենայ, օգտէ: Եւ այն դեղերն ոչխարաց բորոյ գրեցաք. նա, խնկի փոշի՝ ժը դրամ, և չարհոտ՝ նոյնչափ, և գինեմրուր՝ ժը դրամ, և ռաստըխ աղնձած, և նադրուն աղ և դեղլին քիպրիթ, յամէն մէկէ վեց դրամ. և խառնեա ափ մի սպիտակ կասլայի պտուղ հարիւր հատ, չոր թուզ՝ նուկի ու կէս, և ձիթենոյն տերև երկու երեք, և անապակ կիր ափ մի. զծեծելոյդ՝ ծեծեա, և զայլոն միաւորեա, և հանր աղէկ որ զերդ մէրհէմ լինի. և 'ի վերայ քթեթի ած տարածեալ, և 'ի վերայ դ՚իր և կապեա. օգտէ և կակղացուցանէ զջիղն:

...........[1] ապրի այնից, այլ շանբորոյ օգտեն: —

Այլ դեղ բորոյ փորձիւ օգտակար. առ ծծումբ հարիւր դրամ, մնտրիկ՝ տասն դրամ, ստնիճ լեսած՝ ափկից մի, ցմախտակ լեսած, սև ձիւթ չորս նուկի, խայծղամն երեք նուկի, խոզլիտ՝ տասն նուկի. աղա զամէնս, և զմնտրիկս կտրատրեա խոզտոճն. և զամէն դեղերդ 'ի խոզտոճն լից և եռացո, և զձիւթն և զխայծղամն հետ իրերաց հալեա, և 'ի վերայ խոզտուճն և այլ դեղերոյդ ած և խառնեա, որ միաւորին և եռան հետ իրերաց. և երբ յետ առնուս, նուկի մի քացախ բարկ 'ի ներքս խառնեա, և օծ յարեն, և յետ երեք աւուրն լուա սապունով և երեք հետ օծ. այլ բնաւ բոր չմնայ. փորձով: Եւ թէ կտաւհատի խայծղամն հանես և օծանես, օգտէ: Եւ թէ առնուս զձնիին և եփես, և ջրովն զշունն լուանաս հինգ վեց հետ, և ապա յետոյ խոզտուով օծանես, օգտէ:

1. Յայտ է թէ պակաս կայ 'ի բանից:

## ԴՈՒՌՆ ՑԻԸ.

*Ցաղագս թորի ։*

Առ խայծղան և ռատինէձ, որ է սոնոպրի խէժ, և շպլեղ. միաչափ յիրեար խառնեա և այնչափ շփեա խոշոր չուխայով՝ որ արիւնի. և առ պաղ շպլեղ և միւրտէսէնկ և մանր աղա, և մազտաքէի ձիթով շաղեա և ծծ. օգտէ։ Եւ թէ առնու ոք բորակ և աղ և ալեւր և քացախով շաղախէ և օծանէ, օգտէ։ Եւ թէ առնուս քարպրցախի տակ և այրես, և առնուս զմոխիրն և խողտուով խառնես, և երբ պիտենայ՝ մոխրաջուր արա և լուա զփորն, և ծծ. օգտէ։

## ԴՈՒՌՆ ՑԻԹ.

*Ցաղագս ոզրկի, որ 'ի փողքն փակեալ լինի[1]։*

Հոռոմ ձէթ եռացո և պառկեցո 'ի վերայ ողինն, և աղէկ տաք՝ այնպէս որ չայրէ, և կոտոշով ընդ փողքն 'ի վայր ածծ. անկանի ոզրուկն։ Եւ թէ հանես քսփիս 'ի փայտից և ծխես 'ի կրակ, և զքերան գրաստուն 'ի վերայ մխոյն բռնաս, երբ հաամնի 'ի ոզրուկն՝ անկանի։

## ԴՈՒՌՆ ՑԼ.

*Ցաղագս օձահարի և կորահարի ։*

Զտեղն՝ կուով ծծ, կամ չնխաղողով, կամ աղշքանկի տերևին ջրովն, կամ սամթի ջրովն. զայսոսիկ հետ 'ի հետ պարտ է առնել և յիրեար ոչ խառնել. և թէ 'ի սոցանէ ընդ քիթն 'ի վայր ածես, օգտէ։ Եւ դեղ որ մարդոյ օգտէ և անասնոց. և Երակն օգտէ ամէն ցաւոց, որ անծանօթև աներևան լինին։

1. Ի լուսանցս գրոցն նշանակի, «վասն ձիոց է», խրատս. յայտ է թէ և դուռնս այս և երկոքին յետագայք տեղափոխեալք են, թերևս կամովի, զի կրկնութիւնք իմն են նախակարգեալ խրատուց։

## ԴՈՒՌՆ ՑԼԱ·

*Վասն՝ խաշանց ։*

*Թէ կամիս որ անսղալ յղանան, երեսուն օր յարդ և այլ դարմանս մի տար, քան կանաչ խոտ միայն, և այն սակաւ. զի թէ անսուաղեցընես և քաղցեցընես՝ անսղալ առնու զսերմն ։ Եւ զայլ որպիսութիւնս խաշանցն՝ չունիմք կարիք գրելոյ. այնոր՝ յարածելն է արիութիւն, և մատղաշին՝ 'ի պահելն ։ Եւ զընջուղսն պարտ է երեք ամիս 'ի յետ պահել 'ի կովուցն, որ բնաւ չտեսնուն. և քուշնայ և գարի և սիսեռն թըրջած տալ պիտի, որ ուտեն. մինչև ընջուղքն զերեք տարին չլմընցընեն, չէ պարտ թողուլ որ վազեն ։ Եւ ոչ զայն՝ որ ընդ ժբ̄ տարին անցանէ, վասն զի քան զերեքն 'ի վայր՝ մատղաշ է, և քան զերկոտասանն 'ի վեր՝ դահ է ։ Այնպէս են և կովերն և նոյն սահմանովս տար ։ Եւ զորդ վազցընելոյ ժամն որ յիրեար խառնես ...[1] ։*

## ԴՈՒՌՆ ՑԼԲ·

*Վասն տանոյ հաւերոյ ռնկերոյ և սառածման և գիրացուցանելոյ ։*

*Հաւերուն՝ ջեր տուն պիտի և մութ, զերդ աղաւնէտան, պատուհանք փոքրելոյ և աղէկ թառեր. և դարմանն՝ առատ[2] ծեծած և կեղևած գարի, և կորեկ և թեփ, ընդ իրեար եփեա. և տուր շող որ ուտեն ։ Բայց ցորեանն միայն՝ վնասէ, մի տար. և խաղողի կուտն վնաս է, ձու ածել չտայ[3] ։ Եւ թէ կամիս գիրացուցանել հաւ՝ փետեա զթևսն, և դիր 'ի ջեր մթնագոյն տուն. և եփեա զթեփն հանած գարին և*

1. Պակասէ վերջն և փոխանակ այնր կարգեալ էր թերակիզըն բանն զբոլոր շանց, զոր կարգեցաք զհետ ՑԻԷ դրան ։
2. Յօր. ըստափ ։
3. Յայս միջոցիս դատարկ թողեալ էր յՕր. իբրու բան պակաս, այլ միւս ՕՕ. միահետ գրեն ։

զծեծած կտաւատն, տուր որ ուտեն. և թէ գարեալիւր տաս և կտաւատ՝ աղէկ է։ Եւ զջուրն տուր, և փոշէջուր արա գարեալիւրովն, և տուր. և կորեկն աղացած՝ աղէկ է. և հացմիջուկն գինւով։

Եւ զձուն թէ 'ի ձմեռն յալիւրն և յամառն 'ի թեփն պահես՝ շատ դիմանայ։ Եւ են ոմանք որ 'ի յաղն պահեն, և աղն թերեցուցանէ զձուին միջն։ Եւ զթերեցածն 'ի յայն ճանաչես՝ որ ջուրն դնես, թէ 'ի տակն նստի՝ աղէկ է։

Եւ թէ խորոված ձուի դեղնուց և աղնձած չամիչ ծեծես և տաս հաւուն, զձուն մեծ բերէ և աղուոր, և չաւիրի շոյտ։

Եւ հաւտուննն արձակ պիտի. և հանապազ ծծումբ և փիճւոյ տերև ծխեա, և եղին եղջիւրն, և մարդոյ մազ, որ ճիճի թէ բնակի՝ նա ահոկէ զնոսա։

ՎԵՐՋ

# ՑԱՆԿ

# ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՔ

# ԲԱՌՔ

## ՎԱՍՏԱԿՈՑ ԳՐՈՑ

Ագռ — դիրտ կամ մրուր քաղցուի կամ մեղեր: ճլ. մլ: Եւս և աղտ միրաց: յժե.

Ագլիմիեա — աղտք ոսկւոյ և արծաթոյ: ճհգ.

Ագխար — կամ Ագկար, կամ Աթխար. Արաբ. Իզխիր. — Schoenanthum կամ Juncus Odoratus. Հայերէն Վաղմեռուկ: Ըստ բժշկարանի գայ ի կողմանց Մէքքէի, վասն որոյ կոչի և Մէքքէ օթու. և է եղեգն իմն նուրբ և անուշահոտ, և համով ղուրէնֆիլի նման: ճկգ. մգ:

Ալիկ — խար կամ կերակուր, զոր տան անասնոց 'ի ժամու: յժգ:

Ալուճ տես Սնձի:

Ախժինք — պղտոր մրուր նիւթոց: ճծա.

Ած դնել — 'ի հողն տնկել կամ դնել զուռ որթոյ, կամ այլ տունկ մինչև մազմզկի: միթ:

Ածու — Թ. Բոստան:

Ածպատեր — ածուոց (արտերու) պատեր: միգ:

Ակիշ — Թիակ երկաթեայ, որով զեփածս դարձուցանեն կամ 'ի վայր առնուն: յժե.

Ակն — ծառոց աչք ուստի շառաւեղ կամ ուռ արձակեն: Թ. Փի-տան կէօզի: կգ:

Ակնբցել — զծառին 'չորս կողմն բանալ բահով: խթ. հզ:

Ակնուռ — Նոր ուռ որթոյ բուսեալ 'ի յակնէն: Թ. շահ. խթ. հա:

Ակնջկրկիտ — ականջ մաքրելու գործի. Թ. Հիլալ: մթ:

Ակունդ — յակինթ քար որ է Եագութն: ճկզ:

Ահոկ — Փաս:

Ահոկել — Փասանել:

Աղբահող — աղբով խառնած հող. Թ. Կիւպրէ: մխբ:

Աղբին, Աղբոտ — աղբ ձգած գետին: միր:

Աղեղնած — գզած բամպակ. Թ. Նաթաֆ: մղէ:

Աղծրութիւն — նշանակէ աղխութիւն: մձթ:

Աղկր — Թաղար. բոյս տնկելու հողէ աման: Թ. սախսի: մժգ:

Աղմհրուք — (արբ. Մահրուգ) այրած աղ: (Գէորգ). յժդ: Բնագիրն անդ ասէ Σίλφιον, որ է Անգուժատ կամ Զարհոտ: տ.

Աղնձել — խարկել. Թ. գաւուրմագ: ճիէ. ճլ. մթ:

Աղուեսացաւ — ախտ հերաթափութեան. մազերուն թափիլն: մկե:

Աղուէշպանկ, Աղշպէնկ — կամ աղշբանկ, բոյս ծաղկաբեր. Hyoscyamus. խբ. յլ. — Փռանկ. Jusquiame.

Ակուրայ — տաշտաթաղ առնելոյ ուռ. թ. փալըպըրմա: հգ:

Աղպէտ — կերակուր, դարման: ը:

Աղջկանմայր կամ Աղջկամայր — մատաղամայր, Նոր մայր:

Աղտաղտուկ, Աղտաղա — աղմաջուր, աղոտ աղմոտ տեղ. թ. շօռ:

Աճ — ուռ կամ ոստ թողեալ վասն աճելոյ. թ. աղաճըն շահ ուճրմե-սի: կե. մճ:

Ամենամէկ — իւրաքանչիւր, ամէն մէկն:

Ամինատի խաղող. տես 'ի ծան. դրանց ժ. ծէ. և այլն:

Ամկէք — տ. կամկէք:

Ամնել — ամանել, ժողովել յաման:

Ամպակ — անապակ, զուտ:

Այգէպարան, տես Պարան: կէ.

Այգւոյ ծաղիկ. — Թուի՝ նոյն իսկ մանրիկ ծաղիկն որթոյ, մինչ-չև երևեալ ազոխոյ. ապա նոյն է և ճռխծաղիկն, զի ժուռ կոչի ազոխն:

Այլուփ — դարձեալ, կրկին, նորէն:

Այպ — Արբ. ֆիսա, պակասութիւն, աւերութիւն: ճլէ. ճծ:

Այտուց — ուռոյց. թ. շիշ:

Անդրիանի աղ — Արաբ. Էնտէրանի մըլհի: Քարաղ, կամ աղ հանքային, յանուն աղահանից Դարան լերին Մաւրիտանիոյ:

Աներևան — դրսէն չերևող:

Անթինիոս — տես 'ի ծանօթ. ժ. ծէ դրանց:

Անիսոն — Anisum.

Անկղ — ականջ կամ բռնելիք ամանոց: ճկգ. թ. գուլփ: մժղ:

Անհնար, Անճար — 'ի հարկէ. անհրաժեշտ, ամենակարևոր: լբ. հ. հբ. և այլն:

Անձիանի ծառ. — Աղոցի կոչեցեալ յայլ գիրս, որ է Ilex Լատինաց, Πρῖνος Յունաց: ժդ:

Անյոյլաբար — անծուլաբար ժրութեամբ:

Անմեռուկ — փրփրեմ. թ. սէմիզ օթու. Portulaca. մժգ. յ:

Անտած — առանց դարմանելոյ:

Անցուկ — շուտ անցանող, շատ չդիմացող (պտուղ): մխղ:

յԱնօթեաց — անօթի, բան չկերած: մկը:

Ապիրգոված — պարսաւած, վատ, անարգ:

Ապիրգովել — վատ համարիլ, պարսաւել: ճիզ. մղ:

Ապրանջան — թ. պիլէզիք:

Ապրացու — երկար ատեն պահելու տեղ և բան:

Առիւծախոտ — որ և Խաւարխալ ըստ Արաբաց. — Orobanche. իէ:

Ասպուղան — տ. 'ի ծան. միր դրան:

Ասլի — արմատացեալ. տակով. թ. քէօքլիւ:

Աստղահար — յաստղէ զարնուած, ճիսասուած (բոյս):

Ափուր վայրի — 'ի բնագրին Καλαμίντης, Calamintha, ըստ ոմանց Nepeta, Փռ. Pouliot sauvage, որ նոյն իսկ վայրի դաղձն է. այլ զի 'ի կարգի բանին յիշի և վայրի դաղձն՝ հարկ է թէ ափուր այլ բոյս իցէ կամ այլ տեսակ դաղձին: Ի հին բժշկարանս մեր Ափրի հունտ՝ հայերէն կոչի Հաճկերակ. Արբ. Ղուրփամ. Պրսկ. Հատտփանա: ճլա.

Արգելաշունչ — թ. Բօխնէֆէս:

Արեգ — արև, արևոտ:

Արեգակնակոխ — արեւուտ, ուր շատ արև զարնէ։ մկէ։
Արեգին — արեւելակողմն։
Արենքրմել — քամել զարիւնն. ծուծը հանել. վատուժցընել. հէ. ղդ.
Արեւամարք — արեւուն 'ի մայրն մտանելոյ ժամն։ մխդ։
Արեւել — յարեւու դնել և չորացուցանել։
Արեւջեր — արեւու տաք։
Արի կենալ — զգոյշ կենալ, արթուն կենալ, մտադրել։
Արիշ — թ. ասմալըգ։
Արծուիք — ախտ աղեաց ուռեցից և ջրգողութեան։ ճձզ. մկե.
Արձակութիւն — հեռաւորութիւնն 'ի միմեանց երկու կամ շատ իրաց։
Արքայկաղնի — ուտելու կաղինի ծառ. թ. ֆնտուխ։ մլը։
Արքենի — պարարտ, ուժով. թ. կիւռ։ ժէ։
Արքինացընել — ուժովցընել, պարարտացընել։ ժէ։
Արօտ տեղ — արածելու, ճարակելու տեղ։ մգ։
Արօտել — արածել, թ. օթլամագ։
Աւելգատ առնել — 'ի զուր տանջել (զայգին) զկիթ նորին անագանելով։ ճժէ։
Ափտել — խնուլ, գոցել զծակտիս։ ժբ։
Ափկից — երկու ափն միատեղելով լցեալ։ մկ։
Ափչափ — իբրև ափ մի. թ. պիր ավուճ։
Աքաղ — տափանք անասնոց։ յժը։
Բադկենի — ըստ ոմանց է գայլխոտն, Cuscuta, կամ կնձնի ծառ, Ulmus. յգ.
Բազկականգուն — կանգուն մի, թեւի երկայնութեամբ։
Բազմաստղ — Բոյլքն համաստեղութիւն. թ. Իւլքէր. պարսկերէն փէրվին։
Բազուկ (ծառոյ) — բունն 'ի գետնոյ մինչև յոստս. և մեծամեծ ոստք բաժանեալք։
Բալ — մեգ, մառախուղ։ ծթ։
Բալգոյն — մշուշ կամ մթնգոյն։ յխա։
Բալեցուցանող — մեգ, մշուշ բերող, մթնցընող։ մծէ։
Բալուտ — միգամած։ մխթ։
Բակբակ — տեղտեղ. շուրջ շուրջ։ ղե։
Բաղարջանք — բաղարջք. լօշ. հաց տափակ անխմոր. և որ ինչ նման նմին։ Եւս՝ բջիջք մեղեր։ մղ։
Բանհոգ — հոգացող, խնամող, գործակալ։
Բաշխատել — աստ անդ զատել, բաժանել։ մկ։
Բարձրակ — բարձրկեկ։
Բարոյ — խրոխտ, մեծաբարոյ։ ձիգ։
Բեր — պտուղք բուսոց, և ձագք կենդանեաց։
Բեր առնել — պտուղ տալ, պտղաւէտ լինել։
Բերառք — սկիզբն բեր'ածելոյ, պտուղ տալոյ։ մլզ։
Բերոյ — պտղատու։
Բերուիկ — քաղցաբեր, պտղալի (ծառ)։ միդ, մլը, մձա, և այլն։
Բերցոյց — պտղացոյց. այսինքն սկիզբն կամ ժամանակ պտուղ ցուցանելոյ ծառոց և այգեաց, և առաջին բերք։ հթ. մժբ։
Բեւեկնի — ազգ խժային մայր ծառոյ. Terebintus. ծգ։
Բզէզ — բզեռն, աղբասէր միջատն։
Բէճ — ուս։ մյդ։

Բիծ (բոյս), — անպիտան, վատուժ ։ միր ։
Բղուղ — հողէ կամ յախճապակէ մեծ աման ։
Բնածիլ — բուն ծիլ ուստի բողբոջին բարունակքն ։ միր ։
Բնահաստ (տակ), — ամենէն հաստ բուն կամ արմատ ծառոյ ։ մլէ ։
Բնաորթ — որթոյ զօրեղ կամ մեծագոյն ուռն ։ կե ։
Բնաջեղ — մեծ կամ գլխաւոր ջիղ մարմնոյ ։ մղդ ։
Բնատակ — բնատակուիծ, հաստ ևմիջին ծիւղ արմատոյն ։ մլզ․ մկէ ։
Բնացրցել — 'ի քումս անկոյն բիր մի ցցել առ 'ի հաստատութիւն ։ մկզ ։
Բոլոծ — անսերմն, ստերջ անասուն ։ մղդ ։
Բոռ — իշամեղու, իշաճանճ․ վայրի մեղու ։
Բորակ — Թ․ նաթրօն, կիւհէրճէլէ ։
Բուծուծ — շագանակի և նմանեաց արտաքին փեճեկն փշալից ։
մխ ։
Բուռ — գաճ․ Թ․ ալչը ։
Բուրդ — ծառին միջի ճերմակ կակուղ մասն, սրտուկ ։
Բուրդամուշ — տեսակ խաղողի․ ա․ 'ի ծան․ ծէ․ դրան ։
Բուք — հողմախառն ձիւն․ Թ․ թիփի ։
Բռնցրնել — այրել ։
Գաղան — բարկ, սաստիկ, սուր․ Թ․ ֆէսֆին ։ մկ․ մձե․ և այլն ։
Գայլի խէժ — խէժ ծորեալ հանեալ 'ի գայլ Թփոյ, որ է Spina Hirci ։
Գահել — վարել, քաշել, քշել, հրելով զարնելով ։ մղ ։
Գաղձ — խոտ ծովային․ լդ ։
Գայլիկոն — գործի ծակելոյ, հերուն․ Թ․ պիւ կամ պուրկու ։ մլթ ։
Գան — վէրք, վնասուած վիրաւորած մասն․ Թ․ եարա ։ ծ․ մճր ։
Գանել — վիրաւորել, վնասել ։ կր․ ծ․ մէ ։
Գառնադմակիկ — Թթունիչ․ Թ․ գօյա գօտուղու, գօտղու գօչլաղը ։
ի․ մլզ ։
Գարաւ — տիզ․ Թ․ կէնէ․ ոչխարաց ոջիլն ։ յժթ ։
Գարէծիղ — գարւոյ ցօղունն և յարդ ։ մժգ ։
Գարէձաւար — կորկոտ կամ մանրուք գարւոյ․ Թ․ պուլկուր ։ մզզ ։
Գարէփոխինդ — կերակուր յալերէ գարւոյ ։ ճհդ ։
Գեղակ — ագարակք 'ի գեղջ․ գիւղային տուն և կալուած․ Villa ։
Գեհ — երամ, հօտ ոչխարաց ։ յժէ ։
Գետնամօրուք — տե՛ս ծանօթ․ կբ դրան ։
Գինեմրուր — մրուր կամ դիրտ գինւոյ ։
Գինենալ — գինի դառնալ ։ ճղէ ։
Գիշախոտ — Թերևս Զարհուան կամ Գաղբան՝ բոյս ։ յգ ։
Գիշահամ — համը գէշցած, հոտած ։ ճհը ։
Գիտոր — խոզակ կաղնոյ․ Galla ։ Թ․ մազը ։ ճհզ ։
Գճցրնել — ճկել ծռել ։ մկը (Գէորգ ասէ գիճացուցանել ։)
Գնդղուկ — կնտըլիկ․ շատն կամ բոլոր մէկտեղ գնտաձև եղեալ
(բոյսք) ։ մկ ։
Գշկուր — Թրիք եզին և նմանեաց ։
Գող — մէզ, շեռ ։
Գողբերան — շռծակ ։
Գողել — շռել ։
Գոյանալ — յառաջ գալ կամ բերել, զարգանալ, գոյացուցանել
կզ․ հբ ։
Գոյնեւան — գոյնզգոյն ։
Գործելախառն — կէս ածուղ կէս կրակ ։ ճձա ։
Գորտ — ձիոց սմբակին միջի կլոր մասն ։ մղդ ։

Գուղձ – կոշտ հողոյն չորացեալ, և դիւրափշրելի, Թ. քէսէք, պրսկ. քիլուխ: Հ. ձժ:

Գուռն – տախտակէ տաշտ խմոր Թրելոյ. քարեայ աւազան. ուստի ջուր խմեն անասունք. Թ. գուռնա: մկը. մղ:

Գչխայ – Թուխ՝ ձիւղ ծուռումուռ կամ խորտուբորտ: մխգ:

Գռներ – տ. գուռն:

Գռզաբուրդ – (ոչխար) որոյ բրդին մազերն խառնեալ են ընդ միմեանս: յժզ:

Գտակ – (ծաղկանց) Թագաձև կամ դտակաձև մասն 'ի մէջ ծաղկին, որպէս տուղտ ծաղկի: ձկ:

Գրօղն – մահացուցիչն, խանգարողն. մահ: մժգ:

Գօս – գօսացեալ, չորացեալ:

Դահ, Դահութիւն – քարթու, հնացեալ, Թ. գարի, պոյալի: մըզ:

Դաղձ կամ դաղձն – վայրի անանուխ. Թ. յ̈նանէ: Mentha silvestris: տ. և Յօտանջ: ձլա:

Դարման – խար, կեր անասնոց:

Դամոն, Դամոնի – սալոր (դամասկացի): ձղե. միը:

Դդմոց կամ Դդըմնոց – դըդումի բոյսք և արտ: մխզ:

Դեժպուհի – դժպհի ըստ Նախնեաց՝ բայց աստ Թուի վասն քաղ չան ասել: յիբ:

Դեհ – կողմն: Թ. Թարաֆ:

Դեղձիր – յաչս ծառուր քարշելոյ փոքրիկ գործին. Թ. մինպալ, հիլալ:

Դերձանիլ – դերձանի նման երկայնիլ (մեղրի): մղա:

Դիպան – դէպ 'ի:

Դմբիչ – Թնթոց դաւազան, ունելով 'ի վերին ծայրն բոլորակ տախտակ առ 'ի խառնել և հարել զհեղանիւթս: ձհգ:

Դուր, Դրով – կտրոց գործի (հիւսան), և սեպ, որ է դամ: զ. միդ. մձա:

Ի Դրուցէ – դուրսի կողմն, դուրսէ: մխզ:

Դրուցահայեաց – դուրս հայեցող, դէպ 'ի դուրս ելած:

Եղաստեղք – աստեղաց հորիզոնին վրայ բարձրանալոյ ժամանակն: ձլը:

Եղենի – ձիթենի: մհզ:

Եղերդի – դառնիձ բանջար. Cichorium, փռ. Chicorée, որոյ վայրենին կոչի եղրդակ. Թ. հինտիպա: Բայց որ 'ի ձհը գրան յիշի եղրդի չոր փայտ՝ Թուի վայրենի ծառն ալոճանման, կարմրապտուղ, երկայնատերև, որ կոչի 'ի Հայս եղուարդի ծառ կամ եղրդուտի: մհ: տ. և Խլէֆ:

Եղէկոթ – տ. ծան. զ դրան:

Եդկ – գաղջ. Թ. ըլըճագ:

Եզն – եղջերու. Թ. կէյիք.

Եղջիւրենի – խառուպ. Siliqua, Թ. ջէլիլ ... : միե:

Եռ կամ Եռն – եռալ (քաղցուին): ձժթ:

Եռ ընդ եռ – տաք տաք:

Եռջուր – եռացեալ ջուր: ձժե:

Երակ երակ – տեղ տեղ կամ մաս մաս 'ի պարտիզի: միը:

Երբուծ – մանք կրծոց: յիդ:

Երեսք մի – կարգ մի. Թ. ... գադ:

Երեքուռնի – եռաձիւղ, երեք կողմով: մձբ:

Երիթ կամ Իրիթ – սեպ. Թ. չիվի: մլա. մխզ:

Երկչափ – երկպատիկ, առաջինին կրկինն։ մլց։
Երնել – հոսել զցորեան, և զնմանիս. թ. սավուրմագ։ մկը։
Երոյց – այրուք, այրած։ կթ։
Երքոյն – որքիւն, քաղցկեղ. թ. Եէնկէճ։ կիէ։
Զաղառ – չուան որսական։ կիե։
Զամբեղ, Զամբիւղանի – կողով. թ. զէմպիլ։ ձժա. մկը։
Զամբուռ – պիծակ, իշամեղու։ մղ։
Զարդել – բաց'ի, զատ'ի։
Զարկ – զալնելն, հարուած։
Զարմուհի – մատակ ձի որ պահի վասն սերնդեան։ մղց։
Զաֆրան – քրքում. Crocus։ ձխգ. միը։
Զերդ – երբ, մինչդեռ, քանի որ դեռ։ հէ։
Զերդուած – աղտ կամ փրփուր որ յեփիլ և յեռալ քաղցուի կամ
մեղեր՝ յերեսն ելանէ։ ձլը։
Զմաստ – ախտ ջրգողութեան. թ. իսդիսգա, խաբխոգա։ մկե։
Զմուռ – զմուռս, խնկախառն իւղ. թ. մուռռի։
Զուգել – պատրաստել, շինել։
Զուսպ – ամփոփ, քաշուած.
Զուֆա – զոպա, կամ ծոթրին։ ձիը։
Զուֆր – տես Զերդուած։ մդ։
Զֆրքաղել – զզուֆրն (զաղտն) քաղել։ մղա։
Էջ – դար'ի վար, պառկուկ։ մղդ։
Ընկիւժէտ – անգուժատ. տ. Զարհոտ։ ձթ։
Էքլիլ-իւլ-մելիք կամ Էքլիլմելիք – արաբ։ – Melilotus, փռ. Melilot, որ և 'ի Մէլիլօթ փոխաբերեալ գտանի 'ի հայումս, և ըստ իմաստին և թարգմանեալ Մեղլօտօս. այլ հին բժշկարանն ծանուցանէ զբնիկ անունն հայ՝ Կորնգան։ Ամիրտովլաթ գրէ. « Թուրքն Ղօչ պօյնուզի ասէ, և ինքն խոտմն է՝ որ մէկ աւուր լուսնին կու նմանի, և սպիտակ և դեղին կու լինի.» և այլն։ ձծթ. ձհզ։
Ընդոտնիաք – ոտից տակ։
Ընձանակ – թաղար, աման կաւեղէն։ մղը։
Ընջուղ – զուարակ, մեծ հորթ։ մղ։
Ընտանի աղ – հասարակ աղ, թ. սօֆրա թուզու։
Ընտրով – ընտրած, ընտիր, աղէկ։
Ըռազինան – տ. Ռազիան։
Ըռամատէս ցաւ – թուի կալուած կրծոց 'ի հիւթոց (պալղամ) ի։
Ըռունգն – քիթ, ցցուած մասն։ մղդ։
Ըռուպ – թ. պէքմէզ։ ձե։
Թազէ, Թազէնալ. թ. – դալար, դալարանալ։
Թալթալ – արտաչափ մի, ծվար. թ. փէօնիւմ։
Թալուկ – մարմրուք, սրտի ճզմուիլ կամ անցնիլն։ մծթ։
Թանուիլ – թրջիլ։ կժե։
Թապալ – թաւալումն, թապլտըկիլ։ մձթ։
Թառ – ձողք կամ գաւազանք յորոց վերայ նստին հաւք, կամ զորոց կախին խաղողք և պտուղք։ մժգ.
Թարխուն, – Նուիճ, Arum կամ Dracunculus. թ. լուֆ, եըլան եասդըղը։
Թաւպ թզենի, – վայրի թզենի և թուզ, և արու (ըստ Գէորգայ), Caprificus, խթ. մղ. կժէ։
Թափնել – լուսնի նուազանալն յետ լրմանն։ ձը։

Թափնթափ կամ Թափ ընդ Թափ – թափանցիկ, կողմէ կողմ ծակած կամ անցուցած: մձա:
Թափիչ կամ Թափիճ – ծառոց պտուղ թափելոյ ձող: մձբ:
Թափխալել – թուխ պարսկ. Նէզխալ. այլագունեալ և ուռուցեալ 'ի սաստկութենէ ջերման: յիգ:
Թեղար կամ Թաղար – հողէ աման: մդ:
Թեղի տակ – տուղտ սպիտակ. թ. աղթեան օթու, ըստ բժշկարանաց:
Թերեհամած – պակասահամ, կամ անհամ, անհամանալ սկսած: ճհը:
Թերեցուցանել – պակսեցընել:
Թերիկախել – քիչ մի հեռուէն կամ վարէն կախել: մկը:
Թէֆնէ – թ. դաֆնէ:
Թթուկիչ – թրթնջուկ. թ. գուզու գուլաղը. մկթ, յղ:
Թմբուլ – ըստ ոմանց է պէտէլ բոյս հնդկային, նման սատէճի: Ըստ մերոցս՝ թամբուլ է ծառ որոյ տերևք նման են յոփոյ այսինքն կաղամախի: Թամբուլ կոչի 'ի Հայս և ազգ մի շլորոյ երկայնաձև մուգ կարմիր: ճղ:
Թնթոց տես Դմբիչ:
Թնջկռել – ընդ իրեարս խառնել, խռկել, որպէս մազքն և մազմըզուկք արմատոց. (Գէորգ): մլա:
Թորթոշ – թարմ, անճուն ուռճացեալ. թ. թէօֆէ: ժէ. ի. մկ:
Թորթոշեցուցանել – դալար, կայտառ պահել: մխգ:
Թորխ – չորացեալ ծառ (ըստ Գէորգայ): ղգ:
Թուխթ – Նիխթ բառ պարսիկ, նշանակէ 400 կամ 600 դրամ: ճկ:
Թուխմա կամ Թուխմայութիւն. պրսկ. Նիխմէ. – ախտ ստամոքաց 'ի չմարսելոյ զկերակուր: ճձգ, մծթ. յժգ:
Թուրայա – Բազմաստղն, կամ Բոյլք համաստեղութիւն. արբ. Սիւրէյէա: ժբ:
Թուրջ արկանել – 'ի թրջոց դնել:
Թոքատուն – մարմնոյ թոքերուն տեղն դրսուանց: յիգ:
Թրթուր – որդն վնասիչ բուսոց:
Թրմուզ – եգիպտացի բակլայ. թ. պագլա թուրմուսի. Lupinus.
Թօշնիլ, Թօշնեցուցանել – թառամիլ, չորցընել:
Թօպ տես Թաւալ:
Թօփալախ – կիպերոս, որպէս կոչի 'ի դուռն յի: Cyperinus. բոյս եղեգնանման, ծնդաւոր, կարմրածաղիկ: ճհզ:
Ժժմայեն – ճճիական. պէօճէկլի: ծթ:
Ժժմունք – միջատք և որդունք: հը:
Ժիլաւպ – բնագիրն երկուս բոյսս յիշէ (յժգ) (Μηδική) Medica որ է ըստ մեզ եռատերևուկ. և χύτισος, Cytisus, զոր ոմանք 'ի մերոցս մեղուախոտնկ կոչեն:
Ժողուենի – գժնիկ. Rhamnus.
Ժրարար – ժիր, աշխոյժ, արի: մղդ:
Իգախռնտատ – ազգ խնդատ տնկոյ, որ է եղնագին. թ. սըղըր գույրուղու. Verbascum. յգ:
Իշքուռակ – յաւանակ:
Իւլիմ – բառ արաբ. թամ. ամբողջ:
Իւլիմ տալ – ամբողջացուցանել, հասուցանել (զպտուղ): մլա:
Իսկի – որքան:
Իւղէրլիկ – թ. ազգ կոտեմոյ կամ փեգենայի: մկգ:
Լակոտ, լակոտանի – շան ձագեր: յիգ:

Լայնոզն — Թիկունքն լայն : յիդ :
Լար կամ 'ի լար — ցըցուած, կանգուն. Թ. տիք :
Լարել (զքիլ) — բանալ (զմատունս) : մզա :
Լեզուաթոռ — լեզուին տակն : յ :
Լեսած, լեսուլ — լուսել, մանրել ճզմելով : իա, մձդ :
Լերդ գետին — խծկած խտացած արմատներով, և այլն : ժը, մհդ :
Լէհէֆ — վերմակ. Թ. եօրղան : ե :
Լիճ — ջրով խառնեալ ալիւր. Թ. պուլամաճ : յիբ :
Լիւլէ — ծակ կամ բերան ըմպանակ անօթոյ : ճժա :
Լծվար տես Թալթալ :
Լոկանալ — լողնալ 'ի մէջ ջրոյ :
Լող — կլոր ողորկ քար զգետին տափկեցընելու շոկելու : մձթ :
Լողել — գլորելով ողորկել, կոկել՝ իբրև լողքարիւ : լե, մձթ :
Լուիճ կամ լվիճ — բուսոց վնասօղ ճիճի որպէս թէ լու : մկը :
Լուծ — զոյգ. Թ. չիֆթ : յժէ :
Լօշ — հաց տափակ, երբեմն և անխմոր : Այլ և բոյսն Նապաստակի ականջ կոչեցեալ, Auricula leporis. յե :
Լօշտակ — բոյսն Bryonia alba. յե :
Խաժ — կապուտագոյն :
Խալամ — ոլոքն, ոսկր սրունից (եւ և գանկ) : մղթ :
Խալատ, արաբ. ղալէթ. — սղալ, վնաս :
Խալվէթ, արաբ. — ազատ, առանձին, անքոյթ : մղ :
Խախաց — պանրի մակարդ : յիբ :
Խախացել — մակարդել. Թ. մայալամագ : յիբ :
Խածաբրել — աւերել, խանկրել : իէ :
Խամ (գետին) — անգործ թողած առ ժամանակ մի : ժ :
Խամծէք — կզակատակի միսն : յ :
Խամշերկ — տարի մի առանց ցանի թողած արտ, որ խափանհերկ ևս ասի :
Խայծ — պտղոց կարմրիլն և հասունանալ կամ սևանալն : միդ :
Խայծղան — պազիխէժ. Թ. գաթրան, ըստ Գէորգայ. այլ ըստ բնագրին երևի եղևնոյ խէժ լինել : Ի դուռն Ցիէ յիշի Կտաւատի Խայծղան, և հարկ է անդ իմանալ զհիւթն կամ զթանձր ձէթ նորին : մլբ, մղզ, յժգ, յի :
Խայտ — խատուտեկ. Թ. ալաճա :
Խայտել — նկարել խատուտիկ գունով : ղե :
Խանձ — այրուք, կիսայրեաց կամ այրող բան : մհբ :
Խանձառ — կայծ կրակի : ժգ :
Խանձուած տեղ — ուր խանձ կամ այրուք կայ, կամ ծուխ կրակի : մղ :
Խանձրէհամիլ, Խանձրէհամութիւն — խանձածի համ լինել : ճծա :
Խանձրէհոտիլ — խանձի հոտ տալ : ճձա :
Խաշմսի ջուր — խաշած մսի ջուր : յիգ :
Խաչք — սեպ. Թ. չիվի :
Խաչք անցուցանել — ընդ մէջ անցուցանել. մէջը խոթել գամի պէս : ղա :
Խաս — ընտիր : մղէ :
Խասապ, արբ — թոք. Թ. ճիկէր : մծզ :
Խասապարիրէ, արաբ — լաւ ևս գրելի Ղասապ-էլ-ըղարիրէ կամ ըղարիրէ. հայերէն Շաւառն — եղէգն. ըստ բժշկականի « Եղէգն է որպէս գրիչ և այլ բարակ. և ինքն երկու ցեղ է. մէկ ցեղն 'ի

չուշմայի փայտն կու նմանի, և այն ցեղն կարճկուկ է, և երկայնութիւնն մէկ թիզ է և այլ քիչ մի երկայն. և մէկ ցեղն այլ կոկ է, և յերկայնութիւնն մէկ կանգուն, և համն սուր և լեղի, և գոյնն մթագոյն է. և թէ կոտրես՝ մէջն սարգոստէ կու նմանի... 'ի Քաղաքօթու դինհէն կու գայ... (առաջինն) 'ի Հնդկաց կու գայ »: ճկգ:
Խասիաթ — ներգործութիւն, ազդեցութիւն. ևս՝ օգուտ: ճիբ:
Խասրնի — խսիրներ: մձզ. մձէ:
Խատխալ — առիւծախոտ:
Խարանք — հրացեալ երկաթով այրելն, որ և տաղել:
Խարբախ կամ Խարբակ, վրացի կոճ. Elleborus. ճթ. յիզ:
Խարբութիւն — զօշաքաղութիւն, ընչաքաղցութիւն: է:
Խարել — տաք երկաթով այրել, տաղել:
Խարիչ — տ. Տողակեզ: մխե:
Խարձ — եղեգուտ կընիւնոտ տեղի. թ. սազլըգ:
Խաւրծիլ — մատղաշ որթ կամ տունկ: հբ:
Խափանհերկ — խափանումն հերկման ամ մի կամ երկու առ 'ի հանգիստ երկրի: ժ:
Խեճեպ — կճեպ. թ. գապուգ:
Խենտեկել — փոս բանալ չորս կողմն: մի:
Խեցատ — Խեցւոյ կտոր կամ պտուկ:
Խեչափառ — թ. չաղանօզ: զջ:
Խէչ — քով: յէ:
Խիճ — մանրիկ քարինք 'ի գետափունս և 'ի ծովեզերս:
Խիարուկ — վարունկ, մանաւանդ վայրենին. թ. խիար: մղ:
Խլէֆ — 'ի հին բժշկարանի խլէֆն կոչի Մանր-Եղերդի. իսկ առտանոր (մը) պարզապէս եղերդ. բայց այլ իմն ազգ թուի բուսոյ, զի և ընդ անուշահոտս յիշի, և ոչ եղերդն բանջար կամ ծառն. զորոց տես 'ի բառն Եղերդ: Անհրաժեշտ գրէ. « Խլաֆ, որ Թուրքն Սօրխուն (կամ Սօրղուն), կ'ասէ. լաւն այն է որ գեղին ծաղիկ կ'ունենայ:... Ասէ Պաւէհին, թէ պյսոր տերևին սֆսաֆ կ'ասեն, և Պարսիկն պէտ կու ասէ. և Պալխցիքն (բնակիչքն Պալխայ, որ է հինն Բահլ կամ Պահլաւ) Պանր-ամճամ (կամ Պանր-ամանճ) կ'ասեն. Եւ իր խէժն իր տերևէն կ'ելնէ. և լաւն այն է՝ որ 'ի Ջրեզերքն լինի »:
Խծկել — խնուլ, ծակերը գոցել. թ. Եըգամագ:
Խծուծ — աղէկ խծկած, գոցած: մձա:
Խնծորք — մանր սորին անդամոց ձիոց, որպէս գաւակն: մղգ.
Խշր — Թուփ՝ ոզոր, այսինքն ճկուն ոստք ունենաց և նմանեաց՝ որով կապեն զտունկս և զպատրոյսս: մթ, միդ.— Առնախնիս գտանի Խաշար, և համարի թուփ կամ խարձ:
Խողան — 'ի վերայ արտին մնացեալ թզաչափ ոճքն ցորենոյ, և այլն:
Խողմատ կամ Խողմատ Կաղին — Խողկաղին. պտուղ վայրի կաղնոյ. թ. բալուտ: կը:
Խողտի — խողի եղ: մկբ:
Խոնջիլ — յոգնիլ:
Խոչ — սուր բան իբրև փուշ 'ի մարմինն: մխի. մկբ:
Խոչառ — մարմնոյն մէջ փուշ կամ ուրիշ բան մը մտած: յժե:
Խոպանիլ — խափանիլ, խանգարիլ ըստ հը դրանի:
Խոռիլ — պակսիլ, մաս մը կորուսանել: մհե:
Խոռմուշ — խուխ, խոռեղէն այրելի: մհէ:

Խորու — խորունկ։
Խոցեր — բևեռանման երկաթք անորոյ՝ զոր 'ի վիզս շանց անցուցանեն։
Խոցոտուկ — խոստուկ ցաւ. Թ. սանճը։
Խուպայզ — մոլոշ. Թ. էպէմ-կէօմէճի։ ըլ։
Խչլեկ — ուռ որթոյ հանդերձ տերևօք, պտղով և ամենայն մասամբք։ մժգ։
Խռխլխոտ — տեսակ կուժի. Թ. չամ աղաճը, ըստ Գէորգայ. բայց ըստ բնագրին Թուփ ձիւթ կակղեալ։ մլա. յե. յժգ. յժթ։
Խռշոփել — խաշբուտել, խանգարել, աւերել, փտեցուցանել (զպտուղն)։ ղջ։
Խռշոփունք — խաշբուտուք։ ղգ։
Խռուացուցանել — խռիւ դարձընել, չորցընել։ ծը։
Խստոր — սխտոր, սարմուսագ։
Խրչան — խրտուող, վախցող (ձի) Թ. ուրքէք։ մլգ։
Խօղ — տ. 'ի ծանօթ. մձա դրան։
Խօթ — հիւանդ։
Խօլօրայ — լուադեղ. Conyza.
Խօսող — աքլոր. Թ. խօրօզ։
Ծաղկա թափել — ծառոց ծաղիկն թափելն։ մլէ։
Ծայրատել — ծայրերը կտրելն։
Ծառայել — հոգածութեամբ դարմանել կամ աշխատել։ միե։
Ծառտկեր — տակք ծառոց, մերձ յարմատն։ հա։
Ծեղ — յարդ կամ յարդի մղեղ։
Ծիթնայ — տ. 'ի ծան. մթ դրան։
Ծիր անցուցանել — շուրջ ածել, չորս բոլորտիքը պտըտցընել։ ղե։
Ծծատու — ծիծ կամ կաթ տուող։
Ծմակ — շուք, անարև տեղ։
Ծմին — փոքր շնչահան. Թ. նէֆէսլիք։ ճղգ։
Ծներեկ — տես Շիլխոն։
Ծովեր — աւազանք կամ լճաձև ջուրք։ մղ։
Ծովացուցանել — ծորեցուցանել, ջըրին վազել տալ առատապէս։ մծա։
Ծոր — Ribes, Uva Spina.
Ծորենի — Թ. անպէրպարիս Berberis.
Ծունդ — բնաորթ բուն որթոյ, կամ առաջին ստուար բաժանեալ ուռք։ հէ. տ. Մայրան։
Ծրարանի — ծրարներ, կծիկներ, Թ. չըգըն։ մծը։
Ծփել — ջուր սրսկելով լուանալ։ յդ։
Կաթինք — թռուի կայթելն, այսինքն գնացք կամ ընթացք ձիոց։ մղզ։
Կախրահան — շան ընդ վայր էջերկար հաջելն։ (Գէորգ) յիբ. տ. և 'ի ծան։
Կածնել կածան գործել — փորել 'ի հողն խողովականման, և անցուցանել ընդ այն զջուրն։ լդ։
Կաղամբ. — Թ. լահանա։ մհա։
Կաղձին — պինտ և փակչուն կամ կպչուն հող։ ծջ, միդ, մծ։
Կաղմխի — կաղամախի ծառ։ ճլ։
Կամկէք կամ կամկէկ — կամացուկ, յուշիկ, մեղմիկ։ կդ, մձգ։
Կայթ — ազդերք և ծունկն անասնոց։ մղգ։
Կանայք — ագուգայ փայտեղէն։

կանդին կամ կանդիւ — գտակաձև կամ պսակաձև հիւսած բոյսք կամ ոստք: Ճլա:
կանեփ — Թ. քէնտիր:
կանկառ — ումկ. Թ. քէնկէր:
կաշեգործանոց — գործարան կաշւոյ, խաղախ. Թ. տէպպաղ կամ Թապագ:
կապիճ — աչաց բոյնն կամ ամանն:
կապծակ — ծակ 'ի խաղողն երբ յողկուզէն փրթի:
կապոց — փունջ. Թ. տէմէթ:
կառկուռ — ստէպ, շատ անգամ: ա:
կառնուտ — տեղի ուր աճէ կառն փուշ: մհբ:
կասլայ — դափնի, Թ. տէֆնէ: ղզ. մհը:
կարեցուոր — կարող, ուժով, ճարտար: ի:
կարասկոտոր, — կարասի կտոր. Թ. քիւփ քըրըղը:
կարասաձագ — փոքրիկ կարաս: Ճհզ:
կարկաչան — խոխոջելով վազող ջուր. Թ. չաղլայան: մղ:
կաւդայ — տ. Կօդայ:
կերիչ — կերող, ուտիճ, ճճի կամ ժժմակ: մծա:
կէզն — դար 'ի վար: յժէ:
կէզնել — 'ի մէկ կողմին վրայ ծռել: Ճկդ. մծգ:
կԹղայ — ըմպանակ, Թաս: ՃՁէ:
կԹոց — կողով. Թ. քիւֆէ:
կիԹ — բերք Թէ բուսոց Թէ անասնոց (կաԹն):
կիպարի — նոճի. Թ. սէրվի: Ճկ. միը:
կիպէռիս — տ. Թօփալախ: յի:
կիսակուժ — կէս փարչ:
կիւ — Թ. սագըզ: Ճլա:
կլունուս — 'ի բնագրին է φλόμος, որ գտանի տառադարձեալ և 'ի հայումն՝ ֆղոմոս, և է եզանագի բոյսն, որ և խունդատ: յԹ. տ. և Իգախունդատ:
կծկեալ — հող պնդացեալ 'ի չորուԹենէ:
կծուրնալ — աւերելով (ըմպելեաց) կծու լինել, կամ ծԹուիլ: մձգ:
կղմուխ — Helenium կամ Enula Campana. Թ. էնտուղ օթու: յգ:
կճիճ — հողեղէն աման, փարչ, Թ. կէօվէճ: յգ:
կնդել — փետտել, Թ. եօլմագ: միե. մլ. մհը:
կնճակ — ծառոյն հաստ ճիւղն որ 'ի բունէն ելանէ, (Գէօրգ): մհբ:
կնուկ — Թ. կէնէ, ձիաստաց, ձին խայԹող ճանճ: յժբ:
կնջուտ — կնճիԹ, Թուշ, պռկունք, (ձիոյ): մղգ:
կշոշ — յօտոց կամ մանգաղ, ըստ բնագրին: ղգ:
կշտածծել — կուշտ ծծել (կաԹն): յժը:
կոԹէք — կոԹեր, խոզան մնացեալ յերեսս երկրի: կբ:
կոծկել — զճաԹածն փակցընել:
կոկնուտ — Թուփ խճային աւազախիտ գետին: հե. մհգ:
կողբացի աղ — յաղահատից Կողբ գեղջ Հայոց: հխե:
կողեր կամ կողք — զառիվայր և բարձրադիր գետինք, Փռ. Côteaux: մհե:
կոճ — առաջին տարւոյ ուռ 'ի մայրանն, այսինքն 'ի բուն որԹոյն. և տեղի նորին՝ եԹէ ուռն կտրեցի: կա:
կոճք — բոլորակ մասն ընդ մէջ սրունից և ոտից, Թ. Բօգագ: մղգ:
կոճակ — փեԹակ մեղուաց. Թ. գօվան: մղ:
կոճակ բուսոց — աչք կամ կլոր մասն նոր ծլած բուսոց: իը. մհը:

Կոյզ – ողկոյզ, և իբրև ողկոյզ գիզեալ: մզ:
Կոյզկապ – կոթ խաղողոյ որով յողկոյզն կախի: ճժգ. մծգ:
Կոն, կոներ – աման աղի և այլ նոյնպիսի իրաց: (Գէորգ.): ճզ. մզ:
Կոնգոմ – պղնձեայ սափոր. Թ. կիւկիւմ: ճծզ:
Կոշկոռն աղ – մեծ կտոր աղի: մձգ:
Կոչել – չուել. Թ. կէօչմէք: մզ:
Կոտեմ – Թ. թէրէ օթու. Nasturtium: մհա:
Կոր – կարիճ: ճզ:
Կորահար – 'ի կարճէ կճեալ, կամ խոցեալ: մծէ:
Կորիզ – կուտ:
Կործել – բերանը վար կամ գլխիվայր դնել զամանս: մի:
Կորկոտ (աղալ) – մանրեալ և լոռեալ, իբրև փոխինդ (լաֆօ): կը. ճհգ:
Կու – կովու կամ եզին թրիք: կը. միգ:
Կուժ – հողէ սափոր, Թ. փէսնէ:
Կումք – բերնի թուշերն՝ երբ ջուր կայ 'ի մէջն. կամ ջուր ումպ ումպ (կաթ կաթ) խմելու կամ սրսկելու համար: մժգ. մղբ:
Կուպր – ձիւթ. Թ. զիֆթ, գաթրան:
Կուռ – հոծ, խիտ, մէկտեղ: միր. մլգ:
Կուրծ հատել – կարճ կամ խորէն հատել, շատ ոչք չթողուլ:
Կոփել – տաշել, փորել: մթ:
Կռունկք, կռմնք – տանիք, երդիք:
Կռզի – Acacia, այլ և բանջար ինչ:
Կվենի կամ Կուենի – մայր փայտ. Թ. չամ: ծբ:
Կտաբոյս – տունկ կամ բոյս որ յառաջ գայ և աճէ 'ի կորիզոյ (կուտ) կամ 'ի հատէ: միր:
Կտապեալ – (օձ) գալարեալ: ճլր:
Կտաւատ – Թ. ջէթէն թօխումի:
Կտրած – կտրած (կաթն, և այլն):
Կտտել – թթուիլ կամ կարիլ գինւոյ կամ կաթին: ճիդ:
Կրակեց մոխիր – կրակախառն մոխիր, աճիւն:
Կցխանի, Կցխաք – չարոց. Թ. հէվլէնկ. մժզ. մձե:
Կօզայ – վարունգ է խոշոր. Թ. ճէնկիւէր, ըստ Գէորգայ: միր. մճա:
Կօկ (հացի) – պատառ: մղգ.
Կօստ կամ Կօստիտակ – Costus. արբ. Գուստ, ազգ բուրաւան ծառոյ, հոտաւէտ: ճխբ. ճղա:
Կօտոշ – եղջիւր: յը:
Հազար – Թ. մարուլ:
Հալ բերել – հալեցընել կամ մարսել զկերակուրն: ճձր.
Հալաս առնել – թուփ՝ անկել:
Հալաւ – զգեստ, հագուստ:
Հալհաւիճէ – Cardamomum. հայ. Ճուչմիր, կամ հիլ. Թ. գագուլէ: մղգ. յգ:
Հալֆայ – Թ. պիւլպիւմ օթի, ըստ Բժշկարանաց: մթ:
Հակակայ առնել – հակառակ համեմատել: մղգ:
Համամայ – Amomum ծառ ողկուզաբեր ոսկեգոյն անուշահոտ ծաղկօք. ճխգ: Բժշկարանք մեր յայս անուն նշանակեն և այլ բոյս՝ կարմիր և մանր ծաղկօք, որպէս Աղաւնեկ (Verbena), և լինի առեն 'ի կողմանս Անտիոքայ և Մէրտինու: Իսկ այլք Թ. փարաղ-օթի թարգմանեն, բայց սա սամիթ է:
Համետել – փորձել, քննել:

Համրած – կորած (կաթ) կամ ջրախառն ։ յիր ։
Հայխունկ – խունկ հասարակ ըստ բնագրին, Libanus, այլ թուի չփոթելընդ Libanotis, որ և Rosmarinus, զոր և լիբանանական կոչեն մերքս ։ ճծէ ։
Հայֆարիխոն – տ. ծան. խթ գրան ։
Հանապ – աման հեղուկ իրաց, կթղայ ։
Հաշա – Արբ. հայերէն Ջամբուռ, Thymus. Թ. [illegible] ւէ, որպէս և ռամկօրէն կոչի առ մեզ Աւելի-խոտ, անտրժելի մեղուաց ։ մղ. յժգ ։
Հապալասի – արաբ. մրտենի, պտուղն կոչի հապալաս. Myrtus. խէ. ճծգ. ճձթ. միա. մխը. մհը ։
Հասուկ – հանճարեղ, ժիր, ճարտար կամ գիտուն ։ ժ ։
Հաստատակուռ – հաստարմատ ։
Հաստոց – հաստատ բռնելոյ գաւազան կամ նեցուկ ծառոց ։ մթ. մհթ ։
Հատհամեմ – տ. Հացհամեմ ։ ճխբ ։
Հար – հարուած, խայթուած հիւանդութիւն ։ ճմզգ. յի ։
Հարուլ – հարել, ջրով զարնել, Թ. չալգամագ ։
Հարօր – արօր, որ է փայտն խոփին. Թ. սապան օգու ։
Հացհամեմ – Թ. չէօրէկ օթի. Fœnum græcum, ֆռ. Senegré. ճիէ. մլբ ։
Հացմիջուկ – հացի մէջն կակղագոյն ։
Հացպան – հացագործ ։
Հաւիճ, Հաւիճանի, Արբ. – անուշահոտ դեղորայք և համեմունք բաղադրեալք ։ մղ. մժա ։
Հեա. Ի հեա. Հեաէն – շարունակ կամ հետևաբար ։
Հետևակ այգի – նորատունկ այգի, որ դեռ չունի բեր ։
Հերկոտն – հերկած գետին ։
Հերուն. ծակելու գործիք. Թ. մըխ ։
Հիլիոն, յորմէ Հիլիոնուա. Պարսկ – ծնեբեկ. Թ. գուշգօնմազ ։
Հինաձիւղ, կամ Հնաձիւղ – հին, առաջին տարիներու ճիւղ ։ միե ։
Հինայ – հող՝ յարմարս ծառոց կպած կամ պատած ։ մթ, միե, մխբ, մհը ։
Հնգանի – մեղմով, կամացուկ ։ մծէ ։
Հնդի ընկոյզ – Թ. հինտիստան ճէվիզի. Nux muscata. ճկբ ։
Հնդիկ լեղակ – Indigo, Թ. չիվիտ, նիլ ։
Հնտանք – հունտեր, սերմանիք ։
Հնարել – ընարել, զատել, մաքրել ։ լը ։
Հոգցի – կամաւ, յատուկ խնամով. Թ. մախսուս ։
Հոգցող – հոգացող, կառավարող, վերակացու ։
Հողաշրջել – [illegible] կորել ։
Հողոտել – խառնել, կամ թաթախել՝ ի հողն ։ մՃբ ։
Հողցայթել – հող սփռել, հողով ծածկել ։ միը ։
Հռոմձէթ – հասարակ ձէթ ձիթապտղոյ ։ ղգ ։
Հռոմ Սնֆուլ – հասարակ նարդոսն է. Թ. սիւմպիւլ ։ ղգ, մղ ։ տ. և Սնֆուլ ։
Հովուի բիր – կամ գաւազան. Արբ. ասայի ռայի, Թ. չօպան դէյէնէկի. Polygonium. ըստ մեզ ասի Մատիտեղն ։ յժե. յժը.
Հորոն – ցորենոյ հոր, ցորենանոց ։
Հրասանալ – դիմել՝ ի մէկ կողմ կամ ՝ի վերայ. Թ. սալտրգ ։ մկը ։
Հօտ – կորեալ կամ յատեալ ուռք այգեաց ։ ը. լգ. ձթ.

Հօտել — յօտել, թ. պուտամագ:
Հօտոց — երկաթեայ կարիչ գործի որով կտրեն զայգիս և զոստս ծառոց: խգ:
Ձաղկ — արձակ և ցցուած մազք (ձիոց) որ չեն խառնեալք ընդ միմեանս: մղգ:
Ձար — ձիու մազ: ճլ:
Ձարձատ, կամ Ձարձատած — հատ հատ, այլ ամբողջ: ճժթ. մ:
Ձաւար — թ. պուլղուր, որ է քիչ մանրեալ ցորեանն և գարի: յժդ:
Ձիւնամած տեղիք — ուր շատ ձիւն գայ: ճժէ:
Ղլէֆ, Արբ — պատեանք, մանաւանդ լաթեղէն: մժէ:
Ղորդ — ուղղորդ, շիտակ:
Ղորդահաչ — լաւ և ըստ պատշաճի հաջող շուն: յիգ:
Ղորդել — շըտկել, յիստակել:
Ճագամ կամ Ճագուամ — թուփ ճաթըռուած կեղևք ծառոց:
Ճակնդեղ, որ և բազուկն, Beta, թ. բանջր: յի:
Ճակնդեղուկ — վայրի ճակնդեղ, Beta sylvestris. յի:
Ճանկ — ափ. թ. աւուճ, կը. ճժթ.
Ճապկտիլ — յօրանջելով ձգտիլ. թ. կէրինմէք: յժդ:
Ճապուռ — չաման վայրի, Քրմէնի ըսման կոչի 'ի բժշկարանս: ճզ:
Ճառայ — լայն բղուղ, սափոր, փարչ. թ. իպրիք, տէսթի:
Ճավզպէ կամ Ճօզպէ — Արաբ. ճավզպուվա. հնդի ընկզի փոքրն, որոյ կեղև կոչի Պասպաս Myristica moschata. ճձա. ճղբ:
Ճատէ — ըստ մեզ մարեմխոտ կամ խնկողկուզակ, Polium. յդ. յէ. յթ:
Ճէտի (կամ Պուրճի ճէտի) Արաբ. — Այծեղջիւր̈ համաստեղութիւն:
Ճինի — տ. Ճփնի, և ծան. ճղէ գրան:
Ճիշտել — ճչելն մկանց կամ հաւուց:
Ճիպս կամ Ճիփս — գաճ, բուռ. թ. ալչի: ճկ:
Ճխմել — տրորել ճզմել: ձև. մլգ:
Ճղապատրոյս — ճիւղոյ պատուաստ, թ. փուտ աշլամասը: միե:
Ճնդիկ սև — խիստ սև. թ. գօյու օշեան (Գէորգ):
Ճնդպատասթ — տ. 'ի ծան. յժէ գրան:
Ճոլթան — խողովակ. թ. օլուգ:
Ճուաշիր կամ Ճօշիր — Opopanax, խէժ Spholium ծառոյ: յզ:
Ճուլպան — ոլոռն, մաշ. թ. պէզէլյէ: իբ:
Ճուռ — ճիռ, խաղող մնացեալ յետ առաջին այգեկըթոց:
Ճփնի կամ Ճֆնի — բնագիրն ունի 'Ροδοδάφνης որ թարգմանի դափնեվարդ. 'ի հին բժշկարանս մեր գրի ճփնի և թարգմանի դարիսենեկ, որիշ 'ի դարիսենոյ՝ որ է կինամոմոն (տարչին): Ի մի դուռն 'ի բնագրին այլ բոյսք նշանակին: ճզ. ճժ. ճղէ. մզ:
Ճօզպէ — տ. Ճավզպէ:
Մազմզուկ — մազմզուտ, մազակերպ թելք արմատոց և ուռոց որթոց:
Մազմըզկիլ — մազմզուկ կամ արմատոց թելեր ձգել: մհը:
Մաղտաքէ — ծառն ձուլթաբեր. թ. սագըզ աղաճը: ճիե. մէ. յիբ:
Մաթրզի կամ Մաթուզենի — Arbutus. թ. կօճայ էէմիշի: մխդ:
Մաղտել — շառատել, որ է նշտրակով կամ ածելեօք հաճաճոն անել: յթ:
Մայա — բառ պարսկ. հայս, խմոր:
Մայզել — համտեսել կամ կարծել: ճղգ:
Մայրան — միջին կամ հաստ բուն ծառոյ և որթոյ, իբր թէ մայր տնկոյն: խթ. հէ:

Մանանեխ – թ. հարտալ։ մհա.
Մանդրայ – գաւիթ ոչխարաց (բառ յունական)։ յժէ։
Մաշարայ – Պրսկ. Վեհարէ ածու պարտիզաց կամ բանջարեղինաց։ միր. մլգ. մծա. մկ։
Մաշտել – զհերն թափել։
Մառ – մաշկանման մակերեւոյթ գինւոյ և նմանեաց։ ճծը։
Մառան – կեղար. թ. քիլէր։
Մասարա, Արբ. – գործի և տեղի ճմլելոյ զձիթապտուղ և զնմանիս։
Մասարաքար. – աղօրեաց քարն։ մձգ։
Մասուրայ – եղեգն գեղ ասելոյ։ ձբ։
Մատներ – չոր և ցցուած հողով գետին։ ծգ. կգ. մհե։
Մատուտակ – թ. մէյան քէօքիւ, Glycyrrhiza. հայերէն կոչի և Մա-րուխ։ ճծթ. ճձե։
Մարզպան – չափ ընդեղինաց։ Մարզպանն – Այասոյ կամ Կիւլի-կեցւոց մերոց էր 1/10 մոդոյ նոցին, (տ. Մոդ) ՚ի գուռն մզ ցուցանի մարզպանն հաւասար 100 թուխթ կշռոյ։ ճծը. մզ։
Մարի – էգ հաւուց։ ճղզ. – էգ մեղու։ մղ։
Մարխ – մայրի ծառ իւղոտ և խժոտ. թ. չըրա։
Մարուֆ – տ. Պատրուճ։ մկգ։
Մարսական – որ դիւրաւ մարսեցընէ։
Մգռա – պատառուածք գետնի, ճեղք։ ժէ. ծէ։
Մգլահոտ – թ. քիւֆ գօգուլու։ ճխգ։
Մեկնել – տարածել, սփռել։
Մէրհէմ – թ. մէհլէմ. սպեղանի, օծանելիք։ մղէ. յիէ։
Մթխալ – թ. միսգալ. կշիռ իբր 3 կրամ, ըստ Նոր չափոց։
Միագէհ – մէկ կողմէն. Գէորգ Թարգմանէ [illegible]։
Միզն – բարակ մաշկ. թ. զար. յիբ։
Մինութիւն – միայնութիւն, առանձնութիւն։ մղ։
Միջածիլ – ՚ի մէջտեղաց ծլած մասն բուսոց։ մծէ։
Միջակահատ – միջակ մեծութեամբ հատ պտղոյ։ մձղ։
Միջավայր – ոչ տաք ոչ ցուրտ տեղ, բարեխառն։
Միջգետին – գետնի վրայ, գետնի երեսն, յատակ։ մձթ։
Միւրտէսէնկ. Արբ – քարմարցակ, արծաթոյ փրփուր, Lithar-gyrus. Փռ. Litharge. յիը։
Մլար – մթագոյն, մշուշ։
Մխադնաց տեղ – ուր յաճախ լինի՛ կամ անցանէ մուխ։ ճիթ։
Մխեցուցանել – մուխ ծուխ տալ (մեղուները փեթակէն հանելու համար)։ մղ։
Մծրիլ – այրիլ. խանկրիլ։ լզ։
Մկնտոխ – Scilla. փռ. Squille, Oignon marin. Արբ. ունսուլ, և պասալ-իւլ-ունսուլ, կամ պասալ-իւլ-ֆար. Պարսկ, փիյազ-մուշ։ ճձը. յժգ։
Մկրատք – ծիլք և ծայրք որթոյ. թ. [illegible]։ կբ. կդ։
Մղածք – վազք, արշաւումն ձիոյ։ թ. եիւրիւյիւշ։ մղգ։
Մղրուն – կողով, կթոց։ ճժե. մժէ։
Մնչել – ճզմել, կակղացընել մատամբք։
Մնջեխ – մոծակ, մժղուկ։ ճն։
Մնջեղի ծառ – տխկի. Acer. Փռ. Erable. այլուր յունական բա-ռիւ և աղաւաղեալ կոչէ Աֆիտամօն։
Մոդ – չափ ցամաքեղէն իրաց որպէս ցորենոյ, գարւոյ, և այլն. մոդն հռոմայեցւոց լտերս (լիտր) 8,640։

Մոշի — կամ մոշայ, մոշավայրի. Թուփ վայրի. Tamarix կամ Myrica, որպէս և յոյնն Μυρίκη, որ և 'ի հայումս գտանի փոխեալ 'ի նոցէն:
Մորահար — հարեալ կամ խոցեալ 'ի մոր կամ մորկ սարդէ, (Tarantula): ղդ. մԾէ. ճՀը:
Մորէ — 'ի հին բժշկարանս 'ի կարգի բանջարոց դասի և մորէ:
Մորճ — կամ մորչ. շառաւեղ բուսոց նոր արձակեալ, բողբոջ: մխը:
Մորթի — մորթ, կաշի: ղե:
Մորչել — մորչ արձակել, շառաւիղել: մԹ:
Մունֆախդէճ — Արաբ. մէյֆիխըխըճ. Պարս. մէյխիխըխէ, քաղցու կամ գինի եփեալ և թանձրացեալ սպիտակ խաղողոյ: ճիէ. ճխը. ճԾա. մԾէ:
Մուշախայ — մոմչոր. Թ. մուշամպա: մԾէ:
Մուշապաք — ուռկանաձև հիւսուած: ձլգ. մղ:
Մուռն — զմուռն և զմռանի. Myrrha. ճխբ:
Մուստառ — Պարսկ. մուսթար, քաղցու. Թ. շիրա: ճԺԹ:
Մռեղ — յարդի մանրուք, մղեղ: լե. մլշ:
Մտացն ասել — տհաճիլ: մղէ:
Մրտենի — մրտի ծառն Myrtus, ճիԹ:
Մրտիտակ — տ. Վրացի կոճ: ճԺբ. յԹ.
Մրրգոյն — ունօղ զգոյն մրրոյ: մձզ:
Մրրոտ — մրուր կամ դիրտ ունող. Թ. թօրթալը:
Մքռայ — տ. Մգռա:
Յաղթ — պինդ կամ պարարտ: կդ:
Յատակած — 'ի յատակն իջած (բուռ):
Յարակ — յերկար, երկար ժամանակ: միդ:
Յարդլի — յարդով խառն կամ լեցուն: մՀը:
Յեղել — մաքրել: խզ:
Յովտակ — մատակախազ արու ձի: մղդ:
Յոտնմնայ տ. Ոտն:
Յորդել — առատաբեր առնել (ըստ Գէորգայ): մԾե:
Յորձանացուցանել — հեղեղի նման առնել զջուրն:
Յուղ — տ. 'ի ծան. միէ դրան:
Յուշաբեր — ուշ բերք բերող: հդ:
Յօժարգնայ — շուտ գացօղ. Թ. չէվիք:
Նադրուն — տ. Նդրուն:
Նասր — կարգ կամ շարք տնկոց: մՀը. մձ:
Նարօտ — գունագոյն Թելք ապրշմից:
Նդրուն կամ նաԹրուն — փրփուրն հայ բորակի աղանման:
Նեխ — փտտեալ, խանգարեալ: ճԾա:
Նեղ լինել — 'ի նեղութեան լինել. վտանգիլ, վնասիլ: ղա:
Նեղակն — ուռի ակներն, որ մօտ լինին միմեանց: կե:
Նեղհոգուկ — սրտնեղութիւն. Թ. սըքընթը: մԾԹ:
Նենգել — վնասել:
Ներքևատակ — աւելի խոր տակն: մԾ:
Նիստ — նստելոյ տեղ, դադար անասնոց: յԺէ:
Նշայ — նաշիհ ալիւր: յբ:
Նշտրակ — Թ. նէշթէր, արիւն հանելոյ կտրոցն: յԹ:
Նոճէս — տ. ծան. միր դրան:
Նոնոֆար — կոկոռ, հարսնամատն, ջրի շուշան, Nymphea. Թ. նիլուֆէր:

Նորայրեաց – Նոր այրած ։
Նումայի ծառ – ազգ նարնջենոյ կամ կիտրոնի ։ միը ։
Շալական – բեռնատար (ձի) ։ մլթ ։
Շալակել – կրել, վերցընել ։ մԹ.
Շահմի հանտալ – վայրի ձմերուկ ըստ Գէորգայ. Թ. եղսաճէլէլ գար-փուզի. ձԹ. նոյն թուի և,
Շահմըհամ – վայրի գդում. ըստ բնագրին. Colocynthis. Փռ. Colo-quinte. ղզ. թերևս նոյն է և Շահամ, որ համարի ձմերուկ փո-քրիկ ։
Շաղել – շաղվել. Թ. էօղուրմագ ։
Շաղախ – ցեխ, տիղմ. Թ. չամուռ, և այլն ։
Շանթ – հրացեալ երկաթ ։ մՃգ ։
Շանթեցուցանել – հրացուցանել զերկաթն ։ մՃգ ։
Շանփիփն – Շան աղբ ։ Ճա ։
Շառատել – Թ. հաճամաթ անել ։ յԺգ ։
Շարժ, Շարժիլ ծառոց – երբ սկսանի հիւթն խաղալ՝ ի ծառս՝ շարժի ՚ի բողբոջել ։ միդ ։
Շարոց – շարեալ չուանաւ կամ թելով. Թ. փիշի, հէվլէնկ ։
Շաքիլ – շառաւեղք և մատաղ մատունք տնկոց ։ մԺգ. մԺե ։
Շէրմ կամ չէրըմ – արբ. խոտ. ՚ի բնագրին կոչի χνέωρος, և համա-րի յոմանց կասիա ։ մղ ։
Շիվ – քամուք խաղողոյ, Թ. ճիպուք. և աղան յեռալ քաղցուէն ։ ձզ. մզ ։
Շլնեստան, Շլնիք – վզին ետևի կողմն ։ ձզ. մդգ ։
Շլնէտակք – շլնքին տակի կողմն ։ մդդ ։
Շնկղկիլ – կառչիլ, յիրար խառնիլ խռնիլ, հզ, մկէ ։
Շնխաղող – Solanum. Արբ. Ենէբ-իւ-սալէբ. Թ. քէօփէք իւզիւմիւ ։
Շնհարք – փոկ կամ անուր ՚ի վիզ շանց, հանդերձ երկաթեայ խայ-թոցօք վասն հարկանելոյ զգայլս ։ յիգ ։
Շնչահան – շունչ ելանելոյ փոքրիկ ծակ. Թ. սօլուգլուգ ։ լէ. մզ ։
Շնչատել – շոյտ շոյտ և ընդհատ շունչ առնուլ և տալ ։ յԺգ ։
Շողակից – երկաթեղէն հրացեալ, կամ ցոլացուցիչ ջերմութեան գործի (իբրև կիզիչ ապակի), որով խարէն զաւելի տկներն և զհօտեալ տեղիս տնկոց. կոչի և Խարիչ ։ միե ։
Շողկտացընել – շողացուցանել, ճաճանչեցուցանել, փայլկտալ ։ դե ։
Շողհար – յարևէ կամ ՚ի տօթէ հարեալ ։ յի ։
Շողքամ – Թ. շալղամ ։ մՀա ։
Շողնալ – թաքնալ, թափալ ։
Շողրեցուցանել – սակաւ մի թաքցընել ։ յԺէ ։
Շոպ – ըստ յոյն բնագրին է ժանգ, բորբոս (հիւանդութիւն) բու-սոց, փռ. Rouille. ըստ հայումս թուի խանգարումն կամ այ-րումն ՚ի հողմոց ։ ղգ ։
Շուշմայ – կնջիթ. Թ. սուսամ ։ մկը ։
Շուրջ – տակնուվրայ ։
Շռատ – Շինծուկ պանրի ։ ճկէ ։
Շռծակ – շռելոյ ծակ ։ յԺդ ։
Շպլեղ – պաղլեղ. Թ. շապ ։ յիը ։
Շքաչոր – ՚ի շըքի չորացեալ ։ ճխգ ։
Ոթիս – ազգ բզէզոյ. փամուգլան պէօճէկի (ըստ Գէորգայ) ։ ճէ ։
Ոլորտել – աղեաց գալարելով ցաւիլն ։ յդ ։
Ու ՚ի յեց – տակը կռթընցընելով ։ մԺգ ։

յՈտն մնալ — ոտքի կանգնած կենալ մնալ։ յեր։
Ոտնարձակ — քայլ. Թ. ադըմ։
Ոտնաք, ընդ ոտնաք առնել — ոտից տակ կոխկռտել։ յժը։
Որդնծակ — որդան կերած կամ բացած ծակեր։ մլա։
Որդնհար — յորդանց հարեալ և կերեալ։
Որթոտ — հօտք որթոց, կարեալ ուռքն աւելորդք։ մլա։
Ործն — հեծկլտալ. Թ. ընգըլըմէք։ մկգ։
Որձ — արու։
Ուժաւորել — զօրանալ։
Ուրդի — հանդիպի կամ գտանի։
Չաման — Թ. չէմէն։ մհա։
Չամչռել — Թառամիլ կամ չորնալ չամչի պէս։ մձե։
Չաչ — անկացու ուռ կամ ոստ, զոր ջախջախեալ անկեն, որպէս զի յարմար լիցի մազմզկելոյ։ մկը. մլը։
Չարեէկ — Պարսկ. քառորդ, մի բաժին 'ի չորից։
Չարհոտ — քաղբան. Թ. գասնը. Galbanum. ձա, ձե։
Չաք մի — չափ մի, սակաւ մի։
Չեչ — քամուք կամ ճզմեալ մասունք ձիթապտղի և նմանեաց։ մձգ։
Չէ 'ի բան — բանի չի գար, անպիտան։
Չիքն լուսնի — լուսնի յետին աւուրքն։ ձծա։
Չքննէ — հոգ չէ, վնաս չկայ։ խը. ծա։
Պակցուցանել — 'ի մէջն անցընել, հագցընել, փակցընել։ մկգ։
Պախրէ — եզն կամ կով. Արաբ. պագարէ։
Պահ — սաղմնաւորեալ, յղի։ մղէ. յեգ։
Պահնալ — յղանալ։ մղէ։
Պաղ շպլեղ — ձերմակ շապ, ֆիրէնկի շապ։
Պաղքաշ առնել — պաղն յինքն քաշել, ցրտանալ։ մծ։
Պան — խորխախ մեղրին. Թ. կէօմէճ։ մղ։
Պան — ըստ Գէորգայ է ծառ 'ի չափ կաղնոյ։ Եւ զի՛ 'ի ձիւթել ըղ-կարաս 'ի գործ ածի՛ հարկ է թէ եղէ խիժային. ըստ այսմ մարթ էր կարծել ընթեռնլի ոպան, որ է տունկն անգուժա-նի կամ քաղբանի, թէ չէր սա չարհոտ, որպէս և կոչի խէ-ժըն։ տ. Չարհոտ։ ձիե։
Պանդրիլ, պանդրած — տունկ դեռ նոր արմատս արձակեալ։ հա. մհը։
Պապունկճ — օչօչ ծաղիկ, երիցուկ. Թ. փափաթիա։ ճզ։
Պառակ — ընկողմանեալ. տափակ դրուած 'ի գետին։
Պառակեցուցանել — զճիւղն պառկեցընել 'ի հող, զի ելանեն նոր ծլեր և լինին տունկ։
Պառպուռ կամ պառպեռ — Արաբ. և լատ. Berberis, Ֆռ. Epine-vinette. հայերէն կծօխուրի կամ ծորենի թուփ փշուտ, մանր ծաղկօք և պտղօք։ ծէ. ձխբ. ձխը։
Պատահարիլ — վնասիլ, զարնուիլ։ ղա։
Պատեխ — Արբ. պադդխ սեխ. Թ. գավուն։ մկը։
Պատրաստ — զգուշութեամբ։ ձգ. ձգ։
Պատրոյս, պատրուսել — Թ. ալդատմա։ խզ։
Պատրուճ — որ և Մարուֆ. զորոյ զինչն և զհայ անունն ոչ կարա-ցաք, ասէ, ստուգել, թարգմանիչ մեր. այլ զի ընդ անանխոյ յիշէ, որպէս և բնագիրն միայն զանանուխ յիշէ. Menta, և ըստ մերումն՝ անօգուտ ասէ զայն, յայտ է յազգէ անանխոյ լինել։ Ի բժշկարանս մեր խանգար յունական անուն դնի սմա՛

Սալիմ, պարսկերէն կամ հայերէն հասա. Թ. Նառայի խորասան. իսկ Ամիրտովլաթ ասէ. «Ինքն ռահան մի է, որ տերեւն լայն է. և լաւն այն է որ տերեւն կապուտ լինի»։ Լսի և այժմ'ի Հալպ Պատրիճ, և Թուրքարէն՝ Աճեմ Նոխու։ մկդ։

Պատրուսացու — այն ձիւղն որ'ի ծառն պատուաստի։ մկդ։

Պարան — շարք, կարգ. շափեալ կարգաւ ծառք կամ որթք այգւոյ։ Թուի եւ պարանաձեւ ձգեալ թեւք կամ երկայն ուռք՝ ուղիղ գծաւ։ կէ. մլր։

Պարզկայ — պարզ և ցուրտ օր կամ գիշեր. Թ. այազ։

Պարզուտ — քամոց. Թ. սիւզկէճ։ ճլբ։

Պարխրային (օգ, պարխրցի, պարխրցնիք) հողմն հիւսիսային. բոռէաս։ իր։

Պարխրցնոց — հիւսիսային հովանոց. Թ. [illegible]։

Պարկուճ — կեղեւ կամ կեճեպ, որպէս սխտոր և բակլայի. և նմանաձեւ աման որ պարունակեցէ ինչ յինքեան։ Եւս և խողակ շերամոյ և թրթրոց, որ է շրջափաթոյթ պատեանն զոր հիւսեն և մնացեալ'ի միջի՝ փոխին'ի թիթեռնիկ։ ճղ.

Պարընմէջ — միջոցն պարանաց որթատնկոց. տ. պարան։ հա.

Պարս — նորածին ձագք և ձերք մեղուաց։ մղ.

Պարսմայր — թագուհի մեղուաց։ մղ.

Պարտակ — պարտըկելու, պահպանելու հնարք, կամ պատսպարան։ կգ.

Պերպեռ — Թուի՝ սուր բրիչ առ'ի ծակել զգետին, և գործն ասի

Պերպեռել — հ. հբ.

Պիծակ — իշամեղու. Թ. եշէք առըսը։

Պիծխի տես'ի ծան հա գրան։

Պինդ — զօրաւոր, սաստիկ (գինի)։

Պիսակ — բորոտութիւն։ մկղ.

Պլամ — ազգ փշոյ կամ տատասկի, որպէս կարգ բանին ցուցանէ։ մի։

Պլտակեր, պլտակք — հարուածք գաւազանի և գաւազանք կամ քուքք։ Գէորգ համարի պարանս, որով կապեալ զկով և զարջառ տանին՝ ուր կամին։ մղ։

Պլպլկել — բողբոջել բուսոց, ծիլ արձակել։ մկղ։

Պլօթ — Թ. պուլամաճ, ըստ Գէորգայ. այլ Թուի կլորեալ խիւս կամ գեղ։ յե։

Պղլուկ — բողբոջ գեռաբոյս. Թ. Նօմուրճուգ։ հէ.

Պռախցընել — Թուի՝ մաղերը շոկել և մէկդի ժողվել։ մղէ.

Պռչուն — խողովակ. օլուգ։

Պտխել — պայթել, ճաթռտիլ։ մձէ.

Պտկիլ — բողբոջիլ, ընձիւղիլ. ծլել։

Պտկըներ, պտուկ — ձիւղին աչքերն. բողբոջից գլուխքն։ կա.

Պտուղ — ձիթապտուղ։ մէ, մձբ.

Պտղունց, պտեղն, պտղամբ — ծայր երկու մատանց՝ որով բռնեն ինչ մի։

Պտղի ձէթ — հասարակ ձէթ ձիթապտղի։

Պտղել — երկու պտղունցով կամ մատով ճմլել։ ճժե.

Պտղիլ — տարածիլ հիւթոյ (պտղոց)։ ճժդ.

Պտղմէջ — միջոց երկուց կամ աւելի պտղոց։ մթ.

Պրախցընել, տես պռախցնել։

Պրճուկ — վերին կողմն դմակի, և ագւոյ ձիոց։ մղդ.

Պրտու — եղէգն ջրային, տափակ. Scirpus. Փռ. Jonc. ճհր.

Պըքէ — բառ արաբացի, գուբ կամ աւտղան ուր ժողովի ջուր։
Պօղ — բաց գոյն կապուտախառն կամ կանաչախառն. Թ. պօզլու։ մըե։
Ջաղացանի — ջաղացք, աղօրիք։ մձբ։
Ջանջախ — ջախջախեալ ծայր բուսոց, զի դիւրաւ արմատասցին։ իը։
Ջանջախել — ջախջախել, ջարդել առանց կտորները զատելու։
Ջեռուկ պահել — տաք պահել։ յժգ։
Ջերոց — տաք պահելոյ տեղ։ յժէ։
Ջովլի — մազէ կամ երկաթի թելէ մաղանման չերեփ. Թ. սիւզկէճ։ ճլ։
Ջորեկ կամ չորեկ. տ. 'ի ծան. ղե գրան։
Ջրագնացք — արտերն ոռոգելու ջրի ճամբայ։ մծա։
Ջրախոռ — ծովու կամ գետոց խոռ։ մձա։
Ջրաղաց — հասարակօրէն ջրի աղօրիքն, այլ ասի և վասն այլ աղօրեաց։
Ջրառու — ագուգայք ջրոց, ջրանցք։ Թ. սու արըղ։ ծգ։
Ջրընկեց գետին — ջրոտ. Թ. սուլագ եէր։ գ։
Ջրջրկիլ — ջրոտիլ։
Ռազիան — չիմառ. Fœniculum. Փռ. Fenouil. Թ. րէզյանէ։ ճծա, ճհզ։
Ռահվար — քալուկ ձի. Թ. չաքգըն։ մղթ։
Ռասալի — ծարիր, ծարրաքար։ յիէ։
Ռատինէճ կամ ռինդինէճ — ռետին, սոճոյրի ծառի խէժ, որպէս բացատրէ հեղինակն։ մղգ, յժե։
Սալ կամ Սալքար — դուր, տափակ քար։ մծը։
Սալէթին կամ սալաթա — ըստ բժշկարանաց՝ գարի է մանր և անկեղև։ իգ։
Սալիխայ — կեղև ծառոյ որ Սալխ կոչի ըստ բժշկարանաց, յորս ասի. « մանրկեղև և կարմրաժեռ. և հինգ ցեղ է, լաւն այն է որ կարմիր լինի գունովն, և թանձր լինի կեղևն, երկայն, և ծակն փոքր լինի, և զէտ զըֆա փաթութ լինի. և այն որ սև է՝ չէ աղէկ. և այն որ նօսր է՝ Քոոսայլ ասի, որ սալիխային ղալըն է.. Եւ այլ սալիխայ կայ՝ որ զէտ տարչինի է. և այն լաւ է քան զամենայն ցեղն »։ Այլ բժշկարանք ասեն զսա. « Ս. Գրիգորի ուխտին փայտին կեղևն ». կամ « Ս. Գրիգորի ծառի խէժն է, և կարմիր կեղև է » ։ Իսկ հնադոյն բժշկարան ասէ հոռոմերէն կոչիլ սմա Սիլինոս։ ճձզ. ճղթ։
Սալուտ — քարուտ, բազմական իմն մեծութեամբ քարանց։ հե.
Սակամունի — Scammonium. Արբ. սաքմունի. Թ. մահմուտիէ. խէժ պատատուկ բուսոյ՝ զոր բուսաբանք կոչեն Convulvulus Syriacus, զի յԱսորիս գտանի լաւն. որպէս և բժշկարանք մեր ասեն, « աղէկն 'ի յԱնթաքիու գայ ». և ստորադրեն. « Ինքն բաղեղան խէժն է և կաթն ». բայց « բաղեղն երեք ազգ է... ազգ մի այլ կայ որ ճղերն յերկան և կանանչ լինի, տերևն երեք ճիւղ, միջինն յերկան և քովինն կարճ. և այլ բաղեղան տակն կաթ չունի, այսորն ունի »։ մկը։
Սամիթ — Anethum. Թ. տէրէօթու։ ճիթ, մշա։ տ. և ռազիան։
Սանոննի — թուփ՝ գլուխք պանրոյ. Թ. թէլլէ թէյնիր։ յիբ։
Սապռ կամ Սապռի սկուարի — հալուէ։ ճծէ. ճծթ։
Սատապ — Արբ. սաղապ. փեգենայ, ծայթրին ճղբ։ ճղե. մը. մկզ. յե։

Սաղէճ հինտի – կասիա Հնդկաց, ըստ բժշկարանի. Malobathrum.
Սատիր – նորընծիւղ սերմնաբոյսք, զոր հանեալ տնկեն այլուր: մծե:
Սատրել – զնոր ընձիւղեալ բոյսն սերմանց, մինչդեռ մանր են զատել և որիշ որիշ տնկել. Թ. սէփէր ճիմէ: խմ. մկ. հա. մծգ. մծե:
Սար – պատրաստ, կարգադրեալ. հբ, մլ:
Սարմայ կամ Սարբինայ – նեցուկն կամ խեչակ նորահաս տնկոց և որթոց: կէ. հբ. ձէ:
Սար բուսած – սերմանեալ և բողբոջեալ հունտք կամ բոյսք:
Սարգիստայն – մամուկի ոտնք. Թ. էօրիւմճէք էլի:
Սարիխեժ – տ. Ռատինէճ:
Սարուած – գործիք, որպէս կորոց, գաւազան, և այլն: խբ, մղ.
Սերտ – չոյտ չոյտ, իժիր, սաէպ: ճիթ:
Սերտել – կրկնել, սաէպ սաէպ ընել: մղ:
Սէզ – Ջրային. ևս և ցամաքային խոտ, հասարակ երկայնաձև. Gramen. խբ. ճղէ:
Սէվաս Պրս. – մելամաղձ, ներսրտութիւն: մժթ:
Սիզուտ – սիզաւոր տեղի, տ. սէզ:
Սիլայ – հնձան կամ ընդունարանն՝ յորում խաղող կոխեն: ճիա.
Սիկ – տղմախառն, ուր գիրտ ջրախառն նստեալ է. Թ. չէօփէկ: մկէ.
Սիմինդր – հաստ ալուր: ճկթ, մղէ:
Սինձ – տ. սնձի:
Սիրքէնճիւպին կամ սիքէնճիւպին – քացախ ընդ մեղեր բաղադրեալ: ճլը. մձէ:
Սիֆուն – եղէգն կամ եղէգանման խողովակ, որով ղհեղուկս 'ի բերան ձգեն: ճլը:
Սկոււտոն – Յն. սկօրոտոն. σκόροδον, վայրի խստոր: Արբ. սում պէրրի: մկե:
Սղալ – կարգէն դուրս բուսած տունկ:
Սղոցուք – 'ի բերանոյ սղոցին Թափեալ մանրուքն փայտի:
Սմբակած – ոտնակոխ, տափակած: մհր:
Սմքիլ, սմքեցուցանել, սմքեցընել – կծկել, Թոււմեցընել: ծգ. մժէ:
Սնանիլ – ծծել և տոգորուիլ. Փռ. Saturer. ճա:
Սնարք – կռթընելու բան. եղերք: մթ:
Սնկիլ, սնկող – կարօտիլ պէտք ունենալ:
Սնկութիւն – կարօտութիւն, պէտք:
Սնձի, սնձենի – տեսակ քաղցր խնձորոյ, Melimelum. ևս և վայրի խնձոր կամ ալոճի, որպէս ասէ և վերնագիր միս դրան: միր. միսե:
Սնփուլ – Թ. սիւնպիւլ. Նարդոս ծաղիկ: ճիր. ճծթ. ճհղ:
Սնփուլ հայեցի – յազգէ նարդոս ծաղկանց, այլ չէ մեզ ծանօթ մերայինս այս ծաղիկ: ճղ:
Սոթոթ – վեր ժողոված, պիրկ: մղդ:
Սոթթել – վեր ժողվել, 'ի ներս քաշել: մղհ:
Սողոփ – կարծր, ցամաք: յիդ:
Սոնիր – եթէ չիցէ սղալ գրեալ՝ է Սոնիճ, որ և Արջնդեղ. Թ. չէօրէկ օթու. Nigella կամ Melanthium. յի:
Սոնոպար, Սոնոպրի – ազգ մայր ծառոյ նման մարխի. Թ. սանէվպէր աղաճի: ծգ. հա. մլթ:
Սունկ – Թ. մանթար, զերևսօք երկրի կամ զծառօք բուսեալ: դղ. մծգ:

Սուսր – հող կարմրագոյն. թ. ալը պօյա, օխըրխէլէն: մկր. մր:
Սպասցու – ընդեղէնք ուտելիք և ըմպելիք, որպէս թանկըայ, սիսեռն և այլն: հբ. ձղ:
Սպիտակ գեղ – սպիտակ ներկ բաղադրեալ արճճով և քացախով. Cerusa. թ. իւսթիւպէճ. Արբ. ասֆիտաճ: ճհզ. յժբ. յի:
Սպլուլթ – Գէորգ ընթեռնու սպլաթի և մեկնէ ցած հող. թ. ալչագ թօփրագ: ի:
Սպտուր – քակոր այծու, ուղտու, և այլն:
Սպրկիկ – մաքուր, կոկ, կակուղ: ժ. հ.
Սպրկցունել – մաքրել, սրբել: յժդ.
Ստեպղին – թ. հավուճ: ղզ, մհա.
Սրոց – յեսան, սրելու քար: ճա.
Սրուլթիւն – սրագնացութիւն:
Սրտուկ – ծառոց միջուկն, որ է իբրև ղբամբակ: կա. մթ:
Սրօնք – սրունք, ծունգէն մինչև յօդքն:
Սօլեր – ոտից ամանն:
Սֆիտամօն – Σφένδαμνος (Սֆէնտամնոս) ընթեռնլի. տ. Մնջեղի ծառ:
Վազան – գիւրահոս: մղդ:
Վազել, վազեցընել – զուգել անասնոց: մղզ:
Վայթիլ – վաթիլ, թափիլ:
Վանճնատ – վազնատ. աղի սեր կաթին, քամեալ'ի շուառէ. թ. չօռ: յիբ:
Վասատակ պահել – մխաս չառնել:
Վատտակել – աշխատիլ, փորել զգետին:
Վարասիոն – տ. փարասիոն:
Վարճոխ կամ վարճող – թուլի խոտ ջրային նման վարսակի:
Վարոց, վարոցիկ – բարակ ճիւղ առանց տերևի. թ. չըպուգ: մժե. մճա. մճգ:
Վարոց (տնկել) – ուռ կամ ճիւղ ուղղակի տնկելի, որպէս գաւազան: հգ.
Վարսամ – ցից, գաւազան: մծթ. մհր:
Վզեն, վզենակ – մխաս. թ. պըրար:
Վզենկարար – մխասակար: մղ:
Վէգք, վիգաց – ծունկ, ոսկր ծընգաց: յիգ:
Վուռ – փայտեայ սեպ. Գէորգ՝ հարկանելի գործի առէ, և թ. եօգմագ: մթ. մլզ. մճա:
Վռզքիթ – ցցուեալ քիթ ձիոյ: մզգ:
Վստահած – յայտնի, ստոյգ: մղ:
Վրացի կոճ – մրտին տակն. Helleborus. թ. գարաճա օթճոտ: ճա:
Տախտ – գահաւորակ. թ. թախթ:
Տախտակել – տախտակով ծածկել: մժգ:
Տակ – արմատ, լայն արմատ:
Տակեղէն – լայնարմատ բոյսք, որպէս բողկ, շողգամ:
Տակհան առնել – տակէն՝ արմատէն հանել: հբ:
Տակնուռ – ծառին տակէն բուսած ուռ:
Տակռել – արմատ ձգել: մկր:
Տակռիճ կամ տակռիչ – հաստկեկ արմատք և մազմզուկք: մխթ:
Տակռճած – արմատացեալ: հա:
Տակռցընել – արմատացուցանել: մհր:
Տակցի – արմատոյն, տակով: մհր:

Տաճիկ ձի – արաբացի ձի, նժոյգ, Թ. քէօհէյլան։
Տանու – ընտանի։ մկե։
Տաշխ – տաշխին, անուշահոտ խնկեղէն։ մղգ։
Տաշտ – Թ. լէյէն։
Տապախ – ախտ, (Թանչից կամ փորհարութեան) անասնոց։ մղ. յժդ։
Տապրան – փէպէրան. Արաբ. են հնգեքին պայծառ աստեղք Ցուլ կենդանակերպի։ ծե։
Տարեբեր – տարի ընդ մէջ պտուղ տուող։ մհը, մձբ.
Տարեց (ծառ) – տարեկան, հնագոյն։ հա.
Տափել – գուրել զհողն. Թ. տիւզլէմէք։
Տափողն – տափակ մասն կռնակին։ յիգ։
Տեռիլ – կաշիին պատռիլ ելլելն, սկռթիլն. Թ. էտղըրլանմագ։
Տերևաթափն – ժամանակ թափելոյ ծառոց զտերևս։ կգ։
Տերևան – տերևաւոր։
Տերևիլ – տերևօք զարդարիլ։
Տերևապատրոյս – տերևով պատուաստ ծառոց. Թ. էաֆրագ աշըլամագ։ միե։
Տիզ – միջատ որ լինի յոչխարս և յայլ կենդանիս. Թ. կէնէ։ մզը։
Տիմէտ – խարան. Թ. տաղը։ մծթ։
Տիպխ – Թուխ լոսեալ տորորեալ նիւթ. ձա։
Տիրանալ – ստանալ։
Տիրական գօտի – աղեղնաձև կամարն՝ որ ձգի յամպս. ծիրանի գօտի։
Տնկացու, Տնկելացու – ուռ որթոյ կամ ճիւղ առանձին տնկելի։ կա։
Տնկել մեղու – մեղու մնուցանել, փեթակ պահել։ մղ։
Տնկմիջեր – միջոցք երկու կամ շատ տնկոց։ հ։
Տնկութիւն – տնկելի բոյսք։ մհէ։
Տոլի – նեցուկ կամ յենարան որթոց և երկայն բարունակն, ևս, պատատուկ բոյսք։ Գէորգ գրէ տոլ, ռմկ. ուռ գաղապար։ միլ. յժգ։
Տորոսուք – ցամաքեալ փշուրք։ ի։
Տուղտ – Althea, Թ. կիւլխաթմի։ ճկ.
Տուրտին – գիրտ, մրուր. Թ. թորթու։
Տրամ – վերին երես գետնի։ ժը.
Տրոսանք – քամոց կամ մամուլ մզելոյ զմիանգամ կոխեալ կամ ճմլեալ խաղող և ձիթապտուղ։ ճիա. մձգ։
Ցոշ, Ցոշբերան – անգամ որձ գրաստուց, մղդ։
Ցախ – դուր. Թ. էաւլամ, մղէ (Գէորգ)։
Ցախ – խռիւ կամ ոստք վայրի ծառոց. չեչ սիսռան, բակլայի և նմանեաց։ ճի։
Ցախուտ – մացառուտ, Թըփուտ, վայրենի բուսոտ տեղի. հ։
Ցածահայեաց – 'ի վայր նայող, տափակ, ցած։
Ցամաքամիս – չորամիս, նիհար։
Ցըցել – անկել։ կգ։
Ցից – ցցուած, ուղղակի, չիտակ. հ։
Ցկնիլ – շանց ձագ ածելն, ծնանիլն։ յիգ։
Ցմախտակ – արմատ ցմախի, որ և Շմորտակ, Struthium. յիէ։
Ցօղուն, – կակուղ բուսոց բունն։
Փաթաթ – փաթոյթ, փաթտած, Թ. փօլամագ։
Փակչրտուկ – կպչուն. Թ. եափըշգան, մծ։

Փաղ (հող) — զուտ, թեթև. մլէ. մծ. մկե։
Փաղ գալ — յղանալ. յժը։
Փարասիոն — Արբ. փէրասիօն. Marrubium թ. բի-օխնէկի. իսկ հայերէն՝ Խորասակ ծոթրին, և Շանխոտ կամ Շանչաեկէք. յե. յժդ. յի։
Փառայ — տ. 'ի գուռն կը։
Փարթ — կոճատ, անզոյգ. Արբ. փէրդ. թ. թէք։
Փաքալ — փքալ, հևալ. կամ հազալ (ձիոց)։ յե։
Փերթ — թերթ, կտոր լայն։ մխե։
Փթթել — բացուիլն ծաղկանց։
Փթրտուկ (հող) — փշրուող հող կամ կաւ։ մծ։
Փիճի — տեսակ մախրի. Pinus Picea.
Փիննայի տակ — Pœonia. թ. Շագայիկ. հա. ճզ։
Փնդռել — փնտռել, քննել։ յժե։
Փշել — փշով ծածկել։ ձգ։
Փոթոթ, Փոթոթահամ — բերանը կծկող թ. պուրուշուգուրան, փէշ պուրան։ մզ. կթ։
Փոթթել կամ փոթոթել, Փոթոթութիւն — զբերանն փոթոթ առնել թ. պուրուշուրմագ. և թթուեցընել։ մզ. մխը։
Փոկ — կաշի չուան. թ. գայիշ։
Փողերակք — երակք կոկորդին։ մդդ։
Փողրակ — ջրի խողովակք թ. ֆիշնկ։
Փոյտ — մեծ ուռք որթոյ։ կ։
Փոշեթաթախ — փոշիով մածեալ, թաթաւեալ։ մկը։
Փոշէջուր — ալիւր գարւոյ 'ի ջուր խառնեալ
Փորիչ — գործիք փորելոյ, բահ. թ. չափա։
Փորոգել — խողովակի նման մէջն պարապ ըլլալ։ մծէ։
Փորտըկել — փորելով պեղել, 'ի դուրս քարշել։ մլա։
Փուլ — լուսնի ժե օրէն մինչև 'ի ծնունդն փուլ ասի։ խգ։ Նոյնպէս խոնարհել աստեղաց 'ի մուտս կամ աներևութանալ։ խգ. ճժը։
Փուխ — փխրուն, կակուղ, մծզ։
Փուր — ընկուզի, կաղնոյ, նշոյ, շագանակի, և այլն, արտաքին կանաչ կեղևն, մժթ։
Փուրփուզնայ — տեսակ խաղողի. տես 'ի ծան. ծէ դրան։
Փուքնի — տեսակ որթոյ որ զխաղողն չոյտ հասուցանէ. տ. ծան. ծէ դրան։
Փչուչ — եղեգն կամ գործի փչելոյ։ ճժա։
Փչոք — ագռն քաղցու (չիրայի). և կճեպք կամ ծեծածք գարւոյ և նմանեաց։ մզ. յ։
Փրաթափել — թափել զփուրն, այսինքն զարտաքին կանաչ կամ թաց կեղևն ընկուզոյ, կաղնոյ, նշոյ, և այլն։ մժթ։
Փրթուցանել հրել թողուլ, յժդ։
Քաղ — արտ. այծ։
Քաղ — քաղելի անպէտ բոյս։
Քաղհնել կամ Քաղհան առնել — քաղել հանել զվայրի և զանպէտ խոտս. ռմկ. քախնել, բ։
Քաղհանիչ — գործի զքաղն հանելոյ, այսինքն զխոտս և զբոյսս։ մծէ։
Քածպոր — շանց յատուկ բորոտութիւն կամ եռք։ յիէ։
Քաղիրդ — ստորին աղեք. թ. ինճէմպէ։ մճթ.
Քաղցու — որ և մուստառ. թ. շիրա։
Քամ — քաղցու գինւոյ որ ինքնին եռայ և վայթի։ ճկգ։

ի Քամ — քամուելով, ծանր ծանր կաթելով (մեղրի)։ մղա։
Քամափիթոս — Camaphitus. Դաղձն լեռնային. կոչի ՚ի մեզ և Խոռն, և Գետնամայր։ ճղզ։
Քաշ կամ Քաշեր (անել) — տաշտամթաղ, աղուրայ, թ. փալպըլմա։ ձ։
Քաշիկ — կուրդին ձիոյ. թ. ղըլան։ մղգ։
Քապրցախ — կապպար. թ. քէպէրէ։ յիը։
Քարաննուխ — աննուխ վայրի ՚ի մէջ քարանց բուսած։ մզ։
Քարթոշ — Քարաթոթոշ, մեծ մողեզ, կովագիա. թ. քէրթէնքէլէ։ ղե։
Քարճ կամ Քարճիկ — հաւու քարաճիկ. թ. ղուրսագ։ յիբ։
Քարց — անաճ, ցած. թ. քէօսէ։
Քարքաղ առնել — զքարերն քաղել ՚ի բաց ՚ի գետնոյ։ հգ։
Քափուր — Քափուր, Camphora, հիւթ կամ խէժ հոտաւէտ, սպիտակ, հնդկային ծառոյ. ճխգ։
Քաւել կամ Քաւել թէ — բայց եթէ, բաց ՚ի։
Քէրեւս կամ քէրէֆս. թ. քէրէվիզ — կարոս, նեխուր. Apium. Փռ. Persil. ճկ. մկ։
Քէնթ — քած շուն։ յիգ։
Քէրծէ — թուփ՝ շուն հովուաց կամ գամփռ։ յիգ։
Քթէթ, Քթեթանի — քթանէ կապ կամ լաթ։ ճ.
Քթոց, Քթոցանի — կողով քիւֆէ։ մժէ. մձգ։
Քիլ — տարածութիւն բութի և ցուցամատին. թ. սէրէ։ մղա։
Քիմէ — Արբ. թ. Խօմալան (Գէորգ)։ մղէ։
Քնքուշ — կակուղ, դալար. թ. Եումշագ։
Քշտել — հարկանել, վիրաւորել. հթ. մլա. քսել, շփել։ յժզ։
Քումայթ, Պրսկ. — խարտեաշ կամ շառագոյն (ձի)։ մղե։
Քուշնայ, Պարսկ. քիշնէ — գինձ. թ. քինիշ. է և ունդ անտանոց ուտելի յար և նման հաճարոյ, (չաւշար)։ կը. ձբ. ճժգ. ճիէ։
Քուռաթ — Արբ. քուռռաթ, պրաս. թ. փրասա։ մծը. մշա. յէ. յժգ։
Քուրձ — խորգ, հաստ խոշոր լաթ. թ. չուլ։
Քախայ — տակն կամ գլուխն սոխի, որպէս բնագիրն ասէ. իսկ Գէորգ համարի «մանրիկ սոխ ՚ի սերմանէ գոյացեալ, որ դարձեալ տնկեցեալ լինի, առ ՚ի լինել մեծագլուխ սոխ»։ մկզ։
Քավլիս կամ Քաֆլիս — մլուկն, փայտոջիլ։ ճը. յիթ։
Օշինդր — ափսինդ. Absynthium. ը։ ճծէ. ճձզ. մզ։
Ֆանօսել — կոկել, ողորկել զփղուզ կամ կարաս վասն ձիւթելոյ։ ծա. ճիե։
Ֆարասիոն — տ. փարասիոն։
Ֆարտ — տ. փարթ։
Ֆէհաղքուշտ, Պրսկ — Vitex կամ Agnus castus. ըստ մեզ Գոտեաց-ճանկ կամ Գոթեաց ճանկ։ մղգ։
Ֆաքայ, կամ Ֆէքէ ասող — Պասկ համատեղութիւն։ իը. ծգ. ծե։
Ֆիսմիալոս — Չիք ՚ի բնագրին այսպիսի բոյս, և ոչ կարացաք ստուգել. մերձաձայն բոյս ծանօթ է Physalis, ֆիզալիս. խբ։
Ֆօտիսօս — տ. ՚ի ծան. յի գրան։
Ֆօտանջ — Արաբ և Պարսկ. ֆօտընէճ. ծայթրին կամ ծոդրին վայրի. Origanum. բայց աստ թարգմանեալ է Դաղձն վայրի. որ է Pulegium. Փռ. Pouliot. ճգ։

